# ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ
ԵՒ
ԲՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ
# ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ

ԱՄՈՒՍՆԱՑԵԱԼ ԱՌՆ ԵՒ ԿՆՈՋ ԲՆԱԿԱՆ
ԵՒ ԲԺՇԿԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԻՐ ԽԻՍՏ ՀԵՏԱ-
ՔՐՔՐԱԿԱՆ ՄԱՆՐԱՄԱՍՆ ՏԵՂԵԿՈՒԹԵԱՄԲՔԸ

ՆՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԾՆՆԴԵԱՆ
— ԱՄԼՈՒԹԻՒՆ — ԱՆԿԱՐՈՂՈՒԹԻՒՆ — ԿԱԶՄԱ-
ԿԱՆ ԱՆԿԱՏԱՐԵԼՈՒԹԻՒՆՔ — ԶԱՆՈՆՔ ԲԺՇԿԵ-
ԼՈՒ ՄԻՋՈՑՔ ԵՒ ԴԱՐՄԱՆՔ

## ՄԱՍՆԱՒՈՐ ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ
## ՅՂԻ ԿՆՈՋ
ԵՒ
## ՆՈՐԱԾԻՆ ՄԱՆԿԱՆ

ԳՈՐԾՔ Ա. ՏԸՊԷՅ ԳԱՂՂԻԱՑԻ ԱՌՈՂՋԱԲԱՆԻՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ
Ի Գ. ՆԵՐՇԱՊՈՒՀԷ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ԶԱՐԴԱՐԵԱՆԻ
— 1873 —

Ստորագրութիւնս չի կրող օրինակը նենգուած է։

# ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ
# ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ

## ՄԱՍՆ Ա.

### ԳԼՈՒԽ Ա.

### ԸՆԴՀԱՆՈՒՐ ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

ԿԵՆԴԱՆԻ *էակաց գոյութիւնը և տեւողութիւնը՝ արտադրութեան բնազդման վրայ կը կայանայ. այս բնազդումը սեռերու միաւորութեամբը կը յայտնուի և ծննդական գործարանները գործադրել կուտայ գործարանաւորութեան ամենամեծ պաշտօններէն մէկը կատարելու համար։* ՍԵՐՈՒՆԴ.

*Մարդկային ցեղին մէջ, ուր միևնոյն գործարան և միևնոյն բնազդումն կը պատահին, ամուսնութիւնը՝ ըստ կազմագիտութեան, երկու սեռերու միաւորութիւնն է միևնոյն նպատակի հասնելու համար. որով կը պահուի* ԷԱԿԱՑ ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ։

*Ամուսնութիւնը՝ ամէն քաղաքակրթեալ ժողովրդոց մէջ, առն և կնոջ՝ հաստատեալ օրինաց համաձայն միութիւնն է, որով այս երկու անհատները, որոնք մեկզմեկու համար քաղցր ձգողութիւն մը կըզգան, կը միացնեն նաև ինչ որ իրենց մէջ բարի, սիրելի և խանդաղատական իրեր ունին։*

Ամուսնութեան վախճանը՝ ամուսնոց միաւորութենէն և մէկզմէկու օգնական և նեցուկ ըլլալ ուխտէն առաջ եկած երջանկութեան ու բարեկեցութեան մէջ է ։

Իւր բնական և ընկերական կրկնակ նպատակն է ծնունդ, որդւոց բնական և բարոյական դաստիարակութիւնը կամ բարեկրթութիւնը, զանոնք առաքինի մարդիկ և օգտակար քաղաքացիներ ընելու համար ։ Ուրեմն ամուսնութիւնը գործողութիւն մ'է որ ընկերութեան ամենաբարձր յարգանքը կը կրէ ու ընտանեկան երջանկութիւնը կ'արտադրէ ։

Ամուսնութիւնը ծննդական սէրը կը զարգացնէ ու կը զօրացնէ, իրաւանց, պարտաւորութեան և արդարութեան զգացումը կ'ընդարձակէ ու կը կազդուրէ, բնական և բարոյական ուժերը գործադրել կուտայ, և գործնէութեան կը ստիպէ, ընտանեկան պիտոյքները հոգալ ու յագեցնելու համար ։ Կինը իւր էրիկը կը սիրէ ու կը խնամէ, երախտագէտ էրիկն ալ կը պաշտէ ու կը պաշտպանէ իւր կինը, վերջապէս ամուսնութիւնը երկու սեռը մէկզմէկու հետ միացնելով չուայտութեան առաջքը կ'առնու, ցանկական կիրքերը կը չափաւորէ, զանոնք յագեցուցանելու դիւրին միջոց ունենալով, և հետեւաբար ընտանեաց բարի բնաւորութեանցը ու պատուոյն պահպան կըլլայ ։

Առն և կնոջ իրաւունքները 'ի բնէ հաւասար են . և քաղաքակրթութիւնը, որ օրըստօրէ այս գաղափարը կը տարածէ, յայտնի ըրած է որ եթէ այրը կենդանի էակաց թագաւորն է, կինն ալ անոնց սիրելի թագուհին ։ Եւ ահա այս իրաւանց հաւասարութենէն պիտի ծնանի փոխադարձ հնազանդու-

թիւն և ամուսնական կենաց մէջ կատարեալ հաւասարակշռութիւն, բայց եթէ ամուսիններէն մէկը իր զօրութիւնը չափազանց վարելով հաւասարակշռութիւնը եղծանէ, միւսը իրաւունք ունենայ զայն ուղղելու և անոր պարտաւորութիւնը յիշեցնելու ։

Փիլիսոփաները միշտ ամուսնութիւնը չափահաս առն և կնոջ բնական միձակը համարած են. չափահասութիւնը արբունքէն շատ տարիներ ետքը իր կատարելութիւնը կը գտնայ, երբ գործարանները կատարեալ զարգացման մէջ և այնուհետև ծննդական գործողութիւնները կատարելու կարող ըլլան։ Ամուսնութիւնը յարմար հասակի, գործարանաց կատարեալ զարգացման և բաւական ուժ կը պահանջէ։ Առոյգ զգացումներէ աւելի տեւողական զգացումներ պէտք է, բարեկամութիւնն ու յարգանքը իրեն նեցուկ պիտի ըլլան, և այն ատենը միայն ամուսնութիւնը երջանիկ կըլլայ և տեւողական երջանկութեան մը յաջողութիւնները ընդ միշտ կը պահէ ։

Ըստ փորձառութեան վաղեմի և արդի անձանց, ամուսնութեան յարմար և արգասաւոր ժամանակը՝ առն համար, քսան և հինգէն մինչև քառասուն և կնոջ համար, տասն և ութնէն մինչև եռեսուն տարին է ։ Վաղակատար կը կոչուին այն ամուսնութիւնները որք այս տարիքներէն առաջ տեղի կ'ունենան, անժամ կըսուին անոնք որոնք ետքը կը պատահին. իսկ անհամեմատ կըսուին անոնք որոնց մէջ ամուսնոց մէկուն տարիքը միւսինէն շատ անցած կըլլայ ։

ՎԱՂԱԿԱՏԱՐ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆՔ ։ Ծնողք կըրկնապէս կը մեղանչեն, երբ իրենց որդիքը բնական կազմութեան կատարելապէս զարգացումէն առաջ

ամուսնացնեն. Նախ՝ որովհետեւ խակատիք, իրենց մանկաքանոյց բուռն եռանդէն վարուելով, բաղ-ձանկութեանց դիւրութեանց պատճառաւ, կը յոգ-նին ու կը ձանձրանին. երկրորդ՝ վասն զի իրենց սերունդը այս վաղակատար ամուսնութեան տուժը և այն պատճառաւ միջոցի վերջը կը կրէ, որինար մեծ դժբաղ-դութիւն մ'է ամբողջ տոհմին համար։ Արեւմտական կրթութեաններուն պատճառաւ սպառումէն ետքը խե-կոյն յաջորդը կը հասնի. անմիջապէս երկու ա-մուսինք մեկզմեկէ կը տաղտկանան. կամ մեկզմեկու անտարբեր աչօք կը նային և անհաւատարմութեան կը դիմեն, կարծելով որ իրենց տկարացած ու նուա-ղած եռանդը գրգռող խթանը հոն կարող են գտնալ։

Բայց մասնաւորապէս կնոջ վաղակատար ամուս-նութիւնն աւելի ցաւալի է. ծնողաց այս մեղանչելի անձապարանքէն խակատի աղջիկը, սնանալու վրայ ե-ղած զօրութիւնները կատարելապէս չաճելով ան-զարգ կը մնայ։ Իր հասակը և պարանոցը տձեւ կըլլան, իր արգանդը, որն որ դեռ հարկաւոր ծա-ւալը չէ առած, չկրնար որ և իցէ մեծութեամբ սաղմն մը պարունակել, ոչ ալ անոր կատարեալ զար-գացմանը համար պէտք եղածները մատուցանել կամ հայթայթել։ Վերջապէս, այս արգանդին առկա-խոյ նեարդական յօդակապներուն տկարութիւնը, ծննդականին արզաքին յարամնագիծը և արեան անցնելու ճամբուն անձկութիւնը շատ անգամ մահացուցիչ պատճառներ են թէ մօրը և թէ իր պտղոյն։ Ի-րաւի գործարանները անկատար եղող մայր մը ինչ-պէ՞ս կարող է կատարեալ էակի մը կեանք տալ. կամ թէ, շատ անգամ չե՞նք տեսներ որ վաղակատար ամուսնութեան մը զաւկները, տամանելի ծնունդէ մը

կըստանան և յայտնի է որ այս դիրութիւնը ծննդական վատթարութեան մէկ նշանն է ։ Նաեւ այս հասակի կիները շատ քիչ անգամ մերձաւորութիւն կը մտնեն , եթէ իրենց ամուսինները քքուանօք՝ քնացած մասը չարթնցնեն , վերջապէս վերոյիշեալ հասակներու մէջ երկու սեռերուն ալ ծննդական գործարանները մեծապէս կորսնցուցած են քսան և հինգ տարեկան հասակին եռանդուն կորովութիւնը ։

Այս բացատրութենէս վերջը դիւրին է ըմբռնել որ անագան ամուսնութեանց պտուղներն ալ , համեմատ հասակի մէջ եղած ամուսնութեանց պտուղներէն նուազ կորովի և նուազ գեղեցիկ պիտի ըլլան , [illegible] որ գործողութիւնք լաւ դատողութիւններէն աւելի աղէկ կը փորձեն գործերը , և չկրնար ուրացուիլ որ այս գձուձ էակներէն շատերը , որ իրենց վատառողջութեամբը մեծամեծ քաղաքաց մէջ կը շրջին , իրենց տկար կազմութեանը ուրիշ պատճառ չեն կրնար գտնալ , բայց միայն մեծ հասակ ունեցող ծնողքներէ սերած ըլլալնին ։

ԱՆՀԱՄԵՄԱՏ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ ․ Այս ամուսնութիւնները որոնք հասարակօրէն տխուր և անբարոյական են , երկու ամուսնոց մէջէն տարիքով պզտիկ եղողին առողջութեանը և իրենց որդւոցը , եթէ ծնունդ պատահի , կազմութեանը միշտ վնասակար են ։ Այս տեսակ ամուսնութիւնները պէտք է որ օրէնքներէն արգիլուին ․ երիտասարդ այր , զորս մեծամեծ բաղդի և հարստութեան հրապոյրը ծեր կիներու հետ ամուսնանալու կը յօժարեցնէ , իրենց կորովութիւնը մեծապէս կը կորսնցնեն երբ այս արդէն վատթարացած բայց [illegible] անյագ կանանց հետ յարաբերութիւն ունենան , և որոնց

ծննդական մասը հնոց մ՚է որ ամէն բան կը սպառէ։ Երիտասարդ կանայք ծեր վաւաշոտներու հետ ամուսնանալով ժամանակէն առաջ կը թառշամին, վասնզի նախ, դժկամակութեամբ իրենց ամուսնոյ ցանկասիրութեան կը յանձնեն ինքզինքնին և երկրորդ, որովհետև ծերը իրենց դալարութեան տաւժովը կը մատաղանայ, և եթէ ըստ դիպաց յղութիւն տեղի ունենայ, ի՞նչ սպասել պէտք է այն պայմաններով ծնած էակէ մը։ Ամէն կազմագետներ այս կէտիս վրայ միաբան են և կը ստուգեն որ յառաջացած հասակէ մը սերած տղաքները գձուձ, կենսունակութիւննին նուազ, վտիտ, տխրատես ու թանջոտ նէ կըլլան, և իրենց երիտասարդութեան ատեն ըմասէր բնաւորութիւն մը կունենան որ իրենց հասակին անհամաձայն է. շատերը նաև իրենց երկրորդ եօթնամեայ հասակը չեն հասնիր և որոնք որ կը դիմանան, միշտ ցաւալի կեանք մը կ՚անցնեն։

Հռովմայեցւոց օրէնքները, որոնք անտարակոյս մերիններէն աւելի իմաստալից էին, այս տեսակ ամուսնութիւնները կարգիլէին և ամուսնութեան հասակի սահման մ՚ որոշած էին, որոնք որ օրինազանց գտնուէին, աքսորի կամ երբէք չամուսնանալու կը դատապարտէին։

Յոյժ անազան և յոյժ վաղահասակ ամուսնութեան արտադրութեանց ցաւալի հետեւութիւնները միօրինակ կերպով կը տեսնուին թէ բուսական և թէ կենդանական ցեղերու մէջ. յայտնի է որ կանուխ պտուղ տուող մատղատունկ ծառերը տկար կը մնան, կըսպառին և երկար ատեն չեն ապրիր. Նոյնպէս այն կենդանիները, որոնք առանց իրենց ամբողջ զարգացումը ստանալու կը զուգաւորին, վատոյժ ձագեր

կ՚ունենան և խիստ կըսպառին . այսպէս պէտք է իմանալ մարդկային ցեղին համար ալ:

Ի վերայ այսր ամենայնի անարդարանալի և աններելի պակասութիւնն այն է թէ մարդ որ իր արտերուն պտուղներն ազնուացնելու և իր ընտանի կենդանեաց ցեղը կատարելագործելու համար այնչափ ջանք կ՚ընէ, իր տեսակը կատարելագործելու յատուկ եղած միջոցներուն գործադրութեանը անտարբեր կը մնայ:

Փորձառութեան վրայ հիմնուած դատողութիւնները ու խորհրդածութիւնները կը պահանջեն որ ամուսնութիւնները երկու տարբեր խառնուածքի բաղադրութեամբ կատարուին, այսինքն մաղձոտը աւշոտին և արիւնոտը ջղոտին հետ ամուսնանան . փորձուած է որ այս բաղադրութեամբ եղած ամուսնութեանց որդիները առոյգ և առողջ կըլլան, երկու հակառակ խառնուածքի զուգաւորութենէն ընդհանրապէս կը ծնանի այնպիսի խառնուածք մը, որ քիչ միտումն կ՚ունենայ հօրը և մօրը բնական և բարոյական ախտերուն, եթէ ունենան. երկու նման խառնուածքի զուգաւորութիւնները այսպէս լաւ վախճան մը չեն ունենար: Ոչ բացարձակ նմանութիւն և ոչ ալ խիստ յայտնի տարբերութիւն պէտք է . իրենց որդիքը ամուսնացնող ծնողաց միմիայն կպատուիրուի որ բնութեան ցոյց տուած՝ խառնուածքներու ու հասակներու վերաբերեալ օրէնքներէն երբեք չը հեռանան, վասնզի ապագայ տոհմին առողջութիւնը և երջանկութիւնը այս օրէնքին կցեալ են և սերնդեան զօրութիւնն ու կորովութիւնն անկէ կախեալ են:

Ամուսնութեան համար նկատելու կարեւոր կէտ մ՚ալ կայ որուն այնչափ զգուշութիւն չընելով թեթեւութեամբ կ՚անցնին մարդիկ, այսինքն երկու ա-

մուանոց ախտաւոր կամ հիւանդ մինակը․ գրեթէ ամէն ամուսնացողք միմիայն հարստութիւն կը պահանջեն ու երբեք ուշադրութիւն կամ հոգ չեն ըներ կազմուածքի ախտերու և քիչ կամ շատ ծանր հիւանդութեանց՝ որոնք, հարկ էր որ, ամուսնութեան աննուաճելի արգելքներ ըլլային․ ընտրութիւնը մի միայն թէ բնական և թէ բարոյական կերպով առողջ եղած անձանց վրայ ըլլալու է․ փափաքելի էր որ իմաստուն օրենքներով արգիլուէին հիւանդոտ, խարդախեալ՝ կամ ժառանգական ծանր հիւանդութեան մը սերմերը կրող անձանց ամուսնութիւնները վասնզի ատոնք ուրիշ բան չեն դներ աշխարհի մէջ, բայց միայն գձուձ և հիւանդոտ որդիներ, որոնք նաեւ, իրենց կարգին, վատթար ցեղ կը յարատեւեն ։

Հարսնացու աղջկան մը դէշ կազմութիւնը իր ամուսնութեանը արգելք ըլլալու է․ փորձը միշտ կը ցուցնէ որ երբեք բթաչափէն պակաս տրամագծով արգանդ ունեցող կին մը բնականաբար չը կրնար տղայ բերել, պէտք է որ վիրաբուժական արհեստը իրեն օգնութեան դիմէ, և այս կերպով կրած խիստ գործողութիւնները գրեթէ միշտ իր էութեանը վտանգաւոր և աղետալից են, և երբեմն ալ կը պատահի որ տղան կը զոհուի ։ Ուստի այն ծնողքները, որոնք իրենց որդւոցը կազմութեան մէջ կամ ժառանգական և կամ ստացական հիւանդութիւն՝ կամ ախտ մը կը տեսնեն, զանոնք ամուսնացնելէն առաջ կը պարտաւորին, իրենց և իրենց սերնդեան օգտին համար, հմուտ բժշկի մը խորհուրդ հարցնել ամուսնութեան յաջող ելքը վրայ տեղեկանալու դիտմամբ․ այս գովելի զգուշութիւնը խել մը ախտերու և ցաւալի պատահարներու առաջքը կրնայ առնել ։

Սակայն քիչ ծնողքներ կան որ այս կերպով կը վարուին, գրեթէ միշտ ընտանեաց եսութիւնը կամ անձնական շահն է որ զիրենք սերնդեան և ազգին վնասուն կը մղէ. մենք չենք երկնչիր այս խօսքը ըսելու վասն զի ծնողք իրենց որդւոցը երջանկութեանը և պատշաճ ամուսնութեանը վրայ հոգալու չափ իմաստութեամբ չեն վարուիր. խիստ փափաքելի է որ կառավարութիւնները իրենց իշխանութիւնը բանեցնեն այս մասին. յիրաւի եթէ օրէնք մը դրուէր, որ անհամեմատ ամուսնութիւնները նոյնպէս ժառանգական հիւանդութիւն կամ տկարութիւն ունեցող անձանց ամուսնութիւնները բացէ 'ի բաց մերժեր ու ջնջեր, այն ատեն մէկ մեծ քայլ մ'ըրած կըլլայինք մարդկային ցեղին կատարելագործութեան ճամբուն մէջ։ Գիտենք նաեւ որ այս տեսակ օրէնք մը ընդդիմութիւններ պիտի ունենայ և ասոր դէմ պիտի առարկեն որ այսպիսի օրէնսդրութիւն մը անհատական ազատութեան դէմ կենալ է, բայց այս առարկութիւնը, թէեւ հաւանեցուցիչ ալ ըլլայ, ըստ ինքեան կը մերժուի, երբ մէկ քանի անհատներու շահը ընկերութեան և ամբողջ ազգի մը շահուն զոհուի և մենք շատ աղէկ համոզուած ենք որ ամբողջ դար մը չանցնելով, այս գործողութեան բարեբաստիկ վախճանը պիտի ճանչնան մարդիկ. ուստի այն օրէնքը որ բնական մարդուն և հետեւաբար բարոյական մարդուն կատարելագործութեան համար պիտի հաստատուի, բարձր բարոյականութեան օրենք մ'եղած պիտի ըլլայ. մինչդեռ առողջաբանական և կազմագիտութեան սկզբունքները չպահող օրէնսդրութիւն մը ըստ ինքեան տկար և անկատար է։

Շատ փիլիսոփաներ կարծեցին որ ազգաց բա-

րեքաստութեան տարրերէն մէկն ալ իրենց ամուսնական օրինագրոց լաւութիւնն է և իշխանութեան տէր եղող մարդոցմէն ալ շատերը նոյն կարծիքը ունեցան , և ամէն իրաւագէտ մարդիկ ալ նոյնպէս կը մտածեն , իսկ բժիշկները եւ կազմագէտները ամուսնութեան մէջ պարզապէս սերնդական գործողութիւն չեն նկատեր , այլ ճանչցած են որ ամուսնութիւնը ոչ թէ միայն գործարանաց կատարեալ զարգացման համար անհրաժեշտ պէտք է , այլ նաեւ գործարանաց պաշտօններուն և իմացական կարողութեանց հաւասարակշռութեանցը , այսինքն բնականին և բարոյականին մէջ կայացած յարաբերութեանց ներդաշնակութեան կարեւոր են :

Գիտութեան մէջ ճշմարտապէս երեւելի հանդիսացող անձանց ըրած վիճակագրական տաժանելի խուզարկութիւնները ամ՛ իրական փորձերը ցուցին որ յիմարութիւնը , յանկարծակի թալկացումը , ախոնդեաց ախտը , խելացնորութիւնը , արգանդի խօթութիւնը , հարսնամոլութիւնը , կեանքէ ձանձրանալը , որոնք անձնասպանութիւն կը պատճառէ , և խումբ մը տխուր հիւանդութիւններ , տկարութիւններ ու մոլութիւններ մասնաւորապէս ամուրի անձանց վրայ տեղի կունենան . 'ի վերայ այսր ամենայնի հաստատեցին որ , որոշեալ ժամանակի մը մէջ , ամուսնացեալներէն աւելի ամուրի անձինք կը մեռնին և երկայնակեցութեան օրինակներ գրեթէ միշտ ամուսիններուն մէջ կը պատահին :

Արդ ամուսնութեան նուիրեալ այս աղատութեան պատճառը , եթէ փնտռուի , իր շուրջը գըտնուած զանազան հոգերու ու նեղութեանց հակառակ , կը գտնուի զայն :

Ա. Բնական և բարոյական գործնէութեան մէջ, որոնք երկու ամուսինք պարտաւորեալ են կատարել իրենց ընտանեաց կեանքը ապահովելու համար, գործնէութիւն մ'որ գործարաններուն պաշտամանցը գործողութիւնները կը յաջողէ, օտար նիւթոց ամոքումը և մարմնական զօրութեանց կորուստը կատարեալ հաւասարակշռութեան մը մէջ կը պահէ, ուսկից առաջ կուգայ առողջութեան վիճակը։

Բ. Ամուսնութեան կանոնաւոր և չափաւոր հաճոյից մէջ, որոնք մարմնական յօրինուածքը չը խանգարելէն զատ, ընդհակառակը մարմնոյ նիւթերը զատող նոր զօրութիւն մը կուտայ անոր, զինքը ծննդական առատազեղ աւիշներէն ազատելով։

Գ. Հոգւոյ և մարմնոյ այն բարեբաստ առևտրոյ մէջ որնոր երկու ամոլաց կ'օգնէ կենաց բեռը կրելու, հաճոյից և նեղութեանց բաժանման մէջ, սրտագողական և խանդաղատական խնամոց, փոխադարձ օգնութեանց, փափուկ փայփայանաց և քաղցր մխիթարութեանց օրական փոխանակութեանց մէջ, որոնք հաւատք ընծայել կուտան սուրբ բարեկամութեան, որնոր դժբաղդաբար մեր օրերը այս եսական երկրիս վրայ այնչափ հազուադիւտ է։

Կանոնաւոր ամուսնութեան բարիքները, ընդհանրապէս ահա ասոնք են, արդ հիմա պէտք է գրել ամուսնական կենաց մէջ հետևելի և երբէք անոնց դէմ չմեղանչելի օրէնքները, որոնք՝ երկու ամուսնոց կազմականին և բարոյականին հաւասարակշռութեանը մէջ անկարգութիւն չպատճառելով, ներդաշնակութեան մէջ կը պահեն զանոնք։



## ԳԼՈՒԽ Բ.

## ԵՐԿՈՒ ԱՄՈՒՍՆՈՑ ԿԱԶՄԱԿԱՆԻՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆԻՆ ՎՐԱՅ ԱՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ.

Երկու սեռերու միաւորութիւնը կենդանի բնութեան ամենամեծ օրէնքներէն մին է. այրը և կինը, ուրիշ էակաց նման, անոր ենթակայ են և չեն կրնար չափահաս հասակին մէջ, առանց իրենց մարմնական յօրինուածոյն քիչ կամ շատ վնաս հասցնելու, օրինազանց գտնուիլ. այսու տեսութեամբ, ամուսնութիւնը՝ երկու սեռերուն ընդհանուր առողջութեանը, բարուցը և սովորութեանցը վրայ ամենամեծ ազդեցութիւն մը կ'ընէ:

Մենք քիչ մը առաջ ըսինք թէ ամուրիները խել մը հիւանդութեանց ենթակայ են որոնցմէ ամուսնացեալք ազատ կամ շատ քիչ անգամ բռնուած են, թէ մահը եռքիններէն աւելի ամուրիները կը հնձէ և թէ ամուսնութիւնը իր հետը ունի ծերանալու առանձնաշնորհութիւն մը, ամուսնութեան այս ազատութիւնը հիներէն կատարելապէս ճանչցուած էր, վասն զի ամուսնութեան չաստուածոյն արձաններ կանգնած եւ անոնց պատուանդաններուն վրայ այսպէս գրած էին. —Ա.— Հիմձ ոչ յողողէ ղծերոպրէ—ն:

Հաւատալ թէ կուսութիւնը՝ երեսաց գունոյ թարմութիւնը և մարմնոյն զանազան հրապոյրները անայլայլելի կպահէ, աղետալի սխալմունք մ'ըն է որուն ծեր աղջիկներ զոհ եղած են, աղջիկ մը, որ իր կազմականին կատարեալ զարգացումն ստանալէն վերջը կոյս կմնայ, քիչ ատենէն խել մը անհանգըստութեանց, մորթոյ պատառման և ախտոնղեաց

տխուր ենթակայ կըլլայ. որոնք իրեն գեղեցկութեանը սաստիկ թշնամիներն են ։ Իր թարմութիւնը կը նուաղի ; իր հրապոյրները կը թառշամին և իր առողջութիւնը կը վնասուի այնչափ, որչափ որ բնութեան օրէնքը կատարելը ուշացնէ ։ Ընդհակառակը ամուսնացեալ կինը մանաւանդ այն՝ որ յղացած է, նոր թարմութիւն մը և հաճոյական չքեղ առողջութիւն մը կըստանայ որոնցմէ կոյսը զրկուած է ։

Իսկ ընդհանրապէս, արանց համար, կուսութիւնը այսինքն մերձաւորութեան բացարձակ և մըշտնջենաւոր ժուժկալութիւնը անկարելի է . անոնց համար ամուրի վիճակը՝ սիրոյ հաճոյքները, առանց ընտանեկան նեղութիւններ ու հոգեր ունենալու, աւելի աղէկ կերպով վայելելու մէկ միջոց մըն է, պարկե՛շտ մարդիկ ։

Գաղղիացի, գերմանացի, և անգղիացի բազում հմուտ բժշկաց վիճակագրութիւններէն կը հետեւի թէ, որոշեալ ժամանակի մը մէջ, քսան և հինգէն մինչեւ քառասուն և հինգ տարեկան ամուրեաց մէջ 100 անձանց 28ը կը մեռնի, իսկ նոյն հասակի ամուսնացելոց մէջ 100ին 18ը միայն ։

100 Ամուսնացելոց 78ը քառասուն երկու տարիքնին կը բռնեն, իսկ ամուրեաց մէջէն 40ը միայն։

Քանի որ տարիքը աւելնայ, այս տարբերութիւնն ալ աւելի կաւելնայ ։

Միշտ 100 անձանց մէջէն վաթսուն տարիքը հասնող 48 ամուսնացեալ կը գտնուի, իսկ ամուրեաց մէջէն 22 միայն ։ 80 տարիքը հասնող 9 ամուսնացեալ և միայն 3 ամուրի կը գտնուի ։

Կանանց մէջ՝ այս տարբերութիւնները աւելի ազդու են. քիչ աղջիկներ մեծ հասակի մը կը հասնին։

Ֆալրէ, շատ մը մայրաքաղաքաց մեռելոց արձանագիրներու մէջ ըրած խուզարկութիւններովը ստուգած է որ 100 անձնասպաններու մէջ 67 ամուրի են։ — Փօրժէ հաստատած է որ 1,726 յիմարներու մէջէն 980ը ամուրի են. վերջապէս յանցաւորաց վիճակագրութիւնները կը յայտնեն որ 100 ամբաստանեալներու մէջէն 62 ամուրի են։

Ծննդական գործարանաց պաշտօններուն կիրառութիւնը անհրաժեշտ պէտք եղած հասակին մէջ, անոնց կատարեալ անգործութենէն առաջ եկած բազմատեսակ հիւանդութիւններուն մէջէն երեւելիներն են. մէկ կողմանէ, սատիրեան ախտ, բըրտութիւն առնի անդամոյ, հարսնամոլութիւն, արգանդի խօթութիւն, անզգայութիւն, յիմարութիւն եւ միւս կողմանէ, սեւամաղձութիւն, նուաղութիւն, տքնութիւն, մղձաւանջ (ծիւաղ ճնշական), տարփական երազք և առանձնակի հեշտութեանց աղետալից սովորութիւն, (դիջագործութիւն եւ) հիւանդութիւններ՝ որոնք մարդակային էակը ընդհանրապէս կը խաթարեն ու սոսկալի չափազանցութեանց ու անառակութեանց կ'առաջնորդեն։

Ամուրութիւնը՝ կնոջ իմացական կարողութեանցը վրայ այնչափ աղետալից ազդեցութիւն մը կ'ընէ որ ամեն յիմարանոցներու մէջ, յիմար աղջկանց կամ չամուսնացեալ կանանց թիւը բոլորովին համեմատութենէ դուրս է, ինչպէս 1822ին Փարիզի Սալբէթրիէռի հիւանդանոցին տեղեկագրոյն մէջ այս թիւերը կը գտնուին։

1,726 Յիմար կանանց մէջ 1,276ը աղջիկ էին։

Աւելի ետքը խօսելու պատեհութիւն պիտի ունենանք այս սոսկալի ջղային հիւանդութեանց վրայ ո-

յոնցմէ կըմբռնուին, իրենց խառնուածոցը եռանդեան հակառակ, միտամուրութեան ուխտող աղջիկները,

Տես սա՛ չափահաս աղջիկը, երեսը դեղին, աչքերը մարած և կապուտակածիր, երերուն գնացքով՝ նուաղեալ ծաղկին կը նմանի, իր ճակատը յերկիր կը ծռէ կենդանացուցիչ ջքուանքի մը պակասութենէն, իր սիրտը կը տրոփէ, իր շնչառութիւնը հառաչանքներէ յաճախ կ'ընդմիջուի, իր ամոքումը յոռի, իր ախորժակը անյարմար, անալիսի սնունդ մը կը պահանջէ, որ իրեն հակառակ է կամ նիւթեր՝ որոնք սննդարար չեն, եթէ իր հեծեծանաց ցաւալի վիճակը երկար ատեն տեւէ, աւա՜ղ, գերեզմանը պիտի բացուի և յաւիտենական կերպով պիտի գոցուի իր վրայ. բայց երբ զինքը ամուսնացնեն կամ իրեն տան այն երիտասարդ մարդը որնոր միշտ անդադար իրեն երազին մէջ կը տեսնայ, պսակը իրեն համար պիտի ըլլայ արեգական ան գեղեցիկ ճառագայթը, որ թանձր ամպը կը ցըրուէ և երկնից կամարին կը մաքուցանէ իր զուարթուն կապոյտը, նոյն ատեն այն աղջկան այտերը վարդանման կփայլին, հարուստ արիւն մը կշրջագայի իր երակացը մէջ և կորովի առողջութիւն մը կըվերանորոգուի ։

Փաօնիաս մեզի կ'աւանդէ այն բարեբաղդ այլակերպութիւնը, զոր, ամուսնութիւնը Արիսթօնի կնոջ վրայ ներգործեց, այս կինը իր աղջիկ եղած ատենը խիստ տգեղ էր, պալարոտ և արգանդիւ ախտացեալ, երբ ամուսնացաւ, իր գեղեցկութիւնը կրնար մրցիլ Հեղինէի գեղեցկութեանը հետ ։

Այսպէս է նաեւ չափահաս պատանեոյն համար որուն եռանդուն ափրունքը նշան է իր սաստիկ

փափաքանացը, որոնք քիչ ժամանակէն զինքը պիտի թախանձէն և տխուր ու լռասէր պիտի ընեն. եթէ զանոնք յաղթեցուցանելու համար ամէն յոյս կորսուած ըլլայ: Երբ սիրոյ կրից եռանդը աներկդիմի նշաններով անոր վրայ տեսնուէր, առ'ւր իրեն ընկեր մը որպէս զի իր մարմնոյն ամէն ծակտիքներէն դուրս, ժայթքող իր կենաց աւելորդը անոր արգանդին մէջ հոսելու կարող ըլլայ և զայն (սերմը) անօգտակար կերպով վատնելու տեղ իւր ցեղը մշանջենաւորելու գործածէ:

Վերջապէս կրնայ հաստատուիլ որ պատգշտախտանուածքի տէր եղող խել մը այրեր ու կիներ ամէն տեսակ հիւանդութիւններու մէջ պիտի իյնային եթէ ամուսնութիւնը իրենց այս մոլեգին դրդութիւնքը չը խաղաղէ ու չը յագեցնէ, որոնք ծնընդական սաստիկ զօրութիւն ունեցող գործարանի դառն արդիւնքն են:

Պատմութիւնը մեզի սիրոյ կրից շատ մը օրինակներ կընծայէ, այնպէս որ եթէ այն կիրքերը երկար ազդէին, անտարակոյս ենթակայ եղող անձանց ցաւալի ու աղէտալից հետեւանքներ պիտի պատճառէին:

Փեռտիքքաս ամէն օր կը մաշէր և անտարակոյս պիտի մեռնէր, եթէ Հիփոքրաթի խորաթափանց աչքը երիտասարդ իշխանին՝ Փիղայի համար ունեցած սէրը չը նշմարէր և չը ստիպէր անոր թագաւոր հայրը՝ Փիղան իշխանին հետ ամուսնացնելու:

Անտիոքոս, իւր հօրը՝ Ստրատոնիկէ անուն հարճին համար սաստիկ սիրով մը վառուելով, արդէն իւր մէկ ոտքը գերեզմանին մէջն էր, երբ Էրասիստրատ բժիշկը այս գաղտնիքին վերահասու ըլլա-

նալով․ Նախ յորին հեծութեան մը մէջ ինկաւ․ կեանք պարզամտի խօթութեան, մերոյ մոլեգնութեան և հարստահարութեան ամեն աղաւաղաններէն անցնելով պինքը լափող այս սոսկալի հիւանդութեանց զոհ պիտի ըլլար, եթէ Եւրոպեր բժիշկը՝ որուն խորհուրդ հարցուած էր, այս հիւանդութեան միակ դարման շուտ ամուսնութիւն մը չը հրամայէր․ այս միջոցը կատարելապէս յաջողեցաւ․ այսօր ընտանեաց մայր և իր բնաւորութեան քաղցրութեամբը երեւելի հանդիսացած այս տիկինը հանդարտ և բոլորովին առողջ կ'ապրի․ . .

Ամուսնութիւնը ծննդական բնազդումը բարեկարգելու և զանիկայ բարոյական նպատակի մը ծառայեցնելու միակ միջոցն է, ամուսնութիւնը միայն կրնայ կարգաւորել և չափաւորել ցանկական ճաշակը։ Մենք պիտի տեսնանք երբոր թէ բնազդումը խեղդելու չափ վնասակար է նաեւ անոր սանձը արձակելը։ Ներդաշնակութեան ընդհանուր օրէնքը կը պահանջէ որ մեր մարմնական յօրինուածոյն գործարաններուն ամենքն ալ չափաւորապէս մարզուին. եթէ մեր գործարաններէն մէկը բացարձակ հանգըստութեան մը դատապարտուած ըլլայ, միւս գործարաններն ալ շուտ մը կը վնասուին, և անոնց պաշտօններուն կատարեալ հաւասարակշռութիւնը խանգարուելով առողջութիւնը կ'աւրուի և հիւանդութիւնները կը հասնին։ Ուրեմն ծննդական գործողութիւնը առն և կնոջ համար հարկաւոր պիտոյքներէն մէկն է․ անկէ բացարձակապէս զրկուիլը բարոյականին ու բնականին դէմ մեղանչել ըլլալով խիստ վնասակար է․ . . . . .

Ցուսկ ուրեմն ամուսնութեան հաճոյքները․

չափաւոր գործածուելով, ընդհանուր առողջութեան հաստատութեանը և յարատեւութեանը կարեւոր են, եռանդոտ միաչփաքները, նեղսրտութիւնները, անհանգստութիւնները և սիրոյ ցաւերը կը խաղաղեցընեն, քունը խռովող տարփական երազները յառաջագոյն կը խափանէն, գործարանաց շարժումը կը դիւրացնէն և հոգին կուրախացնէն և մարմնոյն կուտան ազատութիւն և դիւրավարժութիւն, որոնք առողջ և կորովի կընեն զայն՝ մարդը՝ բարեկամութեան, բարեսրտութեան և առատաձեռնութեան կը յօժարեցուցանեն. վերջապէս ամուսնութեան քաղցրութիւնները կենաց ցաւերուն ու թշուառութեանցը երջանիկ փոխարինութիւն մ'են։



## ԳԼՈՒԽ Գ.

## ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ

ԱՌՆ ԵՒ ԿՆՈՋ ՄԷՋ ԵՂԱԾ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՑԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ. Այս յարաբերութիւնները պէտք է որ միշտ քաղցրութեամբ, բարեսրտութեամբ, խորին սիրով, և անսպառելի յարգանօք դրոշմուած ըլլան։ Ամենամեծ և կատարեալ վստահութիւն մը պէտք է տիրել առն և կնոջ մէջ. վասն զի ասոնց բարի ներդաշնակութիւնը և երջանկութիւնը այդ վստահութենէն կախեալ են. Եթէ դժբաղդաբար այս վստահութիւնը անակնկալ պատճառէ մը տկարանայ, անիկայ վերանորոգելու և կենդանացնելու համար

խակոյն միլիոնափայութեան դիմելու է . վասնզի վըստահութիւնը այն կապն է, որով այր և կին բարոյապէս մեկզմեկու կը կապուին. հիմնական վէմն է, որուն վրայ կը կառուցուի ամուսնութեան շէնքը ։ Եթէ այս քարը խախտի, շէնքը կը կործանի և իրեն հետ մեկտեղ հանգստութիւնը և երջանկութիւնը կանհետանան ։

Վստահութիւնը կասկածի փոխուելու սկսած վայրկենէն յարգանաց աղբիւրները կը ցամքին . թանձր ամպ մը գեղեցիկ օրուան արեգակը կը ծածկէ և ամուսնութեան հոգին մէջ կը ծլի ու կը բուսնի զատն պտուղ մը, ՆԱԽԱՆՁ ։ Այսուհետեւ երկու ամուսինք մեկզմէկ կը գիտեն, կնոջ աչքին իր այրը բռնաւոր կամ ծառայական կը տեսնուի և խակոյն իրեն անտանելի կըլլայ ։ Այն ատեն այրը իր կնոջմէն բոլորովին կասկածելով ու վախնալով . իր կասկածանաց արդիւնաւորութիւնը արգիլելու միջոցներ կ՚որոնէ, այս միջոցները ըստ քաղաքակրթութեան և ըստ ազգաց աւելի կամ նուազ բարբարոսական եղած են և կըլլան ։

Գրեթէ ամէն արեւելեայք կասկածելի կիները կը բանտարկեն . Հնդկաստանցիք զանոնք օղարկութեան կենթարկեն . Իտալացիք, Սպանիացիք, Փորթուգալցիք ազուցիկ փականքով կը փակէին, առկէ 'ի զատ խնկամանծու կին մը, ճշմարիտ Արգոս մը միշտ բաց աչօք անոնց վրայ դէտ կը կենար ։ Սերբուճեան փօփ անունով տեսակ մը գօտիներու գործածութիւնը, որոնք վերոյիշեալ ազգաց մէջ սովորական եղաւ, խիստ քիչ արմատ բռնեց Գաղղիոյ մէջ, ուր այրք նուազ նախանձոտ և աւելի փիլիսոփայ են . վասնզի անոնք գիտէին որ ճարմանդ-

## ԳԼՈՒԽ Դ.

## ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ԿԱԶՄԱԿԱՆ

(Ամեն բանի մէջ) չափաւորութիւնը միշտ օգտակար ըլլալուն նման, թէ յառաւելն և թէ 'ի նուազն եղած անչափութիւններն ալ միշտ մարդկային գործարանաց վնասակար են ։ Այս սկզբունքը պէտք է որ սրտերու մէջ խորագոյն փորագրուի և վարուց խարիսխ համարուի ։

Բնական և բարոյական կարողութեանց բարի գործածութիւնը, մարդուս գտնուած ընկերական վիճակին համաձայն կենաց բարեաց չափաւոր ուրախութիւնը, գործարանաց շարժումը կը դիւրացնեն, անոնց համակրական ներդաշնակութիւնը կը պահեն, մարդուս առողջութիւնը և երջանկութիւնը կը հաստատեն, և երիտասարդութեան գեղեցիկ օրերը կերկարաձգեն. դանկագին գա՛նձ, որնոր յիմարաբար կը վատնուի մարդկանց մեծագոյն մասէն ։

ԲՆԱԿՈՒԹԻՒՆ. Բնակութիւնը պէտք է որ ըլլայ, օդ բանուկ, ընդարձակ, խոնաւութենէ ազատ նեխեալ ու ապականեալ իրերուն այսինքն աղտեղութեանց և աղբերու կոյտերու, մօրացեալ ջուրերու վայրերէն հեռու ըլլայ և մանաւանդ այն տեսակ գործատուններէն ուսկից փտանգաւոր հոտեր կը բուրեն ։

Քնանալու սենեակը՝ երկու անձի համար, գոնէ քառասուն խորանարդ մէթր օդ պիտի պարունակէ, որպէս զի գիշերը պատուհանները գոցուելով, սե-

ներկին մէջի օդը, թոքային գործողութենէ առաջ եկած և մարմինէն դուրս ելած զանազան հոտերէն ու կազերէն բոլորովին չապականի· պառկելու սենեակին օդը յաճախ փոփոխելու է, որ եղանակի մէջ ալ ըլլայ :

ՀԱԳՈՒՍՏ · Երկու սեռերու զգեստներն ալ գործարանները չնեղելու ու զանազան շարժումները չարգիլելու չափ լայն ու ընդարձակ և եղանակին համեմատ տաք կամ նուրբ ըլլալու են, սակայն երկու պարագայի մէջ ալ առանց չափազանցութեան : Խիստ տաք զգեստները մարմինը ցրտին ազդեցութեանը աւելի ենթակայ կընեն· և այն (ցրտի) առեն մարմնոյն ծակտիքներէն դուրս ելնելիք խոնաւութեանց արգիլմամբը առաջ եկած բազմաթիւ հիւանդութեանց պատճառ կըլլան, փորձը ամեն օր կը յայտնէ որ 'ի մանկութենէ թեթեւ հագուստներու վարժուած անձինք մթնոլորտական փոփոխութեանց աւելի աղեկ և շատ կը դիմանան :

Մարմնոյն անմիջապէս վրայէն հագնուած կտաւները շաբաթը երկու անգամ, կամ եթէ հարկը պահանջէ, աւելի եւս պիտի փոխուին :

Նուրբ հասակ մը ունեցած ըլլալու պարծանաց համար արանց՝ ստամոքս և լեարդ նեղելը ու սեղմելը բոլորովին ծաղրելի է և այս սովորութիւնը կանանց համար ալ հրապուրիչ ձեւ մը չունի : Համեմատական կողերով վերջացեալ գեղեցիկ և լայն կուրծք մը պիտի կրէ մարդս և ոչ թէ շարժուն իլիկ մը նման նեղ և չոր երեւնալու է : Այս վտանգալից սովորութիւնը, որնոր խել մը հիւանդութեանց աղբիւր է, բնականաբար զմեզ կը հարկադրէ կանանց ներքին բաճկոնակին վրայ խօսելու :

Այս հագուստը, երբ դեռ չինուած է, անթիւ ձևաներու պատճառ կըլլայ իրեն գործածութեան մէջ, ինչպէս որ ուրիշ շատ տեղեր գրուծանց եմ. նոյնպէս ալ հոս ամեն գաւառի ամեն քաղաքի բժիշկաց հետ դարձեալ կը կրկնեմ որ, կանգուն կենալու համար պալենայի ակրով կամ երկաթով չինուած այս բաճ-կոնները շատ աղետալից են օրիորդաց համար ինչպէս խանձարուրը՝ տղայոց համար. Եթէ քաղաքներու մէջ՝ անդրմեալ ու վարի կողմը ամեն կուրծքերու կը պատա-հինք, եթէ տասն ութն նմինչեւ քսան տարեկան աղջ-կանց պարանոցները գեղջկուհեաց պարանոցներուն ծաւալը ու անոնց հաստատուն չրջածիրը չունին, եթէ քաղաքացի կիներու ընդհանրապէս, քիչ զար-գացած, տկար, ժամանակէ առաջ թոյլ և ըստ բա-ւականի պտկունք չունեցող ստինքներ կունենան պատճառը բաճկոնակն է. այս է աս ամեն չարեաց աղբիւր և ակն. Եթէ քաղաքացի կանանց մէջ անոնք որ գձուծ ու եղծեալ են և մայր ըլլալով ստինք չու-նին որ իրենց զաւակացը մատուցանեն. բաճկոնա-կին գործածութեանը մասամբ խէք կը պարտա-րին այս տխուր հետեւանքը. Եթէ շատերը ալ կան որ ծիւրական ախտէ կը մեռնին, բաճկոնակն է պատճառ. Սակայն պէտք է խոստովանիլ նաեւ թէ հասակը նրբացնելու աս կատաղի յիմարութիւնը տակաւ առ տակաւ անհետանալ կսկսի. և յառա-ջոյն ճաշակ մը երեւան կելնէ իրենց զարդարանաց մէջ, այսինքն մեծատարածական թեւեր և պալենայի ան-կարներ չունեցող առողջապահական բաճկոնակներու գործածութեան սովորութիւնը, որոնք առողջներուն չափ իրենց ձեւը կը գեղեցկացնեն առանց անխեղ-լու և մարմնոյն շարժումները արգիլելու. շատ վեր-

փաքելի է որ ծնողքները պալենայէ կամ երկաթէ շինուած բաժկոնակներուն տակէն բերած վտանգները լաւ հասկնալով, իրենց աղջիկներուն արգիլեն զայն ։ Փափաքելի է նաեւ որ այրք, իրենց կանանց, յղութեան առջի նշաններուն ատեն, արգիլեն մահացուցիչ բաժկոնակ մը հագնելը ։

ՄԱՐԶ ԵՒ ՀԱՆԳԻՍՏ. Ջղային գործողութիւնը անհրաժեշտ պէտք է. առողջութեան պահպանութեան որովհետեւ ամեն գործարանները հաւասարապէս կը շարժէ եւ անոնց պաշտօնը կը դիւրացնէ ։ Հարուստ մարդոց համար թէ ոտքով եւ թէ ձիով շրջագայելը, պարը, սուսերամարտը, որսը, ճամբորդութիւնք եւ ուրիշ ասոնց նման բաներ կենսական զօրութիւնը զարգացնելու եւ զայն հաստատուն բռնելու յատուկ միջոցներ են ։ Անստացուած մէկու մը համար, իր օրական աշխատութիւնը իրեն մարմնամարզութիւն է. եւ երջանիկ է այս անձը, եթէ իր աշխատութիւնը չափազանցութեան տանելու պարտաւորուած չըլլայ ։

Մարմնամարզութենէ ետքը հանգիստը կարեւոր է. վասնզի ժամանակ տալու է մարմնոյն իւր կորուստները դարմանելու եւ պէտք եղած ուժը վերստին ստանալու համար. եւ հանգստեան տեւողութիւնը՝ մարմնամարզութենէ պատճառուած աւելի կամ նուազ յոգնութեան համեմատական ըլլալ պէտք է ։

Ընդհանրապէս, մարդ իր շարժմանց մէջ դժուարութիւն մը զգալուն պէս պէտք է որ աշխատութիւնը թողու, ասիկա առողջապահութեան կանոն մը է, որովհետեւ ամեն մարդ կը պարտաւորի այսպէս ընել. վասնզի եթէ հանգիստը կարող չըլլայ զօրութեան՝ կատարեալ վերանորոգութիւն մը բաւական

և եթէ ամեն օր առջի օրուան փաստակոց վրայ ու֊րիշ վաստակ ալ աւելնայ, այն ատեն զօրութեանց համապատասխանութիւնը կ՚եղծանի, հիւանդութիւնը կը հասնի և կընկճէ զմարդ։

ՈՒՏԵԼԻ ԵՒ ԸՄՊԵԼԻ․ Ուտելիները և ըմպելի֊ները միշտ աղէկ տեսակէն ըլլալու են և չափաւոր քանակութեամբ, այնպէս որ մարսողութիւնը շուտ և դիւրին ըլլայ։ Անբարեխառնութեան կամ անչա֊փութեան նման առողջութեան վնասակար բան չկայ, ուտելեաց և ըմպելեաց մէջ եղած չափա֊զանցութիւններէն կը պատճառի անմարսողութիւն, որուն հետեւութիւնները ծննդական դրութեան վրայ կը ծանրանան։

Հին և նոր խիստ երեւելի բժիշկները ուտելեաց և ըմպելեաց վերաբերեալ առողջապահութեան օրէնք֊ները այսպէս կը սահմանեն։

Ա․ Դիւրամարս և ազնիւ կերակուրներ ընտրել։

Բ․ Կարելի եղածին չափ, կերակուրի ժամը որո֊շել և ուտելու պէտքը չզգացած ուտել չսկսիլ։

Գ․ Ծանր ծանր ուտել և ծամելու գործողու֊թիւնը աղէկ կատարել․ որպէսզի կերային պատառը կատարելապէս փշրուելով և լորձունքէ աղէկ մը ողո֊ղուելով, ստամոքսին քիչ աշխատութիւն տայ։

Դ․ Իւրաքանչիւր ճաշու մէջ 5 կամ 6 ժամ մի֊ջոց մը ձգել․ վասնզի ստամոքսը և իր պաշտօնակից գործարանները հանգստութեան պէտք ունին։

Ե․ Կարելի եղածին չափ, միսերը բոյսերու հետ խառնել․ վասնզի մարդս ամենակեր ըլլալով, բոլո֊րովին անասնական կամ բոլորովին բուսական սը֊նունդ մը իրեն այնչափ օգտակար չեն կրնար ըլլալ որչափ որ այս երկու տեսակ սննդոց՝ ճաշտարու֊

թեամբ իրարու խառնուելով. առաջ բերած կերակուրները առողջարար կըլլան ։

Զ. Երբէք շատ չուտել, և ընդհակառակը թեթեւ ախորժակով մը միշտ հեռանալ սեղանէ ։

Է. Փասեանակերպ, ծանր համ ունեցող, խիստ համեմեալ կերակուրները արհամարհել. որոնք արուեստական ախորժանք մը կուտան ։ Այս տեսակ կերակրոց անմարսութիւնը ստամոքսը կը գրգռէ և վերջապէս ծոյլ կընէ զայն ։

Ը. Մերժել առատ կերակուրները. բազմատեսակ կերակուրք վնասակար են ։

Թ. Գինի և ուրիշ խմորեալ ըմպելիներ չափաւորութեամբ գործածել ։ Ամեն տեսակ ոգեւոր ըմպելիները հեռացուցանել կամ գոնէ միմիայն ամենափոքր մաս մ, առնել ճաշէն վերջը և երբէք ստամոքսը պարապ եղած ատեն։ Ապացուցուած է որ ոգեւոր ըմպելեաց գործածութիւնը և մանաւանդ անոնց մոլութիւնը, սովորական ախտացուցիչ բոլոր պատճառներէն աւելի աղէտալից հարուած կուտայ առողջութեան ։ Այս ըմպելեաց գործածութիւնը, ոչ թէ միայն ստամոքսի հուզաւոր մաղձը կը գրգռէ և կը կարծրացնէ և անոր մարսիչ զօրութիւնը կը տկարացնէ և ապագայի համար ալ ստամոքսի բորբոքումներ կը պատրաստէ, այլ նաև իրեն աղէտալից ազդեցութիւնը ուղեղին վրայ կը ներգործէ. այն ատեն իմացականութիւնը կը թմրի և տակաւ տակաւ արբեցողը թանձրամիտ կըլլայ, և տեսակ մը ապշութեան մէջ կիյնայ, որուն օրինակները դժբաղդաբար խիստ շատ կը տեսնուին ժողովրդական դասուն մէջ ։

Ժ. Ճաշէն առաջ և ետքը թեթեւ մարմնամարզութիւն մը ընել. առաջ, ախորժակը բանալու հա-

մար ։ Խոտը ։ մաքրութեան պահպանութիւնը դիւրացնելու համար ։

ԺԱ. Առատապէս ուտելէն վերջը երբէք մտաւորական աշխատութեան ձեռք չի զարնել եւ սիրոյ հաճոյից չի պարապիլ ։

ԺԲ. Վերջապէս անոնք որ ընթրիք ընելու սովորութիւն ունին, այս ճաշը խիստ թեթեւ եւ պառկելէն գոնէ երկու ժամ առաջ ընելու են ։

ԱՐԹՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՔՈՒՆ. Ամէն կենդանի էակներ, բոյսերէն մինչեւ մարդիկ, արթնութեան եւ քնոյ ամենամեծ օրինաց ենթարկուած են ։ Արթնութիւնը՝ գործող կենաց կամ զօրութեանց սպառման ժամանակն է, քունը՝ կրող կենաց կամ զօրութեանց վերստին ստացման ատենն է ։

Քունը 'ի հարկէ կարեւոր է տեղաշարժական դրութիւնը հանգստացնելու եւ արթնութեան ատեն ջղային հեղանիւթին կորուստը դարմանելու համար ։

Քունը որչափ որ հանդարտ ըլլայ այնչափ օգտակար ու դարմանիչ կըլլայ. ընդհակառակը երբ տաղտկալի եւ յուզեալ ըլլայ, մեր մարմնոյն յօրինուածքը երբէք չը զօրացուներ, վասնորոյ այս այլայլութեան պատճառները ժամ առաջ որոնել եւ գտնալ պէտք է, որպէս զի անմիջապէս զանոնք առողջապահական եւ բժշկական միջոցներով դարմանուի. վասնզի քնոյ պակասութիւնը առողջութեան վաղ հարուած տալով, մարդս առողջապահութեան սահմանէն դուրս կը հանէ եւ ախտի ու հիւանդութեանց ենթակայ կընէ ։

Հիւպլանտ երեւելի բժիշկը կըսէ.

Քունէ զրկուիլը մարմնոյն ներքին եւ արտաքին

զօրութիւնները շուտ մաշեցնել ըսել է, և աս պակասութեան չափ և դրգիռ է ասկէ 'ի զատ, մարդս ժամանակէն առաջ ծերացնող զօրաւոր պակասութիւն մը չկայ։

Այսպէս այն մարդը, որ կամովին կամ բռնութեամբ մնաց կամ մարմնոյ չափազանց աշխատութեան ինքզինքը նուիրելով, կայմնական և բարոյական աշխատութեանց պատճառած կորուստները դարմանելու համար պէտք ըլլալիք ժամանակը քնոյ չը յատկացներ, այնպիսին այս պակասութեան ախտաւոր հետեւանքները իսկոյն կը կրէ։

Թէ քունէ զրկուիլը այսպէս առողջութիւնը վտանգի մէջ կը դնէ, հակառակ չափազանցութիւնը այսինքն շատ քնանալն ալ նուազ վնասակար չէ. այն անձը որ քունը չարաչար կը վարէ, տկար, թուլամորթ, ծոյլ և անզգայ կըլլայ, անոր կենսական զօրութիւնը կը նուազի, զգայականութիւնը կը բըթանայ, մարմնոյն զանազան շրջաբերութիւնները կը ծանրանան, աւիշները դժուարութեամբ կը կազմուին և երբեմն իրենց անցքերը կը խցուին, այսու աւիշները մէկ տեղ մը ժողուելով, մեծամեծ անկարգութիւնք կը պատճառեն։

ՕՐՈՒԱՆ ՄԷՋ ՔՆՈՅ ԲՆԱԿԱՆ ԵՒ ՅԱՐՄԱՐ ԺԱՄԱՆԱԿ. Բնութիւնը ինքնին ցցուցած է կենդանի էակաց՝ քնոյ և արթնութեան զոհուելու ժամանակը։ Արեւուն երեւելն մինչեւ մտնալը գործելու ատենն է, և այն ժամերը, ուր մեր կիսագունտը խաւարով կը շրջապատի, հանգստեան զոհուելու են։

Մէկ քանի ընկերութիւնք այս բնական կարգը շրջելու պարտաւորեալ կը կարծեն ինքզինքնին, գիշերը կը նստին ու ցորեկը կը քնանան, որոնք

առողջութեան նկատմամբ միեւնոյն բանը չեն ։ Նոյնպէս մեր քաղաքացի տկար կանանց դժգոյն դէմքերը մեր կողմի գիւղացւոց լաւ գեր երեսներուն հետ բաղդատէ և դատէ թէ որո՛նք կորովագոյն կազմութեան և լաւագոյն առողջութեան դրոշմը կը կրեն ։

ՏԵՒՈՂՈՒԹԻՒՆ ՔՆՈՅ ․ Ընդհանրապէս քնոյ տեւողութիւնը 6–7 ժամ պիտի ըլլայ, և 8 ժամէն անդին երբէք ըլլալու չէ ։ Սալէրնի դպրոցի վարժութիւնը կըսէ ․ 5-6 ժամ քուն հասակաւոր մարդոց համար բաւական է․ 6-7 ժամ երիտասարդաց համար․ 8 ժամ քնանալը 1 ժամ ծուլութեան շնորհել է ։

Հանգիստ և առողջարար քուն մը ունենալու համար պէտք ըլլալիք միջոցները հետեւեալ օրինաց մէջ կը բովանդակուին ։

Ա․ Ստամոքսը կերակուրներով խիստ լեցուն չը քնանալ ։

Բ․ Մերժել այն տխուր խորհրդածութիւնները, որոնք ցորեկը մտաց վրայ ծանրացած են, և անտարակոյս խռովալից երազներ և ճնշական ճիւաղներ պիտի պատճառեն ։

Գ․ Քնանալու համար անկողին մտած ատեն դիւրին, զբօսալի և կարճ տեւողութեամբ ընթերցում մը, շատ անձերու համար, քուն բերելու միջոց մը կրնայ ըլլալ և խիստ աղէկ յաջողիլ ։

Դ․ Ջղոտ անձինք որոնք շատ անգամ երկար ատեն անքուն մնալու ենթակայ են, պառկելէ առաջ դաղջ ջրով լոգանք կրնան ընել․ սակայն այս կերպը ուրիշ առողջաբանական միջոցներուն անօգուտ ըլլալէն վերջը գործածելու է ։

Ե. Պէտք է որ պառկելու սենեակը ընդարձակ, խոնաւութենէ և ամեն տեսակ հոտերէ, նոյն իսկ քաղցրաբոյրներէ զերծ ըլլայ. յայտնի է որ քաղցր հոտերը և ծաղիկները խռովեալ քուն, գլխու տեսակ տեսակ ցաւեր և նաեւ անքնութիւն կը պատճառեն :

Զ. Անկողինը ոչ խիստ կակուղ ոչ խիստ կարծր, ոչ խիստ տաք և ոչ խիստ ցուրտ ըլլալու է, և այն կերպով որ մարմինը կարող ըլլայ հորիզոնաբար անոր վրայ տարածուիլ, գլուխը քիչ մը բարձր դրուած :

Բայց փափաքելի քունը ստանալու համար էապէս պէտք ըլլալիքն է, ցերեկ ատեն մարմնաւոր աշխատութիւն, մտաց հանդարտութիւն և ընտանեաց մէջ խաղաղութիւն :

ԼՈՒԱՑՈՒՄՆ ԵՒ ԲԱՂԱՆԻՔ. Ընդհանրապէս բաղանիքները և մարմնոյն զանազան մասերը լուանալը շատ օգտակար են մարդուս առողջութեան. սակայն անոնց որ ատեն պէտք ըլլալուն և գործածելու եղանակին համար հմուտ բժիշկի մը խորհրդակցութեան դիմելու է :

ՄԱՐԶ ԻՄԱՑԱԿԱՆՈՒԹԵԱՆ. Առն և կնոջ ուրիշ կենդանի էակաց վրայ ունեցած առաւելութիւնն' իրենց ուղղոյ գործարանին ամենամեծ և կատարեալ զարգացումէն կախումն ունի. ուստի պէտք է այս գործարանը մարզել և գաղափարաց շրջանակը մեծցնելու անդադար յօժարամտիլ. այս գեղեցիկ վախճանը ըմբռնելու միակ միջոցն է ուսումը, որնոր չափաւոր ըլլալու է, այսինքն յոգնութիւն զգալէն անմիջապէս ետքը աշխատութիւնը ձգելու է :

Մտաւորական մշակութիւնը ամեն կարողու-

թիւնները կը զարգացնէ, ինչպէս յիշողութիւնը, դատողութիւն եւն եւն. Հոգին կը կրթէ, բարի զգացումները կը զարգացնէ, սիրտը կազնուացնէ և զայն բարութեան ճամբուն մէջ կը դնէ, զմեզ մեր նմանեացը բարի, սիրելի, օգտակար և հաճոյ կընէ. և ամուսինները մեկզմէկ միացնող կապը կը սեղմէ և զանոնք իրենց տղայոցը բարեկրթութիւն և դաստիարակութիւն մը տալու կը յօժարեցնէ. Նուիրական պարտաւորութիւն ամեն քաղաքացւոյ համար որոնք զինքզինքնին իրենց հայրենեացը պարտական կը ճանչնան: Վերջապէս մտաց մշակութիւնը աղբիւր է բազմաթիւ հաճոյից և երջանկութեանց, որոնք տգէտ մարդիկ չեն կարող վայելելու:

Կանա՛յք և ա՛րք. ձեր միտքը աղէկ մշակեցէք, մանաւանդ բարոյական նպատակաւ մը. զարդերով կրնայ մարդ փայլիլ, բայց միմիայն հանճարով կրնայ հաճելի ըլլալ. միտքն է որ մարմինը կը կենդանացնէ, միտքն է որ դէմքը կը փայլեցնէ և կը գեղեցկացնէ, միտքն է որ բնութեան ամենէն տգեղ կինը հազար հրապոյրներով կը զարդարէ, վերջապէս միտքն է որ աշխարհիս վրայ ամեն բան կրնայ ստանալ սէր, բաղդ, փառք և հարստութիւն:



## ԳԼՈՒԽ Ե.

## ԱՌՆ ԵՒ ԿՆՈՋ ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐ

Խիստ հարկաւոր կը համարիմ հոս երկու սեռե-րուն ծննդական գործարանաց կարճառօտ նկարագրութիւնն ընելու, անոնց կազմութեանը և սեռական գործողութեան ատեն, անոնց պաշտօններուն վրայ ընթերցողին հարեւանցի տեսութիւն մը ընել տալու և բացատրելու համար այն պատճառները, որոնք անոնց ձեւը, բաղադրութիւնը և անոնց պաշտօնները եղծանելով և խանգարելով անզգայութեան, անզօրութեան և ամլութեան կը պատճառեն։

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՔ ԱՌՆ

ԱՌՆ ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐԸ կը բաժնուին երկու տեսակի. Ա. փոխադրութեան գործարանք, այսինքն ծննդագործ հեղուկը փոխադրող, ինչպէս առնանդամը։ Բ. անջատման գործարանք, այսինքն այս հեղուկը պատրաստող և իրեն գործարաններուն անջատող, ինչպէս, երկուորիք, սերմնական փամփուշտք, եւն։

ԲԻՐԸ, որոնք կը կոչուին նաեւ առնէի ամորձի, ձուիկ եւն. 7-9 բթաչափ երկայնութիւն և 12-15 գծաչափ լայնութիւն ունենալով և երեք քակին մասերէ կը բաղկա-

նայ ։ 1° Գեղձը կազմուած է սպնգանման, կանգնիչ և մասամբ մը թլփատէ գոցուած հիւսկէնէ մը. այս թլփատը թելով մը անոր ստորին երեսին հետ կապուած է։ Այս թելին եղերձին պտակին շուրջն է որ ցանկական զգացումն աւելի խիստ կը զգացուի ։ 2° Անցք մզման· միզական փամփուշտին պարանոցէն կը սկսի և գեղձին ծայրը կը վերջանայ ուղղաձիգ ճեղքով մը, որնոր մզական ծակ կանուանուի· այս անցքին հիւսկէնը կանգնիչ է և գեղձն ալ այս հիւսկենին փիթիթն է ։ 3° Խոռոչաւոր մարմին· որնոր կը բաղկանայ ծակոտկէն հիւսկենէ մը, նուրբ թերթերով, որոնց՝ իրարու վրայ անկիւնակազմ կերպով դրուելովը կը շինուին պզտիկ խոռոչներ ուր հաստատուած են արիւնի խիստ ծաւալական անօթներ. բոլոր այս խոռոչները և անօթները մէկզմէկու հաղորդակցութիւն ունին այնպէս որ արիւնը կրնայ զանոնք ամենքը մէկանց լեցունել և կանգնումն պատճառել ։ Խոռոչաւոր մարմնոյն նշանաւոր յատկութիւնն այն է որ շնչերակները և երակները՝ մարմնոյն ուրիշ մասանցը մէջ եղածին չափ նուրբ մազանման ցանցով մը երբէք իրեն չեն ազուցուիր· Երակային արեան՝ շնչափողներուն մէջ անցումը մեկէն 'ի մէկ կը պատահի, այսինքն շնչերակաց ստեղծանքը, որոնցմէ շատեր պարզ աչօք կը տեսնուին, երակաց խիստ լայն ծայրերուն անմիջապէս կա՛գուցուին ։

ԽՈՌՈՉ ՍԵՐՄԱՆ, որնոր 'ի սկզբան միզական անցքը կը պատէ և մերձաւորութեան ատեն անոր մէջ կը հոսէ կաթնաւոր հեղուկ մը· այս հեղուկէն անմիջապէս ետքը կամ մեկտեղ սերման հոսումը կը կատարուի· Ներքինիները միայն այս կաթնա-

քէն անցնելով՝ արգանդին մէջ կը մտնան և սերմ-նական փոքրիկ փամփուշտին մէջ կը բացուին ։

ՍԵՐՄՆԱԿԱՆ ՓԱՄՓՈՒՇՏՔ. Ասոնք պզտիկ կա-ղինի մեծութեամբ են և միզական փամփուշտին ու մեծ աղեաց մէջ տեղը դրուած են. իրենց պաշտօնն է ծննդագործ հեղուկը ընդունիլ և չափաւոր քա-նակութեամբ սերմն տալ ցայտեցուցման ատեն ։

ՑԱՑՏԵՑՈՒՑԻՉ ԱՆՑՔ. Որնոր սերմնական փամ-փուշտէն մեկնելով, սերման գեղձին մէջ կ'իջնայ, որուն մէջէն անցնելով միզուկին մէջ կը բացուի ։ Ցանկական ստնգման ատեն, սերմնական փամփուշ-տը իր պարունակած հեղուկին մէկ մասը ցայտե-ցուցիչ անցքին մէջ կը հեղու և այս անցքն ալ մի-զուկին մէջ, ուսկից՝ ցայտեցուցիչ ջղաց կծկուելովը դուրս կը մղուի այս հեղուկը ։

ՍԵՐՄՆ. — ՍԵՐՄՆԱԿԱՆ ՀԵՂՈՒԿ. — ԾՆՆԴԱ-ԿԱՆ ՀԵՂՈՒԿ ևն. Սերմը՝ թանձր, ճերմակկեկ, մանր թելերով լեցուն, ցորենի կամ շագանակի ջրոյն հոտին նման սաստիկ հոտով հեղուկ մ'է, որնոր երեք տար-րերէ կը բաղկանայ. առաջինը հեղուկ. երկրորդը թանձր. իսկ երրորդը խիստ փոքրիկ կենդանիներէ կազմուած, որոնք կենդանասերմն կանուանին, որուն մէջի կենդանիներն ալ սերմնորդունք կամ շարժական հիւլէ ևն, կըսուին ։

Մարդկային սերմնորդները մանրամանր թելերու ձեւերով են և գլուխ մը ու պոչ մ'ունին. իրենց եր-կայնութիւնը $\frac{1}{20}$ հարիւրորդամէթր կը հաշուի։ Պարզ աչօք չեն տեսնուիր, այլ մանրադիտով. իրենց շարժումը արագ է. երբեմն դէպ 'ի յառաջ կը վա-զեն, իբր նպատակի մը հասնելու դիտմամբ, և երբեմն ալ ետ ետ կուգան, իբր թէ այս նպատա-

կին չը հասած. մէկ ուղղութիւն մը բռնած կերթան. բայց այս ուղղութիւնը ամենուն համար միեւնոյնը չէ. մեկզմէկու վրայէն կանցնին, խաչաձեւ կըլլան, մեկզմեկու կը բախեն, և ետքը կը բաժնուին և անդադար կը շարժին. ութը վայրկեանի մէջ երկու հարիւրորդամեթր ճամբայ կընեն. իրենց շարժումը յառաջ կու գայ իրենց պոչին բախումէն ու տատանումէն, ինչպէս կը շարժին գորտերուն նորոգ կենդանացած ձագերը, որոնց մանրակերտը ըլլալ կերեւան:

Մէկ կաթիլ սերման մէջ պարունակուած սերմնորդերը բաց օդին ժամերով կրնան ապրիլ 24 ժամ կրնան ապրիլ եթէ այս կաթիլը մարմնոյ ջերմութեան աստիճանը ունենայ. սակայն և այնպէս այս կենդանեաց կենաց տեւողութիւնը իրենց վերաբերած տեսակին համեմատ կը փոփոխի. շատ կենդանագէտներ կը հաստատեն որ սերմնորդերը, եթէ իգական սեռի մը ծննդական անդամոց մէջ ներմուծուի, ութը օրէն աւելի կ'ապրին:

Ցուրտը ու տաքը, թթուն ու աղկաղին, թմբրեցուցիչ ու պնդիչ դեղերը այս կենդանիները կըսպաննեն. նոյնպէս արգանդին ցնցուղին մէջ գըտնուած մաղասին աւելի թթուութիւնը և արգանդին մաղասին աւելի աղկաղային ըլլալը անոնց մահ կը պատճառեն: Աւելի ետքը պիտի տեսնանք որ կանանց ամլութիւնը այս երկու վերջի պատճառներէն եւս կախումն կրնայ ունենալ:

Կենաց սկզբունքը սերման մէջ այնպէս կեդրոնացած է որ մէկ կաթիլ սերման հարիւր մասին մէկը, միայն թէ մէջը մէկ հատիկ սերմնորդ մը գտնուի, կրնայ նոր էակ մը արտադրել: Արական֊

ձանկին փորձերը զայս կատուցեն, և որոնց գրքիս Հեղինակը իսկ յաջողութեամբ կատարած է ։

Սերմնողունք սերմնական անցքերուն մորթա-կազմային թաղանդին մէջ ինքնին կը գոյանան. նախ գոցուած են պզտիկ փամփուշտներու մէջ ուր ծնունդ առած են, և իրենց կատարեալ աճումէն ետքը, իրենց պահարանը կոտրելով, արտաք-սարեր անցքին մէջ կերթան, ուսկից սերմնական փամփուշտներուն մէջ կանցնին, որոնք իրենց բնա-կան աւազանն են ։

Ծնիչ կարողութեան նախապատրաստութիւնք մեր կազմուածքին վրայ խիստ երևելի փոփոխութիւն-ներ կը բերէ, ինչպէս մարմնոյ աճումն, մազերու և մօրուաց բուսնիլը, ձայնի փոփոխումն, կազմական կորովութիւն, բոլոր ասոնք սերման գոյացումէն կը հետևին ։ Կենդանեաց շատերուն մէջ այս փո-փոխութիւնները գրեթէ միևնոյն են. ծննդական գործարաններէն որ և իցէ պատճառով զրկուած էակ մը բոլոր այս օգտակարութիւններէն ալ զըր-կուած է ։

ԿԱՆԳՆՈՒՄՆ. Առնի անդամուն կանգման ընդ-հանրական պատճառը սերմնական փամփուշտներուն լըութիւնն և երկուորեաց ձգտումն է. կանգնումը մեքենայաբար կարգադրուի, ջղերական ար-եան՝ առնի անդամուն խոռոչաւոր մարմնոյն մէջ հոս-ելովը։ խոռոչաւոր մարմնոյն խորշերը թորող արիւնը՝ բերաններնին՝ սանդանաց պատճառաւ գոցուած երակներէն ետ չը կրնար առնուիլ, վասնորոյ առնի անդամը կը ընդանայ. և խոռոչաւոր մարմնոյն մէջ հաւաքուած արեան համեմատութեամբ՝ աւելի կամ նուազ զօրութեամբ կը կանգնի. կանգնիչ ջիղերն

ալ իրենց կծկուելովը կանգնումը աւելի զօրաւոր ըլլալու կօգնեն ։ Երբ ստնգալը և գրգռումը կը դադրին, երակալից ծակերը կը բացուին, արիւնը անզգայաբար հոն կը հոսէ, խոռոչաւոր մարմինը կը պարպուի, ուռեցքը կանհետանայ, առնի անդամը կիջնայ և իր հանգստեան վիճակը կստանայ ։

Ճօն Հրնդըր այս երեւոյթները ստուգելու համար շուներու վրայ շատ փորձեր ըրաւ․ անոնց գնդամիսին երկու երակները կը սեղմէր և ջղերակները ազատ կը թողուր, որով կամաց կամաց խոռոչաւոր մարմինը լեցուելով կանգնումը տեղի կունենար․ երբ սեղմելը կդադրեցնէր և անմիջապէս արիւնը երակաց մէջ անցնելով՝ կանգնումը կիջնար ։

Սեղմիչ գործիքով առնի անդամոյն վրայ վաղանցուկ կանգնումն մը գրգռելը շատ դիւրին է․ երբեմն երբեմն այս պէս սեղմելը, կարելի է, խոռոչաւոր մարմնոյն այտուցը գրգռելու միջոց մ՚ըլլայ և առնի անդամոյն կանգնումէն զրկուող անձանց համար իբր դարման գործածուի ։ Երկար ատեն կատարեալ հանգստեան դատապարտուած ծննդական գործարանները իրենց գործելու կարողութիւնը կը կորսնցնեն․ ինչպէս կը պատահի գիտնոց և խորին մտածութեանց մէջ հանապազ ընկղմուած անձանց ։ Բոլոր կենդանական կարողութիւնք՝ ուղեղը կամփոփուի, կը մոռնան թէ մարդ են, և իրենց այրութիւնը կատարեալ ծիւրութեան մէջ կը ձգեն ։

Պէտք է գիտնալ որ կանգնումը՝ արեան՝ խոռոչաւոր մարմնոյն մէջ հաւաքմանը միայն յարուած կամ սեփականուած չէ, այլ նաեւ միզական անցքին և գնդամիսին այտումէն կախումն ունի․ ողնածուծն ալ խիստ ազդու մաս մ՚ունի, և ասոր ալ ազդեցոյց

այն է որ ողնային հիւանդութեան ատեն կանգնումը բոլորովին կը ջնջուի :

Լօնժէի և Ծէնկալասի փորձերը կատարելապէս ապացուցին ուղեղին և ողնածուծին կանգման վերայ ունեցած ազդեցութիւնը՝ բայց մինակ ատոնց ազդեցութիւնը չ'է » այլ ամբողջ ուղեղը , հանգուցաւոր ջղաց դրութիւնը, և դնդերական գործերը հաւասարապէս կօգնեն կանգման :

Կազմագէտներուն շատերը՝ կանգման ատակութիւնը աւելի խառնչաւոր մարմնոյն և կանգնիչ ջղաց կը սեպհականեն քան թէ միջուկին և գեղձին տոկուցման : Մեր յատուկ դիտողութիւնները պարզապէս կապացուցանեն որ երիտասարդութեան ատեն եղած սաստիկ և զօրաւոր կանգնումը ուղղահայեաց կանգնումը որնոր ամենէն կատարեալն է , միջուկին և գեղձին սպնգանման հիւսկէնին թափանցկութենէն կախումն ունի :

Քառասուն և քառասուն և հինգ տարեկան հասակին մէջ այս հիւսկէնը այնչափ թափանցիկ չըլլալով , կանգնումը՝ իւր զօրութիւնը կորսնցուցած է , թէպէտեւ խառնչաւոր մարմինը արեամբ ամբողջապէս լեցուած ըլլայ : Յիսուն և աւելի տարիք ունեցող մարդոց առնի անդամը խառնչաւոր մարմնոյն արեամբ անկատարելապէս լեցունելովը խակ կրնայ ուռենալ . բայց կանգնումը թոյլ է, վարընցի միջանցքը և գեղձը , իրենց կանգնիչ զօրութիւնը կորսնցուցած են . ասոր կը հետեւի որ միջանցքին և գեղձին սպնգանման հիւսկէնը՝ առնի անդամուն նեցուկը և զօրաւոր կանգման գլխաւոր պատճառը եղած կըլլայ :

Կանգման աւելի կամ պակաս զօրաւոր ըլլալը

գործարանին կազմութենէն նաև կախումն ունի ։ Այսպէս հաստ և կարճ առնի անդամները բարակ և երկայններէն աւելի զօրաւոր կըլլան ու երկար ատեն կը դիմանան։ Լայն յատակ և բարակ գագաթ ունեցող առնի անդամները առանձին յատկութիւն մ'ունին որ մինչև 'ի ծերութիւն իրենց կանգնիչ զօրութիւնը կը պահեն, եթէ ժամանակին չարաչար գործածուած չըլլան. և ընդհակառակը այն առնի անդամները, որոնց յատակը նեղ ու գագաթը հաստ է, ժամանակէ առաջ իրենց կանգնիչ զօրութիւնը կը կորսնցնեն ։

Մարմնոյ մը՝ կանգնիչ հիւսկենէ կազմուած ամեն մասերը կուռենան, երբ ցանկական խոխլամամբ արիւնը իրենց հիւսկեններին մէջ լեցուի և այն ատեն կը տաքնան, կը կարմրին ու քիչ կամ շատ կը պնդանան. այս երևոյթը միմիայն առնի անդամուն վրայ չը տեսնուիր, այլ՝ ստեանց պտուկներուն, կնաքերին կամ կղիթօրիին, փոքր շրթանց և արգանդին ցնցուղին անօթալից թաղանթին վրայ ալ ։ Մէկ քանի կանանց արգանդին ցնցուղը պատող ջղային թաղանթը խիստ սեղմիչ յատկութեամբ մը նշանաւոր եղած է, այնպէս որ զուգաւորութեան ատեն առնի անդամը անոր մէջ զգալի կերպով սեղմուելով խիստ ցանկական զգացում մը առաջ կը բերէ ։ Այս կիները խիստ հազուագիւտ են ։

ԶՈՒԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ. — ՑԱՑՏՈՒՄՆ. Ննդարար գործողութեան բոլոր տեւողութեան ատեն, կարծես կեանքը ծննդական դրութեան մէջ կը կեդրոնանայ. սակայն և այնպէս գործարանական բոլոր գործողութիւնք կառաւելուն, արեան շրջանէ

յութիւնը արագ կըլլայ , մորթը՝ խոնաւ , շնչառութիւնն ընդմիջեալ , ամբողջ մարմնոյն ջղային պտկունքները գաղուման վիճակի մը մէջ կըլլան , շօշափման զգայարանքը զգացողութեան ամենաբարձր աստիճանին կը հասնի , ստորին անդամոց և ծնամանին ձգտանաւոր մասերը կը կարծնան , ջղային ձգտում մը կունենան , կը կանգնին , և այս ընդհանրական ստնգանաց ատեն ցայտումը տեղի կունենայ կցկտուր ցայտելով : Ներմնական ցայտման ատեն գրգռեալ ցանկական զգացողութիւնը ոմանց քով ձայնաւոր հառաչմամբ և սաստիկ կծկելով կը կատարուի , և ուրիշներուն քով ալ՝ պարզապէս աղաղակներով և գրեթէ լուսնոտի նման սողնգալով : Ջղոտ կիները՝ որոնք սաստիկ եռանդեամբ կը կատարեն ցանկական գործողութիւնը , կըզգան երբեմն այնպիսի ստնգանքներ , որոնք կարծես արգանդի խօթութեան ցաւերուն կը նմանին : Վասնորոյ չափազանց ծննդական կազմուածքի տէր եղող արք և կանայք պարտին միշտ զգաստ խոհեմ ըլլալ , որպէս զի իրենց գոգումանց եռանդը չափաւորելով , ամուսնութեան նպատակին դէմ մեղանչած չըլլան . ապա թէ ոչ , ետքէն գալիք ձաւուց իրենք պատճառ եղած կըլլան :

Ցայտումէն քանի մը երկվայրկեան ետքը , ընդհանրական խլրտումը և այտումը կիջնայ , կը ցրուի . և նուաղութեան վիճակը այնչափ աւելի խորին կըլլայ որչափ որ հեշտութեան զայրոյթը սաստիկ եղած ըլլայ : Այն ատեն արեան շրջաբերութիւնը , շնչառութիւնը կը ծանրանան , աչքերը , որ քիչ մը առաջ եռանդուն ու փայլուն էին կը մարին , արտեւանունքները կիսաբաց կըլլան , ձայնը կը տկարա-

նայ , արուեստները անհաստատ կըլլան , և տեղափո-խական բոլոր դրութիւնը , ջղային երերմամբ վատ-տակարէկ ըլլալով , տկարութեան մէջ կիյնայ , որ-քունը և հանգիստը մերմին միայն կազդուրեն :

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՔ ԿՆՈՋ

Արտաքին կողմը կը տեսնուի ուղղաձիգ բաց-ուածք մը , որ ԾՆԾԱԿ կը կոչուի և մեծ շրթունք-ներով եզերած է . անկէ ետքը կուգան փոքր շըր-թունքները , կնաբլիրը կամ կղիթորին և աղդան-դի ցնցուղին արտաքին ծակը :

Ներքին կողմը կը գտնուին ներքնածննդական անցքը , արգանդը , փողք արգանդի և ձուարանք : Այս գործարանաց լաւ կազմութիւնը և իրենց պաշտօններուն դիւրին կիրառութիւնը արգաւա-ւորութեան անհրաժեշտ պայմաններն են . իրենց հիւանդութիւնը կամ անկատարելութիւնը գրեթէ միշտ ամլութեան պատճառ կըլլան :

ՓՈՔՐ ՇՐԹՈՒՆՔ . Ասոնք մեծ շրթանց ներքին կողմը դրուած և ծննդականին ներքին կողմը պատատ-ուած մաղպատուոր թաղանթին մէկ ծալքէն շինուած են , կնաբլրին քովն կը վերջանան և ա-նոր կնգուղ կամ թլփատ մը կը ձեւացնեն . կանգնիչ հիւսկէն մ՛ունին և կուռենան , երբ զանոնք խտղ-տացնեն : Ասոնց ձեւը և տարածութիւնը կը փո-փոխի ըստ հասակի , ցեղի և կլիմայի : Օրիորդաց փոքր շրթունքները փոքր , աղուոր կարմրուկ գոյ-

նով են և ծնծակին ճեղքէն դուրս չեն իյնար։ Առուոնացեալ կանանց շատերուն մանաւանդ անոնց, որոնք պատիներ ունեցած են, փոքր շրթունքները կերկնան, ծնծակէն դուրս կելլան, իրենց աղուոր կարմրուկ գոյնը կը կորսնցունեն, կը թառամին և կապարի գոյն մը կըստանան. կիներէն ոմանց՝ միզելու ատեն հանած ջրի սահելու ձայնը առաջ կու գայ ծնծակէն դուրս ինկած փոքր շրթանց՝ մէջին ցայտերուն հետ ըրած շփումէնս. Ափրիկէի մէկ քանի գաւառաց և մասնաւորապէս Պօշիման ըսուած ազգին մէջ, փոքր շրթունքները չափէն աւելի կը մեծնան, ութնէն մինչև տասը բթաչափ երկայնութիւն կունենան և զիստերուն վրայ կիյնան, և Հօթթէնթօթաց գոգնոց ըսուածը կը ձևացնեն։ Եգիպտոսցիք, Արաբացիք և Խպտիք կանանց շատ երկար փոքր շրթունքները կտրել տալով կը հանեն։ Այս գործողութիւնը, որնոր [illegible] կանուանուի, այս ազգաց մէջ շատ անձերու արհեստ մ'եղած է, որոնք փողոցէ փողոց պտտելով կաղաղակեն, ահա՛ կորէկը. [illegible] ահա՛ կորէկը։ Երկար փոքր շրթունք ունեցող կնոջ երիկը կը մոցունէ անդամահատը, որնոր մկրատով երկու անգամ միայն կտրելով աւելորդ մասը կը հանէ։ Մէկ քանի օրէն վէրքը կը հցուի։

ԿՆԱԲԻՐ ԿԱՄ ԿՂԻԹՕՐԻ. Կնօջ ցանկական գործարանն է, որնոր առնի անդամի մանրանկարն է միևնոյն կազմուածքով և միևնոյն ձևով, միմիայն միզանցքին պակասութեամբը կը տարբերի. իր երկայնութիւնը ընդհանրապէս մէկ մատնաչափ ու մէկ քանի գծաչափ է. իր հաստութիւնը փոփոխական է. խոռոչաւոր մարմինէ մը, գլղձէ, թլփատէ

և երկու կանգնիչ գնդերներէ բաղադրեալ է․ Բայց և հանգստեան մէջ եղած ատեն ամենափոքր խլր-տումէ մը կը կանգնի , և զուգաւորութեան ատեն նա է որ ցանկական հրճուանք կը պատճառէ ,՝ այն կիները որոնցմէ հանուած է այս գործարանը, կամ անոնք որոնց կնաբիրը խիստ պզտիկ է ,՝ անկատար ցանկութիւն մը կզգան ,

Կնաբիրը՝ չափէ դուրս և տարօրինակ երկայնութիւն մը կրնայ ունենալ , 6-8 մատնաչափ երկայնութիւն ունեցող կնաբիրներ տեսնուած են , որոնք համեմատաբար հաստը և բորբոքին ատեն անդամի կը նմանին , Պէքլար դասատուն բժշկական ժողովոյն լրագրաց մէկուն մէջ կին մը կը նկարագրէ, որնոր առնի անդամէ մեծ կնաբիր մ'ունէր և որուն կանգնումն ալ անկէ պակաս չէր . կնաբիրին այս չափ տարօրինակ երկայնութիւնը և հաստութիւնը ծննդական գործարանաց անկատարելութեան հետ գրեթէ միշտ կը զուգընթանայ , և որձեւիգութիւն կը պատճառէ :

Լեսբոս կղզւոյն կիները հին ատենը իրենց կնաբիրին երկայնութեան և կանգնողականութեանը համար խիստ համբաւաւոր էին և իրենց մէջ ցանկական մերձաւորութեան գործողութիւններ կը կատարէին , որոնց լեզբեական խաղ անունը մինչեւ հիմա մնացած է : Հռչակաւորն Սափփոյ որնոր տասներորդ մուսայի մականուան արժանացաւ , այս ախտէն բռնուեցաւ կըսեն : Ասիայի և Ափրիկէի մէկ քանի գաւառաց | և գլխաւորապէս Եգիպտոսի մէջ կնաբիրին և փոքր շրթանց երկայնութիւնը ժառանգական եղած է և զուգաւորութեան շատ դժուարութիւն կը պատճառէ եթէ զանոնք կարե-

լով դարման չընեն ։ Այս գործողութեանը կանայք ալ թլփատուելով, մէկ սեռը՝ միւս սեռին կշտամբանացը ու թշնամանացը ենթակայ չմնար ։

ՑՆՑՈՒՂ ԱՐԳԱՆԴԻ․ Այս գործարանը 6-8 մատնաչափ երկայնութիւն և 1½-2 մատնաչափ լայնութիւն ունեցող թաղանթաւոր անցք մըն է, որնոր արգանդին պարանոցը կը շրջապատէ և ծնծակին սարին մասէն դուրս կը բացուի ։ Այս անցքը երկու թաղանթէ կը բաղկանայ․ մէկը երակայլից, խիստ ձգտական և այս ցնցուղին ամփոփիչ ղնդերէն գոցուած, միւսը բազմաթիւ մաղասաւոր ծալքերէ ու մաղասածին գեղձերէ զարդարուած է ։ Արգանդի ցնցուղին մուտքին քովը, վերոյիշեալ ծալքերուն մէջ երկու պզտիկ գեղձեր կան, որոնք իւղալից և սպիտակագոյն խոնաւութիւն մը դուրս կուտան այս տեղերը լպրծուն ընելու համար ։ Զուգաւորութիւնը, մերձաւորութիւնները և նոյն իսկ երեւակայութիւնը այս գեղձերուն արտաքերած խոնաւութիւնը քիչ կամ շատ առատութեամբ գծգռուելուն պատճառ կըլլան և եռանդոտ ու ցանկասէր կանանց այս խոնաւութիւնը, ցանկութեան վերջին ճգնաժամին ատեն, ցայտելով դուրս կնետուի ։

Ծնծակա ցնցուղային անցքին մուտքին մօտ, մաղասաւոր թաղանթէն կազմուած երկու տեսակ մսեղէն սիւնակներ կան, վերոյիշեալ մուտքը՝ մերձաւորութենէ և զուգաւորութենէ անմեղ եղող կանանց այսինքն կուսերուն քով, նեղ կըլլայ և մաղասաւոր թաղանթին երկարաձգութեամբը բոլորովին կէս հատածի ձեւով է․ որուն, կուսական կնիք, կամ [illegible] անունը տուած են Արգանդի ցնցուղին սիւ-

նակները ու ծալքերը, զուգաւորութեան ատեն, գրգռման ու հաճոյից աղբիւրներն են ։ Որչափ որ այս սինակները ու ծալքերը աւելի նշմարելի ու լաւ գծագրուած ըլլան, այնչափ աւելի ապահով ըլլալու է կնոջ զգաստութեան վրայ. ընդ հակառակը առանք եթէ հաղուատես ու ջնջուած ըլլան, նշան է որ Աստղկան տաճարը բազմաթիւ ընծաներ ընծայուած է ։ Արգանդին ցնցուղին ներքին վերնակողմը կը բացուի մղանցքը, որնոր կնոջ քով աւելի լայն ու կարճ կըլլայ ։

Որդեբերութեան ատեն արգանդի ցնցուղը չափազանց ընդլայնումն կըստանայ և որդեծնութենէ ետքը կամաց կամաց կը սեղմուի, և եթէ կին մը ինքզինքը աղէկ խնամել գիտնայ, այն աստիճան կը նեղնայ այս անցքը որ գրեթէ չը կրնար նշմարուիլ թէ այդ կինը տղայ բերած է. իսկ ընդհակառակը եթէ առողջացուցիչ դարմաններ չը հայթայթուին կամ թէ նորածնող կինը՝ աղքատութեան գործածել տուած՝ անկանոն բժշկութեան դեղերու ենթարկուած ըլլայ, իր ծննդական անդամները՝ որոնք ծննդաբերութեամբ արդէն չարչարուած են, եթէ այս տեսակ անհիմն դեղերովալ գրգռուին, իսկայն իրենց կծկելիութիւնը կը կորսնցունեն և խիստ անհաճոյ լայնութիւն մը կը պահեն ։ Գործիս ԼԲ. գլխոյն մէջ նշանակուած են նորածնող կնոջ ծննդական անդամոց տրուելիք ամենէն աւելի յաջողական և առողջացուցիչ դարմանները, զանոնք իրենց կաղապարական ու բուն վիճակը դարձնելու և իրենց առողջութիւնը պահել տալու համար ։

Ներմուծութեան և ներքսընդունելութեան ծնն-

դակաւն գործարաններըը այսինքն առնի անդամը և ծննդական-ցնցուղային անցքը իրենց մէջ համեմատական ըլլալու են ։ Շատ անգամ խիստ լայն արգանդի ցնցուղ մը , կնոջ համար անզգայութեան և ամլութեան և երիկ մարդու համար ալ անտարբերութեան պատճառ կըլլայ ։ Խիստ երկայն առնի անդամ մը արգանդին փողը կրնայ վիրաւորել և այս գործարանին մէջ ծանր անկարգութիւններ պատճառել ։ Խիստ կարճ առնի անդամն ալ հակառակ անպատեհութիւնները առաջ կը բերէ և երբեմն արգասաւորութիւնը անկարելի կընէ ։ Այս անկատարութեանց դարման տանելու համար · ամլութեան վրայ գրուած գլխոյն մէջ նշանակուած առողջապահական միջոցներուն դիմելու է ։

ՁՈՒԱՄԱՆՔ կամ մարդկային ձուոց ընդունարանները՝ արգանդին երկու կողմերը իր լայն մանրաթելերուն ծալքին մէջ զետեղուած են ։ Իրենց արտաքին երեսը թեթեւ կերպով բարձրացած կըլլայ այն կանանց համար , որոնք ծննդաբերութեան ատակ են ։ Ամեն մէկ ձուաման 15-20 ձու կը պարունակէ , որոնք փոքրիկ փամբուշտի ձեւով կերեւան · սակայն զօրաւոր մանրադիտով բազմաթիւ մանր կէտեր կը տեսնուին , որոնք եղքը ձու կըլլան · այս ձուերը ամեն ամիս կնոջ արգանդը կիյնան , որոնք դաշտանով դուրս կելլան ։ Ձուինը կազմուած է կորիզէ մը և պարունակէ մը · կորիզն ալ շատ մը հատիկներէ · պարունակը կը գոյացնէ թափանցիկ հեղուկ մը , որուն մէջ կը լողայ կորիզը · կազմագետները երեք տարր կը գտնան ձուին մէջ · 1° [illegible] [illegible] · 2° [illegible] · 3° [illegible] [illegible] ։

ՓՈՂՔ ԱՐԳԱՆԴԻ ԿԱՄ ՁՈՒՄՈՒՂՔ · կոնաձեւ

երկու խողովակներ են 12-14 հարիւրորդամեթր երկայնութեամբ, որոնց մէկ ծայրը արգանդին մէջ կը բացուի և միւսը վրանաձեւ լայնալով, ծուածութեան առէն ձուարանին կը յարի: Զուամուղներուն պաշտօնն է հասուն ձուերը ըմբռնել և զանոնք արգանդը տանիլ:

ԱՐԳԱՆԴ. Ասիկայ դնդերաւոր պարկ մըն է, տափակցուցած տանձի ձեւով, մեծ աղեաց և միզական փամփուշտին մէջ տեղը զետեղուած: Ներքին երեսը մազաստաւոր թաղանթով ծածկուած է, իր յատակը կողմնակի երկու ծակեր ունի, որոնք փողերուն կը հաղորդուին. արգանդին ցնցուղին մէջ երկայն պարանոցով բացուելով և դէպ 'ի յատակ երկննալով կը վերջանայ. արգանդը այն խորհրդաւոր գործարանն է, ուր ինն ամսուան մէջ մարդկային սաղմին զանազան դրից փոփոխութիւններ տեղի կունենան:

Ահա այսպէս են այն զարմանալի գործարանները, որոնք մեր սեռը կը մշտնջենաւորեն. միմիայն անմիտները ու վատ և մոլի անձինքն են, որ զանոնք տեսնալով, կը ծաղրեն և անոնց վրայ խօսուած առեն կը խրչտին ու կուծանան. միմիայն տկարամիտ մոլեռանդներն են, որ ամօթալից կը կոչեն այն մասերը, որոնք ամեն առեն և խիստ իրաւամբ մեր Ֆիզիքական գործարանաւորութեան ամենէն ազնիւ մասերը համարուած են, և Մոնթեյն խիստ իրաւամբ կը գոչէ. մի՞թէ անասուն չե՞ն համարուելու անոնք, որ իրենց կեանք տուող գործողութիւնը անասնական ու ամօթալից կը համարին: Նախնի մարդիկ, որոնք մեզմէ աւելի իմաստուն և նուազ խղճահար էին, ծննդական գործարանաց մեհեանք

ու պատիւ կը մատուցանէին , և անոնց պատկերը-ները ու արձանները իրենց տաճարներուն ու բնակութեանցը մէջ կը դնէին և անոնց նման զարդեր չինելով կը գործածէին և վա՛յ անոնց որ զանոնք ծաղր ընէին. Ի վերայ այսր ամենայնի միայն հեթանոսները չէին որ զանոնք յարգեցին , այլ նաև Աստուածաշունչ մատեանը , Մարգարէները անոնց խիստ մեծաշուք գովեստներ կ՚ընծայեն և զանոնք մեր յարգանաց արժանի կը հռչակեն ։

Երկու սեռից ծննդական գործիքները բաղկացնող զանազան մասանց մէջ եղած զարմանալի կարգը մէկ հայեցուածով ըմբռնելու կարող ըլլալու համար զուգադրական ցուցակ մը կը դնենք , ուր էրիկ մարդուն ծննդական կազմածին իւրաքանչիւր մասին ու գործարանին դիմացը գրուած են կնոջ ծննդական կազմածին ամէն մէկ մասերը ու գործարանները ։



# ՁՈՒԳԱԳՐԱԿԱՆ ՑՈՒՑԱԿ

## ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԱՑ ԱՌՆ ԵՒ ԿՆՈՋ

---

| ԾՆՆԴԱԿԱՆ ԿԱԶՄԱԾ ԱՌՆ | | ԾՆՆԴԱԿԱՆ ԿԱԶՄԱԾ ԿՆՈՋ |
|---|---|---|
| 1. Ամորձիք կամ ձուանք. | Համապատասխանէ. | Ձուարանք. |
| 2. Սերմնատար անցք. | » | Փողք արգանդի վր-րանաձեւ. |
| 3. Սերմնական փամփուշտ. | » | Արգանդ. |
| 4. Սերմնամուղ անցք. | » | Ձուամուղ. |
| 5. Յայտնեցուցիչ անցք. | » | Արգանդի ցնցուղին գեղձերուն մէջ անցքերը. |
| 6. Առնի անդամ. | » | Կնաքիր. |
| 7. Փոշտ կամ պարկ ամորձեաց. | » | Մեծ և փոքր շըրթունք. |

# ԳԼՈՒԽ Ա.

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԱԶԳԱՑ ՄԷՋ ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԱՑ Ի ԳՈՐԾ ԴՐԱԾ ԱԶԴԵՑՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԿԱԶՄԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՄԸ

*Հին ազգերը մեծապէս կըյարգէին կենաց արտադրութեան միջոց եղող գործարանները, անոնց պատկերը իրենց տաճարը տանելով և ամօթոյ առարկայ*

մը չըլլալէ 'ի զատ , կեանք արտադրելուն համար , ընտանի եղած էր իրենց մէջ . ահա այս հետաւոր դարուց սովորութիւնները ։

ՀՆԴԿԱՍՏԱՆՑԻՔ Լէնկամ կամ արական գործարանի տօնը կը կատարէին կրօնական մեծ հանդիսով ։ Արհեստաւորք լէնկամի պատկերը անագախառն պղինձէ կամ նուրբ քարերէ կը ձեւէին կանանց զարդի տեղ գործածելու համար։ Բարեպաշտք և բարեպաշտուհիք զանոնք իրենց վիզէն կը կախէին , իրենց գլխուն զարդ կընէին և անոնց նման ապարանջաններ շինել տալով իրենց թեւը կը կրէին։ Տաճարներու մէջ հսկայաձեւ լէնկամներ կը կանգնէին , որոնց առջեւ կանայք տղայ բերելու համար երկրպագութիւն ընել կուգային։ Մեր օրերն իսկ տակաւին ֆաքիր ըսուած մուրացիկ կրօնաւորներ , կէս մէջքերնուն վար բաց , տաճարներուն դրան քով կը կենան և իրենց լէնկամը կանանց կը մատուցանեն համբուրելու ։ Ամուլ կանայք այս կենդանի բժժանքին կը մօտեցնեն իրենց շուրթունքները տղայ բերելու յուսով , և ետքը անոնց ողորմութիւն կուտան ։

Եթէ այս անպարկեշտ գործառնութիւնները , զորս մեր սովորութիւնները կանգոսնեն ու կը մերժեն , կանանց համար ծննդական խթան մ'են , կաքաւչուհեաց շուայտատեսիլ պարերն ալ այս գաւառներուն արանց համար խիստ զօրաւոր գրգիռ մ'են . չկայ ոչ տաճար մը և ոչ իսկ փոքրիկ աղօթատեղի մը , որ խումբ մը կաքաւչուհի չունենայ ։ Այս գրգռիչ լկտի կանանց հրապոյրներէն հաւաքուած դրամը տաճարին մէջ ծառայող քուրմերուն շահուն կը ծառայէ ։ Պահմանեանք կինը իբր արտ.

և այրն ալ իբր սերմն կը համարեն · սերմանուած արտ մը , որ եօթը տարուան միջոցին մէջ երբեք չը պտղաբերեր , անբեր կը համարուի· զայն ուրիշի մը կը ձգեն · այսինքն կին մը , որ ամուսնութեան թուականէն մինչեւ եօթը տարի տղայ չը բերէ կ'արձակուի ուրիշ մը առնելու համար :

Հին ԵԳԻՊՏԱՑԻՔ իրենց ամեն շինուածոց վրայ մարդկային ծննդեան խորհրդաւոր նշանները կը քանդէին · և շատ հաւանական է որ իրենց հռչակաւոր գաղտնեաց նպատակն էր մարդուն աճումը և զինքը Աստուածպետական օրինաց ծառայեցնել. Երոդոտոս, Պլութարք և Պղատոն և ուրիշ շատ Հոյն իմաստասէրներ այս գաղտնեաց խելամուտ եղան , բայց անոնց բացատրութեան վրայ լռութիւն մը պահեցին : Սակայն պատմութիւնը մեզի կը սորվեցնէ թէ այր և կանայք Իսիսի տաճարին մէջ ինքզինքնին կը ձաղկէին և ձաղկանաց ինչ նպատակի համար գործածուիլը գիտնալու համար տե՛ս գիրքիս ԽԲ· գլուխը : Մնաց որ Եգիպտացիք կրօնական պաշտօն մը կը մատուցանէին փաղղէոնին այսինքն առնանդամու պատկերին և այս պաշտօնը , որուն համար ժողովուրդք Մէնտէս , Մեմփիս և Հելիոպոլիս կը յաճախէին , ցանկական և շուայտական այնպիսի գործառնութեամբք կը կատարուէր , զորոնք հոս չենք կրնար յիշել :

ԱՍՈՐԵՍՏԱՆՑԻՔ , ԲԱԲԵԼՈՆՑԻՔ և ՊԱՐՍԻԿՔ Աստղիկը կը մեծարէին զանազան անուանց տակ , զորօրինակ Սալամբօ , Միթրա , Միլիթա , Աֆերկոնիկա եւն : Այս աստուածուհւոյն նուիրուած բազմաթիւ տաճարներուն մէջ , ցանկական հաճոյից մոլի եղած խել մը ժողովուրդներ փաղղիւսի երկրպագութիւն

կընէին և անոր ընծաներ կը նուիրէին ․ Մարդանա-բաղի պատմութիւնը և իւր շուայտական տօները աւելի հեռուն դիմելու կարեւորութիւն չեն ձգեր ։

ՅՈՅՆՔ՝ Եգիպտական կրօնից մէջէն այն բաները, որք իրենց բարուցը համաձայն ու յարմար կը գտնային, իրենց մէջ կառնէին և անոնք, որ իրենց անպատեհ և տմարդի կերեւնային, կը մերժէին․ քիչ ատենի մէջ իրենց Ողիմպոսը չաստուածներով մանաւանդ զմայլուն չաստուածուհիներով լցուցին, ինչպէս Արամազդ, Ապողոն, Բաքոս․ Գրիապէ եւ եւ ։ Հերա, Պալլաս, Աֆրոդիտ կամ Աստղիկ ։ Այս վերջինը բնական գեղեցկութեան խիստ շուայտաբարոյ դէմքն ունէր և իրեն կընկերանային Շնորհք անուն երեք դիցուհիներ և Սէր դիցուհին ։ Ասոնցմէ ետքը կուգային խել մը կիսաստուածուհիք կամ յաւերժահարսունք, ամենքն ալ մէկզմէկէ աւելի փափուկ և գեղեցիկ ։ Ողիմպոսի բնակիչք երբեմն երբեմն երկրիս վրայ կիջնային և իրենց շնորհները պարզ մահկանացուաց նուիրելով անարժան գործ մ'ըրած չէին համարուեր ։ Կուապաշտութիւնը, որուն աստուածքը խիստ ծիծաղելի կը թուի, սիրոյ պաշտօնը ընդհանրացուցած էր․ փառնցի Սէրը՝ տղայ յարդարած և նիւթը գործարանաւորած է կըսէր ։ Ասիկայ խիստ գեղեցիկ մտածմունք մ'էր ։

Ըստ բաղմահմուտ Լարշէրի, Յունաստանի մէջ Աստղիկը ամեն չաստուածուհիներէն աւելի տաճար ունէր․ այս տաճարներուն թիւը իննսունը կ'անցնէր․ Կիթերա, Պափոս, Կնիդոս․ Կիպրոս․ Լեսպոս, Իդալիոն Ամաթուս եւ երկիրներուն մէջ այս չաստուածուհւոյն համար մասնաւոր կրօնական արարո-

ղութիւնք կը կատարուէին, որոնց համար անթիւ օտարականաց բազմութիւն այն երկիրներուն մէջ կը ժողովէին։ Յունաստանի շատ քաղաքներուն մանաւանդ Աթենայի և Կորնթոսի բնակիչները՝ Ասպական տօնախմբութիւնները գեղեցիկ կանանց շուայտական գործակցութեամբը կը կատարէին, առանց այնպիսի գործողութիւններ էին, որոնք այսօր չեն կրնար պատմուիլ։ Սպանդարամետական, Որփայեան և Դեմետրերեան եւ տօները՝ մարդկային ցեղը արդիւնաւորելու բոլորովին նպաստամատոյց կերպով կը կատարուէին, որոնք երբեմն շուայտական պեղխութեամբ կը գործադրուէին։ Պէտք է գիտնալ նաեւ թէ Ասորիկը՝ ոչ թէ միայն իրեն նուիրուած աքարողութեանց՝ զգայարանաց փաղաքշանք տալուն համար կը պատուէին, այլ նաեւ իրեն բարկութեանը՝ վախուն համար, քանզի իր բարկութեան հետեւութիւնը սոսկալի վրեժխնդրութիւն մը էր. այն է Նիմփամոլութիւն։ Իբր օրինակ կը պատմէին թէ Պրոտեւսի աղջիկները այս չաստուածուհւոյն պաշտօնը արհամարհելնուն համար վերայիշեալ գարշելի հիւանդութենէն բռնուեցան և կիսամերկ ու ցանկական խիստ եռանդէ մը առաջնորդուելով, ամբողջ Պեղոպոնեսը շրջեցան, առանց նոյն կրակը մարել կարող ըլլալու։

Յունաստանի երեւելի քաղաքաց մէջ Պրիապէ ալ իրեն համար տաճարներ և արձաններ ունէր, իր պատկերը, որուն երբեմն Հերմէս անունը կուտային, ճամբաներու վրայ իբր սահմանանիշ կը դածածուէր։ Պրիապսի, Օրնիլի, Կորնթոսի և Աթենայի մէջ կանայք այս անձեւ չաստուածոյն տօնը խիստ զարմանալի կերպով կը կատարէին։ Աթենացիք՝

որոնք միւս ազգերէն աւելի քաղաքակրթեալ էին․ իրենց քաղաքացը և պարտէզներուն մէջ Հերմէս-Պրիապէի արձանները ամենէն աւելի կը կանգնէին ։ Ալկիբիադ, որ ռամկական դիւրահաւանութեան վրայ կը ծիծաղէր, իր մէկ քանի երիտասարդ բարեկամացը հետ գիշերային զբօսանքէ մը ետ դառնալու ատեն, ճամբուն վրայ հանդիպած բոլոր Պրիապներուն կարի մեծ առնանդամները կտրելու յանդգնեցաւ, երկրորդ օրը քաղաքին մէջ սարսափն ու զարհուրանքը այնչափ խիստ մեծ եղաւ, որ քիչ մնաց Կլինիասի որդւոյն կեանքը վրայ պիտի երթար իր յանդգնութեանը համար ։ Ահա այսպէս կը մեծարէին ծննդական գործարանաց խորհրդաւոր նշանները, որոնք այն ատեն ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն կընէին ։

Ասորիան և Բաքոսի տօնախմբութեանց հրապոյրները խել մը բանաստեղծներու և փիլիսոփաներու վրայ մեծ ազդեցութիւն ըրին։ Անակրէոն, Մոկիեւս, Պլոն, Սափփով, Արիստիպպոս, Եպիկուրոս, ևնները, գինին և կեր ու խումը երգեցին ։ Արիստոփան՝ Ասորիան և իւր քրմուհեաց վրայ խիստ անճահ կերպով խօսեցաւ․ Դիոգինէս և Կրատէս ծննդական գործողութեան՝ հրապարակաւ կատարումը գայթակղեցուցիչ գործ մը չէ կըսէին ։

Աթէնքի և Կորնթոսի մէջ խիստ հասարակուն ըմծիւք կը պարապէին տռփական զուարճութեանց և խաղերու ։ Ամենագեղեցիկ և ամենասիրելի կանայք բազմաթիւ օտարականներ կը յանկուցանէին այս քաղաքաց մէջ, որոնք ճշմարտապէս նուիրական էին ախտոյ և արհեստից։ Ալկիփրոն հաւատորն այն ատենի խիստ երեւելի կանանց անունները և բարքը մ՚ալ

ուանդած է , որոնցմէ շատերուն համար տաճար-ներ կառուցուած և իրենց գեղեցկութիւնը դիցական պատուոյ արժանացած է ։

ՀՌՈՎՄԱՑԵՑԻՔ ըստ ամենայնի Յունաց նմանեցան , բայց Աստղկան ընծայուած հանդէսից մէջ իրենց վարպետները անցան ։ Չիկար ազգ մը որ հռովմայեցւոց չափ ցանկական կիրքը առաջ տարած ըլլար ։ Աստղկան տաճարները Արամազդի տաճարներէն շատ աւելի թուաւոր էին և երկրպագուաց խուռն բազմութիւնք անդադար անոնց մէջ կը ժողովուէին ։ Պաքոս , Պրիապէ և Պան ամեն տեղ չափազանց առնի նշաններով կը ներկայացուէին ։ փաղղիս մեծարու պատկեր մ՚եղած էր և ըստ օրինակի Եգիպտացւոց , Հռովմայի կանայք ալ անոր ձեւովը թժժանք և ուրիշ զարդու իրեր կը շինէին ։ Արհեստաւորք սեղանի և խոհանոցի կարասեաց՝ փաղղիսի ձեւ կուտային . բաժակ , սափոր, կանթեղ, նստարաններ և ուրիշ ասոնց նման բաներ փաղղիսի ձեւն ունէին . ճարտարագործութիւնն ալ զանոնք զանազան տեսակի վերածելով առատօրէն կը բաղադրէր ։ Սահմանանիշք և տանց առջեւ շինուած քարէ նստարանները փաղղիսի նման կը ձեւէին , քաղաքներու դրանց քով , պարտէզներու և դաշտերու մէջ, մեծ փողոցներու՝ հրապարակները անհեդեդ փաղղիսներ կը կանգնէին , նորաստվորն այնպէս էր ։

Գարնան առջի օրերը Հռովմի մէջ արգասաւոր Աստղկան տօնը կը կատարուէր ։ Ամուսնացեալ կանայք և հարսնցու օրիորդք Քերինալ լեռը կը դիմէին ուր նէրրիւ— փայտէ շինուած այլանդակ փաղղիս մը կը գտնուէր , որնոր իրենց ուսոցը վրայ

առնելով , մեծաւ հանդիսիւ և տարփական երգեր երգելով , Երիգինէ-Աստղկան տաճարը կը տանէին , ուր քանի մը ժամ հանդիստ ընելէն և զանազան անառակութիւններ գործելէն ետքը , դարձեալ այդ կուռքը իրենց ուսոցը վրայ առնելով , Թիրինալ լեռը կը տանէին :

Հռովմայեցիք խել մը տօնախմբութիւններ կը կատարէին որոնց մէջ՝ ծննդական խթանը իր վերին աստիճանը կը հասնէր . ինչպէս Սանդարամետական , Դերմոփորեան , Բաքոսական , Փաղղափորեան , Պերենիկեան , Սերիզի և Պերսեփոնէի ևն տօները երկու սեռից համար ալ ամենէն զօրաւոր ցանկական դրդիռ կընծայէին : Նաեւս բոլոր Լատին մատենագիրք , այս տօնախմբութեանց վրայ խօսած ատեննին , զանոնք այնպիսի ժողովներ կը նկարագրեն , ուր ցոփութիւնն և անառակութիւնը վերջին ծայրը հասած են :

Օվիտոս , Տիպուղոս , Կաթուղոս , Սաղիւսթէս , անմահն Վիրգիլիոս , Ովրակէս , Մարսիալ , Պրոպերկէս , Յուհենալ , Պետրոնէս , Պլաւթէս , Շուէտօն և Ցարլկէս միաբան և համամիտ են այս կէտիս վրայ : Այս դարուս մէջ ամենէն աւելի տիրող կիրքըն տռփութիւնն էր : Ազնուականն ու գռեհիկը , մեծատուն մարդիկ , ծառաները ու գերիները չարունակ ցանկական ազդեցութեան տակ կ'ապրէին : Ամեն տեսակ ցոփութիւն , անառակութիւն և զեղխութիւն , վերջին կեսարաց տակ , այն աստիճանի հասած էին , որ Պետրոնէսի գրած Կոչունք Տրիմաղկիոնի անուն գիրքը կարդալէն վերջը , անկարելի է չը խոստովանել թէ աշխարհիս վրայ և ոչ մէկ ազգ մը , բաց յԱսորեստանցւոց և 'ի Բաբելացւոց , այս

պայմաններուն Հռովմայեցւոց չափ ընտրութեան և չուայտութեան մէջ յառաջ գացած չէին .

Հռովմայեցւոց կայսրութեան անկման մօտ՝ Քրիստոնէութիւնը քիչ մ'ատենի համար կարողացաւ սանձել ցանկական կիրքը . սակայն մարմինը արհամարհելով և անամուսնութիւնը յարգելով՝ այն աստիճանի իջաւ գործը , որ մարդկային գործառնութեան չէր համաձայներ : Այս կիրքը թէև խստակրօնութեան պատեն աղեկ կամ գէշ ընկճուած էր , սակայն նորէն արթնցաւ , բայց փոխանակ կռապաշտութեան ատենին նման յայտնի գործադրուելու , գաղտնապէս կը կատարուէր : Արգիլմանց և զանազան խիստ օրինաց հակառակ՝ դարձեալ տակաւ առ տակաւ սկսաւ մեծնալ և երևան ելլալ տասներորդ դարուն ատենները Թէոդորաներու և Մարօձիաներու ձեռօք , որոնք Քրիստոնեայ Հռովմայեցւոց՝ ճշմարիտ Մեսաղինայք եղան : Ցանկական կիրքը միշտ յառաջանալով և զարգանալով տասն և վեցերորդ դարուն մէջ բոլոր իւր ուժգնութեամբը երևան ելաւ Դ. Սիքստերու , Ռիարիօներու , Բորճիաներու և Ֆառնեզներու ձեռօք , որոնց վատ շուայտութիւնները և եղեռնագործութիւնները՝ իրենցմէ յառաջ՝ Հին Հռովմայի պատկեալ հրէշներուն գործածները գրեթէ մոռացութեան և խաւարի մէջ թաղեցին :

Վերջապէս տասն և եօթներորդ դարուն մէկ քանի փիլիսոփաներ համարձակեցան մեծատանց վատութեան դէմ բողոքել և կարգ մը շահամոլ անձանց հաստատութեամբ ըմբռնած մոռահանութեան վրայ յարձակիլ , և հակառակ այն հալածանաց՝ որոնց իւրեց մարդիկը զոհ գացին , ուրիշ անձնուէր իմաց-

տաճարներ սկսուած մեծ գործը շարունակեցին ։ Այս վայրկեանէն մարդկութիւնը իրաց նոր կարգի մը մէջ մտաւ ։ Բայց ընկերական կատարեալ նորակազմութիւնը պարտաւոր ենք տասն՝ և ութերորդ դարուն բարոյախօս գիտնոց, որոնց դէմ մարտնչեցան այնչափ կեղծ ու պատիր ձայներ ։ Մարդկային ազգին այս բարերարները մի առ մի ջնջեցին բոլոր մոլահաճութիւնները, դէմ առ դէմ կռուեցան տգիտութեան ճիւաղական ծնունդ եղող նախապաշարման վիշապին հետ . չար սովորութիւնները անհետացուցին և խաւարաբնակ ազգաց վրայ յորդառատ լոյս սփռելով, բարքերը մաքրեցին և բացին այն նոր ճամբան, որուն մէջ այսօր կընթանանք ։ Փառք և երանութիւն տասն և ութերորդ դարուն փիլիսոփայից . վասնզի առանց անոնց՝ Եւրոպան դեռ թանձր խաւարի ամպերով ծածկուած պիտի մնար ։



## ԳԼՈՒԽ Է.

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԿՈՒՍՈՒԹԻՒՆ. — ԹԱՂԱՆԹ ԿՈՒՍՈՒԹԵԱՆ — ԿՈՒՍԱԳԱՐԶՈՒԹԻՒՆ

Եթէ մէկ քանի բարբարոս ազգեր . ինչպէս Կոայի, Կալիկիւթի, Մատակասկարի, և Փիլիպպեան կղզեաց են բնակիչք անտարբեր կերևան երիտասարդուհի ամուսնոյ մը կուսական ծաղիկը ծո-

զոհելու և այս աշխատութիւնը երէցներու կամ օտարականներու կը վստահանան․ պատճառը ուրիշ բաներ չեն, բայց եթէ կրօնական անձանց ուսուցմունք և նախապաշարմունք․ վասնզի գրեթէ ամեն ազգաց մէջ կուսութիւնը իբր գանձ մը համարուած է և նոր ամուսնացեալ այրը զայն՝ առաջին անգամ ինքն ստանալու խիստ նախանձախընդիր է։

Հին ազգերը կարծակէին այն նոր ամուսնացեալ աղջիկը, որ իր կուսութիւնը յայտնող շօշափելի նշան մը չունենար․ նոյն իսկ այսօր Ասիայի և Ափրիկէյի զանազան ազգեր ու ժողովուրդներ աւելի կամ նուազ բարբարոսական միջոցներ կը գործածեն, որպէսզի կարող ըլլան իրենց աղջկանց կուսութիւնը մինչ 'ի մերձակայ վայրկեան ամուսնութեան անարատ պահել տալ։ Տարֆուրի և Նուպիայի մէջ մայրերը իրենց աղջկանցը ծնծակը պզտիկ հասակնուն կը կարեն և միմիայն վարի կողմէն պզտիկ ծակ մը կը ձգեն, որպէսզի մէզը և դաշտանը կարող ըլլան դուրս ելլալու․ և այդ գործարանը այնպէս կարուած կը մնայ, միմիայն ամուսնութեան օրը սրածայր և հաստ գործիքով մը ատոր երկու կցուած շրթունքը իրարմէ կը բաժնեն։ Հնդկաստանի և Ափրիկէի մէկ քանի գաւառաց մէջ պզտիկ աղջիկները օղարկելով կը բաւականանան, այսինքն անոնց ծնծակին մեծ շրթանցը մէջ տեղէն մետաղէ օղակ մը կանցնեն, այն կերպով որ ամեն ներմուծութիւն անկարելի ըլլայ։ Ջերքեզները իրենց աղջկանցը կաշիէ գօտի մը կը հագցնեն, որոնք արգանդին բերանը կը փակէ և մ[illegible]ի ու դաշտանի համար միմիայն պզտիկ ծակ մը կը ձգէ․ հարսան-

նաց հանդիսէն վերջը երիկը իր դաշոյնը քաշելով՝ կուսապահ գօտին կը կտրէ ։ Քաղաքակրթեալ ազգաց մէջ կուսութիւնը իւր ճիշդ արժէքովը մեծարուած է , բայց յօժարակամ կը պահեն զայն և ոչ թէ բռնութեամբ ։

ԹԱՂԱՆԹ ԿՈՒՍՈՒԹԵԱՆ ԿԱՄ ՇԱՐՈՑՐ . այն բանը որ Կ[illegible]եան թաղանթ անունը առած է, իրօք թաղանթ մը չ՚է , այլ պարզապէս ներքնածննդակային անցքին մուտքը պատող՝ արգանդի մաղասաւոր թաղանթին մէկ ծալքն է , որուն դաշտանի հոսման համար պզտիկ բացուածք մը կը ձգէ և որուն մէջ արբունքէ առաջ՝ փետուր գրչի մը փողը և այս ատենէն ետքը՝ պզտիկ մատ մը հազիւ կրնայ մտնել։

Կուսական թաղանթը , որուն ամեն ատեն կուսութեան նշանը համարուած է , շատ ժամանակ բազմաձևութիւն անկանոնութեանց ենթակայ է . երբեմն մեծ ընդլայնումն կունենայ , երբեմն կիսաբոլորաձև՝ վերին ծալքի մը մէջ կը սահմանուի , վարի կողմը լայն բացուածք մը ձգելով . երբեմն արգանդի կատարեալ խցումն կըլլայ և երբեմն անոր հետքն անգամ չը նշմարուիր ։

Այս հռչակաւոր թաղանթին նկատմամբ շատ մեկնաբանութիւններ եղան . բազում կազմագէտք անոր կացութիւնը կուրանան . ընդ հակառակը շատեր ալ կան որ կընդունին զայն իբր ստոյգ ։ Մենք կը կարծենք որ կարծեաց այս տարբերութիւնը միայն թաղանթ բառին վրայ կը կայանայ , վասնզի դիւրական է որ արգանդի մաղասաւոր թաղանթը քիչ կամ շատ զգալի ծալք մը կը գործէ , որուն ամեն ատեան մերձաւորութենէ և զուգաւորութենէ կոյս եղող աղջկանց քով հաստատապէս պիտի գտնուի ։

Այս տեսակ պարագայից մէջ, անոր անհերքելութիւնը զարգացման պակասութիւն պէտք է համարիլ։

Քիչ քաղաքակրթեալ մէկ քանի ազգաց մէջ՝ առաջին զուգաւորութեան ատեն հեղուած արիւնը կուսութեան իբր հաւանեցուցիչ ապացոյց մը համարուած է։ Նոր ամուսնացեալ աղջկան արիւնաթաթաւ շապիկը քիչ մը ժամանակ 'ի տես ամենեցուն դնելէն վերջը, տուփի մը մէջ կը գետեղեն և կը պահեն զայն իբր մասունք սրբոց։ Այն աղջիկը, որ իր կուսութեան այս շօշափելի նշանը չ'ունենայ, ամօթալի կերպով իրեն ծնողացը տունը կ'արձակուի։ Բայց այս արձակումը գրեթէ երբէք տեղի չ'ունենար. վասնզի մայրերը առաջուընէ նախազգուշութիւններ ընելով, անոր առաջքն կ'առնուն։ Ահա այս նախազգուշութիւնները։

Ամուսնութենէ մէկ քանի օր առաջ՝ մայրը իր աղջկանը ծննդական անդամները կը քննէ, և եթէ արգանդի մուտքին լայնութիւնը փոքր համոզէ թէ առնի անդամոյն ներմուծութիւնը առանց պատռուածքի և արեան հեղման կրնայ կատարուիլ, այն ատեն ձկան փամփուշտ մը կամ եզին աղիքներուն բարակ թաղանթէն շինուած երկայնաձեւ, նուրբ նման փամփուշտ մը կը պատրաստէ և զայն աղաւնիի արեամբ լեցնելէն զկնի, իր աղջկանը կու տայ, պատուիրելով որ առագաստ մտնելէն առաջ ծնծակին անցքին մէջ մտցնէ զայն գաղտնապէս։ Այս խորամանկութեամբ նոր ամուսնացեալ աղջիկունք ապահով կըլլան որ կուսութեան արիւնաներկ ապացոյցներէն երբէք չի պակսի վրիպին։

Գաղղիոյ և ուրիշ քաղաքակրթեալ ազգաց մէջ

տակաւին կը գըտնուին այնպիսի անձեր, որ այս արիւնոտ ապացոյցները կը պահանջեն. երբ զանոնք չը տեսնեն, կը կարծեն որ պղծեալ աղջկան մը հետ կարգուած են: Այս նախապաշարումը ամուսնութեան մէջ թշուառութեանց մշտնջենաւոր աղբիւր մը կըլլայ, սակայն այս տեսակ անձինք շուտով և դիւրութեամբ իրենց սխալումը կը ճանչնան, եթէ քիչ մը մտածել ուզեն: Արդարեւ եթէ կրնայ պատահիլ որ կոյս, առողջ, սեղմ միսերով և նեղ ծընամանով աղջիկ մը՝ մեծ և հաստ առնի անդամ ունեցող այրէ մը պատառի և արիւնոտի, կրնայ պատահիլ նաեւ, կարելի է խիստ յաճախ, մանաւանդ մեծ քաղաքաց մէջ, որ օրինաւորապէս կոյս, մասղաչ, բայց տկար, փափուկ կամ ճերմակ դաշտանէ նեղուած աղջիկ մը՝ նուրբ և պզտիկ առնի անդամ ունեցող էրիկ մարդու մը հետ ամուսնանալով, ոչ պատառուածք, ոչ արեան հեղումն չպատահի: Նոյնպէս այն աղջկունք, որք առ անձին մերձաւորութեանց կը պարպալին, իրենց անդամները լայնալով, թէեւ էրիկ մարդու մերձաւորութենէ կոյս են, սակայն իրենց կուսութիւնը կը կորսնցունեն առանց արիւնոտ նշաններ տալու: Վերջապէս Փարան-Տիւշաթըլէ անմերժելի եղանակաւ մը կ'ապացուցանէ թէ շատ մը պոռնիկ կիներ, իրենց ամօթալի առուտուրը ձգելով, կարգուելէն ետքը արիւնոտ նշանը տուին, մինչդեռ մատղաշ աղջիկներ՝ յաքբունս հասնելէ առաջ պոռնկութեան պարապելով, իրենց կուսութիւնը կորսնցուցին առանց արեան հեղման:

Այս խորհրդածութիւններէն կը հետեւի թէ պէտք չէ որ էրիկ մարդ մը արեան խաբերայ երեւոյթներուն հաւատայ իբր կուսութեան ապացոյց.

վասնզի, ինչպէս որ տեսնուեցաւ, այդ նշանը խիստ երկդիմի և անյայտ է․ վասնզի դիւրին է անոր նմանը արտադրել, և թէ պէտք է այսուհետեւ բարբարոս ազգաց մէջ աքսորել արիւնոտ շապիկին սովորութիւնը ։

ԿՈՒՍԱԳԱՐՁՈՒԹԻՒՆ․ Նեղ արգանդ ունեցող աղջկանց կուսապարկութիւնը սովորաբար պատառուածքի յատկութիւններ կցցունէ․ պատառուածքին եզրերը խորտաբորտ և արիւնոտ կըլլան․ հոսուած արեան քանակութիւնը մէկ քանի կաթիլէն աւելի չէ ։ Կուսապարզութենէ ետքը պատռուած արգանդի մաղասաւոր թաղանթին եզրերուն վրայ, վիրակցութեան ատեն, պզտիկ ուռեցքներ կը գոյանան, որոնց Caroncules myrtiformes կըսուին ։ Ճշմարիտը խօսելու համար, արգանդի ցնցուղին մուտքին քովերը գտնուող անհամար ծալքերուն և ուռեցներուն մէջ տեղուանքէն խիստ դժուարին է այս ելունդները որոշել ։ Մենք ալ համամիտ ենք այն անդամազննաց, որոնք կը խորհին թէ արգանդի ցնցուղին սիւները կամ ներքնածնծամասին [illegible] մուտքը սեղմելու համար՝ այն տեղը ըստ երկայնութեան զետեղուած ուռեցները շատ ժամանակ մըրտաձեւ ելունդոց տեղ կը բռնուին ։ Յաւսկ ուրեմն կուսապարզութիւնը միշտ արգանդի ցնցուղին մուտքին՝ ընդլայնումն, ճմլումն, կակղութիւն, եւ երբեմն ալ այտուցումն և ծննդական անդամոց չափազանց զգայականութիւն կը պատճառէ ։

Հռովմայեցիք կուսապարզութիւնը ճուիրական արարողութիւն մը համարելով, այդ գործողութեան ատեն Դիք իրենց օգնութեան կը կանչէին ։ Առաջինը կը կոչուէր դիցուհին Վիրգինենսիս․ [illegible]

Կընծայէին նոր ամուսնացեալ աղջկան դուռին ։ Երկրորդը Սողոմոնի չաստուածը, որոնք յառաջատ մանալու ատեններին օգնութեան կը կանչէին։ Երրորդըն էր Պըեոն չաստուածուհին, որոնք երկու ամուսնացելոց հրճուանքը կ'աւելցնէր։ Ամենէն վերջինն է Պերզինտրա դիցուհին, որոնք օգնութեան կը կանչէին, երբ կուսական թաղանթէն կամ ուրիշ որ և իցէ պատճառէ մը առաջ եկած արգելք մը՝ սիրելի զոհը վշտացնէր ։ Այսօր ոչ դիք և դիցուհիք, նոյն իսկ սէրն անգամ չեն յիշեր ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ԱԶԳԱՑ ՄԷՋ ԵՐԿՈՒ ՍԵՌԻՑ ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԱՑ ՎՐԱՅ ԳՈՐԾԱԴՐՈՒԱԾ ԿՐՃԱՏՈՒՄՆԵՔ

Ըստ ժամանակի և սովորութեանց՝ ծննդական գործարանները զանազան կրճատումներ կրեցին. երբեմն մաքրութեան և ժուժկալութեան նպատակաւ և երբեմն ալ աշխարհի հզօրաց բարբարոսական նախանձը գոհ ընելու կամ յագեցնելու համար։

**ԹԼՓԱՏՈՒԹԻՒՆ.** Բնութեան դէմ եղած առաջին նախապաշարմունքներէն մէկն եղաւ թլփատութիւնը։ Մովսէս և յետոյ Մահօմէտ հրամայեցին թլփատութիւնը իրենց կրօնակիցներուն իբր առողջապահական զգուշաւորութիւն տաք երկիրներու մէջ ։ Այս սովորութիւնը Հրէից շատ նախընթացէն առաջ կը գործադրուէր Ասորեստանցւոց, Բարբերացւոց, Եթովպացւոց, Եգիպ-

տանցւոց և ուրիշ շատ ազգաց մէջ. Մովսէս այս ազգաց սովորութեանը հետեւեցաւ միայն ։

Թլփատութիւնը կը գործածէին, կըսեն, եղջո-ջան թոյթոյթան առաջքն առնելու համար. այս բորբոքումը՝ անշարժ կնգուզ կրող դեղձերու պտուղին չուրջը հաւաքուած դարչահոտ Ակէնձոյին կը պատճառէ։ Բայց ամեն մարդ սեղմաթլփատով չծնանիր և ամեն մարդ աղտոտ չըլլար. և եթէ թլփատութիւնը ոմանց համար օգտակար է, ուրիշներու համար ալ բոլորովին անօգուտ է։ Ի վերայ այսր ամենայնի հնութեան բոլոր օրէնսդիրները յարգեցին մարդուն ազնիւ անդամները։ Ցօա երբէք օրէնք չդրաւ Հնդկաստանի ժողովրդոց թլփատուին դէմ։ Զօրաստր՝ Պարսիկները ազատ ձգեց իրենց թլփատը պահելու։ — Սողոն և Լիկուրկոս աղէկ զգուշացան Յոյները անկէ զրկելու։ — Միմիայն Մովսէս և Մահոմէտ հրամայեցին թլփատը զոհելու։ Մահմետականութիւնն և կանխակալ սովորութիւնք տարածեցին և մշտնջենաւորեցին թլփատութիւնը Ասիայի մեծ մասին և գրեթէ ամբողջ Ափրիկէի մէջ։

Եթովպացւոց, Եգիպտացւոց, Պէնէնի ժողովրդոց, Ափրիկեցի բազմաթիւ թափառական ցեղերու. և Հնդկաստանի շատ գաւառներու մէջ, որք՝ միայն իրենց սեռը թլփատելով գոհ չեն ըլլար, այլ այդ սովորութիւնը կանանց վրայ ալ կը գործածեն։ կանանց թլփատութիւնը ուրիշ բան չէ. բայց միայն փոքր շրթանց երկայնաձիգ մասին և գրեթէ ամբողջ կնարիրին բարձումը։ Այս գաւառներուն կանանց փոքր շրթունքները չափէ դուրս կը զարգանան, մանաւանդ որդեծնութենէ ետքը. և զարշատելի կերպարանք մը կ'առնուն որուն վրայ ու-

րիշ տեղ ,պիտի խօսինք ։ Հօթենթացի կանանց փոքր չրթունքները այն աստիճան կերկննան և կը լայնան որ գոգնոցի նման իրենց աղդերց վրայ կիյնան և որուն ռամկօրէն գոգնոց կըսեն ։ Այսպիսի երկայնաձգութիւն մը 'ի հարկէ՝ զուգաւորութիւնը նեղութեամբ կատարել կուտայ. և այսպիսի պարագայի մէջ փոքր չրթանց կրճատումը ներելի է ։

ՕՂԱՐԿՈՒԹԻՒՆ ։ Այս գործողութիւնը երկու սեռից վրայ ալ կը գործադրուի, երիկ մարդուն թլփատը կամ կնոջ մեծ չրթունքները տեղ տեղ ծակելով և այն ծակերուն մէջէն օղակ մը կամ ագուցիկ փականք մը անցնելով. որպէս զի այս կերպով օղարկուած անձինք արգիլուին ցանկական հեշտութիւններէ ։ Ասիայի և Ափրիկէի մէկ քանի ազգեր այս գործողութիւնը ուրիշ ապահով եղանակաւ մը կը կատարեն. կաշիէ ծուէններ կը ձեւեն և զանոնք դէմ առ դէմ բերելով կը կարեն ծննական չրթանցը և մէզի ու դաշտանի հոսման համար միմիայն պզտիկ ծակ մը կը ձգեն։ Վիրակցութենէն ետքը թելերը կը հանեն. այս կերպով կարուած երիտասարդուհին մինչեւ ամուսնութեան օրը իր անդամէն գրկուած կը մնայ. երբ այս օրը հասնի, այրը իր դաշոյնովը կը ճղքէ ծուէնը և այսպիսի բարբարոսական եղանակաւ մը իրեն պահուած կուսութեան ծաղիկը գաղանաբար կը քաղէ ։

Ցոյները այսպիսի եղանակներ չգործածելու չափ քաղաքակիրթ էին և իրենց կանանց պարկեշտութեանը աւելի կը վստահանային քան թէ օղակներու և փականքներու, և իրաւունք ունէին ։

Հռովմայեցիք, որք նախանձու և ցոփութեան

կողմանէ ամեն ազգ. գերազանցեցին, իրենց գեր-եացը և նոյն իսկ իրենց զաւակացը վրայ գործադ-րեցին ամեն տեսակ կրճատումներ: Կանայք և մա-նաւանդ մանկաբարձ տիկնայք մոլի կարծուած տղայքը կ'օղարկէին և եթէ այս կերպն ալ բաւա-կան չըլլար, անոնց տունի անդամը՝ փայտէ պատ-ուանի մը մէջ կը փակէին, որուն ծայրը ծակուած էր մէզը անցնելու համար: Վէնկէլմէնի գրած եր-կու հին արձանագրութեանց մէջ օղարկեալ երկու հատակերգակ յիշուած են: Այս արձանագրու-թիւններով պատմաբաններուն՝ երգիչներու նկատ-մամբ մեզի հաղորդած պատմութիւնները կը հաստատուին: Արդարեւ, կեսարաց ատեն, թատ-րոնաց վերակացուները՝ իրենց արհեստագիտաց ձայնին մաքրութիւնը և թարմութիւնը միօրինակ պահելու համար օղարկութեան կենթարկէին զա-նոնք, որպէսզի ցանկական հեշտութիւններէ զեր-կուելով իրենց ձայներն ալ չապականին: Շատ հա-ւանական է որ այսօր մեր թատրոնի վերակացու-ները չի պիտի գտնան այնպիսի արհեստագէտներ, որք ինքզինքնին օղարկութեան յանձնեն: — Յու-լիանոս, կանանց դէմ գրած իր կծու երգիծաբա-նութեամբը կը կշտամբէ Հռովմայեցի տիկինները ըսելով «կանա՛յք. ձեր սիրահարները աղուցիկ փա-կանքով օղարկել տուէք և անոր բանալին միայն դուք առէք »:

Երբեմն Արեւելքի մէջ՝ օղարկեալ պաշտօնեանե-րու ընկերութիւններ կար, սակայն այսօր շատ յաճախ է: Հնդկաստանի մէջ տակաւին կը գտ-նուին օղարկեալ մոլեռանդներ և ֆաքիրներ, որոնք իրենց թլփատին վրայ մէկմէկ բոժոժ կը կրեն:

ՄԱԼԹՈՒՄՆ · ՍԵՌԱՏՈՒՄՆ · ՆԵՐՔԻՆՈՒԹԻՒՆ ·

Սեռատելու կամ մարդը իր սեռէն զրկելու ար-հեստը նախ Արեւելքի մէջ սկսաւ ։ Թէոդորոս մեզի կ'ուսուցնէ որ Ասորիք և Եգիպտացիք 'ի սկզբան մալուկը չնացողներուն և Պարսիկէի մեղօք յանցա-ւոր գտնուողներուն վրայ իբր պատիժ կը գործադ-րէին ։ Նախ Մեդացիք իրենց կանանց՝ ներքինեաց չքնաղ իր խումբ մը յատկացուցին։ Քիչ ատենէն Ասո-րեստանցիք և Պարսիկք անոնց օրինակին հետեւե-ցան և Ասիայի բոլոր ազգերը, ընել կուզեմ բոլոր մեծերը իրենց կիները ներքինիներով շրջապատելու համար խումբ մը թշուառ տղաքներ սեռատել տուին։ Մեր օրերն իսկ տակաւին կը գտնուին կանանց պահպանութեանը համար սահմանուած ներքի-նիներ ։

Անկեալ Հռովմայի մէջ. վերջին կեսարաց ատեն, հարուստ Հռովմայեցիները սեռական ծառայութեանց համար ներքինիներ՝ և որձեւեգներ կը գնէին ։ Այն ժամանակը ինչպէս որ այսօր, շատ մայրաքաղաք-ներու մէջ բնութիւնը իր նպատակէն կը զրկէին ։

Յունաց կայսրութեան ատեն, ներքինիները պալատոյ այնչափ շահաւոր ճիւղ մը եղած էին որ Յուստինիանոս պարտաւորեցաւ մալելու դատա-պարտել ամէն անոնք, որք իրենց որդիքը կը սե-ռատէին ։ Ամենուն յայտնի է որ Փարիզի ժողովը ակն ընդ ական օրինաց համաձայն՝ դահճաց ձե-ռօք մալուելու դատապարտեց անոնք, որք զԱպայ-լարդը ներքինացուցին ։ — Սաղիկեան օրէնքը մա-ռնելու կը դատապարտէր այն գերիները, որք իրենց տիրուհիներուն հետ անպարկեշտ գործողութեամբ կը բռնուէին։ — Աշխարհակալ Գուլիէլմոսի օրէնքը

կուսապղծութեան յանցանքով բռնուած անձինք մեռնելու կը դատապարտուէր ։

Կը հաստատեն թէ․ Կիւբելէ չաստուածուհոյն՝ Քօրիպանթ, Կուրէթէս և Կաղղէս անուններն կրող քուրմերը այս դիցուհւոյն ծառայութեանը մտնելէն առաջ, ինքզինքնին ներքինել կ'ընէին ։ Յոյն պատմաբանք փռիւգացի պատմագրութեան մը վըստահելով այս սխալը կրկնած են և ապա կրկնեն դարձեալ ։ Բայց փիլիսոփայութիւնը, որ իրաց խորքը կը թափանցէ, համոզուած է որ այս պատմութիւնը անհիմն է․ վասնզի այս մոլեռանդն մարդկանց մելէկան սիրոյ գործադրութեան եղանակները և տափական պարերը, ներքինեաց անզգայ և անհոգ կենաց հետ երբէք համաձայնութիւն չեն գտներ ։

Առաքինութիւնն և հաւատարմութիւնը ստիպեցին Կոմպաբիոս որ ինքզինքը մաճէլ տայ․ վասնզի կը վախնար որ չըլլայ թէ իր թագուհւոյն վրայ սիրոյ զգացումն արդելով՝ վտանգի մէջ իյնայ ։ Մեր թուականին երկրորդ դարուն մէջ հռչակաւոր Որիգինէս՝ Անտիոքոս Սոտէրի մտերմոյն օրինակին հետեւեցաւ իր զգաստութիւնը ապացուցանելու համար ։ Այս երկու անուանի ներքինիները քաղաքաթիւ հետեւողներ ունեցան, այնպէս որ Պապ մը այս տարաբախտիկ սխալին դարման տանելու համար պարտաւորեցաւ բանադրանք կարդալ Որիգինեսի հետեւողաց ։

Արգատ կայսեր իշխանութեան ատեն երեւեցան Վալեզեանք, որոնց այլանդակ սխալն էր կարգուիլ առանց զաւակ ունենալու ։ Այս աղանդաւորները, որոնք միանգամայն ամբարիշտ և հակասական էին,

տարդէն "չըկային երբ օրէնքը ուզեց զանոնք ջնջել։

Ուրիշ խիստ մոլեգին հերձուած մ՚ալ Վալդէնսեան անուամբ՝ Արաբիայի տոչորիչ գաւառաց մէջ սկսաւ երեւան ելլալ։ Այս յիմարները ոչ թէ միայն ինքզինքնին յարմատոց մալելու կ՚ուխտէին, այլ նաեւ բոլոր դիմացնին ելլողներն ալ կը մաշէին. արդէն բազում ոճիրներ գործեցին. բայց բոլոր ժողովուրդք մարդկային սեռին սոյն թշնամեացը դէմ ելլալով, անոնց գլխաւորները սպաննեցին և աղանդաւորներն ալ ցրուեցին։

Պրոքոպէս պատմաբանը մեզի կը տեղեկացնէ որ մատաղաչ ներքինիները Հուստինիանոսի պալատականաց մէջ խիստ յարգի էին և շատ սուղ գնով կը ծախուէին։ Ապաակէսի թագաւորներէն մեկը այս խիստ շահաւոր առուտուրը տեսնալով, իւր հպատակացը ամենէն գեղեցիկ և կայտառ տղաքը բռնութեամբ կը յափշտակէր և զանոնք սեռատել տալով Կոստանդնուպօլիս կը խրկէր ծախելու։

Բայց Մահօմետի յաջորդաց ատեն աւելի մեծ յառաջադիմութիւն ստացաւ՝ մարդն իւր սեռէն զրկելու արհեստը։ Օսմանեան թագաւորը իւր պալատին պահպանութիւնը ներքինիներու վստահացաւ, վասնորոյ տերութեան բոլոր իշխանք և մեծամեծք իրենց տիրոջը Օսմանին օրինակին հետեւեցան, որով իսկոյն հազարաւոր ներքինիներ երեւան ելան. այս սովորութիւնը Ասիա և Ափրիկէ անցնելով իրեն անհամար զոհեր ունեցաւ։

Ասիայի բռնաւորաց սեւ նախանձը՝ միայն արու ներքինիներ ընել տալով չըյագեցաւ, այլ իգական սեռն ալ մալել հրամայեց։ Այս հրամանը կատարելու համար մատաղ աղջկան փորը կը ճեղքէին և ձուարանը

ամբողջ կը հանէին, կնատիրը որմանէն կը կորզէին, և ծնծակը կը խցէին մեծ շրթունքները մէկ քանի տեղէն կարելով. այնպէս որ ատամանց սեռի և ուռանց ըղձի արարածներ կը գոյացնէին, որոնք չարութեան մէջ արու ներքինիներն իսկ գերազանցեցին :

Մետասաներորդ դարուն մօտ՝ սեռատելու ահեստը Արեւելքէն Հռովմէական տէրութեան մէջ անցաւ Աստուածային երգերը աղէկ երգելու նպատակաւ : Ժ․Դ․ Կղէմէս Պապը այս բարբարոսական սովորութիւնը ջնջել ուզելով դէմ կեցաւ անոր. սակայն իրեն հրամանները 'ի դերեւ հանեցին : Պատի՛ւ և փա՛ռք իրեն : Յաջորդ ազգերը իր կոնդակը Գեղոնի արքունական հրովարտակին քով պէտի դասեն, որնոր հրամայեց Կարդագինացւոց իրենց զաւկները Կռոնոսի չզոհել : Իտալիայի մէջ այնպիսի հայրեր, լաւագոյն է ըսել այնպիսի հրէշներ գըտնուեցան, որոնք իրենց արու որդիքը կը մտցէին օրպէսոյի թատրոններու մէջ կանանց դեր կատարելով շատ դրամ շահին : Հայր մը, որ իւր զաւակը կը մաղէ, տպուշ վայրենի մ'է, վատ մը՝ ընկերութեան սոսկումն և միշտ անիծեալ այն թշուառէն զոր ինքը խաթարեց : Կարդացէ՛ք Նարսեսի պատմութիւնը :

Այսօր՝ քաղաքակրթեալ ազգաց մէջ երբէք չը տեսնուիր մարդկային ձեռօք շինուած ներքինիներ. այս տեսակ կրճատմունք մեր բարուց ու սովորութեանց հակառակ ըլլալով, միմիայն Ասիայի խուցերը կը գործադրուին : Սակայն անասնականութիւնք և ախտք յառաջ կը բերեն միշտ մեր մայրաքաղաքաց մէջ տեսակ մը ներքինիներ, այսինքն մանա-

նակէ տուած անկարծներ, որոնք այնուհետեւ բնու-
թիւնն անիծելու և սէրը հայհոյելու համար կանչ-
ցին։ Խրատ կուտանք այս տեսակ մարդկանց որ
այն գրքին՝ անկարողութեան վրայ խօսող գլխոց
մէջ բացատրուած նշաններուն հետեւին։

## ԳԼՈՒԽ Ը.

## ԾՆՆԴԱԿԱՆ ԳՈՐԾԱՐԱՆԱՑ ԱՌՈՂՋՈՒԹԵԱՆ ԵՒ ՍԵՌԱԿԱՆ ՄԻԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՎԵՐԱԲԵՐԵԱԼ ՕԿՋԵԱՆՑ ՎՐԱՅ

Ծննդական գործարանաց առողջութիւնը և կենսունակութիւնը յարատեւ և երկար ատեն պահելու համար պէտք չէ երբէք զանոնք յոգնեցնել խիստ յաճախ կիրառութեամբ։

Այս գործարանաց առուգութիւնը և առողջութիւնը մշտատեւ պահելու համար պէտք ըլլալիք անհրաժեշտ պայմաններէն մին է մաքրութիւնը։ Համապազօրեայ լուացմունք խիստ կարեւոր են զանոնք մարմնոյն ծակտիքներէն դուրս ելած աղտեղութիւններէն մաքրելու համար. մանաւանդ կինը խիստ զգոյշ և ճշգրիտ ըլլալու է այս մասին, ամեն անգամ որ իւր կազմութիւնը և վիճակը պահանջեն։ Պաղ կամ գաղջ ջուրը, ըստ եղանակին, Հեղէի կաթին կամ Հեսբերիտեան ջուրին մէկ քանի կաթիլովը խառնելով գործածելու է այս լուացման համար. վասնզի ասկէ 'ի զատ եղած հեղուկները, ինչպէս կուսական կաթերը, և ուեռնաւոր

ոգիները , Սատուռնոսի քաղաքները , և անուշահո-տութեան գործարանաց շինած ուրիշ հնդուկ-ները, ծննդական մատերուն մաղձատուր թողանթը կը չորցնեն , կը կարծրացնեն , կը կապարատորեն և իրենց յանկուցիչ թարմութիւնը կը կորսնցունեն :

Ամուսնութեան հեշտութիւնները չափաւորու-թեամբ և խնայութեամբ 'ի գործ դնելու է : Եր-բեք չարաչար գործածելու չէ . փասնզի զեղծմունք մարմինը կը ջլատեն և իմացականութեան վրայ կը ծանրանան այսինքն զանիկա կը բթացնեն : Խոհուն ամուսինք դիւրաւ պիտի հասկընան թէ ամուսնա-կան հեշտութեանց մէջ խնայողութեամբ վարուիլը զանոնք կրկնապատկել է :

Զուգաւորութիւնը լաւ կերպով կատարուելու համար քաղցրաբարոյութիւն , հանդարտութիւն և առանձնութիւն պէտք է : Երկիւղը , ձայնը , նոյն-պէս աղտեղութիւնը և դժկամակութիւնը անոր ար-գելքներն են . սիրալիր խօսքերով իր կնոջմէն հեշ-տութիւն պահանջելու է, և մեր իղձերը յագեցնելու համար զինքը գրգանօք հրաւիրելու է և ոչ թէ բռնութեամբ :

Ամուսնական պարտաւորութիւնը մեղմիւ և զգու-շութեամբ կատարելու է , և ոչ թէ այնպիսի յի-մար եռանդեամբ մը , որուն ազդեցութիւնը կրնայ վիրաւորել գործարանները և ծննդաբերութեան վը-նասել :

Յետոյ մերձաւորութեամբ երբեք չարաչարել պէտ-քը ; դադրիլ երբ բնութիւնը կը պահանջէ ու կը զեկուցանէ ; և միւսանգամ սկսելու համար սպասել որ եղած կորուստները բուն բնականի դարմանո-ւին և նոր ոյժ առացուի :

Տարփական երեւակայութեան մը յուզմունքը եւ ցանկական հեշտութեան անչափ եւ անյագ փափաքը արութեան խիստ վտանգաւոր թշնամիներն են։ Ցանկական գաղափարներով ինքզինքը չը գրգռելէն 'ի զատ խոհական մարդը պարտի ջանալ որ գործարանին զարթնումը՝ ցանկութիւնը յագեցնելու ատենը իրեն իմացնէ, ահա ծննդագործ կարողութիւնները երկար ատեն առողջ պահելու կերպը։

Առատութեամբ ուտել խմելէն ետքը երբէք ցանկական գիրկընդխառնութեանց չը պարապիլ. վասնզի սերման ցայտման ատեն գրգռուած սաստիկ ստնդանքը կրնայ մարսողական գործողութիւնը դադրեցնել. խցումն, հեղձումն եւ երբեմն կաթուած պատճառել։

Կազմական անհանդստութեան, վատառողջութեան կամ հիւանդութեան ատեն պէտք է հրաժարիլ ցանկական զուգաւորութենէ. այն պատճառաւ որ, եթէ չափաւոր զուգաւորութիւնը առողջ մարդոց համար օգտակար է, տկար եւ նուաղեալ անձանց համար ալ միշտ վնասակար է։

Երբ գլուխը եւ ուրիշ անդամները յոգնած ըլլան, խոհեմութիւն է միշտ երկրորդ օրուան ձգել զուգաւորութիւնը. վասնզի այս գործողութենէ պատճառուած յոգնութիւնը՝ նախակայ վտանգը կ'աւելցնէ։

Կուրծքի հիւանդութիւն ունեցող անձինք, որոնք սովորաբար խիստ տարփացող կըլլան, պարտին իրենց ցանկական փափաքը կարելի եղածին չափ զսպել. վասնզի այս տեսակ անձանց առողջութիւնը ամենէն աւելի՝ այս գործողութեան ստեպ կիրառութեամբը կրնայ վնասուիլ։

Թեպէտ և կինը կրնայ ՝ առանց դժուարութեան՝ այրէն աւելի յաճախ կատարել տարփական գործողութիւնը , սակայն պարտի նա ևս ժուժկալ ըլլալ. քանզի ճշմարտուած է թէ այն կիները՝ որք այդ գործողութիւնը չարաչար կը գործածեն՝ ձուամաններու և արգանդի հիւանդութեան և քաղցկէղ բռնուած սոսկալի ախտին ենթակայ կըլլան ։

Ինչ բան որ արիւնը կը տաքցնէ՝ անոր չրջաբերութիւնը ճեպելով դէպ 'ի ուղեղը կը վարէ զայն և անզգայութեան կամ զուգաւորելու անկարողութեան կը նախապատրաստէ զմարդ . վասնորո այն անձինք՝ որ ոգելից ըմպելեաց և տաք կերակուրներու գէշ սովորութիւնը ունին , իրենց ծնեցուցիչ կարողութիւնը կանուխ կը կորսնցնեն։

Տկարացուցիչ կերակրութիւնք և խթու ըմպելեաց գործածութիւնք հաւասարապէս ծննդական գործարանները կը տկարացնեն ։

Ցղութեան վիճակը ամենամեծ զգուշութիւն կը պահանջէ ։ Ամուսինք պարտին զուգաւորութենէ հեռու կենալ յղութեան առաջին երեք ամսոց և ամբողջ իններորդ ամսուան մէջ . վասնզի յղութիւնը սկսած ատեն երբ արգանդը ցանկական գործողութեամբ յաճախ գրգռուի , իր կծկելովը կրնայ սաղմին զարգացմանը վնասել նաև վիժումի պատճառել ։ Ութերորդ ամիսէն իններորդը մտնելու ժամանակները այրը ցանկական գործողութեամբ կրնայ կնոջ վնասել , զայն վիրաւորել և մինչև անգամ կանխաժամ ծննդաբերութիւն մը պատճառել ։

Այրը պարտի յարգել կազմական և բարոյական այն վիճակները՝ որոնց մէջ կրնայ գտնուիլ իր կինը . •

ինչպէս դաշտանի հոսման ժամանակը, անհանգստութիւնը, վատառողջութիւնը, դժկամակութիւնը, վըշտակրութիւնը, և ցաւալի պատահարք եւն. և երբէք իմէ չպահանջել այն բանը, որմոր կինը և ոչ մէկ կերպով իրեն շնորհելու տրամադրուած չէ. վասնզի երբ այրը կնոջ այս տրտմալից վարկեաններուն մէջ զուգաւորութիւն ընելով, անոր արգանդը պտղաբերէ, ապածին էակը անտարակոյս պիտի կրէ յետոյ՝ իր մօրն այն ատենի գտնուած վիճակին վնասները։ Գործոյս ԺԵ. գլխոյն մէջ գրուածները զայս պիտի ապացուցանեն։ Ցանկական գործողութիւնը կատարելու մասին երկարատև և խիստ ժուժկալութիւնը, նոյնպէս յաճախ զուգաւորութիւնը հաւասարապէս վտանգաւոր են. վասնզի այս երկու չափազանցութիւնները զուգաւորիչ գործարանը կը վատթարեն և միեւնոյն վախճանը ունին այսինքն ծննդական տկարութիւն, անզգայութիւն և անկարողութիւն։

Խոհական ամուսինք երբէք իրենց ցանկական ճաշակը բոլորովին կշտացնելու չ՚են և ոչ ալ իրենց իղձերը բոլորովին մարելու են. այլ ընդ հակառակը պարտին թողուլ սիրոյ տաճարը, մինչ անոր ուրիշ ընծայ մ՚ալ ընելու կարողութեամբ։

Ահա վերջապէս ասոնք են այն գլխաւոր սկզբունքները, որոց պարտին հետեւիլ երկու ամոլք, որք կը փափաքին առողջ զաւակներ ունենալ և իրենց ծընուցիչ կարողութիւնը երկար ատեն պահել։



# ԳԼՈՒԽ Թ.

## ԴԱՇՏԱՆ

Մատաղ աղջկան մը յարբունս հասնելու առաջին նշանը՝ անոր ցայլից ոսկրէն վրայ աղուամազի երեւոյթն է և ծննդաբերութեան ատակութիւնն առ դաշտանի, այսինքն շրջանաւոր արեան մը հոսանքը կը յայտնուի։ Այս հոսումն զանազան անուններ ունի, դաշտան, ամսական, ամսաշրջան արիւն․ ըբէնք հինանց են, և արգանդին ներքին կողմէն բղխելով ծննդականէն դուրս կելլայ։

Դաշտանի առաջին երեւոյթը, կլիմայի, կազմուածքի և ընկերական վիճակի համեմատ կը փոփոխի։ Այսպէս տաք երկիրներու մէջ՝ դաշտանի հոսումը 9 էն մինչեւ 12 տարեկան հասակի մէջ կըսկսի, ցուրտ երկիրներու մէջ՝ 16էն մինչեւ 20, իսկ բարեխառն գաւառներու մէջ՝ այս երկու ծայրից մէջտեղը։ Քաղաքներու մանաւանդ մայրաքաղաքներու աղջկանց ամսական արեան հոսումը գիւղացի աղջկանց դաշտանէն կանուխ կըսկսի։ Աղէկ կազմուածք ունեցող կանանց դաշտանի կանոնաւոր տեւողութիւնը 3—6 օր է։ Աւելի կամ պակաս տեւողութիւնը խանգարեալ կըսուի և թէ՛ արեան չզօրութենէ կամ արգանդի տկարութենէ և թէ՛ ուրիշ հիւանդութենէ կը պատահի։ Աւշոտ, նստող և անգործ կանայք արիւնոտ, գործունեայ և աշխատասէր կիներէն աւելի առատ և տեւողական դաշտան կունենան։ Նոյնպէս նիհար և վաւաշոտ կանանց ամսական արիւնը գէր և անզգայ կանանց ապարանջէն աւելի առատ կըլլայ։

Ամսաշրջան արեան քանակութիւնը միջին հաշուով 250 կռամ հաշուած է ։ բայց այս քանակութիւնը խիստ փոփոխական և նշանակուածէն աւելի կամ պակաս կրնայ ըլլալ ։ Ընդհանրապէս կը կարծուի որ դաշտանը ապականեալ արիւն մ'է, որ դուրս կելլայ, սակայն այս կարծիքը սխալ է և երակաց մէջ շրջաբերուած արեան նման է, միմիայն այս տարբերութեամբ որ դաշտանի մէջը ներդակտաղմ նիւթը քիչ մը նուազ է ։ Մէկ քանի կանանց այս ժամանակներուն մէջ սփռուած դարշահոտութիւնը առաջ կուգայ մարմնոյն ճարպական հիւթերուն անջատումէն և արեան իր մասանցը անջատուելէն, որոնք իրենց շորերուն վրայ տեղի կունենան ։ Այն կիները, որք ինքզինքնին աղէկ կը խնամեն, այս գէշ հոտը չեն արտաբերէր ։

Դաշտանի շրջանպտոյտ ըլլալուն պատճառը լուսնի երևութիցը հետ ամենևին յարաբերութիւն չունի. ինչպէս ռամկօրէն կը կարծուի. և շրջանաւորութեան յատկութիւն ունեցող բոլոր ուրիշ կենդանական երևոյթներուն պատճառին նման բոլորովին ներքին է անոր պատճառը ։ Լուսնի՝ այս շրջանաւորութեան պատճառ բնաւ չըլլալուն ապացոյցը այս է որ բազմաթիւ կանանց մէջ հազիւ մէկը կամ մէկ քանին լուսնի իւրաքանչիւր ամսագլխուն դաշտանի հոսումն կունենան ։



## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԿԱՆԱՆՑ ԱՄՍԱԿԱՆ ՁՈՒԱԾՈՒԹԻՒՆԸ

Ամսական արեան հոսումն առաջ բերող ծննդական այտման պատճառը ուրիշ բան չէ, բայց եթէ մէկ կամ մէկէ քանի ձուոց ածումը : Ահա պատահած երեւոյթներուն կարճ բացատրութիւնը :

Դաշտանի հոսումէն մէկ քանի օր առաջ՝ Կրաաֆի փամփշտիկներէն մէկը, կամ լաւ եւս է ըսել ձուն պարող փեճոկը կուռենայ և կը պայթի. այն տանէն մէջի եղած ձուն հասուննալով դուրս կելլայ և ձուամուղներուն կամ արգանդի փողերուն մէջ մտնալով արգանդը կիյնայ : Դուրս ելած ձուոյն տեղը ձուամանին մէջ պղտիկ սպի մը կը շինուի : Ձուոյ՝ հասուննալով ձուամանէն բաժնուելուն և արգանդը իյնալուն՝ կանանց ամսական յառաջընթացը կըսուի :

Ձուամանին յոգնութենէն և ձուոյն՝ արգանդին մէջ անկումէն առաջ եկած գրգռումը արգանդին մազասաւոր թաղանթին այտումն կը պատճառէ, և այս թաղանթին երեսին վրայ արիւնախառն գոլորշի մը գոյանալով, ծնծակէն դուրս կելլայ, այս արեան հետ՝ արգանդին մէջ լուծուած ձուոյն կտորուանքն ալ կարտաքսուին :

Հնդկաստանի մէջ՝ արու ներքինեաց տեղ գործածուելու համար՝ ձուամաններնին հանելով մաշուած կանայք, այս գործողութենէն անմիջապէս ետքը դաշտանի հոսումէն կը դադրին :

Այն անդամազննիինք, որք կը հաստատեն թէ

իւրաքանչիւր ձուամանին մէջ 18—20 ձու կը գըտնուի, շատ կը սխալին վասնզի ըստ ծանուցեալ օրինաց ամսական ձուածութեան, կին մը եթէ իւրաքանչիւր ձուամանին մէջ 20, այսինքն ընդամենը 40 ձու ունենայ, անտարակոյս ամուլ պիտի ըլլայ 40 դաշտանի հոսումէն ետքը, որ է յարբունս հասնելէն երեք տարի և չորս ամիս ետքը։ Այս՝ խիստ յայտնի սխալմունք մ՚ է։ Ձուամանը գեղձակերպ գործարան մ՚է, որնոր իւր պաշտօնը միւս գեղձերուն նման ճշտիւ կը կատարէ, հասուն և ձուամանէն բաժնուած ձուերուն տեղ՝ կնոջ 'ի բնէ ստացած պտղաբերութեան բոլոր շրջանին մէջ ուրիշներ կը գոյանան ու կարտադրուին։

Դաշտանի իւրաքանչիւր հոսման ատեն կանանց աչուըները կապուտակածիր և աղօտ կըլլան, անոնց գոյնը և մազերը նուազ փայլուն կըլլան, իրենց ազդելիութիւնը մեծ կըլլայ. անանկ որ պզտիկ ընդդիմութիւն մի զիրենք անհանգիստ և անհամբեր կընէ։ Շուտ կը բարկանան, շուտ կը տխրին և հանգիստ կը սիրեն։ Ահա այս զանազան պատճառներուն համար պարտի այրը այն ատեն իւր ուշադրութիւնը և ակնածութիւնը կրկնապատկել կնոջը վրայ. վասնզի ընդդիմութիւնք, վիշտք կրնան դաշտանի հոսումը դադրեցնել, որով և առողջութեան վնասել։

Կինը իւր դաշտանի հոսումէն մէկ քանի օր առաջ ընդհանրապէս կըզգայ ցանկական փափաքը. բնութիւնը այսպէս կամեցած է. վասնզի արգասաւորութեան համար ամսոյն ամենէն յարմար և նպաստաւոր միջոցը այս ժամանակին է։ Երբ դաշտանը սկսի հոսիլ, այս զգայումը կարծես կը մարի և

ձեւամբ մը բոլորովին դադրելէն վերջը նորէն կսկսի ։ Արգանդին մէջ պատահած գրգռումը՝ զուգաւորութեան հարկէն աւելի հանգստեան հարկը ընդհանրապէս զգալ կուտայ իրենց ․ ի վերայ այսր ամենայնի կանանց բնական է որ դաշտանի հասման քաջոր առողջութեան ատեն իրենց վիճակը կը ծածկեն և էրիկ մարդէ հեռանալ կը ճգնին ։

Ամուսնական արեան որպիսութիւնը՝ երակաց մէջ շրջաբերուածին գրեթէ նմանն է, միայն անոր մէջի ներդաշնակ հիւթը քիչ մը նուազ է, ինչպէս որ քախինք ․ այս հիւթին անդ արգանդին ցնցուղին մաղանը կը փոխադրուի ։ Իմացականութիւնը կրնայ զգացնել մեզ թէ սաղմը սնուցանող արեան մէջ երբեք վնասակար որպիսութիւն մը չկրնար գտնուիլ ․ և ընդհանրապէս կարծուածին համաձայն պէտք էր որ շատ մը կանայք իրենց ամսական արեան հասման ատեն, կաթը, շարաւները, համեմները եւ թթուեցուցանէին և կտրէին ․ և ինչպէս որ ռամկական հաւատալեաց մէջ միշտ հեռաւոր ճշմարտութիւններ կը գտնուին, վասնորոյ ճշմարտապէս կրնայ ըսուիլ թէ կըգտնուին այնպիսի կանայք, որ յիշեալ յատկութիւնը ունենան և խիստ երեւելի բժիշկներ ալ զայն ստուգեցին ։ Օրդարեւ, կ'ըսէ Վելբօ, ինչու համար կնոջ մը դաշտանի ատեն դուրս տուած զարշահոտ ապականութիւնները չի պիտի կրնան կաթի և ուրիշ համեմանաց նման՝ անջատուելու դիւրին եղող հեղուկները կտրել ։ Ցերաւի ստոյգ է, որ աղտեղի կանանց ծննդական գործարանաց մէջ քիչ կամ շատ երկար ատեն կեցած արիւնը աւելի կամ նուազ վնասակար յատկութիւններ կրնայ ստանալ ․ Դաշտանի հասման ․ ատեն. նոյն՝ իսկ ամենամաքուր

կանանց հետ զուգաւորութիւն ընելով խիստ շատ անգամ մաղասակայթութեան և սերմնակայթութեան ախտից հանդիպած են. այս ժամանակի զուգաւորութիւնը հակառողջական է և շատ մարդիկ դաշտանաւոր կնիկներէն կը հեռանան. միմիայն դարշելի ցանկասիրութեամբ և յոռի տենչանօք վառուած մարդիկ այս տեսակ կանանց կը մօտենան: Հին քաղաքականութեան մէջ օրէնք դրուած էր որ կանայք իրենց դաշտանի արիւնը առանձնութեան մէջ կանցնէին: Մովսէս ամենախիստ պատիժներ սահմանեց դաշտանաւոր կանանց մօտեցողներուն դէմ: Արեւելքի մէջ տակաւին այսօր դաշտանաւոր կինը փակարգել կը լինի, և Հարաւային Ափրիկէի շատ գաւառաց մէջ, ժողովրդեան կանայք պարտաւորեալ են դաշտանի ատեն նշան մը կրելու, որպէս զի արք զայն տեսնալով իրենցմէ հեռանան:

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ԴԱՇՏԱՆԻ ԱՆԿԱՐԳՈՒԹԻՒՆ. — ԱՆԴԱՇՏԱՆՈՒԹԻՒՆ. ԴԺՈՒԱՐԱԴԱՇՏԱՆՈՒԹԻՒՆ — ԽՈՏՈՐՈՒՄՆ ԴԱՇՏԱՆԻ

Դաշտանի հոսումը միշտ բազմաթիւ անկանոնութեանց ենթակայ է, որոնք միշտ վնասակար են առողջութեան և արգասաւորութեան: Խոտորելով դաշտանը կրնայ ելլալ քթէն, բերնէն, արտասուաց ծակերէն, մէկ կամ երկու ծիծերուն պտկունքէն, մատին ծայրէն, սրբանէն և մարմնոյն ուրիշ

անդամներէն ։ Աշխարհասէր կանանց ոմանց քով այս օրէնքը խիստ անկանոնաբար կը հաստատուի, ոմանց քով ալ՝ սկսելէն անմիջապէս ետքը գրեթէ կը դադրի. և 10 կամ 15 օրէն ետքը դարձեալ կերեւայ. վերջապէս կան այնպիսի կանայք, որ խիստ քիչ արիւն կուտան. ուրիշներ ալ կան, որ խիստ շատ արիւն կը կորսնցնեն. այս վերջիններուն մէջ կը գտնուին նաև այնպիսի կանայք, որք իրենց արեան կորստեանը պատճառաւ անհնարին տկարութեան մէջ կիյնան ։ Բոլոր այս անկարգութիւնները գրեթէ առանց բացառութեան այն կանանց վրայ կը պատահին, որոնք անդադար՝ երեկոյթներու, պարերու կերթան թատրոն կը յաճախեն, որոնք թէյ, սուրճ և ուրիշ տաք ըմպելիներ չափազանց կը գործածեն, որոնց ցորեկը կը քնանան և գիշերը կապրին ։ Այս անկանոնութիւնները գիւղացի կանանց ընդհանրապէս անծանօթ են և անոնք երեւելի քաղաքաց կնիկներէն աւելի առողջագոյն կեանք մը կանցնեն ։ Կանայք պարտին միշտ յիշել այս առածը թէ, դաշտանի հոսման կանոնաւորութիւնը առողջութեան ջերմաչափն և ծննդաբերութեան ատակութեան գուշակն է ։ Ուստի այս ամսաշրջան արեան անկանոնութիւնը, խառնուրդը և կամ բոլորովին դադարումը միշտ վտանգաւոր նշաններ են, որոց անմիջապէս բժշկութիւնը անհրաժեշտ կարեւոր է ։

Դաշտանի հոսման անկանոնութեանց իբր սովորական պատճառք հետեւեալները կը նշանակենք. գէշ որպիսութեամբ, տաքցնող կամ տկարացնող կերակուրք. ոգելից ըմպելեաց, քացախի, թէյի, սուրճի, տհաս պտղոց, լուծիչ և դաշտանամուղ դեղերու չարաչար գործածութիւնք. ցանկական,

-հեշտութեանց, պարզ և հեծեալվարժի չափազանցու-թիւնք. բարեխառնութեան յանկարծակի փոփո-խութիւնք. քիչ կամ շատ քրտնած ատեն պաղպա-ղակի կամ առուցեալ ըմպելեաց կեր և ումպ, ոտ-քերը պաղ ջրոյ մէջ դնելը. տխուր կիրքերը, խիստ բարոյական յուզմունք, եւն. եւն. եւն:

Երբ կին մը իւր դաշտանի հոսման մէջ յապա-ղումն, անկանոնութիւն կամ անկարգութիւն նշմա-րէ, իւր առողջութեանը ամենամեծ օգտին համար. կարելի եղածին չափ շուտ պարտի այդ պակասու-թեան առաջքն առնուլ և չըսպասել հետագայ ամ-սոյն, ինչպէս որ շատ կիներ կընեն, յուսալով որ բնութիւնը ըստ ինքեան զայն կը դարմանէ: Խելա-ցի և խոհեմ կանայք պարտին այս պարագայիս մէջ իրենց բժշկացը խորհուրդ հարցնել և անվրէպ կա-տարել անոնց պատուէրները:

Դաշտանի հոսման ընթացքը իր բնական կանոնա-ւորութեան մէջ հաստատելու համար տեղը ըլլա-լիք բժշկական ամեն դարմանները առողջարանա-կան գործոյս մէջ ամբողջապէս չը կրնալ դրուելով, միմիայն բժշկութեան ամենայն յաջողութեամբ 'ի գործ դրած դարմանը կը նշանակենք:

Դաշտանի հոսումը սովորաբար կատարուած ժա-մանակէն մէկ քանի օր առաջ, ծնծակին վեց պզտիկ տզրուկ կը փակցնեն, իւրաքանչիւր շրթանց այսինքն ներքին կողման երեք հատ: Տզրուկները ինկալուն պէս, անոնց բացած ծակերը պզտիկ սնկադունդով մը կը գոցեն, որպէսզի արեան հոսումը բոլորովին դադրի: Ետոյ ազդրերուն վերին և ներքին կող-ման վրայ մանանեխոյ հատի ալիւրով շինուած տա-ծանկայս կը կպցնեն մինչև որ մորթը աղէկ մը կար-

մէրի · վերջապէս արգանդի ցնցուղին մէջ հեռանե-եալ գրգռիչ դեղով գրէթէ կենեն :

Հեղուկ անուշադր . . . . . . . . Ա կրմ
Գարիի պաղած խարշանջուր . . . . 250 »

Հազիւ կը պատահի որ այս դարմանը երկու կամ երեք օր շարունակելով դաշտանի հոսման կանոնաւորութիւնը չը հաստատուի և երբեմն կը պատահի որ նոյն օրը երեւան կելնէ :

Շատ կիներ մանաւանդ մատղաշ աղջիկներ տզրուկ փակցնելու կը դժկամակին կամ կը խրտչին, վասնորոյ անոնք կրնան 30 աստիճան տաքութեամբ նստալոգանք գործածել, ծնծակին քնցուածքը շփել, ոտքերնին մանանխոյ ջուրը դնել, ազդրերուն ներքին կողման վրայ շնչահան սրուակներ փակցնել, գրգռիչ կամ լուծիչ դեղեր և գրէխներ գործածել, վերջապէս եռացեալ ջրոյ շոգին արգանդի ցնցուղին մէջ ընդունիլ և անդամը խարուկի դէմ բռնել, որպէսզի գրգռի : Այս զանազան կերպերը կրնան վերահաստատել դաշտանի կանոնաւորութիւնը, և եթէ այս կերպերէն օգուտ չը քաղուի, վերոյիշեալ միջոցին դիմելու է :

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ·

## ԴԱՇՏԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՏԵՒՈՂՈՒԹԻՒՆԸ

Ամբողջ Եւրոպայի և Ասիայի բարեխառն գօտւոյ կիներուն դաշտանաւորութեան միջին տեւողութիւնն է 28—30 տարի : Այս դաշտանաւո-

ծնողութիւնը 13—18 տարեկան հասակէն կըսկսի և 40—50 տարեկան հասակին մէջ կը դադրի. ուստի իրենց արգասաւորելութիւնն ալ 25—30 տարի տեւելու սահմանուած է։ Այս չափորոշումը մեր-ձաւորական է և կրնայ բազմաթիւ բացառութիւններ ունենալ։

Աւելի հեռուն՝ մասնաւոր գլխոյ մէջ պիտի խօսինք թէ ինչ պէտք է հասկնալ, ծերական հասակ և շրջման հասակ ըսելով. այս չափը միայն կըսենք. հոս թէ այս հասակը այնչափ վտանգաւոր և վըշտալից չ՚է, որչափ որ շատ բժիշկներ կը կարծեն. մենք փորձառութեամբ իրաւունք ունինք նաեւ մտածելու թէ պատանեկութենէ արբունքի անցնելու ժամանակը շրջման հասակէն աւելի ահաւոր է։

Ստոյգ է որ գիւղացի կանանց համար շրջման հասակը անվտանգ կանցնի, և եթէ քաղաքներու կանանց համար ասոր հակառակը կը պատահի, պատճառը ուրիշ բան չէ բայց միայն քաղաքակըրթութեան զեղծումները։ — Այս հասակը հասնող կանայք այնչափ քիչ վախնալու են, որչափ որ այս հասակէն առաջ, աւելի կանոնաւոր կեանք անցուցին և այս հասակէն առաջ անցուցած կենաց կանոնաւորութեանը և մայր ըլլալով բնութեան օրինաց համաձայն վարուելնուն չափ նուազ երկիւղ ունենալու են։ Առողջապահական մէկ քանի նախազգուշութիւններ բաւական են այս հասակին վտանգաց առաջքն առնուլ, ինչպէս արեան յորդութիւնն արգիլող, քիչ նիւթաւոր և մեղմ կերակուրք, շատ մարմնամարզութիւնք, գիւղագնացութիւնք, ժամանակ ժամանակ լոգանք, ցանկական հեշտութիւններէ և ծննդական զգայականութիւնը գրգռող ա-

մէն տեսակ բաներէ հեռաւորութիւն, վերջապէս արեան յորդութեան ատեն արիւն հանել ։ Աւելի մանրամասն տեղեկութիւն ստանալու համար գրքիս ԼԴ. գլուխը կարդայ ։



## ԳԼՈՒԽ Ժ.

## ԹԱՔՈՒՆ ՅԱՐԴԱՐԱՆՔ

Հին առած մը կըսէ, «կանանց բարեկարգութիւնը, տնտեսութիւնը և մաքրութիւնը հարստութենէ աւելի կ'արժէ» աս կատարելապէս ճըշմարիտ է ։

Մաքրութիւնը միմիայն արտաքին կերպարանքին այսինքն հագուստներու վրայ ըլլալու չէ այլ մորթոյ մակերեւոյթը, մարմնոյն զանազան ծալքերը և մանաւանդ կնոջ ծննդական անդամները խիստ մեծ խնամք և մաքրութիւն կը պահանջեն ։ Արգանդի ցնցուղը և ծնծակը անդադար խոնաւցնող ճարպական հիւթերը և մաղասները գարշահոտ ամենևին պիտի չինէին եթէ հանապազօրեայ լուացմամբ չը մաքրուէին ։ Այս անդամոց աղտեղութիւնը՝ այրը իւր կնոջ քովէն հեռացնելու պատճառ կըլլայ, իսկ ընդհակառակը անոնց թարմութիւնը ու մաքրութիւնը գրգիռ մ'են որ այրը իր կնոջը քով կը մօտեցնէ ։

Բնական ջուրը կամ համեմատաւոր ոգելից հեղուկներէ մէկ քանի կաթիլ խառնուած ջուրերը ինչպէս Քոլոնիայի ճշմարիտ ջուրը և լաւագոյն Պէնզուէնեան ալքոլը, այս լուացմանց համար յարմար դեղեր են ։ Այն կանայք որ կը փափաքին իրենց ծննդական

անդամոց թարմութիւնը յարատեւ պահել ։ Թէ՛ զգուշանան անդամացուցիչ ջուրեր, կուսական կաթեր և զարդարանաց քացախներ գործածել, որոնց ազդեցութիւնը խիստ և խիստ վնասակար է. վասնզի ծնծակային ցնցուղին մազասուր թաղանթը կը չորնայ, կը կարծրանայ, փոքր շրթունքները իրենց վարդագոյն գեղեցկութիւնը կը կորսնցնեն և կապարեայ գոյն մը կառնուն ։

Հին ազգերը և մանաւանդ այսօր Արեւելցիք սեռական մաքրութիւնը կրօնական հաւատալեաց մէջ դասակարգած են. և իրենց այս մաքրութեանը պատճառաւ է որ ազատ են այն տխուր հիւանդութիւններէ, որոնք այնչափ 'երկայն ատեն արեւմտեան ազգերը չարչարեցին ։

Ճերմակ դաշտանի հիւանդութիւնը ծննդական անդամոց կորովութեանը և թարմութեանը ամենամեծ թշնամին է ; այս ախտը զանոնք կընդլայնէ, կը թուլացնէ և կը գեղնցնէ. 'ի վերայ այսր ամենայնի ամբողջ գործարանը կը տկարացնէ և կը թառամեցնէ ։ Կին մը չը կրնար շուտով ազատիլ այս գարշելի հիւանդութենէն, որնոր դրեթէ միշտ իւր ամուսինը իրմէ կը հեռացնէ և ուրիշ սիրոյ կ'առաջնորդէ ։ Սակայն եթէ ծննդաբերութեամբ կամ ստէպ զուգաւորութեամբ ծնծակային անցքը ընդլայնի, հետեւեալ ջուրով լուացումն և խղով օծումն կը պատուիրենք ։

## ՊՆԴԻՉ ՋՈՒՐ

| | | |
|---|---|---|
| Երկաթամուղ՝ գաղտիկոնի ջուր . . | 155 | կրմ |
| Թանին . . . . . . . . . . . . . | 5 | » |
| Երրնաւիչ համեմաւոր . . . . . . . | 25 | » |

Այս ջուրով անդամը վայրկեան մը լուալու է և նուրբ լաթերով զայն սրբելէն վերջը հետեւեալ իւղով օծանելու է :

Քօլտ քրէմ . . . . . . . . . . . . . 50 կրմ
Թանէն . . . . . . . . . . . . . . 4 »
Վարդեջուր . . . . . . . . . . . . . 25 »

Թանէնը վարդեջուրին հետ խառնելով լի՛ց անկանի մը մէջ և պարտխ աղէկ մը լեսուլ, մինչեւ որ լուծուի, յետոյ քօլտ քրէմը աւելցուր և լաւ մը խառնէ, որպէսզի խառնուրդին մէջ թանձր մաս չմնալով լաւ օծանելի մ'ըլլայ :

Ճերմակ դաշտանի հիւանդութեանց ծննդական անդամները ստէպ թուլանալու ըլլան, այն ատեն ԺԸ. գլխուն մէջ նշանակուած առողջարանական դեղոյն հետեւիլ կարեւոր է :

## ԳԱՂՏՆԻՔ ՓՕՓԷԻ

Կայսրուհին փօփէ, որ իւր տարփանաց և պաճուճանաց պատճառաւ խիստ երեւելի էր, որ կաթով լուացուելու համար հինգ հարիւր մատակ էշերու հօտով մը գիւղագնացութիւն կընէր, միշտ կոյս երեւնալու համար հետեւեալ օգտաւէտ կերպը կը գործածէր :

Պենզօյինկեան ալգուլին մէկ քանի կաթիլով ճերմակցած ջրով լուա՛ անդամը, յետոյ նուրբ լաթերով չորցուր զայն, և օսլայի փոշի ցանէ ներքին կողմը : Արդիւնքը խիստ նշանաւոր է :

Կանա՛յք, մեր նշանակած զանազան դարմանները ճշդիւ և խնամոտութեամբ գործածեցէ՛ք, և պիտի տեսնաք թէ ինչպէս մերթին ապաքինած զօրութիւն

Կ՚ունին թուլացեալ՝ փակիչ—դնդերները անդամերու. բայց չափազանցութիւն մի՛ ընէք, վասնզի չարաչար կիրառութիւնք ամեն բան կը մաշեցնեն և կ՚ապականեն ։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

## ԵՐԿՈՒ ԱՄՈՒՍՆՈՅ ՄԷՋ ԿԱԶՄԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՔ

### ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ՍԵՌԱԿԱՆ ՄԻԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԶՈՒԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Բնութիւնը սեռական յարաբերութեանց մէջ հեշտութեան անդիմադրելի հրապոյրը դրած է, որպէսզի մէկ սեռը դէպ 'ի միւսը մղող աւիւնը երկարատեւ ընէ ու պահէ, վասնզի այս զօրաւոր աւեան վրայ կը կայանայ ցեղական տեւողութիւնը ։

Իմաստուն մարդը՝ զուգաւորութիւնը՝ միմիայն հեշտութեան ընչին նպատակը կատարելու իբր միակ միջոց չճանչնար, այլ նաեւ կը տեսնայ անոր մէջ ուրիշ աւելի կարեւոր նպատակ մ՚ալ, այսինքն սերունդը ։ Ահա այս նպատակին վրայ պարտին հաստատել իրենց ուշադրութիւն ամենայն մարդիկ, որք կը փափաքին իրենց զաւակացը թույն, զօրութեանը և գեղեցկութեանը մէջ նըմանութեան ա-

պտղայ մը պատրաստել իրենց։ Ընտանեաց և մարդ-կային ցեղին համար այսչափ երջանկաբեր ըլլալով այս արդիւնքը մեծագոյն մասամբ հարց և մարց առողջապահական վարմունքէն կախումն ունի։

Մեքենագործութեան, ջուլհակագործութեան անունները՝ ծնիչ գործողութիւնը կատարելու համար երկու սեռե-րուն մտերմաբար միաւորութեանը գրուած են։ Այս գործողութեան մէջ՝ առն պաշտօնն է արգա-սաւորիչ հեղուկը հոսելու յատկացեալ գործարանը ներմուծել և կնոջ պաշտօնն է զայն ընդունիլ։ Ծննդական գործարանաց հիւանդութեանց ժամա-նակէն 'ի զատ՝ զուգաւորութիւնը միշտ հեշտալիր զգացմամբ կը կատարուի։ Այս գործողութեան ա-տեն այրը ջղային զօրութեան մեծ կորուստ կընէ, և սերմը ցայտեցնելու ատեն սաստիկ ստնգանք կը-կրէ, իսկ կնոջ կորուստը նուազ է, և ստնգանքը ա-ւելի երկարատեւ։

Զուգաւորութիւնը արդասաւոր ըլլալու համար պէտք է որ առնի անդամը կանգուն ըլլայ, որուն մեքենականութեանը վրայ արդէն խօսած ենք. կանգման նպատակն է տալ առնանդամին՝ պնդու-թիւն և կորովութիւն, որք հարկաւոր են անոր՝ կնոջ գործարանին մէջ մտած ատեն դէմն եղող արգելք-ները բեկելու, մղելու կամ մեկդի ընելու համար։ Ներմուծութեանն ետքը, առնի անդամին գրգռու-թիւնը ծննդական գործարանին զանազան մասանցը մէջ կը տարածի. ամորձիները աւելի առատու-թեամբ ծննդագործ հեղուկը կը մատակարարեն և զայն սերմնական փամփուշտներուն մէջ կ'ուղարկեն. ասոնք կծկուելով հեղուկը ցայտեցուցիչ անցքերուն մէջ կը հոսեցնեն, որոնք նաև իրենց կարգին՝ միզա-

կան անցքին մէջ կը ցայտեցնեն։ Այս վայկենիս մէջ՝ բորբոքը վերին աստիճանի հասած է. Ջղային ձըգտումներ կցկտուր ցայտմամբ միջանցքէն դուրս կը նետեն արգասաւորիչ հեղուկը, որուն մէկ մասը արգանդի փողէն կը ծծուի։ Ցայտեցումը լմնալէն ետքը արական անդամուն գրգռութիւնը կը դադրի. արեան հաւաքումը քիչ քիչ կը ցրուի, առնի գործարանը նախնի թուլութեան կը վերածուի, և առն պաշտօնն ալ կը լրանայ։ Զօրութեանց տկարութիւն մը, քաղցր թուլութիւն մը կը յաջորդէ սիրոյ յուզմանց և ցանկական հեղեղաց մէջ հեշտութիւնը քիչ մ'ատեն կը շիջանի։ Կարծես մարդուս կենաց ջահին մէկ մասը իր ծննդագործ հեղուկին հետ կնոջ արգանդը փոխադրուեցաւ, հոն ուրիշ նոր կեանք մ'արծարծելու։

Կնոջ ծննդական գործարաններն ալ գրգռման միևնոյն երևոյթները աւելի ընդարձակօրէն կը ներկայացնէն. կնաքիրը կուռենայ և կը կանգնի, գեղձերը և պզտիկ շրթունքները կ'այտնուն, արգանդի ցնցուղին կանգնիչ հիւսկէնը կը շարժի, ծնծակային արգանդի մաղասապուր թաղանթը առնի անդամուն շփմամբը գրգռուելով, գեղձերուն հետ շաղեալ մածանող հիւթ մը կ'անջատէ, որպէսզի անցքը աւելի սահուն ըլլայ։ Այս հիւթը երբեմն խիստ առատութեամբ և կաթնանման հեղուկի մը պէս ցայտելով, մարդկային կազմագիտութեան անտեղեակ եղող անձանց կարծել տուաւ որ կինն ալ ցայտեցուցիչ գործարան մ'ունի. բայց այս կարծիքը սխալ է, վասնզի կնոջ ծննդական յօրինուածքը ոչ սերմնական փամփուշտը և ոչ ցայտեցուցիչ անցքեր չունի։

Զուգաւորութեան ատեն կնոջ զգացած հեշտութիւնը մեծագոյն մասամբ կնապիրքին վրայ եղած խաղտումէն առաջ կուգայ. արգանդի ցնցումին և փոքր շրթանց կանգնիչ հիւսկէնին վրայ գործադրուած շփումներն ալ անոր քանակութիւնը աւելցնելու կ'օգնեն. Հեշտական տենդանքը կնոջ քով նուազ սաստիկ, իսկ առն քով աւելի սաստիկ է, սակայն ատոր փոխարէն անոր տեւողութիւնը կնոջ քով աւելի երկարատեւ է: Կան կանայք, որք ամենափոքրր չօշափմամբ կամ մերձաւորութեամբ իսկոյն հեշտութեամբ կըդգանդաշեն, կան ալ որ երկար շփըփանք կը պահանջեն ցանկական տենդանքը զգալու համար: Զկոտ. 'և նուանգուն երեւակայութեամբ կիները առաջիններէն են. իսկ երկրորդներէն են այն կիները, որոնք աւշաւոր, գէր և նուազ ազդեցական ջղերու յօրինուածքի տէր են: Այրոյ հեշտութեան սաստիկ եռանդը կամ սաստիկ անզգայութիւնը երկու չափազանցութիւններ են, որք հաւասարապէս կը վնասեն արգասաւորութեան, որոնց վրայ ուրիշ գլխոյ մը մէջ պիտի խօսինք:

Զուգաւորական կարողութիւնը և խիղճը, զանազան տեղերու, հասակներու, կազմուածքի կամ խառնուածքի և կլիմաներու մէջ զանազան համեմատութիւններ կառանան:

Թռչունները կենդանածիններէն աւելի ջերմ և եռանդնոտ են: Լաւ աքաղաղ մը մէկ օրուան մէջ 50—60 անգամ կրնայ մարեաց վրայ ելնել — աղաւնին ժամը 15 անգամ — ճնճղուկը 20 անգամ. — մինչդեռ կապիկը և նոխազը, որոնք ամեն կենդանիներէն աւելի հեշտասէր են, մէկ օրուան կամ որոշեալ միջոցներու մէջ՝ հինգ, վեց կամ ութը անգա-

մէն աւելի չեն զուգաւորիր իրենց էգերուն հետ։ Մարդը, որուն բնազդումը կարծես երեւակայութեան խղճմտանութեան տակ կընկճի, մարդը փոխանակ բնութեան օրինաց հետեւելու, իրեն խառնուածքին համ. կազմուածքին համեմատ նշանակուած սահմանը կ'անցնի եւ խիստ շատ անգամ մանաւանդ երիտասարդութեան տենն՝ ցանկական հեշտութիւնները չարաչար կը վարէ։ Այս զեղծումները միշտ ցաւալի հերպով այն անձին կազմուածքին եւ բարոյականին վրայ կը ծանրանան եւ անոր ծնիչ կարողութեան տեւողութիւնը կը կարճեցնեն։ Ծննդական յօրինուածքը ընդհանուր կենաց հետ սերտիւ կապուած ըլլալով, իսկոյն ամբողջ կազմուածքին վրայ կ'ազդէ, վասն որոյ այն անձինք, որոնց ծննդական գործարանները ապականուած եւ մաշած են, մարմնով եւ իմացականութեամբ ալ վատթարացած եւ ապականած են։ Խիստ յարմար կուգայ իրենց՝ Թովմասի աս տաղանաւորը։

Տեսէ՛ք սա կմախներ,
Ոսկեզարդ էակներ,
Որք դանդաղ քայլերով
Հազիւ հազ շարժելով,
Սպառեալ մարմնոց՝
Տխուր մեռելոց,
Յար քարշեն ընդ երեր
Դողդոջուն բեկորներ։

Ի տժգոյն ճակատուն,
Զոր կնճռեաց մեղկութիւն
Դրոշմեալ տեսանի
Վաղահաս ծերութիւն։
Ո՞վ նոցա ճիչդ մահուան
Կանխահաս գերեզման
Կը բերէ յարաժամ,
Ո՛չ թէ ձեռն Աստղկան։

Մեր կազմութեան ուրիշ պաշտօններուն նման ծննդական պաշտօնն ալ առողջաբանական օրինաց

ենթակայ ըլլալու է, եթէ կ՚ուզենք զանոնք անարատ և երկարատեւ պահել ։ Այս օրինաց ստէպ անհնազանդութիւնք խոկոյն գործարանը կ՚աղաւանեն և անոր զօրութիւնը կը կորուսանեն ։

Մարդուս սեռական կեանքը երեք ժամանակ կը պարունակէ ․ — սեռական նախապատրաստութեան ժամանակն է, որնոր տղայութենէ կսկսի և կերթայ մինչև քսան և մէկերորդ տարի․-Բ․ը սեռական հասունութեան ժամանակն է, որնոր քսան և մէկ տարիէն կսկսի և կը հասնի մինչև քառասուն կամ քառասուն և հինգ տարին․-Գ․ը սեռական անկման ժամանակը, որնոր քառասուն կամ կատարելապէս քառասուն և հինգ տարիէն կսկսի և վախճան տարին կը վերջանայ ։ Աւասիկ անոնք, որ առջի երկու ժամանակներուն մէջ ինքզինքնին աղէկ կառավարել գիտնան, երրորդին մէջ ալ նշանաւոր կարողութիւն մը կը պահեն ։

Ամուսնութեան և իր պտուղը համար մեծ կարեւորութիւն ունեցող՝ ծննդական գործարանաց և անոնց պաշտօնին վերաբերեալ առողջապահական խնդրոյն պարագայ բժիշկք և կազմագէտք հետեւեալ կանոնները սահմանեցին ։

Քսանէն մինչև եռեսուն տարեկան հասակին մէջ ամուսնացեալ մարդը՝ շաբաթը երկուքէն մինչև չորս անգամ կրնայ իր ցանկական իրաւունքը գործադրել, միշտ օր մը միջոց ձգելով ։ Մէկ օրուան մէջ հինգ կամ վեց անգամ զուգաւորութիւն ընելը, ինչպէս շատ մը երիտասարդք կընեն, ապագային համար ինքզինքնին միշտ պատրաստել է ։ Եռեսունէն մինչև քառասուն տարեկան հասակը՝ մարդ շաբաթը երկու անգամ գործադրելու է զայն։

Քառասունէն մինչեւ յիսուն, — մէկ անգամ ։ Յիսունէն մինչեւ վաթսուն, — տասն և հինգ օրը անգամ մը և աւելի նուազ եթէ անոր պէտքը չզգացուեր ։

Երկրորդ ծերութեան համար ժուժկալութիւնը կարեւոր հարկ մ'է. վաթսնամեանք դուն ուրէք պիտի նուիրեն իրենց գծուծ ընծան Աստղկան տաճարին, վասնզի կենաց այս ժամանակին մէջ սերմնական հեղուկին արտադրութիւնը խիստ դժուար և ծանր է ։ Եօթանասնամեանք զուգաւորութենէ բոլորովին հրաժարելու են, վասնզի անկէ պատճառած ջղային զօրութեան ամենամեծ կորուստը՝ իրենց առողջութիւնը միշտ վնասող հալ ու մաշի մը մէջ կը մղէ զիրենք ։ Պարտին զգոյշ կենալ պագշոտ երեւակայութենէ մը առաջ եկած պատիր ըղձից դեմ և ճշմարտապէս հաճողուելու են թէ տկար ցայտեցուցման մը համար. որնոր շատ ատեն ցաւ կը պատճառէ քան թէ հեշտութիւն, իրենց առողջութիւնը կը վնասեն և կեանքերնին կը կարճեցնեն ։ Զուգաւորութեան ատեն կամ անմիջապէս ետքը մեռնող ծերոց օրինակները հազուագիւտ չեն ։

Կանանց համար կարեւոր եղած առողջարանական սկզբունքներնալ գրեթէ վերոգրելոց հետ նոյն են, բաց ի հասակի և կազմուածքի վերաբերեալ մէկ քանի հանգամանաց ։ Թեպէտ և կնոջ՝ ցանկական գործողութիւնը այրէն աւելի է կարատեւ և առաւել կրկնութեամբ կրնայ գործադրել, սակայն պարտի ժուժկալ ըլլալ այս մասին, վասնզի գրեթէ միմիայն այս ժուժկալութիւնն է որ իւր հրապուրանաց կատարմութիւնը անարատ կը պահէ. զորս չա-

փաղանցութիւնք անտարակոյս ոգին ապականեն: Առանձնակի հեշտութիւնք, որոց կը հետեւին իրենց ամուսինէն դժգոհ եղող խել մը կանայք. տեսակ մը վտանգաւոր վարժութիւն է, որ զիրենք ջըլատէ և ճերմակ դաշտանի հիւանդութեան. ծննդական գործարանաց գրգռման և այս գործարանաց ջղային տկարութեան կը նախապատրաստէ: Խոհեմ կին մը միշտ պարտի զգոյշ ըլլալ իւր ամուսնոյն գործադրածէն և երբեք անկէ աւելին չըպահանջել: Երբ ուժեղ այր մը իւր ծննդական կարողութիւնը չարաչար գործածէ, իմաստուն կնոջ պարտաւորութիւնն է ամեն ջանք ՚ի գործ դնել իւր ամուսնոյն եռանդը չափաւորելու, չափազանց աշխոյժը մարելու և անոր հասկցնելու համար թէ ցանկական չափազանցութիւնք վնասակար են, ոչ միայն իւր այրական կարողութեանց պահպանութեանը, այլ նաև տկարութեան առեն սերած տղայոց առողջութեանը:

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ՑՈՒՑԱԿ ԾՆՆԴԱԿԱՆ ԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՆԿՄԱՆ ԸՍՏ ԿԱԶՄԱԳԻՏԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՑ ԿԵՆԱՑ:

ՏՂԱՅՈՒԹԻՒՆ: Տղայութեան ժամանակ ծննդական գործարանները կը զարգանան և անշարժ կը կենան, եթէ ամօթալից շօշափմունք անոր զգայականութիւնը չը զարթուցանեն:

**ՊԱՏԱՆԵԿՈՒԹԻՒՆ** ։ 8էն մինչեւ 14 տարի սեռական գործարանները միշտ դէպ 'ի կատարելութիւն կը դիմեն, առնանդամը երբեմն երբեմն կը կանգնի, բայց տակաւին հեշտութիւն չզգացուիր եթէ մատղաշ տղայք և պատանեակք աւելի մեծերէն ուսնելով այս փափաքը չը զարթուցանեն և բնութեան կարգը խանգարելով անկէ առաջ չը քալեն ։ Այս ժամանակը կսկսի նաեւ ճէջ—մէ—նը, որոնց աղջկերին միաստովը յետնուղեղը կը զարգացընէ և որոնց այնչափ մատաղ զոհեր կանխաւ գերեզմանը կիջեցնէ ։ (Գործոյս զանազան տեղուանքը նշանակուած են գիջութեան ցաւալի հետեւութիւնները ։)

**ԱՐԲՈՒՆՔ**։ Այս ժամանակը կսկսի 15րդ տարին և կը վերջանայ 21 երորդ տարին ։ Ամորձիք թէպէտեւ իրենց կատարեալ զարգացումը տակաւին չեն հասած, սակայն կրնան անջատել սերմնական հեղուկը։ Աշխոյժք կը ծնանին, սեռական տեսութիւնք զանոնք կը գրգռէ, և անոնց ուժգնութիւնը կ'առաւելու, ուղղոյ ամենափոքր գրգռմամբ ծննդական անդամք կը բարձրանան, առնանդամը կը կանգնի։ Զափահաս պատանին իւր գործարանաց մէջ տեղի ունեցած գաղտնեաց անտեղեակ ըլլալով աննշան փափաքանաց որս եղած է, աղջկան կամ կնոջ ներկայութեանը կը դեղնի, կը կարմրի, կը դողայ, սիրտը կը տրոփէ ։ Քիչ ատենէն պիտի գիտնայ թէ այսոնք ինչու համար են ։ Իր սիրելու գեղեցկութիւնը կը տեսնայ և ահա յանկարծ սէրը իւր սիրտը կը վառէ, տոչորիչ հուր մ' իւր երակացը մէջ կը վազէ, բոլոր իւր խորհրդածութիւնները միշտ կը վերադառնան անոր վրայ, զոր ինքը կը պաշտէ ։

եալ է ՝ հաստատուն ՝ վիճակ մը ապահովելու կը ցանկուցանենն զինքը ։ Այս ժամանակիս մէջ մարդ պարտի կարելի եղածին չափ կարգաւորել իւր սիրոյ հեշտութիւնները , և միմիայն իւր պարապոյ ժամերը զոհել անոնց ՝ մանաւանդ երբ ընտանեաց հայր մ' է ։ Բոլոր քաղաքացիք պարտին այս հասակիս մէջ հայր ըլլալ ։ Միայն իւր կնոջ և ոչ թէ տարփածուի՝ մը բազկացը մէջ պիտի յագեցնէ իւր փափաքները շաբաթը մէկ և որ առաւելն է երկու անգամ ։ Եթէ իւր կինը այս կարգադրութիւնը չատ խիստ գտնայ , որնոր հազուադէպ է , պարտի որոշակի բացադրել անոր և հասկցնել իւր բռնած վարմունքին մտաւորական պատճառները և եթէ կինը այս իրաւացի պատճառները ընդունիլը մերժէ , վայ՝ այն էրիկ մարդուն ։ Իւր կինը ընտանիքի մայր չ'է , այլ ծննդական կրիւք կատղած Մեսաղինէ մը ։։

ԱՆԿՄԱՆ ՀԱՍԱԿ ։ 46 երրորդ տարիէն մինչեւ 55 երրորդ տարին ծննդական յօրինուածքը գործարանին չ'իշխէր . ամեն պիտոյք աւելի հանդարդ են . կանգնումը կսկսի տկարանալ և այս ժամանակիս վերջին տարիներուն մէջ թոյլ և կարճ տեւողութեամբ կըլլայ . անդամը՝ կանգնելու համար բարոյական և կազմական դարմաններ կը պահանջէ . վասնզի ամենափոքր զգուանք մը , ամենափոքր երկիւղ մը զայն իսկոյն կը խոնարհեցնէ ։ Մարդ այն ատեն իւր ընկերական կացութիւնը ստացած և ստացուածքն ալ ապահովուած ըլլալուն համար , կարելի եղածին չափ իւր կենաց աչունը վայելել կը ճգնի ։ Անոնք , որ պաղ չոտ երեւակայութիւն մը դեռ կը պահեն , իրենց՝ տարփածուներ կը վարձեն

և ինքզինքնին ծաղրել ու իրենց ստացուածքը սպառել կուտան ան· կանոնաց ձեւօք իսկ · որոց առջև կը յայտնուին իրենց ծննդական անկարողութիւնը ։ խօսքերնիս ամուրեաց համար է · վասնզի ամուսնացեալ մարդը ՝ կին մը և ընտանիք մ' ունեցող մարդը չերթար որոնել ուրիշ տեղ ինչ որ իւր քովը ունի ։

ԱՌԱՋԻՆ ՇԵՐՈՒԹԻՒՆ ։ Ահա ցաւոց հասակը՝ որնոր 57 երրորդ տարիէն կսկսի և 65 երրորդ տարին կը վերջանայ․ ծննդական պաշտօնները երթալով կը տկարանան․ մարդ խիստ քիչ անգամ անոր պէտքը կզգայ և իրեն խիստ օգտակար է զանոնք հեշտական մտածութեամբ չը գրգռելը ․ թո՛ղ աղեկ գիտնայ որ այս ժամանակի ըրած ամեն մէկ սեռական կորուստ իւր ամբողջ կազմութեանը վրայ կ'ազդէ և երկարատև բժշկուելու ջղային նեղութիւններ կը պատճառէ ։ Ոչ սակայն պարտի հեռանալ այնպիսի գործողութենէ մը՝ որ ալ իւր հասակին յարմար չ'է ։

ԵՐԿՐՈՐԴ ՇԵՐՈՒԹԻՒՆ ։ 65 երրորդ տարիէն կսկսի և կը վերջանայ մինչև զառամութիւն կամ մահ ։ Այս ժամանակը ցաւոց, հեծութեանց և հիւանդութեանց հասակն է․ մարդ ալ դադրած է ծննդականութենէ․ իւր մորթը խորշոմած է և իւր մազերը բոլորովին ճերմկցած են․ իւր մարմինը ամաց ծանրութեանը տակ ճնշուած է ՝ զգայարանք բթացած են բաց 'ի ճաշակելիքէն ՝ և ծննդական կազմուածքը ծիւրանալով զինքը զարթուցանելու բաւական զօրաւոր գրգռութիւններ չը կրնար գտնալ ։ Ամորձիք կաշիի նման կարծրացած են․ առնանդամին ծաւալը պակսած է ՝ արիւնն ալ չը

կրնար մնալ անոր խորշաւոր մարմնոյն մէջ և կանգնումը անկարելի կըլլայ. Ծեր մարդու մը քով եթէ քիչ մը ցանկական փափաք մնացած ունենայ, երևակայութենէ առաջ կուգայ. բայց անկարելի է զայն գոհ ընել. կեանքը երթալով կը նուազի և ամեն օր զինքը դէպ 'ի զառամութիւն, դէպ 'ի մահ կը մղէ:

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

## ԾՆՆԴԱԿԱՆ ԱՆԿՄԱՆ ՎՐԱՅ ԿՈՉՄԱԴԻՏԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՔ:

Ծննդական անկումը, ինչպէս որ ըսինք, 45 երրորդ տարիէն մինչև 50 երրորդ տարին կը պատահի. քիչ մ'առաջ քիչ մ'ետքը ըստ կազմութեան և բարք կամ չար վարուց անհատի ուրուք: Այրութեան ատեն կայմական սէրը՝ սերմնական ընդունարանաց փութեամբը բնականապէս կը գրգռուի. և ցանկական գործողութիւնք այն ատեն առողջութեան օգտակար կըլլայ: Անկման ատեն, ցանկական խթանը գրեթէ միշտ ուղեղը կը գրգռէ. բայց մարդ օրէ օր իւր ծննդական կարողութեանց տկարանալը զգալով անհանգիստ և տխուր կըլլայ. և այս պատճառաւ աւելի ցանկալի ըլլալով կենսատարփածուհեաց հետ հեշտութեանց պարապիլ, որոնցմէ քիչ ատենէն պիտի զրկուի. և յիրաւի այս ատենի հեշտասիրութիւնք պատճառ կըլլան աւելի շուտ կորուսանելու անոր կարողութիւնը: Յետոյ կանգնումը երթալով կը դժուարանայ, ուղեղը

Միշտ կը փափաքի, բայց անդամը կը մերժէ։ Այն ատեն ցանկական գործողութիւնը կատարել կարող ըլլալու միջակն ունենալու համար, կանայք մերկացունելով անոնց անդամները կը գրգռէ, կը տենչայ, կը շօշափէ, կը շոյէ և իւր ոսկեռով գտած գաղտնի հրապոյրներով ժամանակ կ'անցնէ, և երկար ատեն կը գրգռէ գլուխը ի տես ցանկական մեհենին, յորում կը ջանայ մատուցանել իւր գծուծ նուէրը։ Ո՜ անմիտ ծեր. որ այնչափ դառնութեամբ կը ցաւիս զգայական ցանկութեանցդ վրայ, չես գիտէր թէ իւրաքանչիւր նուիրատուութեանդ ատեն քու կենացդ մէկ մասը քենէ կը բաժնուի. քայլ մ'աւելի կ'առնես դէպ 'ի գերեզման։ Զզգայի՞ր արդեօք մարմնոյդ անհանգստութիւնը և անդամոցդ երկարատեւ լքումը։ Այն հեշտութիւնը, որուն այդչափ աշխուժիւ կը տենչաս և կը փափաքիս, ո՞րդեօք ուրիշ ատենի հեշտութեան կը նմանի, և աւելի ցաւոց չը գխեցունէ՞ր զքեզ. Ո՜վ ծեր, քու զէնքդ մաշած էր և զայն իւր սաստիկ թմբրութենէն արթնցնելու համար ըրած պանապան ջանքերդ պարապ և ծաղրելի են։ Մերժէ՛ ուրեմն հեռացուր քու ուղեղէդ անդամոյն կորովութեան, խաւարեալ աշխուժիցդ տաղտուկ յիշատակները. մտիկ ըրէ՛, ականջ դի՛ր խոհեմականութեան, որ քեզի կը պաղատի՝ աւելի օգտակար նպատակի մը ուղղելու քու կարողութիւններդ։ Եթէ անոր խրատները արհամարհես, եթէ ցանկական հեշտութեանցդ ընդ առաջ անդադար խոյանաս, վա՜յ քեզի։ Ցոփական փափաքները երթալով ամեն օր քու ուղեղիդ մէջ սիրոյ հաստատուին և ա՛լ զանոնք անկէ չի պիտի կրնաս մերժել։ Վա՜յ քեզի.... քէչ ատենէն դու ալ պիտի,

ունենաս այն վիճակը զոր յամառութեան ջոջերը ունեցան. դու յիմար պիտի ըլլաս, և որպէսզի «չը գիտէի» չըսես. վասնորոյ առջա կըսեմ, գիտցած ըլլաս որ ծերոց տարփական յիմարութեան վախճանը միշտ մահն է ։



## ԳԼՈՒԽ ԺԲ ։

## ԱՐԳԱՍԱՒՈՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՊԵՏՔ ԸԼԼԱԼԻՔ ԱՄԵՆԷՆ ՅԱՐՄԱՐ ԵՒ ՆՊԱՍՏԱՒՈՐ ԶՈՒԳԱՒՈՐԱԿԱՆ ԴՐԻՑԸ ՎՐԱՅ ։

Բարեկամական վկայութիւններ մեզ տեղեկացուցին որ նախընթաց տպագրութեանց մէջ այս գլխոյս վերնագիրը խել մը կեղծաւոր մարդկանց բարկութիւնը և ատելութիւնը գրգռած է, այնպիսի մարդկանց, որոնք կ'աճապարէին կարդալ զայն՝ յուսալով որ հոն տարփական տեսարաններ պիտի գտնային. սակայն իրենց յոյսը պարապ ելլալով բոլորովին բորբոքած էին այսպիսի գլխոյ մը անմաքրութեանը դէմ, վասնզի հոս խիստ վսեմ և ամուսնութեան համար ամենակարեւոր խնդրոյ մը վրայ պիտի խօսուի, հոս պիտի քննուի և նշանակուի լաւ արգասաւորութեան համար պէտք ըլլալիք ամենէն յարմար միջոցները, որոցմէ կախումն պիտի ունենայ սերնդեան ոյժը և լաւ կազմութիւնը ։

Մարդկային ցեղին մէջ՝ երկու սեռից միաւորութեանը յառաջացեալ ընդպ.եցիկ դիրքը՝ որգանական

կացութիւնն է , այսինքն այրը կնոջ վրայ ծռած ։ Բայց շատ անգամ կը պատահի որ հեշտասէր մարդիկ բնական դիրքէն ձանձրանալով . արգասաւորութեան միշտ վնասակար և աւելի կամ նուազ տաղտկացուցիչ կացութիւններ կը հնարեն ։ Հարկ չենք համարիր խօսիլ հոս այն զանազան դրից վրայ , զորս Վաւաշոտն Կեւրինէ հնարեց, զորս Եղեփանդիս և Փիղէնոս երգեցին Դեւոնդեան տաղաչափութեամբ և զորս Կայսրն Տիբերիոս նկարել տուաւ իր՝ Կաբիրիոյ տանը սրահներէն մէկուն մէջ ։ Այս նիւթիս վրայ շինուած Քարաքէսի տան և երկու պատկերները , Աղալպնէի և Տիաբէի նկարները և արդի տարփական փորագրութիւնները , որոնք բազմաթիւ տեսակներու կը հանդիպին , ամեն գաւառաց հեշտասէր երեւակայութեանց լրբութեան կը վկայեն ։

Մենք չի պիտի վիճինք, ինչպէս հին մատենագիր մ՚ըրաւ, թէ աւելի աղէկ կ՚ըլլայ ըստ օրինակի աղաւնոց և ոչխարաց չո՞նել իր կինը և ոչ բնաւ իսկ պիտի խօսինք դիպուածապաշտից ներելի համարած դրից վրայ ։ Այն բարի՛ դիպուածապաշտները . ու՞ր կը գտնար զիրենք Սատանան , և թերևս կը մնար, կը հարցնեմ ։ Այսօր շատ տարբեր է . ուրիշ ժամանակ , ուրիշ մարդիկ ։

Միայն այսչափը բաւական ըլլայ ըսել թէ արգասաւորութեան համար օգտակար և յարմար ամեն կացութիւն ներելի են . իսկ ընդհակառակը անոնք, որք կարգիլեն արգասաւորութիւնը , մերժելի և դատապարտելի են ։ Ինչպէս նաեւ , անտարբեր և ծուլօրէն կացութիւնները շատ անգամ բնութեան նպատակը 'ի դերեւ կը հանեն . ուրիշ դիրքը խիստ

նեղացուցիչ է և ծանր վտանգներ յառաջ կը բերէ։ փորձառութեամբ ապացուցուած է որ ոտքի վրայ կանգնելով զուգաւորութիւն ընելը յաճախ ուրեմն էրիկ մարդուն սեռային անդամոց խանգարումն կը պատճառէ։ Ջղաձգական գրգռմունք և սրունից ջղային ծռութիւնք շատ անգամ յետին զուգաւորութենէ ուրիշ պատճառ չեն ունենար։

Կանանց ոմանց էրիկ մարդու տեղ բռնելու երբեմն զգացած զարմանալի յօժարութիւնը բնական կարգը կըշփոթէ․ յիրաւի հեշտասէրք կուրախանան և կըզբօսնուն այս կերպարանափոխութենէն․ սակայն ամուսնութեան դիրք խիստ քիչ անգամ կը ծափահարեն։

Երեք դիրքուած կայ․ որոց պատահմանց ատենը ընդ յետոյս բռնուած դիրքը ոչ թէ միայն ներելի այլ և պատուիրելի է․ այսինքն կնոջ յղութեան, կամ չափազանց գիրութեան ատեն․ և երբ առնանդամը հարկաւոր երկայնութիւնը չունենայ։

Յղութեան ատեն կնոջ որովայնը ազդրերուն վրայ յառաջանալով բնական զուգաւորութիւնը կը դժուարացնէ․ այրը կը պարտաւորի այն ատեն զուգաւորութենէ հրաժարիլ յոգնած մօրը և անոր կրած պտղոյն․ ինչու որ դիւրաւ կրնայ հասկցուիլ թէ էրիկ մարդուն ծանրութիւնը և շարժումները կրնան յղի կինը վիրաւորել։ Ուստի եթէ ցանկագործողութենէն չը կրնար հեռանալ պարտի գործադրել զայն ընդ յետոյս։ Նոյնպէս պարտի գործել երբ կինը չափազանց գեր ըլլայ․ վասնզի այսպիսի վիճակի մը մէջ արգասաւորութիւն գործելու համար պէտք ըլլալիք երկայնութիւնը չը կրնար ունենալ առնանդամը։

թափուելով, ջղային ձգտմանց բնական օրինքը պիտի գոցուի և արդասաւորութեան արգելք պիտի ըլլայ։ Ի վերայ այսր ամենայնի առնանդամուն գեղձին՝ արգանդի փողին դէմ ըրած բազմակրկնակ հարուածները քիչ ատենէն գրգռութիւնք և արգանդի ախտեր կը պատճառեն, որոնք միշտ վնասակար են կնոջ։



## ԳԼՈՒԽ ԺԳ։

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ԾՆՆԴԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՆՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ։

Բնութեան սքանչելի գործողութիւնները անծանօթի մը խոր անդնդոցը մէջ միշտ կը կատարուին։ Մենք թեպէտ երբեմն երևութից վրայ տեղեկութիւններ կունենանք, սակայն անոնց սկզբնական պատճառները միշտ մեզմէ ծածկուած են 'ի մեծ դժբախտութիւն մարդկան։

Մարդկային հանճարոյն բացատրել ջանացած բազմաթիւ գաղտնեաց մէջէն միմիայն ծննդականութեան գաղտնեաց բացատրութիւնը ամենէն աւելի ժամանակի կարօտ և մեծամեծ նեղութեանց ենթակայ եղաւ. որչափ՝ դրութիւններ շինուեցան և ըստ ինքեան կործանեցան, որչափ՝ համոզիչ վարդապետութիւններ գրուեցան և քիչ ատենէն ոչնչացան, սակայն ձուարանական ուսումը, որնոր մեր դարուն գիւտոց փառքն ու պատիւն է, աշխատութեանց և փորձերու ու քննութեանց մասին եղած

յամառ յարատեւութեան զօրութեամբը վերջապէս կարողացաւ հասնիլ կատարելութեան աստիճանի մը, որուն խել մը տարակոյսներ կը փարատէ ։

Հարկ չենք համարեր հոս նշանակել ծննդականութեան համար հնարուած զանազան անկարեւոր դրութեանց պատմութիւնը, քանզի անօգուտ անդը մեր ընթերցողները ցնորից քաոսին մէջ պիտի ձգենք. բաւական կը համարինք իրենց ներկայացնել միմիայն յառաջադիմական դրութիւնը, որուն պարզ բացատրութեամբը կրնան հասկնալ թէ որդեծնութեան գործողութեանը մէջ թէ՛ առն և թէ՛ կնոջ գործակցութիւնը անհրաժեշտ հարկաւոր է իրենց նման էակ մը ծննդագործելու համար ։

Կինը՝ ձուեր արտադրելով որդեծնութեան կը գործակցի. սակայն այս անգործ ձուն, եթէ չ՚արգասաւորի, իւրաքանչիւր դաշտանի ատեն արգանդը կիյնայ, ուր իր լուծումը կը գործադրուի և ամսական արեան հետ իր մնացորդները դուրս կելլան ։

Այրն ալ արգասաւորիչ հեղուկը արտադրելով որդեծնութեան կը գործակցի, և այս հեղուկն է որ ձուոյն կենդանութիւն կուտայ ։ Այսպէս էակի մը ծննդագործութիւնը ուժական գործողութիւն մ՚է, երկու տարբեր և մագնիսի բեւեռներու նման միմեանց հակազօր սեռերու ինքնիրաւ վէճ մ՚է ։

**ԱՐԳԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ ։** Ի՞նչ կերպով կը կատարուի ձուոյն արգասաւորութիւնը և ո՞րն է ծննդականութեան մեքենականութիւնը ։

Ժամանակակից բազում գիտնոց՝ մարդկային ձուաբանութեան վրայ ըրած ուսմանց և անոնց տուած տեղեկութեանց համաձայն ։ այսօր նաեւ

ապացուցուած է որ մեր ցեղը սա մեծ օրէնքին ենթակայ է թէ, որ կ'ըսեն ոմանք, ի միջի յօւոյ արտադրէն՝ Լինը, նոյնպէս կենդանական ցեղին բոլոր էգերը ձուեր կարտադրեն, որոնց աճումը կը պատահի ամեն ամիս, երբ դաշտանի հոսումը հաստատուի։ Մենք արդէն ըսած ենք որ կնոջ ձուամանը տեսակ մը գեղձեր են որ ձուեր կարտադրեն. այս մանրադիտական ձուերը ողկուզանման ժողվուած են և իւրաքանչիւրը իր կարգին կ'ուռենայ, կը հասուննայ և կ'իյնայ ինչպէս որ հասուն պտուղները կը թափին։

Ի՞նչ կերպով ձուն ձումուղին մէջ կ'իյնայ։ Ահաւասիկ. Վրանաձեւ փողը ձուամանին այն մասը կը գրկէ, ուսկից ձուն դուրս կ'ելլայ. վրանաձեւ փողին բացուածքը կընդարձակի և օդաշնչութեան նման գործողութիւն մը կատարելով հասուն ձուն իր մէջը կընկղմէ։ Մեկ անգամ մ' որ ձուն փողին մէջ իյնայ, ալ այնուհետեւ նոյն խակ փողին կծկելի շարժմամբը դէպ 'ի արգանդը կը դիմէ։ Երկար և մանրակրկիտ փորձերով ապացուցուեցաւ թէ չորս կամ հինգ օր պէտք է որ ձուն փողին երկայնութիւնը քալելով արգանդը իյնայ։

Անցնինք առն պաշտօնին։ Զուգաւորութենէ անմիջապէս ետքը սերմը՝ արգանդը կը մտնայ և սերմնորդունք բնազդական շարժմամբ արգանդին փողերուն մէջ կը մտնան և անոր վերնագոյն մասին երկու երրորդը կը յառաջեն. փողին այս տեղին հասածնուն պէս սերմնորդունք մաղասաւոր թաղանթին կը յարին և անկէ անցնելու ձուին կպպանեն։

Երբ հասուն ձուն ձուամանէն բաժնուի և վրանաձեւ փողերուն շնչմամբը ձումուղէն կըլլուելով վար

իշխայ , ճիշդ այս ատեն սերմնորդութիւնք անոր կը յարին , անոր գոյութեանը մէջ կը մտնան և արգասաւորութիւնը կը գործադրուի ։ Արգասաւորեալ ձուն 4 կամ 5 օրուան մէջ ձուամուղներէն վար իջնալով վերջապէս արգանդը կիյնայ , որուն ներքին կողման հետ պատուաստուելով արմատ կը բռնէ ։ Այս վայրկեանէս կըսկսի նոր էակի մը սաղմնական կեանքը ։

Ձուոյն առաջին զարգացումը կը կատարուի փողերուն մէջ , ատոնց մէջ ընթանալու համար պէտք եղած օրերուն միջոցը , Արգանդը հասած ատեն՝ մարդկային ձուն արգասաւորութեան սկսած ատենին մեծութենէն հինգ անգամ աւելի մեծ է ։

Չարգասաւորեալ ձուերն ալ նոյն ընթացքը կը բռնեն և նոյնպէս արգանդը կիյնան , բայց հոն արմատ չը բռնելով կը լուծուին և դաշտանի արեան հոսմամբը դուրս կելլան ։

Ահա այսպէս է մարդկային ցեղին արտադրութեան համար բնութեան գործածած կերպը ։ Այս վարդապետութեան դէմ բազում դժուարութիւններ յարուցին անոնք, որք կը պաշտպանէին թէ արգասաւորութիւնը ձուարաններուն մէջ կը կատարուի, և սերմնորդերուն՝ ձուարաններուն մէջ հասնելուն ապացոյց կը բերէին ձուարանային և որովայնային կամ արտարգանդային պատահումները կամ յղութիւնները ։ Այս խոտորեալ յղութիւնները արդարև ճշմարիտ են , բայց այնչափ հազուադէպ և արտաքոյ բնութեան նպատակի են որ մեր տուած վարդապետութիւնը չեն կրնար երբէք եղծանել ։ Այս բացառութիւնները , որոնք նաև իրենց պատճառները ունին, ընդհանուր կանոնը չը կրնան ջնջել ՚ի զատ դայն

տուել կամրացնեն և ներկայ խնդրոյս մէջ բացառութիւնները կանոնը կը հաստատեն ։

Ցիրուի արտարգանդական յղութիւնները արտաքոյ կարգի հանգամանքներէ առաջ եկած գործարանաւորութեան խտորումներ են միշտ ։ Ինչպէս երբեմն կրնայ պատահիլ որ ձուամուղներուն մէջ նոր արգասաւորեալ ձուն՝ արգանդին փողին սաստիկ ջղաձգտումէն իր վրանաձեւ մասին մէկուն բեկանելովը որովայնը իյնայ ։

Լարման դասատուն կը պատմէ թէ կին մը իւր ամուսնոյն գգուանքները ընդունելու ատեն մարդու մը յանկարծահաս ներկայութենէն սոսկալով իր զգացած յուզմունքը այնչափ սաստիկ եղաւ և այնչափ ուժգնապէս արգանդի փողին վրայ ազդեց որ ձուն անոր մէջ չը կրնալ մտնալով ձուամանին մէջ արգասաւորեցաւ ։ Այս կինը ձուամանային յղութեան պատճառաւ մեռնելով, իւր դիակին վրայ կատարուած զննութիւններէն յայտնուեցաւ որ սաղմը ձուամանին մէջ զարգացած էր ։ Բժշկական պատմագրութեանց մէջ այս տեսակ օրինակներ շատ կը գտնուին, որոնք ձուամանային յղութեանց կարելիութեան վրայ անհնարին տարակոյս չեն ձգեր ։

Կրնայ նաեւ պատահիլ որ սերմնոյդ մը մինչեւ ձուամանը եկալով հոն ձու մը արգասաւորէ , բայց վրանաձեւ փողը՝ ձուամանը գրկելէ յանկարծ դադրելով և ձուն ալ արգանդը իջնալու անցք չը կրնալ գտնալով, ձուամանին մէջ կը մնայ և հոն կը զարգանայ ։ Բայց այս խտորումները խիստ ձախորդ պարագաներ են , որոնք միշտ սաղմին և շատ անգամ ալ մօրը մահուան պատճառ կըլլան ։ Ուստի արգասաւորութեան՝ միշտ ձուամաններուն մէջ

վուլթեան ստորինանին համեմատ, եթէ ներքին պատճառով մը չըսպաննուին ։

5° Ջուոյն՝ փողին վերին մասին մէջ անցած ատենն է որ սերմնորդները անոր կը կառչին և արգասաւորութիւնը կըսկսի անմիջապէս ։

6° Արգասաւորութիւնը ընդհանրապէս դաշտանի առաջին օրերուն մէջ տեղի կունենայ։ Երբ ձուամանը գոց է և փողին վրանաձեւ մասը զինքը չը գրկեր, արգասաւորութիւնը անկարելի կըլլայ, վասնզի փողին և ձուամանին մէջ հաղորդակցութիւնը կըտրուած է ։

Եթէ հետևութիւն կաւելցնենք թէ արգասաւորութիւնը ստոյգ կը կատարուի երբ արուն՝ ձուոյն արգանդին մէջ անկումէն մէկ քանի օր առաջ մօտենայ իգուն ։ Այս ժամանակը կորոշուի կենդանեաց քով ջեռմամբ և կնոջ քով նախանշաններով, որոնք խիստ քիչ անգամ 'ի դերև կելլան ։

Մարդկային ցեղին մէջ կրնայ պատահիլ որ զուգաւորութիւնը՝ թէ և դաշտանի երևան գալէն հինգ կամ վեց օր առաջ կատարուած ըլլայ, արգասաւորութիւն արտադրէ ։ Բայց այս արդիւնքը խիստ քիչ անգամ կրնայ պատահիլ. իսկ միշտ ստոյգ է արգասաւորութիւնը երբ զուգաւորութիւնը՝ դաշտանի արեան յայտնութենէն օր մը առաջ կամ հասման սկսելու ատեն գործադրուի ։

Այն ամուսինները, որք իրենց սերունդը աճեցնել կամ նուազեցնել կը փափաքին, կրնան վերոյիշեալ տեղեկութիւններէն օգուտ քաղել ։

Մենք պիտի լմնցնենք այս գլուխը՝ մարդկային ձուոյն կազմութեանը և արգասաւորութեանը վերաբերեալ կազմագիտական օրինաց բովանդակութիւն.

մ'ընելովը Ջուամաններուն մէջ արտադրուած ձուերը չրջանաւոր հաստնութեան մը ենթակայ են , որոնք սերման գործակցութեան երբէք կարօտութիւն չունին։ Հասունցած ձուերը՝ բնականաբար կըրաժնուին ձուամանէն , և փողերէն ընթանալով , կկնան արգանդը ։ Ասա՛ ձուամանին և փողերուն այս աշխատութեանն առնենն է որ արգանդի այտուսը կը պատահի , ուսկից կը հետևի դաշտանի հոսումը։ Արգանդը ինկած ձուն երբ արգասաւորած է , այս գործարանին ներքին կողման կը պատուաստուի և կարգ մը փոփոխութիւններ կը կրէ , որոնց ամենէն վերջինը ծնունդ մ'է, որով կարտադրուի նոր էակ մը նման անոնց , որք զինքը ծնան ։ Երբ արգանդը ինկած ձուն արգասաւորած չ'է , դաշտանի արեամբը կը լուծուի և առոր հոսմամբը լուծուածը դուրս կելլայ ։

Մէկ քանի երեւելի կազմագէտներ կըսեն թէ ձուոյն արգասաւորութիւնը կրնայ ամսուն ամեն աւուրցը մէջ պատահիլ ։ Ասիկայ ամենամեծ սխալմունք մ'է , և անկարելիութիւն մը , որնոր երեք փաստով կապացուցուի ։

1 ° Մարդկային ձուն՝ իւր կատարեալ հասունութիւնը միայն ամիսը անգամ մը կրնայ ստանալ և արգասաւորելու համար խիստ հարկաւոր է որ հասուն ըլլայ ։

2 ° Ձուոյն հասունութեան ժամանակէն 'ի զատ' ձուամանը արգանդին հետ որ և իցէ հաղորդակցութիւն ունենալէ կը դադրի ։

3 ° Միմիայն ձուոյն հայթած և ձուամանին բացուած , առենն է որ փողերը , ծոպաւորներին առոր կնգ ին մէջ ծածանելով , ձուամանը կը գրկեն՝ անկէ

բաժնուած ձուն ըմբռնելու համար, միմիայն այն ատենն է որ փողերը ձուարանին և արգանդին մէջ հաղորդակցութեան միջնուղի կըլլան :

Ուստի, ամսոյն որ և իցէ մէկ օրուան մէջ արգասաւորութիւնք կարելի ըլլալու համար պէտք կըլլար որ ամեն օր ձու մը հասունութեան հանէր, որ չըլլար : Պէտք կըլլար որ ձուարանին և արգանդին հաղորդակցութիւնը հաստատուն ըլլար, որ չըլլար]: (Պէտք կըլլար որ ձուարանէն բաժնուած ձուն իր հասունութեան ատեն, կարող ըլլար, կենալ թէ փողերուն մէջ, թէ արգանդին մէջ, որ չըլլար : Վասնզի չարգասաւորուած ձուերը չեն կրնար արգանդին մէջ երկար ատեն կենալ և հոն արմատ բռնել։ Չարգասաւորեալ ձուերը, ինչպէս որ ըսինք, դաշտանի հոսմամբը դուրս կելլան : Ուրեմն այն կազմագետներուն հաստատութիւնը մոլորական և անկարելի է : Ուրեմն արգասաւորութիւնը ճշդիւ այն օրերուն մէջ միայն կրնայ պատահիլ, յորում ձուն ձուարանէն բաժնուելով փողերէն կանցնի, որպէս զի արգանդը իյնայ : Ահա այսպէս է ծննդականութեան խորհրդաւոր երկը :

ԱՐԳԱՍԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԿԱՏԱՐՈՒԱԾ ԸԼԼԱԼԸ ՃԱՆՉՆԱԼՈՒ ՆՇԱՆՆԵՐ : Բաղում կազմագետք և մանկաբարձք բազմահմուտ Պուրտաք այս նիւթիս վրայ մոլորած են : Ճշմարտութիւնը այս է որ կիներէն շատերը կ'արգասաւորին առանց փոքրիկ կասկած մ' իսկ ունենալու, և ոմանք որ կը կարծեն թէ կիները արգասաւորութեան ատեն ցանկական հաճոյութիւն մը կըզգան, արգասաւորութեան կատարուելուն երաշխաւորին կատարելապէս անհաւանականելի են . Կինք իր դաշտանի հոսման մերձեցման ատեն

ծննդականապէս գրգռուած ըլլալով․ այս առմնէ հեշտութիւնը աւելի զօրաւոր պիտի ըլլայ, ոչ թէ արգասաւորութիւնը տեղի ունեցած ըլլալուն, այլ իւր գործարանները մեղմիւ ուռեցած և աւելի եւ զգայուն ըլլալուն համար ։ Ի վերայ այսր ամենայնի ահա այն երեւոյթները, զորս մէկ քանի կիներ՝ արգասաւորեալ ձուոյն արգանդը իջնալով պատուատառուած ատեն կը յայտնեն ։ —Ծննդական ամբողջ յօրինուածոյն այտումն—տարտուռ երեկամանց—ստորին որովայնին մէջ խաղտանք—ծնծակային թեթեւ խլրտումն—ստնգանք, որոնց կը հետեւին անդամոց խոնջանք ։ Եւն ։ Եւն ։

## ԳԼՈՒԽ ԺԴ․

## ՀԱՏՈՒԱԾ Ա․

### ԸՍՏ ԿԱՄԱՑ ԱՐՈՒ ԶԱՒԱԿ ԿԱՄ ԷԳ ԶԱՒԱԿ ԾՆՆԴԱԳՈՐԾԵԼՈՒ ԵՂԱՆԱԿԻՆ ՎՐԱՅ․

Շատ հին ատենէ 'ի վեր խել մը բժիշկք և բնագէտնինք զբաղեցան այս մեծ խնդրոյս հետ, որուն հաստատապէս լուծումը թէ ընտանեաց և թէ ազգութեան խիստ մեծ օգտակարութիւն մը հասուցանել է․ բայց ասոր լուծումը միթէ՞ կարելի է ։ ինչու՞ համար ոչ ։ Այնչափ բաներ կան, որք 'ի նախնումն անպատեհ համարուած էին, սակայն այսօր բացերեւ են ։ Անցեալ դարուց գիտունները

ո՞րը կը խորհէր հաւատալ թէ կինը հաւու պէս ձու կ՚ածէր և թէ այս ամսական ձուածութիւնք՝ ամսական արիւնք անվրէպ կը պատճառէր . և սակայն մեր օրերը այս գործողութիւնը երբէք տարակոյս չը վերցներ ։ Ասկէ մէկ քանի տարի առաջ ո՞վ կրնար հաւատալ թէ կամիք կամ ճերմակ մազերով մարդիկ պիտի կրնան ներկել իրենց մազերը մասնաւոր ուտելիքներու և խմելիքներու միջոցաւ , որոնց գաղտնիքը միմիայն Չինացիք գիտեն ։ Այսիկայ գիտութեան յառաջացուած գործ մի է ։ Ուստի ըստ կամաց արու կամ էգ ծննդագործելու խնդիրն ալ իր կարգին չի պի՞տի կրնայ լուծուիլ , ինչպէս որ ուրիշ խնդիրներ եղան ։ Միմիայն անմիտ մարդիկներն են որ ծաղրական անհաւատութիւն մը կընծայեն այն խնդրոյ համար , զորս իրենց անձուկ գաղափարը չը կրնար ըմբռնել ։ Լուսամիտ մարդը անոնց վրայ կ՚աշխատի և կը խորհի , և մենք անոր երախտագէտ ըլլալու ենք . վասնզի կը տեսնանք որ անկարելիութեան սահմանը անոր յառաջնութեամբը որ քան զօր մեր առջեւէն կը հեռանայ ։

Յեալ որոշման պատասխաններուն վրայ մեր հետազօտութիւնները կարգաւ ընելու և մեր վարդապետութիւնները աւելի յստակ և աւելի դիւրին կերպով ըմբռնել տալու համար հետեւեալ չորս առաջարկութիւնները կընենք ։

1° Կնոջ ձուարաններուն մէջ միթէ՞ արու և էգ ձուեր կան ;

2° Վերոյիշեալ առաջարկութիւնը հաստատուած առնել , միթէ՞ իւրաքանչիւր ձուարան արու ձուեր և էգ ձուեր խառնի խուռն կը պարունակեն իրենց մէջ , կամ թէ արու ձուոց համար զատ ձուա-

ման մը և էգ ձուոց համար ուրիշ ձուաման մը կայ։

3°. Միթէ երկու ձուամանց մէջ պարունակեալ ձուերը բացարձակապէս միեւնոյն բնութեամբ և առանց սեռի որոշման են. և միթէ սպածին էակին սեռի որոշումը ամուսնոյն մէկուն վրայ միւսին ուժական և կենսական առաւելութեանցն միմիայն կախումն ունենալու է։

4°. Վերջապէս միթէ՞ երկու ամորձինները կատարելապէս համասեռ հեղուկ մը կ'անջատեն. կամ թէ աջ ամորձին արու արգասաւորութեան յատկացեալ հեղուկ մը և ձախը՝ էգ արգասաւորութեան յատկացեալ հեղուկ մը կուտայ։

Ա. Առաջին առաջարկութիւնը միշտ մեծ ընդունելութիւն գտած է, բայց անոր հաստատութիւնը նախամեծարութեամբ եղած է, վասնզի կազմագիտական որ և իցէ պատճառ մը անոր ճշմարտութիւնը չապացուցաներ. ձուամանաց մէջ պարունակեալ ձուիկները հետազօտութեանց աչքին մեկզմեկու խիստ նման կերեւան թէ՛ ըստ նիւթոյ թէ՛ ըստ կազմութեան և թէ՛ ըստ ձեւոյն. և յիրաւի որ և իցէ բան մը չըյայտներ անդամազննաց թէ արու ձուեր և էգ ձուեր կը գտնուին։

Բ. Երկրորդ առաջարկութիւնը՝ գիտունները երկու խումբի բաժնած է, ոմանք կը պնդեն թէ միեւնոյն ձուամանին մէջ թէ արու ձուեր և թէ էգ ձուեր կը գտնուին և ասոր ապացոյց կը բռնեն այն բազմաթիւ փորձերը, զորս կենդանեաց վրայ կատարեցին անոնց մէկ ձուամանը հանելով, որոնք մնացեալ մէկ ձուամանովնին երկու սեռէ ձագեր կրցին ծնանիլ։

Երեւելի բժիշկներէ հաւաքուած խեր մը դիտո-

ղութիւններ կը հաստատեն որ թէ՛ անզարգութեան և թէ՛ մալման պատճառաւ ձուամանին մէկը կորսընցնող կանայք նախ երկու սեռէ զաւակ ծնած են և կը ծնին ։

Ընդդիմաբան խումբին գիտունները պատմուած գործողութեանց ճշտութիւնը կուրանան, պատճառելով որ փորձերը աղեկ չեն կատարուած կամ դիտողութիւններ անկատարելապէս հաւաքուած են, կը պնդեն թէ արու ձուերը աջ ձուամանին մէջ և էգ ձուերը ձախ ձուամանին մէջ կը պարունակուին, թէ մէկ ձուամանէն զրկուած կանայք միմիայն մէկ սեռ մը կը ծնանին, և թէ մէկ ձուամանը պակաս ունենալով թէ արու զաւակ և թէ էգ զաւակ ծնող կանայք, գործարանի հակառակ շրջուածքէն առաջ եկած հրիշուց կարգը կը դասուին ։ Այս վարդապետութիւնը, որնոր Իպոկրատ ալ պաշտպանեց, բարձր զննութիւն մը չը կրնար համարուիլ. Իր ապացուցման համար նշանակուած դիտողութիւնները ճշմարտութիւն մը չեն պարունակեր և արդի կազմագիտաց գիւտերովը կ'ոչնչանան ։

Հնոց մէջէն Տեմոկրիտոս, Արիստոտէս, Պլինէոս, և նորերուն մէջէն Ռաղես, Պրոգոպէս, Քողիւմէլ, Միլօ և ուրիշ շատեր այսօր սխալ ճանցուած այս կարծիքը կը պաշտպանեն։ Այս փորձակատարները կենդանեաց էգերուն մէկ քանիին ձուամանին մէկը հանեցին, և կատարելապէս վերակերուելէն վերջը, զանոնք զուգաւորել տուին. արգասաւորութեան արդիւնքը անտարակոյս մնացեալ ձուամանին յատկացեալ սեռը ըլլալու էր ։ Մարդկային ցեղին մէջ միեւնոյն պատճառները միեւնոյն արդիւնքը առաջ

բերելու էին , սակայն այս գործողութիւնք կատարելապէս անհիմն են ։

Հնդկաստանի և Ափրիկէի մէկ քանի գաւառաց մէջ կիները կը մալէն անոնց ձուամանները հանելով վասնորոյ դաշտանի հոսման երեւոյթը անմիջապէս կը դադրի և անկէ վերջը ծննդաբերութիւնը անկարելի կըլլայ ։ Բայց կը պատահի երբեմն որ անդամահատին յաջողակութեան պակասութենէն մէկ ձուամանը չը կրնար ելլուիլ: Ուստի կինը տակաւին ծննդաբերութեան ատակ ըլլալով հարկ էր որ մնացուած ձուամանին համապատասխանող սեռը ծննդագործէր ։

Հենքէ կը պատմէ թէ կին մը իննը անգամ ծնանելով իննը աղջիկ ունեցաւ ։ Իւր մահուանէն վերջը իւր դիակին վրայ եղած բժշկական քննութիւններէն յայտնուեցաւ որ կնոջ աջ ձուամանը բոլորովին կարծրացած էր և հետեւաբար արու ձուեր տալու անյարմար ։

Գրոդոսլէս կը պատմէ ուրիշ կնոջ մը համար թէ մեկզմեկու վրայ եօթը աղջիկ ծնաւ և մեռաւ առանց արու զաւակ մ'ունենալու , իւր դիազննութիւնը յայտնեց որ աջ ձուամանը անզարգացած էր և ուռուած մը խոշորութեանը վերածուած էր ։

Միլօ կըսէ թէ ինքը երկու դիակաց ձուամանները ճեղքած էր . այս դիակները կը վերաբերէին երկու կանանց , որոնց մէկը եօթը արու զաւակ և միւսը չորս էգ ծնած էր և քնաւ արու ։ Առաջին կնոջ աջ ձուամանին մէջ կը տեսնուէր արգասաւորեալ եօթը արու ձուոց սպիները, երկրորդին ձախ ձուամանին մէջ կը տեսնուէր նոյնպէս չորս էգ ձուոց սպիները , իսկ աջ ձուամանը անզարգացեալ էր ։

Ցակայն թէ և այս վարպետններուն դիտողութիւն-ները ստոյգ եղած ալ ըլլան, ի վերայ այսր ամենայնի 'ի նպաստ իրենց վարդապետութեան բան մը չեն կրնար ճշմարտել։ Աւելի հեռուն պիտի տեսնանք թէ սեռի որոշման պատճառը ոչ ձուամաններուն և ոչ ամորձեաց մէջ չէ։

Ահա այս հիմանց վրայ հաստատուեցան ըստ կամաց արու կամ էգ ծննդագործելու զանազան վարդապետութիւնները։ Կենդաւրոսն Քիւոն նաև այս տեսակ բաներ կը սորվեցներ Թեսաղիոյ կանանց։

Ցեմոկրիտոս ծննդագործութեան վրայ գիրք մը շարադրեց, ուր այս գաղտնիքները բացադրուած էին։ Հոշաւհաւերն Բուոլես՝ իններրորդ դարուն արաբացի բժիշկը, աղջիկ կամ մանչ ծննդագործելու արհեստին վրայ շինուած հատակոտոր գիրք մը ձգած է. Քզօդիոս Քինլէ ծնընդական-արուեստ-նը և Յովհաննէս Հուարդի յաղթոցական-գիտ-նը, որոնք Ռոպերթ լրացուց, միտքերը գրաւեցին։ Պրոգոպեսի Արհեստ ծննդագործելոյ որդիս արուս կամ էգս ըստ կամաց անուն գիրքը, որոնց Միլօէն վերագրուեցաւ, իրեն կողմնակիցներ ունեցաւ։ Բայց այս վարդապետութիւնները դիպուածական և մասնաւոր իրողութեանց վրայ հիմնեալ ըլլալուն համար այսօր ընդունելի չ'են։ Կազմագիտական արհեստը, որնոր մարդկային ծննդագործութեան խորհրդալից մասին վրայ այն-չափ փայլուն լոյս մ'արձակեց նորոգապէս, կարգ մը փորձերով հաստատած է որ ձուամաններուն մէկէն (թէ աջն ըլլայ թէ ձախը) զրկուած կանայք կրնան երկու սեռէ զաւակներ ունենալ։

Գ. Երրորդ առաջարկութիւնը. որնոր չարգա-սաւորեալ ձուոց սեռ չունենալը և անոնց սեռը նոյն

իսկ արգասաւորութեան ատեն որոշուիլը կը հաստատէ, միմիայն է որ այսօր կընդունուի և անհամար փորձեր կրնան հաստատել զայն ։

Դ. Չորրորդ առաջարկութիւնը. որնոր արուները աջ ամորձիին անջատած սերմէն և էգերը ձախ ամորձիին սերմէն կը ծնուցանէ, արուները աջ ձուամանէն և էգերը ձախ ձուամանէն ծնուցանող առաջարկութենէն աւելի ընդունելի չ՚է ։

Արդի բազմաթիւ և երևելի կազմագետներ մեծամեծ պատճառներով կը հաստատեն թէ սեռը կախումն ունի հօր մը կամ մօր մը անոր կազմութեան վրայ ունեցած առաւելագոյն ազդեցութենէն ։ Ըստ իրենց կարծեաց, եթէ ծննդական գործողութեան մէջ կնոջ առաւելագոյն ազդեցութիւն ըլլայ, ծնածը էգ է. եթէ առն առաւելագոյն ազդեցութիւն ըլլայ, ծնածը արու է ։ Նաև դիտած են որ զօրաւոր բայց գէր արք առաւել էգ քանթէ արու կը ծննդագործեն, իսկ ընդ հակառակը նիհար բայց ջղոտ արք առաւել արու քանթէ էգ կը ծննդագործեն հաւանականապէս. վասնզի երկրորդներուն արականութիւնը առաւել զարգացած է քան զառաջնոցն. ուստի կը հետևի որ վերջիններուն՝ կնոջ վրայ ունեցած ծննդական ազդեցութիւնը գերազանց է նախորդներուն ազդեցութենէն ։

Վերոյիշեալ դիտողութիւնները կանանց համար ալ նոյն է ։ Նիհար և արական ձևով կանայք էգէն աւելի արու կը ծնանին ընդհանրապէս, և կլոր ձևով ու լայն ծնամանով կանայք արուէն աւելի էգ զաւակներ կունենան ։ Եւ այս ալ անոր համար որ առաջնոց իգականութիւնը երբեք մարդուն արական-

նութենէն ստորին ըլլալով՝ չը կրնար չը թողուլ որ այրը իւր սեռը զաւակին չի տայ, և ասոր հակառակ ալ երրորդներուն իգականութիւնը երիկ մարդուն արականութենէն առաւել զարգացած ըլլալով, իրենց ազդեցութեանը զաւակին սեռին վրայ առաւելագոյն կ'ազդէ ։

Այս վարդապետութիւնը, որնոր առաջին անգամ կարդալով գոհացուցիչ կերեւայ, միմիայն արգիւնքը կը նշանակէ և պատճառին վրայ լռութեամբ կ'անցնի ։ Առաւել ազդեցութիւն, առաւելութիւն բառերը երբէք չեն բացայայտեր թէ ինչ կերպով ձուն և սերմը, որոնք բնաւ սեռ չ'ունին, կրնան սեռ յատկացնել սաղմին ։ Երկու ամուսիններէն որը որ առաւել ազդեցութիւն ունի, նա կուտայ իւր սեռը սաղմին կըսեն, բայց ինչու՞ համար և ինչպէս։ Ահա՛ հոս է դժուարութիւնը, զորնոր դիւրացունել պիտի փորձենք ։

Մեր վարդապետութիւնը արտայայտելէ առաջ, սկսինք պատմել մէկ քանի գիտնոց փորձերը, որոնք այսուհետեւ անփոփոխելի իրողութիւններ են ։ Ըստ երեւելի Լիէպիկի, Բօրտոծէն կամ ողջն չունեցող բոյս մը միմիայն տերեւ կ'արձակէ և հատիկ չիտար, վանորոյ ամուլ կը մնայ ։ Այս պարագայիս մէջ բորակածինը ծննդագործ հեղուկին տեղը պիտի բռնէր։ —Ջուածնոց" մէջ, եթէ արուն էգը չարգասաւորէ, էգը վերջ+ ձուեր կ'ածէ, որոնք չեն կրնար ձագ գոյանալ և քիչ ատենէն կապականին ու կը փտին ։—Տիւմերիլ հաստատեց թէ սննդեան ուղղութիւնը՝ մեղուաց սեռական գործարանները կը զարգացնէ և թէ ուտելեաց և լուսոյ աստիճանին միջոցաւ կրնայ մարդ մեղուաց որդերը ըստ կամաց՝

էգի կամ չէզոքի վերածել։ Արալանձի փորձեց որ սեռականութեան որոշումը արգասաւորութեան եղանակէն կախումն ունի. Նպաստակաց արգանդը ներմուծած սերմնական հեղուկին որպիսութեանց և քանակութեանց համեմատ․ ըստ իւր կամաց արու կամ էգ ձագեր կստանար։ —Ըստ Ս.գկիրմանի ձուն բնաւ սեռ չունի ։—Ըստ Կնօքսի, սաղմ ինքն յինքեան կը սպառունակէ երկու սեռից տարրերը և սեռի որոշումը կը կատարուի այն առաւելութեամբ որ մէկ սեռը միւսին վրայ կ'ազդէ։ Բայց երբէք չ'ըսէր թէ այս առաւելագոյն ազդեցութիւնը ուսկից կախումն ունի ։ —Կէօֆռուա—Սէնթ—Իլեռ սեռականութիւնը առաջ կը բերէ այն ուղղութենէն, զոր զարգանալով կստանան սերմնական ընջերակաց երկու ծիւղերը ։

Այս ամէն կարծեաց և քննութեանց մէջէն միմիայն Արալանձիի և Լիէյպիկի դիտողութիւնները զմեզ ճշմարիտ ճամբուն վրայ կը դնեն. ուսկից կարող պիտի ըլլանք հասնիլ այն նպատակին, զոր առաջարկեցինք ըմբռնել։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ՑԵՂԻՆ ՍԵՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՈՐՈՇՈՂ, ՊԱՏՃԱՌԱՑ ՎՐԱՅ ՆՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Բացատրել ուզած նոր վարդապետութիւնիս ոչ թէ միայն անդամազննական և կազմախօսական հետազօտութեանց արդիւնքն է, այլ նաև փորձնական, [illegible]

ձեւ մինչ յաջողութեամբ պսակուած փորձերու ար-գասիքն է :

Բնութիւնը որնոր իւր գործոցը մէջ սքանչելի է, երբէք բաղդովին բան մը չարտադրեր: Բաղդ բառն ուրիշ բան չէ բայց եթէ յայտնի խոստովանութիւն մը մեր տգիտութեան՝ այն պատճառներուն համար, որոնց արդիւնքը միայն կը ճանչնանք . (այսինքն գործողութիւն մը կը կատարուի, արդիւնք մը կունենայ բայց ինչ պատճառէ առաջ եկած ըլլալը չիգիտնալուս համար, բաղդը կը դատապարտենք կամ կը յարգենք :) Երբ մարդս համբերութեամբ և ուսմամբ բնութեան ներկայացուցած որ և իցէ մէկ գործողութեան գաղտնեացը խելամուտ ըլլայ, ան 'ի բերան կը զարմանայ անոր գործադրած միջոցներուն պարզութեանը և հետեւաբար առաջ բերած արդեանց անհունութեանը վրայ :

Ամեն արդիւնք պատճառ մ'ունի. և ոչինչ կրնայ եղծանել այս սկզբունքը: Սաղմի[illegible]եալը արդիւնք մէ, որնոր 'ի հարկէ պատճառ մը պիտի ունենայ . բայց այս պատճառը մինչեւ այսօր կազմագիտաց հետազօտութիւններուն չը ներկայանալով՝ ճշմարտութենէ քիչ կամ շատ հեռու դրութիւններ կազմուած են : Ուստի մենք ևս նոր դրութեան մը կազմութեան համար մեր կարգին նիւթ կը մատակարարենք :

Մեր ըստ կամաց սեռ արտադրելու վարդապետութիւնը հետեւեալ սկզբանց վրայ հիմնեալ է :

1°. Թէ աջ ձուարանին և թէ ձախ ձուարանին մէջ գտնուած ձուերը մեկզմեկու բոլորովին նոյն և նման են :

2°. Աջ և ձախ ամորձիները հեղուկ մը կարտադ-

յեն ․ որուն որպիսութիւնքը բոլորովին միմեանց նոյն և նման են ։

3 ° Երկու ձուամաններուն պարունակած ձուերը անսեռ այսինքն առանց սեռի են ։

4 ° Սերմնական հեղուկին մէջ գտնուած սերմնորդ-ները նոյնպէս անսեռ են ։

5 ° Ձուոյն արգասաւորութիւնը սերմնական որ-դանց մերձմամբը կը կատարուի․ առանց այս մերձ-ման արգասաւորութիւնը անկարելի է ։

6 ° Սեռի որոշումը նոյն իսկ արգասաւորութեան առեն տեղի կունենայ, և սերման ու ձուոյն որպիսու-թիւններէն կախումն ունի ։ Այս որպիսութիւնները ձուոց և սերման կազմութեանը համար՝ պէտք ըլլա-լիք նիւթոց մէջ պարունակեալ բորակածնէ պանազան համեմատութիւններէն կը փոփոխին ։— Եթէ սերմը ազօտականութեան բարձրագոյն աստիճանի հասած ըլլայ, արդիւնքը արու կըլլայ ․— իսկ եթէ սերմը ազօտականութեան ստորին աստիճանի իջած ըլլայ արդիւնքը էգ է ։

Այս վարդապետութիւնը՝ չըլլայ թէ մտացածին կարծիք մը համարուի․ վասնզի այնպիսի իրողու-թեանց վրայ հաստատեալ է, որոնք ամեն օր կը ճշմարտուին ։ Դիտէ՛ մէկ մը ցանկական գործողու-թեան չափազանցութեամբ վատակարէկ եղող անձինք․ տե՛ս անոնք, որոնց ամուսնման և մարսողու-թեան գործարանները յոռի կը գործեն․ ինչ՞ կը ծննդագործեն, ոչ թէ՞ արուէն աւելի էգ ։ Դիտէ՛ այն անձերը, որոնք խակօրէն ամուսնացած են և որոնց սերմնական հեղուկը բոլոր իւր որպիսութիւն-ները ստացած չէ, ինչ՞ կարտադրեն, ոչ թէ՞ միշտ էգ զաւակներ․ նոյնպէս տարիքոտ ամուսիններ նոյն

տրգասիքը առաջ կը բերեն ։ Արդ դիտէ՛ մէկ մ՚ալ հակառակ վիճակը ունեցող մարդիկը և պիտի տեսնաս թէ գրեթէ միշտ արու կը ծննդագործեն ։ Կենդանեաց մէջ նաեւ միեւնոյն իրերը կը պատահին ։ Տկարացո՛ւր անոնց գործարանները անբաւական և յոռի որպիսութեամբ սնունդներով, և ահա էգ պիտի ծննդագործեն ։ Եթէ ծեր արու մը չափահաս էգի մը հետ զուգաւորի, արդիւնքը էգ պիտի ըլլայ ։ Եւ խիստ հաւանական է այս ․ վասնզի սերմնական հեղուկը՝ արու արգասաւորելու հարկաւոր եղած բորակածնի համեմատութիւնները չը պարունակեր ։

Եթէ այս խորհրդութեանց պատճառը ուզես գիտնալ, տարրալուծաբար անջատէ՛ երկու կողման սերմերը, և այն ատեն բաւական մեծ տարբերութիւն պիտի գտնաս անոնց պարունակած բորակածնի համեմատութեանց մէջ ։ Ուսկից եզրակացուցինք թէ արու արգասաւորութիւնը աւելի ազօթացեալ սերմէ առաջ կուգայ և էգ արգասաւորութիւնը նուազ ազօթացեալ սերմէ կարդինաւորէ ի վերայ այսր ամենայնի այն անձինք, որք տարրագիտութեան դոյզն տեղեկութիւն ունին, գիտեն թէ այն բաղադրութիւնք, որոնց մէջ բորակածինը զանազան համեմատութեամբ կը մտնայ, բոլորովին տարբեր յատկութիւններ ունեցող մարմիններ կը կազմեն ։

Բայց պիտի առարկուի թէ, եթէ այսպէս ըլլար՝ այն անձինք, որք խիստ ազօթացեալ սնունդ կ՚առնեն, միմիայն արու զաւակներ պիտի ծննդագործէին, իսկ անոնք, որք խիստ քիչ ազօթացեալ

սնունդ կը գործածեն , միմիայն աղջիկ զաւակներ ունենալու պիտի դատապարտուէին ։

Այս տարակուսթիւնը մեծագոյն մասամբ ճշմարիտ է․ վասնզի կենդանական կեանքը առանց ազօթացեալ սննդեան չը կրնար բարւոք ապրիլ․ բորակածինը մեր բնական կազմութեան մէկ մասը ըլլալով հարկ է որ զանիկայ տեղէ մը քաղէինք , և ահա սննդական նիւթերէն կ'առնումք զայն ։ Յիշեալ տարակուսթիւնք փոքրագոյն մասամբ ալ տարբերութիւնը կը գտնայ , երբ ամոքման և մարտղական գործարանաց վրայ ազդեցութիւն ընող և սերմնական հեղուկը այլայլող և ապականող հաղաբաւոր պարագաները հաշուի առնենք ։

Օրինակ մը միայն բաւական է զայն հաստատելու ։

Խիստ առողջ և կորովի մարդ մը , որ այսօր կրնայ արու զաւակ մը ծննդագործել , կրնայ ըլլալ որ տասն և հինգ օր ետքը էգ մը արտադրէ , վասնզի այս պզտիկ միջոցիս մէջ կրնայ ըլլալ որ սերմը այլայլի կամ ապականի , թէ՛ չափազանցութեամբ , և թէ՛ կենդանական գործողութեանց աւելի կամ նուազ ճշգրտելի անկարգութեամբ — ընդհակառակը տկար մարդ մ'ալ, երբ զօրացուցիչ և ազօթացեալ սննդեամբ մը իւր կազմութիւնը կազդուրած ըլլայ՝ արու զաւակ մը պիտի արտադրէ ։

Այս խորհրդածութեանց ուրիշ բաւական կարեւորներ ալ կը յարին․ հասակն և վարքը խիստ երեւելի ազդեցութիւն մը կընեն ձուոյն և սերման որպիսութեանցը և հետեւաբար սերնդեան սեռին վրայ ։ Զանազան դիտողութեամբք հաստատուած է որ առն համար 18 էն մինչեւ 24 և կնոջ համար

15 էն մինչեւ 20 տարեաց մէջ 'ի գործ դրուած ամուսնութեանց ծնունդները արուէն աւելի էգ կըլլան։ Այս նկատմամբ եղած վիճակագրութիւնները կը յայտնեն թէ 137 որդւոց մէջ 37 արու և 100 էգ կըլլան։ Իգական սեռին համար 21 էն մինչեւ 30 և արական սեռին համար 25 էն մինչեւ 40 տարեաց մէջ եղած ամուսնութեանց արդեամբ կը տեսնուի որ արուաց ծնունդը իգաց ծնունդէն շատ կանցնի։

Այս հասակներէն վեր եղած ամուսնութեանց ծնունդները մեծագոյն մասամբ էգ կըլլան ։ Ի վերայ այսր ամենայնի, Հօֆագէր և Սադլէր՝ Տիւպինկի և Լօնտրայի քաղաքական վիճակին արձանագրութիւններով ճշգրտեցին թէ այն ամուսնութեանց մէջ, ուր կնոջ տարիքը էրիկ մարդուն տարիքէն մեծ է, միշտ որոշեալ քանակութեան վրայ համեմատելով եղած ծննդոց մեծագոյն մասը էգ էր, իսկ ասոր հակառակը կը պատահէր երբ առն տարիքը կնոջ տարիքէն մեծ ըլլար ։

Պուզարեյնկի Ժիրու իր ծննդականութեան վրայ գրած գրքին մէջ կարգ մը խրողութիւններով ապացուցած է որ սեռի որոշումը զուգաւորեալ անձանց աւելի կամ նուազ համեմատական կորովութենէն կախումն ունի։ Գիտնականն Փիւմիէ ալ այս խրողութիւնները հաստատած է։ Ուստի երբ էգ ծնունդ պահանջուի, պէտք է զուգաւորել չափահաս արուները կորովի էգերու հետ և անոնք անոնցմէ աւելի առատութեամբ սնուցանել։ Երբ արու պահանջուի, պէտք է զուգաւորել չափահաս էգերը կորովի արուաց հետ և ասոնք անոնցմէ աւելի առատօրէն սննդեամբ կերակրել ։ Այս կերպով Անգղիացի և Գաղղիացի գրաստարոյծները պահանջուած սեռը

կրնան ստանալ։ Մարդկային ծննդագործութեան համար ալ կերպը և արդիւնքը միեւնոյնն են, կարող է մարդ արու զաւակներ ունենալ, եթէ երկու ամուսինք գործածեն պատուիրեալ կարգ մը կերակուրներ, զորս քիչ մը ետքը պիտի նշանակենք։

Արու և էգ ծննդագործելու խնդրոյն վրայ զբաղող խել մը ուսումնագէտ անձինք դիտած են որ յոռի վարուք վատթարացած և չափազանցութեամբ մաշած, նոյնպէս տարիքոտ մարդիկ մանչէն աւելի աղջիկ կը ծննդագործեն։ Արու տղայոց ծնունդը սակաւաթիւ է մայրաքաղաքաց մէջ քանթէ գիւղաքաղաքներու և գիւղերու մէջ. վասնզի ամեն տեսակ անառակութիւնք և չափազանցութիւնք ընդհանրական և մանաւանդ սովորական են առջիններուն մէջ և գրեթէ անծանօթ երկրորդներուն մէջ։

Բայց բնութիւնը, որ ամեն տեղ ու ամեն ատեն յարմար փոխարինութիւններ կը հաստատէ, պահանջած է որ, եթէ արուէն աւելի էգ արտադրող ամուսնութիւններ կան, էգէն աւելի արուներ ծնանող ամուսնութիւններ ալ ըլլան։ Արդարեւ գաւառներու և ամբողջ ազգերու վրայ եղած վիճակագրութիւնները խիստ փոքրագոյն տարբերութիւն մը կը ցուցնեն այս մասին։ Ամբողջ Եւրոպայի մէջ 204 ծննդոց 100ը արու և 104 էգ, իսկ ամբողջ Ասիայի մէջ նոյն չափ տղայոց 97ը արու և 107ը էգ են։

Վերոգրեալ բոլոր ապացուածներէն կրնանք եզրակացուցանել թէ սեռի որոշումը և սաղմին լաւ կամ յոռի կազմութիւնը՝ ձուոյն և արգասաւորիչ հեղուկին որպիսութիւններէն կախումն ունին, և թէ այս որպիսութիւնք են ընդ ազդեցութեամբ սննդեան,

# ՀԱՏՈՒԱԾ Գ.

## ՀԱՄԱՌՕՏ ԿՐԿՆՈՒԹԻՒՆ.

Քիչ մը ուսում ունեցող մարդիկ չ'են կրնար ուրանալ թէ սննդեան որպիսութիւնը արեան մէջ հեղուած սնուցիչ հիւթին որպիսութեանը վրայ դրական ազդեցութիւն մ'ունի, թէ այս ինչ կերակուրները, այն ինչ կերակուրներէն աւելի յարմար են ոսկրները կազմելու, և թէ դնդերք, ճարպը և միւս կենդանական հիւսկէնները այս ինչ կերակրոյ ազդեցութեան տակ աւելի կը զարգանան քան թէ այն ինչ կերակրոց։ Բնաւին չը կրնար ուրացուիլ այն տարբերութիւնները, որք ոսկերաց և դնդերաց, մանրաթել և ոսկրեղէն հիւսկէններուն են, տարրակազմական բաղադրութեանց մէջ կը գտնուին։ Ուստի եթէ այս ինչ կերակուրք գնտիկներով աւելի հարուստ արիւն մը և աւելի զարգացեալ դնդերք և ճարպ կրնան կազմել, ո՞վ կրնայ ընդդիմանալ, եթէ ընդունուի թէ այս ինչ կարգ կերակուրներն ալ ձուոյն որպիսութեանցը և սերմնորդանց որպիսութեանցը վրայ ազդեցութիւն ունի։

Անտարակոյս խիստ անկատար խել մը փորձերու հետեւութեամբ ուրեմն համոզուեցանք թէ որչափ որ աւելի ազօթացեալ ըլլայ սնունդը, այնչափ աւելի յաջողութիւն կըլլայ արու արգասաւորելու մէջ. ընդհակառակը սնունդը որչափ աւելի ջրածխային ըլլայ, արու արգասաւորելու մասին նուազ, իսկ էգ արգասաւորելու մասին աւելի յաջողութիւն կըլլայ։

Այս փորձերէն և դիտողութիւններէն հետեւցու-

ցինք որ արուի կամ իգի որոշումը սերմնորդանց կազմութեան համար հարկաւոր եղած նիւթին մէջ գտնուած բորակածնին առաւելութեանցն կամ նուազութեանցն կախումն ունէր ։

Այս վարդապետութիւնը երբէք իւր մէջը չը պարունակեր թէ ազօթացեալ սնունդ մը անշուշտ և անվրէպ արու արդասաւորութիւն և ջրածնային սնունդն ալ էգ արդասաւորութիւն պիտի արդիւնաւորեն ։ Որովհետեւ մարդկային մէքենան՝ պարզապէս տարրագիտական կազմած մը չէ և սոր պէս անփոփոխելի կերպով չը գործեր։ Ազօթացեալ կերակուրներէ առաջ եկած սննդական հիւթը մարմնոց կամ ձուարաններուն մէջ հասնելէ առաջ խել մը դեռ անծանօթ անջատմանց և կերպափոխութեանց կ՚ենթարկուի . այնպէս որ միեւնոյն կերակուրը միեւնոյն քանակութեամբ և միեւնոյն ժամանակին մէջ տասը զանազան մարդոցմէ ուտուելով , գործարանա—տարրապարզական զանազան փոփոխութիւններ կը կրեն , ըստ հասակի , ըստ խառնուածքի , ըստ մարմնական զօրութեանց , ըստ անջատական և խառնափոփոխական գործարանաց ևն ևն. և վերջապէս ըստ վերջին տարրալուծական գործողութեան , սերման կազմութիւնը և ձուարանային խոնաւութիւնը չը կրնար միեւնոյնը ըլլալ այս տասը մարդկանց քով ։

Այս տարբերութիւնները երբէք մեր վարդապետութիւնը չեն կրնար եղծանել և ընդհակառակը կը հաստատեն թէ բոլոր այս հանգամանքները միաւորելով նախադասացեալ վախճանը կրնան տալ ։ Հոս սննդեան վրայ մէկ քանի խօսք ըսենք ։

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

## ՍՆՆԴԱՐԱՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ — ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ ՍՆՆԴԵԱՆ

Կերակուրք երեք կարգի բաժնուած են ։

1° Ազօթացեալ նիւթին կերակուրք. որոնք կը կազմուին ջրածնէ, թթուածնէ, քիչ ածխատարրէ և շատ բորակածնէ ։ Սեաւ և կարմիր միսերը ամեն կենդանական գոյացութիւններէ աւելի ազօթացեալ են, ասոնցմէ ետքը կուգան՝ արիւնը, խաղճախուղճք, մածունք, խորխաւոր ոլոռն, լուբիա ևն ։ Գրգռիչ և զօրացուցիչ կերակուրք խորովացեալ միսերէ կը կազմուին ։

2° Ջրածխային կամ շնչառական կերակուրք, որոնք ջրէ և ածխատարրէ կազմուելով՝ ճարպաւոր մարմնոց հետ՝ կեանքը պահպանող և տեւողական պահող ընդհանուր այրման կը ծառայեն ։ Թէ և ամեն օր այս տեսակ կերակուրներէն մեծ քանակութեամբ կուտենք, սակայն տարրալուծութիւնը մեր գործարանաց մէջ անոնց խիստ տկար հետքերը կը գտնէ, խէժերը, արմատական ալիւրները, տնկական հոյզալայ, կանանչ բանջարեղէնք ևն այս կարգին կը վերաբերին ։ — Բուսական կերակուրք ընդհանրապէս ջրածխային սնուցիչ հիւթերէ կը բաղկանան ։

3° Ճարպաւոր մարմինք. ասոնք այնպիսի կերակուրներ են, որք շատ ածխատարր և ջրածին կը պարունակեն, իսկ քիչ թթուածին և ոչինչ բորակածին ; ինչպէս ճրագու, ճարպ, իւղ, կարագ ևն ։ Այս կերակուրները՝ շնչառական կերակրոց կարգը կը

դատուին, վասնզի բոլոր մարմնոյն մէջ կը տարածուին և իրենց ախտատարքը անդադար բռնկելով, ջերմութիւն և կեանք կարտադրէ ։—Ասոնք նաև մասամբ իւիք բուսական կերակրոց բաղադրութեան մէջ ալ կը մտնան ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Ե.

### ԱՐՈՒ ԿԱՄ ԷԳ ԾՆՆԴԱԳՈՐԾԵԼՈՒ ՑԱՏԿԱՑԵԱԼ ՍՆՈՒՆԴ ԵՒ ԿԱՐԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԿԵՐԱԿՐՈՑ ։

ԱՐՈՒ ԾՆՆԴԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ։ Միշտ էգ ծննդագործող ամուսինք արու զաւակ մ'ունենալու համար պարտին հետևեալ կերառութեանց ենթարկուիլ ։

ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ ԱՌՆ ։ 20 կամ 25 օր շարունակ էրիկ մարդը սննդատու և ողջնացեալ կերակուրներ պարտի առնել. զր. օրինակ. եզնախորովք, կող խոյոց և որթուց, զիստ ոչխարի, այծեամն, սեաւ երէ ևն ։ Այս կերակուրները այնչափ նուելի զօրացուցիչ և գրգռիչ կըլլան, որչափ որ թուելի մսատարր պարունակեն ։ Սնուցիչ պաշտամանց աշխոյժը աւելցնելու համար պարտի մամնամարզութիւն ընել։ Առաւ ատեն լողալ, ծովու կամ գետի ջրով լոգանք օգտակար միջոցներ են, որոնք չը պարտի զանց առնուլ։ Եթէ իր խառնուածքը աւշաւոր է, եթէ իր կազմութիւնը զինքը կը ջեռուցանէ, իր կերառութեան տասն և հինգերորդ օրուան մօտերը պարտի Աֆրոդիտեան համարուած կերակուրներ առնուլ. ինչպէս արջառակ, սպնդա-

տունկ· խնցգետին· խնչափառ· ծուկ և վերջապէս դեղագրոյն մէջ նշանակուած Ֆիտոլաքա ամերիկեան անուն ըմպելիքն օրը երկու գաւաթ խմելու է։ Ջաղկանքը նաև ծննդական գրգռման համար զօրաւոր միջոց մ՚է, որնոր ըստ հարկի պէտք է գործածել։ Այս կերառութեան միջոցին բոլորովին պէտք է հեռանալ ցանկական գործողութենէ։

ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ ԿՆՈՋ։ Կինը պարտի հակառակ կերառութեան հետևիլ և առնել անպարարտ արգանակ, ճերմակ միսեր, գառն, հաւ ևն. հուզաւոր կերակուրք ինչպէս. թելահայս. ճաւար. պանիր, փողահայս. ստեպղին. շողգամ, հազար, ոլոռն, ծմեր և ամեն տեսակ բանջար։ Ջուր և զովացուցիչ ըմպելիներ պիտի առնէ, ինչպէս նարընջաջուր, լիմոնաջուր, հաղարջաջուր, ընդահոյզք ևն։ Ամբողջ պիտի լոգուի՝ աւելի տաք քանթէ գաղջ ջուրով և կարելի եղածին չափ հանգիստ պիտի վայելէ։

Ամուսինք քսան կամ քսան և հինգ օր այսպէս կերակրուելով, ամուսնական գործողութիւնը կատարելու համար պարտին ընտրել դաշտանի երևման երկրորդ կամ նոյն օրը իսկ, վասնզի այն ատենը միայն արգասաւորութիւնը ստոյգ և անվրէպ է։

Այս պարտաւորութեան կատարման ատեն՝ այրը պարտի սիրոյ և ծննդական բոլոր կարողութիւնները պարկել այսինքն բնական և բարոյական բոլոր զօրութիւնները միացնել և իր ծննդագործել ուզած տղուն սերմին վրայ պիտի հաստատէ իր խորհրդածութիւնը. Կինը փոխանակ՝ այն հաճոյական միաւորութեան սակ տատանելու, պարտ

տի ամփոփման մնաց յուսալ արգասաւորութեան և այս միջոցիս բոլոր իւր ուշադրութիւնը արական-սեռին խորհրդական նշանաց վրայ պարտի հաստատել։

ԷԳ ԾՆՆԴԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ։ Միշտ արու ծննդագործողք ամուսինք ալ էգ զաւակ մ՚ունենալու համար հետեւեալ կերառութեանց ենթարկուելու են։

ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ ԱՌՆ։ Իւր սնունդը պէտք ըլլայ միմիայն ջրածնային կերակուրք, այսինքն այնպիսի կերակուր ուր բնաւ բորակածին չը պիտի գտնուի։ Ինչպէս անպարարտ արգանակ, փոլաճայս, կաթնապուր, ծմել, հաճար և ամեն տեսակ կանաչ բանջարեղէնք. ի վերայ այսր ամենայնի կրնայ նաեւ գործածել ճերմակ միսեր. իւր ըմպելիները զովացուցիչ, ջրոտ և միզամուղ ըլլալու են, լիմոնաջրատ, հաղարջաջուր, նշահոյղ, և պարզ ու մաքուր ջուր, բոլորովին հեռանալու է գինիէ և ոգելից ըմպելիներէ։

ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ ԿՆՈՋ։ Կինը հակառակ կերառութեան պարտի հետեւիլ, գրգռիչ և սնուցիչ կերակուրներ, գրգռիչ ըմպելիներ գործածելու է և չափաւոր մարմնամարզութիւն ընելու է։

Քսան կամ քսան և հինգ օրէն վերջը երկու ամուսինք դաշտանի երեւման օրը կամ երկրորդ օրը որոշելու են ծննդական գործողութիւնը կատարելու համար. և երկուքն ալ՝ գրկախառնութեան ատեն պարտին իրենց խորհրդածութիւնքը՝ ծննդագործել ուզած սեռին վրայ հաստատել։

Ահա ասոնք են ըստ կամաց սեռ ծննդագործելու արհեստին ընծայած առողջապահական և կազմախօսական միջոցները, որոնք մեծագոյն մասամբ

ամուսնոց յոյսը պսակած են և կըպտակեն, եթէ լաւ պատուիրելոց գործադրուին. իսկ եթէ չըյաջողին, անտարակոյս ըլլան որ կերատութիւնք աղէկ գործադրուած չեն, կամ մէկէն կամ միւսէն և կամ երկուքէն իսկ։



# ԳԼՈՒԽ ԺԵ.

## ՀԵՇՏՈՒԹԻՒՆԸ ՈՐՈՒ՞ ՔՈՎ ԱՒԵԼԻ ՍԱՍՏԻԿ Է. ԱՌՆ ԹԷ ԿՆՈՋ.

Այս խնդիրը՝ թէ և վաղեմի և արդի անձերէ շատ յուզուած է, սակայն այսուհետեւ երբէք վիճաբանութեան չըկարօտիր։

Ցանկական գրկախառնութիւնը էրիկ մարդուն կազմական և բարոյական կարողութիւնները գրեթէ ամբողջապէս կը վատնէ. իր կենաց ամեն գործողութիւններէն աւելի աս գործողութիւնն է որ իր ջղաց զօրութիւնը մեծապէս կըսպառէ, ցանկական հեշտութեան կատարը կըյայտնուի իր քով ջղաձգական յուզմամբ, ընդհանրական սոնդամօք, որուն անմիջապէս կըյաջորդէ դնդերական զօրութեանց թուլութիւն և վատթարութիւն։

Այս մեծ յայտնութենէն հետեւցնելով կազմագէտք, որոնց մէջն է նաեւ գիտնականն Միւլէր, կընդունին որ էրիկ մարդը կնոջմէն աւելի ուժգին, իսկ անկէ նուազ տեւողութեամբ հեշտութիւն կըզգայ. և իրենց այս կարծիքը հետեւեալ կերպով կը հաստատեն։

Այրը կը գործէ գրեթէ միշտ իւր տէր , և ցանկական գործողութեան կը գրգռի, երբ իւր գործարանները յօժարին և կինն ալ պատրաստուեալ է համաձայնիլ առանց իւր գործարանները նոյն աստիճան գրգռման հասած ըլլալու . ասկից կը հետեւի որ եթէ ցանկական գործողութիւնը կարճ տեւէ , կնոջ համար հեշտութիւն մը չըլլալէ զատ չարչարանք մ'ալ է ։ Եթէ ընդհակառակը գործողութիւնը երկար տեւէ , փոքր շրթանց կրած շփումները , կնաքերին խաղաղանքը և արգանդի ցնցուղին զգացած քաղցր շօշափումնքը՝ իւր ծննդական յօրինուածոյն գրգռումը վերին աստիճանի կը հասցնեն և այս ընդհանրական գրգռումն հեշտութիւնը խակոյն կը բղխի։ Կինք երիկ մարդէն աւելի ընդարձակ ներական յօրինուած մը , աւելի եռանդոտ երեւակայութիւն մը, աւելի մեծ զգայականութիւն մ'ունեցած ըլլալով , տարփական կապակցութեան տակ կ'եռայ և կ'ընդոստնու , եգրգռման ամբողջ տեւողութեան ատեն հեշտութիւնը կը վայելէ անխոռժանօք ։

Երիկ մարդուն քով՝ հեշտութեան գրգռումը միայն ցայտեցուցման տեւողութեան ատեն կը տեւէ , և իւր բոլոր էութիւնը վեր ի վայր ընդ ջղաձգական շարժումն անմիջապէս ետքը վատթարութիւն մը , ընդհանրական անկում կը յաջորդէ , որնոր իւր վայելած հեշտութեան սաստկութեանը հետ ուղիղ կը համեմատի , այսինքն հեշտութիւնը որչափ սաստիկ ըլլայ վատթարութիւնն ալ այնչափ աւելի կըլլայ ։ Կարծել թէ կինը այրէն աւելի եռանդոտ է և անկէ աւելի հեշտութիւն կըզգայ, սխալմունք մ'է՝ և այս սխալմունքն ալ

կնոջ իր ծննդական գործարանաց կազմութեան պատճառաւ միշտ զուգաւորութեան պատրաստ ըլլալը և երիկ մարդուն ալ՝ այս գործողութիւնը կատարելու համար յառաջիմանէ իր առանձնանդամուն՝ կանգնումն հարկաւոր ըլլալը տեսնելէն առաջ կուգայ ։ Յանկաւէր և վա–աշոտ կինը այդ ցանկական գործողութեան կը հետամտի շատ անգամ երեւակայական ցոփութեամբ կամ ուղղոյ բորբոքմամբ ։ որնոր զինքը կը մղէ այդ գործողութիւնը ստեպ կատարելու առանց վաստակաբեկ ըլլալու ։ այն ատեն ինքը շատ երիկ մարդոց կը կարօտի ։ վասնզի մէկ անձը՝ զինքը գոհ ընելու չափ զօրաւոր չը կրնար ըլլալ ։ Բայց այսու երբէք չը կրնար ապացուցուիլ թէ կինը այրէն աւելի հարկեցուցիչ պէտք մը կըզգայ և թէ իր հեշտութիւնները անկէ աւելի զօրաւոր և եռանդոտ են ։ Բայց ընդհակառակը կապացուցանէ թէ երիկ մարդուն պէտքը աւելի ստիպողական է. վասնզի այդ գործողութեան մէջ այրը միշտ յառաջամարտիկ կըլլայ ։ վասնզի դատաստանական ատեաններուն մէջ յայտնի կը տեսնուի որ միշտ երիկ մարդը կինը բռնաբարած է ։

Ի վերայ այսր ամենայնի թէ՛ այր և թէ՛ կնոջ հեշտութեան սաստկութիւնը խառնուածքէ, հասակէ, ժուժկալութենէ, անհատի իրական կացութենէ կախումն ունի ։ Նմանապէս զգայարանաց զառանցութիւնը և հեշտական յուզմունքները երեւակայութենէ, յուզիչ կարողութեանց և այր և կնոջ միմեանց համար զգացած սիրոյ իշխանութեան տակ են։

Ցուակ ուրեմն էրիկ մարդուն զգացած հեշտութիւնը քիչ տեւողական է ։ բայց աւելի զօրաւոր ։ կնոջ զգացած հեշտութիւնը քիչ զօրաւոր բայց եր-

կարօտեւ է, և այս կարծիքը սա առածին հետեւութիւնն է թէ հեշտութիւնք որչափ զօրաւոր ըլլան, այնչափ կարճատեւ են :

Հնութիւնը, որնոր իւր աստուածոցը մէջ հանճարեղ է, մեզի կըսորվեցնէ թէ Թիրեսիաս, որնոր երկու սեռն ալ ստացած էր. Դիոսէն և Հերա իւր կնոջմէն դատաւոր կարգուեցաւ գիտնալու համար թէ էրիկ մարդուն կամ կնիկ մարդուն ո՞րը՝ ցանկական գործողութեան ատեն աւելի հեշտութիւն կըզգայ։ Թիրեսիաս պատասխանեց թէ կինը : Հերա այս պատասխանին վրայ նեղանալով Թիրեսիասի երկու աչքերը կուրցուց : Երթեւելի գուշակը անտարակոյս ըսել ուզեց որ կնոջ՝ տեւողութեան նկատմամբ վայելած հեշտութեան գումարը էրիկ մարդուն զգացած հեշտութեան գումարէն կառաւելուր. որնոք խիստ իրաւացի և ճշմարիտ է :

## ԽՐԱՏ ՎԱՍՆ ԿԱՆԱՆՑ

Այրը միշտ իւր երջանկութիւնը բաժնուած տեսնալ կը սիրէ, և իւր ցանկալի հրճուանքները կնոջ զգացած հրճուանաց պատճառաւ կ'առաւելուն, և երբ տեսնայ թէ իւր վերջին ծայր զըրգռման ատեն կինն ալ իրեն պէս կը գրգռի, այն ատեն կը կարծէ թէ կեանքը իրմէ կը թռչի և խիստ քաղցր հեշտութեանց մէջ կը չիջանի. ահա այս գրգռման վայրկեաններուն մէջ է որ սիրոյ սաղն-գանքը կը պատճառի :

Եթէ կան կանայք, որք խիստ տարփացող են. կան նաեւ այնպիսիներ, որ հակառակ չափազանցութեան մէջ կը գտնուին և ամուսնական պարտաւորութիւնը կատարելու մասին այնչափ անզգայութիւն

և անտարբերութիւն կը ցուցնեն որ էրիկ մարդուն եռանդը կը սառեցնեն և մինչև իսկ անոր ներքին պայթակղութեան պատճառ կըլլան . թէև ասիկայ խիստ քիչ անգամ նորոգուի , սակայն այրը կերթայ ուրիշ տարփածուի գրկացը մէջ որոնել այն բանը , զոր չը կրցաւ գտնել իւր կնոջ քով : Ուսկից առաջ կուգան հեռաւորութիւն , լքումն , արհամարանք , վիշտք , դաժանութիւնք և ասոնցմէ առաջ եկած ամեն անկարգութիւնք :

Յիրաւի այրը վայրենամիտ է և իւր կնոջ գըրաւնուած կամ գտնուելիք կայմական և բարոյական վիճակին վրայ առանց անհանգիստ ըլլալու կուզէ կը պահանջէ որ իրեն չնորհեն ինչ որ ինքը կը փափաքի : Մերժում մը իւր բարկութիւնը կրնայ գըրգռել և փոթորկալից աղմուկներ պատճառել :

Կանա՛յք , հետեւեալ խրատուց ականջ դրէ՛ք : Ձեր ամուսնոյն սիրոյն և փափաքանցը զիջումն ըրէք՝ զանիկա ձեզի լաւ յանկուցանելու համար : Անոր դրգռած հեշտութեան մասին ձեր վայրկենական դժկամակութեան հակառակ ջանացէ՛ք զինքը գոհ ընել . հեշտութեան առնգանքը խիթելու հնարք մտածեցէ՛ք . և երբ խնդիրը ամուսին մը յինքն յանկուցանելու վրայ է , այն ատեն այս անմեղ խորամանկութիւնը ձեզ ներելի է . հաւատացէ՛ք ինձ. սրտի մօք և առանց վարանելու չնորհեցէք ինչ որ Ձեզմէ բռնութեամբ պիտի պահանջուի : Գիտէք արդէն , աւա՛ղ , որ հեշտութեան բորբոքած այրը կատաղի կ'ըլլայ և երբեմն ալ վայրենի : Այս ծնընդական տենդին բորբոքը ձեր գգուանաց մէջ շիջուցանելու չափ խոհեմ եղէք . իւր թախանձանքէն [illegible] ազատելու միակ միջոցը այս է :

կանա՛յք հետեւեցէ՛ք խրատուցս, ասոնք ամուսնութեան մէջ խաղաղութիւն և կարելի է որ երջանկութիւն պիտի հաստատեն ։

## ԽՐԱՏ ՎԱՍՆ ԱՐԱՆՑ

Այր մարդի՛կք, որ կուզէք ձեր կնոջ յարգանքը միշտ վայելել, դուք ալ ձեր կարգին ձեր կամացը մէջ նուազ բռնաւոր եղէք ։ Ձեր ախորժակին փափաքածը երբ տէր պահանջելէ առաջ, երբ տարփաւոր աղաւնոյ նման մնչեցէ՛ք, կնոջ կազմական վիճակը հարցուցէ՛ք և անոր բարոյական կացութեանը տեղեկացէ՛ք, սգոյ և տրտմութեան օրերը յարգեցէ՛ք ։ ձեր փափաքանօքը անհանգիստ մի՛ ընէք զինքը նեարդական քստման այս վարկեաններուն մէջ, ուր հոգին տխուր է և զգայարանքներն ալ հեշտութեան քիչ տրամադիր են ։ Երբ անտարբերութիւն և մերժումն կը տեսնաք, ձեր կամքը ուրիշ անգամ կատարելու չափ խոհեմ եղի՛ք ։ Երբեք բռնութեամբ և խստութեամբ մի պահանջէ՛ք ինչ որ ձեզմէ կը մերժեն ։ զգուշացէ՛ք, վասնզի կինը երբ կատաղի, կրնայ տարփածուի մը քով գտնալ ինչ որ իր ամուսնոյն քով չը կրցաւ գտնալ ։ մտածեցէ՛ք, բոլոր ձեր ուշադրութիւնը այս կէտիս վրայ դարձուցէ՛ք ։

Միշտ սիրելի եղի՛ք ձեր կնոջ քով, քաղցրութեամբ և փափկութեամբ զարթուցէ՛ք անոնց քնացեալ զգայարանքները, սիրոյ լեզուին ներդաշնակաւոր խօսքերով նախապէս անոնց ականջը հրապուրեցէ՛ք, միեւնոյն պահն գործածեցէ՛ք թէ հոգւոյ և թէ մարմնոյ գրգիռները և երբ ձեր փափաքանօքը

և զմայլուն խառնիճաղանճիները անտարբերութիւնը ցրուէք և եռանդը բորբոքէք, ո՛հ. այն ատեն ա՛լ չի պիտի գանգատիք անոնց ցուրտ վարմունքէն ։

ԳԼՈՒԽ ԺԶ.

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

## ԳԵՂԵՑԿՈՐԴԵԾՆՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԳԵՂԵՑԻԿ ՁԱՒԱԿՆԵՐ ԾՆՆԴԱԳՈՐԾԵԼՈՒ ԱՐՀԵՍՏԸ ։

Այն ատենները, ուր կազմական գեղեցկութիւն և ուժ ունեցող անձինքը աստուածներու կարգը կանցունէին, մարդկային ձեւոյն այս որպիսութիւնները ստանալու համար արհեստին և փորձառութեան ցուցած կերպերուն և միջոցներուն և ոչ մէկուն վրայ անփոյթ կը կենային ։ Պատմութիւնը մեզի կը սորվեցնէ որ գեղեցիկ զաւակներ ծննդագործելու արհեստը ոչ թէ միայն բժիշկներէն մշակուած էր, այլ նաեւ կնիկներէն, և գեղեցկացնելու արհեստին հետ մէկ տեղ կանանց ամենամեծ զբաղմունքներէն մին էր այն ։ Ուստի հաւանական է որ նախնի Յոյնք, որ այնչափ հանճարեղ էին, յառատեսութեան զօրութեամբ դատած էին՝ մարդկային ցեղը Ասկլեպիատեանց և Լայիսեանց կաղապարին վրայ ձեւելու համար բնութեան գործածած կերպերէն մէկը ։

Գեղեցկորդեծնութեան արհեստը, թէպէտ նաեւ

միւս արհեստները կորսուեցաւ այն ատեն, ուր կռապաշտութեան արձանը 'ի հիմանց շարժելով կործանեցաւ իրերու նոր կարգադրութեան մը տեղի տալու համար։ Բայց աւա՜ղ. հնոյն տեղ նոր քաղաքակրթութիւն մը գալէ առաջ որչափ դարեր անցան տգիտութեան խորխորատին մէջ, զոր նախապաշարմունք և մոլեռանդութիւնք անդադար կրրէին։ Բարբարոսութիւնը, որ այնչափ երկար ատեն Եւրոպան արեամբ և խաւարով ծածկեց, բարբարոսութիւնը, որնոր Աղեքսանդրիոյ գրատունը այրեց, մեր քաղաքակրթութենէն առաջ եղած մարդկային գիտութեանց դանկագին աւանդը իսպառ ոչնչացուց։

Ուստի հարկ եղաւ որ մարդ՝ այս աղէտալից հրդեհին պատճառած անչափ կորուստը վերստին շահելու համար նորէն գործի սկսի։ Մեր թուականին առջի տարիներուն թանձր խաւարին մէջէն տեղէն իր հանճարոյն փայլակը երբեմն երբեմն կը պլպըլար։ Յառաջադիմութիւնը՝ խել մը անբարտաւան և փառասէր մարդիկներէ յապաղուելով, յամրաքայլ կ'ընթանար. գիտութիւնը երթալով կը ցրուէր, մէկ քանի մեծ մարդիկ՝ լոյսը ծածկող վարագուրին մէկ անկիւնը պատռեցին և մարդկութիւնը իմացականութեան ջահով լուսաւորեցաւ։

Արհեստից և գիտութեանց զանազան ճիւղերուն մէջ երեւելի հանդիսացող տասն և վեցերորդ և տասն և ութերորդ դարուն գլխոնց մէջէն շատ մեծ փիլիսոփաներ, բնագէտներ, բժիշկներ և բնագէտներ կը պատմուին, որոնք գեղեցկորդեծնութեան արհեստին վրայ գրագեցան։ Ֆեռնել, որնոր Հենրիկոս Բ. Թագաւորին բժիշկն էր, արդասաւորութիւն պատճառելու կերպերը ուսոյց։ — Յովհաննէս Հունտէր․

այսչափ պայծառ լոյս մ՚արձակեցին , Հայքս գեղեցկորդեծնութեամբ կարողացան զբաղիլ ։ Սակայն հիւանդութեանց ժառանգականութեան և ծնողաց՝ իրենց սերունդին փոխադրելու զանազան ազդեցութեանց վրայ շատ մը գիտուն բժշկաց՝ըրած քըրտնաթոր և ծանրատաղտուկ խուզարկութիւնները հասնիլ ուզուած նպատակին մօտեցուցին ։ Վերջապէս ժամանակակից երևելի բնագննչաց յառաջնունեան և սաղմնածնունեան վրայ ըրած փորձերը և գիւտերը թէպէտ ծննդագործութեան հրաշալի և խորհրդաւոր երկը մեզմէ ծածկող քօղը կատարելապէս չը կրցան վերցնել , սակայն այս ամենաբարձր գիտութեան վերաբերեալ կանոններ հաստատեցին ։ Մեր աշխատութեանց և դիտողութեանց արդիւնքը մեր ուսուցչաց գիւտերուն հետ միացնելով մենք ևս մեր կարգին գեղեցկորդեծնութեան սահմանին մէջ պէտք մտնանք և անոր վարդապետութիւնը հաստատել պիտի ջանանք ։

Թէ՛ կազմապէս և թէ՛ բարոյապէս գեղեցիկ սերունդ մ՚ունենալու համար խել մը պայմաններու և պարագաներու կը կարօտի մարդ , սակայն մենք միմիայն անոնց գլխաւորները պիտի նշանակենք հոս ։ Ասոնցմէ ոմանք ծնողաց հասակին , խառնուածքին , բարւոք կացութեան և ծննդագործելու առեն ունեցած առողջութեան և հանգստութեան վիճակին մէջ կը պատահին , ոմանք ալ ընկերական վիճակի , կենցաղավարութեան , որպիսութեան , վարուց , սընընդեան , բնակութեան տեղւոյն , եղանակի , խառնուածքի բաղադրութեան , տարբեր ցեղերու և տարբեր նահանգաց անհատներու խառնման կամ միաւորութեան ևն ևն ի մէջ կը գտնուին ։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՅՄԱՆՔ

Արդէն գիտենք որ խօսք փափուկ կամ խիստ անցեալ հատակի մէջ գործադրուած ամուսնութեանց արդասիքը անկատար են. գիտենք նաև որ ժառանգականութիւնը կամ լաւ կամ վատթար որակութեանց փոխադրութեան օրէնքը միմեանց յաջորդող քանի մը սերնդեանց վրայ կ'ազդէ, այս ինքն բարեկազմ և լաւառողջ ծնողք իրենց որակութիւնները իրենց որդւոցը պիտի փոխադրեն. (բացառութիւն կրնայ ըլլալ). Ընկերական վիճակը, պաշտօնը, վարուց և կենցաղավարութեանց որակութիւնը սերնդեան վրայ ուղղակէս կազդեն: — Բարեկեցիկ ամուսնութիւնները, ուր կենաց պիտոյք առատութեամբ կը գըտնուին, գեղեցիկ պտուղներ կուտան. և եթէ ասոր հակառակը պատահին, պատճառը ուրիշ բան չ'է, բայց եթէ չափազանցութիւնք և քաղաքակրթական մոլութիւնք: Աղքատօրէն ամուսնացեալք, որք վատառողջ տնակաց մէջ դրկանօք կ'ապրին, որք իրենց կարողութենէն վեր աշխատութեամբ հալ և մաշ վիճակով կանցունեն իրենց օրերը և որք իրենց այս տաժանելի աշխատութեան պատճառաւ կորուստները կազդուրելու համար բաւական սնունդ չեն կարող գտնալ. այսպիսի ամուսինք միմիայն դժուած, շատ անգամ ալ տկարիկ և նենգեալ էակներ կարտադրեն. այս կը տեսնուի մեծ քաղաքաց մէջ, ուր տեղի կունենան ամէն տեսակ չափազանցութիւնք" իբր մեկզմեկու բեւեռ համարուող երկու ծայր ընկերութեանց, այսինքն չափազանց հարստութեան և չափազանց աղքատութեան մէջ:

Ցեղերու, տարբեր ազգաց անհատներու միաւո-

Այրը կը գործէ գրեթէ միշտ իր ակր, և ցանկական գործողութեան կը գրգռի, երբ իր գործարանները յոժարին և կինն ալ պարտաւորեալ է համաձայնիլ առանց իր գործարանները նոյն աստիճան գրգռման հասած ըլլալու. ասկից կը հետեւի որ եթէ ցանկական գործողութիւնը կարճ տեւէ, կնոջ համար հեշտութիւն մը չըլլալէ զատ չարչարանք մ'ալ է: Եթէ ընդհակառակը գործողութիւնը երկար տեւէ, մոքը չրթանց կրած չփումները, կնաբերին խաղտանքը և արգանդի ցնցուղին զգացած քաղցր շօշափումները՝ իր ծննդական յօրինուածոյն գրգռումը վերին աստիճանի կը հասցնեն և այս ընդհանրական գրգռումին հեշտութիւնը խոկոյն կը բղխի: Կինք երիկ մարդէն աւելի ընդարձակ ստուական յօրինուած մը, աւելի եռանդոտ երեւակայութիւն մը, աւելի մեծ զգայականութիւն մ'ունեցած ըլլալով, տարփական կապակցութեան տակ կ'եռայ և կ'ընդոստնու, և գրգռման ամբողջ տեւողութեան ատեն հեշտութիւնը կը վայելէ անխոծանօք:

Երիկ մարդուն քով՝ հեշտութեան գրգռումը միայն ցայտեցուցման տեւողութեան ատեն կը տեւէ, և իր բոլոր էութիւնը վեր ի վայր ընդջղաձգական շարժումէն անմիջապէս ետքը վատթարութիւն մը, ընդհանրական անկում կը յաջորդէ, որներ իր վայելած հեշտութեան սաստկութեանը հետ ուղիղ կը համեմատի, այսինքն հեշտութիւնը որչափ սաստիկ ըլլայ վատթարութիւնն ալ այնչափ աւելի կըլլայ: Կարծել թէ կինը այրէն աւելի եռանդոտ է և անկէ աւելի հեշտութիւն կըզգայ, սխալմունք մ'է՝ և այս սխալմունքն ալ

կնոջ իր ծննդական գործարանաց կազմութեան պատճառաւ միշտ զուգաւորութեան պատրաստ ըլլալը և էրիկ մարդուն ալ՝ այս գործողութիւնը կատարելու համար յառաջիմանէ իր առնանդամուն՝ կանգնումն հարկաւոր ըլլալը տեսնելէն առաջ կուգայ ։ Ցանկասէր և վաւաշոտ կինը այդ ցանկական գործողութեան կը հետամտի շատ անգամ երեւակայական շփութեամբ կամ ուղղոյ բորբոքմամբ , որոնք զինքը կը մղէ այդ գործողութիւնը ստէպ կատարելու առանց վաստակաբեկ ըլլալու , այն ատեն ինքը շատ էրիկ մարդոց կը կարօտի , վասնզի մէկ անձը՝ զինքը գոհ ընելու չափ զօրաւոր չը կրնար ըլլալ ։ Բայց այսու երբէք չը կրնար ապացուցուիլ թէ կինը այրէն աւելի հարկեցուցիչ պէտք մը կըզգայ և թէ իր հեշտութիւնները անկէ աւելի զօրաւոր և եռանդոտ են ։ Բայց ընդհակառակը կապացուցանէ թէ էրիկ մարդուն պէտքը աւելի ստիպողական է . վասնզի այդ գործողութեան մէջ այրը միշտ յառաջամարտիկ կըլլայ , վասնզի դատաստանական ատեաններուն մէջ յայտնի կը տեսնուի որ միշտ էրիկ մարդը կինը բռնաբարած է ։

Ի վերայ այսր ամենայնի թէ՛ առն և թէ՛ կնոջ հեշտութեան սաստկութիւնը խառնուածքէ, հասակէ, ժուժկալութենէ , անհատի իրական կացութենէ կախումն ունի . Նմանապէս զգայարանաց զառանցութիւնը և հեշտական յուզմունքները երեւակայութենէ , յուզիչ կարողութեանց և առն և կնոջ միմեանց համար զգացած սիրոյ իշխանութեան տակ են։

Ցուակ ուրեմն էրիկ մարդուն զգացած հեշտութիւնը քիչ տեւողական է , բայց աւելի զօրաւոր . կնոջ զգացած հեշտութիւնը քիչ զօրաւոր բայց եր-

կարատեւ է, և այս կարծիքը սա առածին հետեւութիւնն է թէ հեշտութիւնք որչափ զօրաւոր ըլլան, այնչափ կարճատեւ են ։

Հնութիւնը, որնոր իւր առացուածոցը մէջ հանճարեղ է,՝ մեզի կը սորվեցնէ թէ Թիրեսիաս, որնոր երկու սեռն ալ ստացած էր. Դիոսն և Հերա իւր կնոջմէն դատաւոր կարգուեցաւ գիտցնելու համար թէ էրիկ մարդուն կամ կնիկ մարդուն ո՞րը՝ ցանկական գործողութեան առեն աւելի հեշտութիւն կըզգայ. Թիրեսիաս պատասխանեց թէ կինը ։ Հերա այս պատասխանին վրայ նեղանալով Թիրեսիասի երկու աչքերը կուրցուց ։ Երեւելի գուշակը անտարակոյս ըսել ուզեց որ կնոջ՝ տեւողութեան նկատմամբ վայելած հեշտութեան գումարը էրիկ մարդուն զգացած հեշտութեան գումարէն կառաւելուր. որնոր խիստ իրաւացի և ճշմարիտ է ։

ԽՐԱՏ ՎԱՍՆ ԿԱՆԱՆՑ

Այրը միշտ իւր երջանկութիւնը բաժնուած տեսնալ կը սիրէ, և իւր ցանկական հրճուանքները կնոջ զգացած հրճուանաց պատճառաւ կ'առաւելուն, և երբ տեսնայ թէ իւր վերջին ծայր զըրգռման առեն կինն ալ իրեն պէս կը գրգռի, այնատեն կը կարծէ թէ կեանքը իրմէ կը թռչի և խիստ քաղցր հեշտութեանց մէջ կը չիջանի. ահա այս գրգռման վայրկեաններուն մէջ է որ սիրոյ սաղմնագանքը կը պատճառի ։

Եթէ կան կանայք, որք խիստ տարփացող են. կան նաեւ այնպիսիներ, որ հակառակ չափազանցութեան մէջ կը գտնուին և սովորական պարտաւորութիւնը կատարելու մասին այնչափ անզգայութիւն

և անտարբերութիւն կը ցուցնեն որ էրիկ մարդուն եռանդը կը սառեցնեն և մինչև իսկ անոր ներքին գայթակղութեան պատճառ կըլլան, թէև տափկալ խիստ քիչ անգամ նորոգուի, սակայն այրը կերթայ ուրիշ տարփածուի գրկացը մէջ որոնել այն բանը, զոր չը կրցաւ գտնել իւր կնոջ քով: Ասկէց առաջ կուգան հեռաւորութիւն, լքումն, արհամարանք, վիշտք, դաժանութիւնք և ասոնցմէ առաջ եկած ամեն անկարգութիւնք:

Յիրաւի այրը վայրենամիտ է և իւր կնոջ գըտնուած կամ գտնուելիք կազմական և բարոյական վիճակին վրայ առանց անհանգիստ ըլլալու կուզէ, կը պահանջէ որ իրեն շնորհեն ինչ որ ինքը կը փափաքի: Մերժում մը իւր բայկութիւնը կրնայ գըրգռել և փոթորկալից աղմուկներ պատճառել:

Կանա՛յք, հետևեալ խրատուց ականջ դրէ՛ք: Ձեր ամուսնոյն սիրոյն և փափաքանցը զիջումն ըրէք՝ զանիկա ձեզի լաւ յանկուցանելու համար: Անոր գրգռած հեշտութեան մասին ձեր վայրկենական դժկամակութեան հակառակ ջանացէ՛ք զինքը գոհ ընել. հեշտութեան տանգանքը խթելու հնարք մտածեցէ՛ք. և երբ խնդիրը ամուսին մը յինքն յանկուցանելու վրայ է, այն ատեն այս անմեղ խորամանկութիւնը ձեզ ներելի է. Հաւատացէ՛ք ինձ. սրտի մօք և առանց վարանելու շնորհեցէք ինչ որ Ձեզմէ բանութեամբ պիտի պահանջուի: Գիտէք արդէն, աւա՛ղ, որ հեշտութեամբ բորբոքած այրը կատաղի կըլլայ և երբեմն ալ վայրենի: Այս ծնընդական տենդին բորբոքը ձեր գգուանաց մէջ չիջուցանելու չափ խոհեմ՛ մ եղէ՛ք. իւր թախանձանքէն [illegible] ազատելու միակ միջոցը այս է:

կանո՛նք հետեւեցէ՛ք խրատուցս․ ատոնք ամուսնութեան մէջ խաղաղութիւն և կարելի է որ երջանկութիւն պիտի հաստատեն ։

## ԽՐԱՏ ՎԱՍՆ ԱՐԱՆՑ

Այր մարդի՛կք, որ կուզէք ձեր կնոջ յարգանքը միշտ վայելել, դուք ալ ձեր կարգին ձեր կամացը մէջ նուազ բռնաւոր եղի՛ք ։ Ձեր ախորժակին փափաքածը իր տէր պահանջելէ առաջ, իբր տարփաւոր աղաւնոյ նման մնչեցէ՛ք ․ կնոջ կազմական վիճակը հարցուցէ՛ք և անոր բարոյական կացութեանը տեղեկացէ՛ք, սգոյ և տրտմութեան օրերը յարգեցէ՛ք ․ ձեր փափաքանօքը անհանգիստ մի՛ ընէք զինքը նեարդական քստմման այս վարկեաններուն մէջ, ուր հոգին տխուր է և զգայարանքներն ալ հեշտութեան քիչ տրամադիր են ։ Երբ անտարբերութիւն և մերժումն կը տեսնաք, ձեր կամքը ուրիշ անգամ կատարելու չափ խոհեմ եղի՛ք ։ Երբեք բռնութեամբ և խստութեամբ մի պահանջէ՛ք ինչ որ ձեզմէ կը մերժեն ․ զգուշացէ՛ք, վասնզի կինը երբ կատաղի, կրնայ տարփածուի մը քով գտնալ ինչ որ իւր ամուսնոյն քով չը կրցաւ գտնալ ․ մտածեցէ՛ք, բոլոր ձեր ուշադրութիւնը այս կէտին վրայ դարձուցէ՛ք ։

Միշտ սիրելի եղի՛ք ձեր կնոջ քով, քաղցրութեամբ և փափկութեամբ զարթուցէ՛ք անոնց քնացեալ զգայարանքները, սիրոյ լեզուին ներդաշնակաւոր խօսքերով նախապէս անոնց ականջը հրապուրեցէ՛ք, միեւնոյն պահն գործածեցէ՛ք թէ հոգւոյ և թէ մարմնոյ գրգիռները և երբ ձեր փայփայանօքը

և զմայլուն յառաջխաղանքը անտարբերութիւնը ցրուեք և եռանդը բորբոքեք, ո՛հ. այն ատեն ա՛լ չի պիտի զանգատիք անոնց ցուրտ վարմունքէն :

---

## ԳԼՈՒԽ ԺԶ.

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԳԵՂԵՑԿՈՐԴԵԾՆՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԳԵՂԵՑԻԿ ՁԱՒԱԿՆԵՐ ԾՆՆԴԱԳՈՐԾԵԼՈՒ ԱՐՀԵՍՏԸ :

Այն ատենները, ուր կազմական գեղեցկութիւն և ուժ ունեցող անձինքը աստուածներու կարգը կանցունէին, մարդկային ձևւոյն այս ուպխութիւնները ստանալու համար արհեստին և փորձառութեան ցցուած կերպերուն և միջոցներուն և ոչ մեկուն վրայ անխոյթ կը կենային : Պատմութիւնը մեզի կը սորվեցնէ որ գեղեցիկ զաւակներ ծննդագործելու արհեստը ոչ թէ միայն բժիշկներէն մշակուած էր, այլ նաև կնիկներէն, և գեղեցկացնելու արհեստին հետ մէկ տեղ կանանց ամենամեծ զբաղմունքներէն մին էր այն : Ըստ այսմ հաւանական է որ նախնի Ցոյնք, որ այնչափ հանճարեղ էին, յարատեւութեան զօրութեամբ դրած էին՝ մարդկային ցեղը Ողիմպիատեանց և Լոյիսեանց կաղապարին վրայ ձևելու համար բնութեան գործածած կերպերէն մէկը :

Գեղեցկորդեծնութեան արհեստը, ինչպէս նաև

միւս արհեստները կորսուեցան այն ատեն, ուր կառավարութեան արձանը 'ի հիմանց շարժելով կործանեցաւ. իրերու նոր կարգադրութեան մը տեղի տալու համար: Բայց աւա՛ղ. հնոյն տեղ նոր քաղաքակրթութիւն մը գալէ առաջ որչափ դարեր անցան ագիտութեան խորխորատին մէջ, զոր նախապաշարմունք և մոլեռանդութիւնք անդադար կրբէին: Բարբարոսութիւնը, որ այնչափ երկար ատեն Եւրոպան արեամբ և խաւարով ծածկեց, բարբարոսութիւնը, որնոր Աղեքսանդրիոյ գրատունը այրեց, մեր քաղաքակրթութենէն առաջ եղած մարդկային գիտութեանց դանկագին աւանդը իսպառ ոչնչացուց:

Ուստի հարկ եղաւ որ մարդ՝ այս աղէտալից հրրդեհին պատճառած անչափ կորուստը վերստին շահելու համար նորէն գործի սկսի: Մեր թուականին առջի տարիներուն թանձր խաւարին մէջտեղէն իր հանճարոյն փայլակը երբեմն երբեմն կը պլպլար: Ցասմնագիտութիւնը՝ խել. մը անբարտաւան և փառասէր մարդիկներէ յապաղուելով, յամրադայլ կընթանար. գիտութիւնը երթալով կը ցրուէր, մէկ քանի մեծ մարդիկ՝ լոյսը ծածկող վարագուրին մէկ անկիւնը պատռեցին և մարդկութիւնը իմացականութեան ջահով լուսաւորեցաւ:

Արհեստից և գիտութեանց զանազան ճիւղերուն մէջ երեւելի հանդիսացող տասն և վեցերորդ և տասն և ութերորդ դարուն գիտնոց մէջէն շատ մեծ փիլիսոփաներ, բնագէտներ, բժիշկներ և բնագիտներ կը պատմուին, որոնք գեղեցկորդեծնութեան արհեստին վրայ գրագեցան: Ցէռնէր, որնոր Հենրիկոս Բ. թագաւորին բժիշկն էր, արդասաւորութիւն պատճառելու կերպերը ուսոյց: — [illegible] Հ[illegible]

այսչափ պայծառ լոյս մ՚արձակեցին, հապա գեղեցկորդեծնութեամբ կարողացան զբաղիլ: Այնպէս հիւանդութեանց ժառանգականութեան և ծնողաց իրենց սերունդին փոխադրելու զանազան ազդեցութեանց վրայ շատ մը գիտուն բժշկաց ըրած քննանաթոր և ծանրատաղտուկ խուզարկութիւնները հասնիլ ուզուած նպատակին մօտեցուցին: Վերջապէս ժամանակակից երեւելի բնագննչաց յառաջ ծննդաբանութեան և սաղմնածննդաբանութեան վրայ ըրած փորձերը և գիւտերը թէպէտ ևծննդագործութեան հրաշալի և խորհրդաւոր երկը մեզմէ ծածկող քօղը կատարելապէս չը կրցան վերցնել, սակայն այս ամենաբարձր գիտութեան վերաբերեալ կանոններ հաստատեցին: Մեր աշխատութեանց և գիտողութեանց արգասիքը մեր ուսուցչաց գիւտերուն հետ միացնելով մենք ալ մեր կարգին գեղեցկորդեծնութեան սահմանին մէջ պիտի մտնանք և անոր վարդապետութիւնը հաստատել պիտի ջանանք:

Թէ՛ կազմապէս և թէ՛ բարոյապէս գեղեցիկ սերունդ մ՚ունենալու համար խել մը պայմաններու և պարագաներու կը կարօտի մարդ, սակայն մենք միմիայն անոնց գլխաւորները պիտի նշանակենք հոս: Առանցմէ ոմանք ծնողաց հասակին, խառնուածքին, բարուց կացութեան և ծննդագործելու ատեն ունեցած առողջութեան և հանգստութեան վիճակին մէջ կը պատահին. ոմանք ալ ընկերական վիճակի, կենցաղավարութեան, որպիսութեան, վարուց, սնընդեան, բնակութեան տեղւոյն, եղանակի, խառնուածքի բաղադրութեան, տարբեր զատուաց և տարբեր նահանգաց անհատներու խառնման կամ միաւորութեան ևն ևն ի մէջ կը գտնուին:

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՑՄԱՆՔ

Արդէն գիտենք որ խիստ փափուկ կամ խիստ անցեալ հասակի մէջ գործադրուած ամուսնութեանց արգասիքը անկատար են. գիտենք նաև որ ժառանգականութիւնը կամ լաւ կամ վատթար որպիսութեանց փոխադրութեան օրէնքը միմեանց յաջորդող խել մը սերնդեանց վրայ կ'ազդէ, այս ինքն բարեկազմ և լաւառողջ ծնողք իրենց որպիսութիւնները իրենց որդւոցը պիտի փոխադրեն. (բացառութիւն կրնայ ըլլալ)։ Ընկերական վիճակը, պաշտօնը, վարուց և կենցաղավարութեանց որպիսութիւնը սերնդեան վրայ ուղղապէս կազդեն: — Բարեկեցիկ ամուսնութիւնները, որ կենաց պիտոյք առատութեամբ կը գըտնուին, գեղեցիկ պտուղներ կուտան. և եթէ ասոր հակառակը պատահին, պատճառը ուրիշ բան չ'է. բայց եթէ չափազանցութիւնք և քաղաքակրթական մոլութիւնք։ Աղքատօրէն ամուսնացեալք, որք վատառողջ տեղեաց մէջ որկանօք կ'ապրին, որք իրենց կարողութենէն վեր աշխատութեամբ հալ և մաշ վիճակով կանցունեն իրենց օրերը և որք իրենց այս տաժանելի աշխատութեան պատճառած կորուստները կազդուրելու համար բաւական սնունդ չեն կարող գտնալ. այսպիսի ամուսինք միմիայն գձուձ, շատ անգամ ալ տեքփիր և նենգեալ հակներ կարտադրեն. այս կը տեսնուի մեծ քաղաքաց մէջ, ուր տեղի կունենան ամեն տեսակ չափազանցութիւնք իբր մեկզմեկու բեւեռ համարուող երկու ծայր ընկերութեանց այսինքն չափազանց հարստութեան և չափազանց աղքատութեան մէջ։

Ցեղերու, տարբեր ազգաց անհատներու միաւո-

գութիւնը, խառնուածոց և կազմութեանց խառնուրդ մը գեղեցկորդեծնութեան գլխաւոր պայմաններէն մին է: Կատարելագոյն մանկանց նման երկու կազմութիւն. երկու խառնուածք՝ միմեանց հակառակ եղող երկու կազմութեանց, խառնուածոց չափ գեղեցիկ պտուղներ առաջ չեն բերեր: Այսպէս երկու աւշոտ ամուսինք նոյն խառնուածով չափ մը պիտի ծննդագործեն, մինչդեռ աւշոտ կինք մաղձաւոր-արիւնոտ էրիկ մարդու մը հետ ամուսնանալով գեղեցիկ գործարաններ ունեցող զաւակներ պիտի ծընանին: Շատ մը դարերէ ՚ի վեր հաւաքուած գիտողութիւնք կը հաստատեն զանազան ազգաց անհատներու և տարբեր ցեղերու միաւորութեամբք առաջ եկած գեղեցիկ արդասիքը: Այն գաւառներու ու քաղաքներու մէջ, ուր օտարականք շատ կը գտնուին, սերունդը խիստ գեղեցիկ է. ընդհակառակը կը պատահի այն նահանգներուն մէջ, որոնց ժողովուրդը ծննդական հողոյն փակած կապրին և կը մեռնին: Ըստուգուած է որ Սպանիացւոց և Անգղիացւոց, Գաղղիացւոց և Արեւելեայց, Գերմանացւոց և Իտալացւոց, Ռուսաց և Կովկասեանց միաւորութիւնը կորովի և հանճարեղ սերունդ մը յառաջ կը բերէ: Տաճկաց և Պարսից ազգերը բնածին ճշմարտութիւնը կապացուցանեն: Արդարեւ Տաճկաց կայսրութիւնը զանազան ժողովուրդներէ և անդադար հոն բերուող Յոյն, Վրացի Չերքեզ Մենկրէլ գերիներու բազմութենէն բաղադրուելով գօրաւոր կազմութեամբ մարդկանց ազգ մը առաջ եկաւ: — Պարսիկք, որք ի սկզբան տգեղ էին Թաթարաց նման, որոնցմէ սերած են, Վրացի և Չերքեզ ազգաց հետ ամուսնանալով իրենց կազմութիւնը

քարկոծանեցին ։ Եթէ մեր կարծիքը հաստատելու համար ուզէինք մէջ բերել Հռովմայեցւոց ազգը , որոնց իւր զօրութեամբը և քաջութեամբը այնչափ անուանի եղաւ , որոնց հին աշխարհը յինքն գրաւելով նուաճեալ ազգաց հետ խառնուեցաւ , պիտի ապացուցանէինք որ իւր կազմական գործարանաւորութեան, աւագութիւնը ցեղերու խառնումէն և մարմնամարզութենէն առաջ եկաւ ։ Իրաւ երեւելի պարագայ մը , որոնք կապացուցանէ միանգամայն թէ Հռովմայեցիք ցեղերու խառնումէն առաջ եկած բարեաց ծանօթ էին , այն է որ քաղաքացիութեան իրաւունքը բոլոր նուաճեալ գաւառաց մէջ տարածած էին , որպէսզի յաղթուողները յաղթողներու հետ կարող ըլլան ամուսնանալ ։

Եթէ երկար չըթուէր մեր ընթերցողաց , իւրաքանչիւր. ազգաց տարեգրութիւնները զննելով կ'ապացուցանէինք թէ անոնք , որք իրենց ծննդական երկրէն հեռու եղած ազգաց հետ խառնուեցան, թէ կազմութեամբ և թէ բարոյապէս կատարելագործուեցան , մինչդեռ այն ազգերը , որոնց մէջ օտարներու հետ ամուսնութիւնք արգիլուած էին , մնոր և գձուձ մնացին և առանց փոխադրուելու չիջան և անհետացան ։ Հին Կեսարացիք և Ամերիկայի վայրենի ժողովուրդները իբր օրինակ կրնան համարուիլ ։

Այս խօսքերէն չենք ուզեր բնաւ հետեւցնել որ հարկ է Եւրոպացւոյն՝ Ասիայէն կամ Ամերիկայէն կին մ'առնուլ , բայց կը մտածենք որ խիստ օգտակար է քաղաքացւոց՝ գիւղացւոց կամ ուրիշ քաղաքի մը կանանց հետ ամուսնանալ ։ Այսպէս այն անձինք , որք կը փափաքին գեղեցիկ սերունդ մ'ունե-

նալ, պարտին ամուսնանալ հեռաւոր քաղաքի մը կանանց հետ. կամ եթէ ուզենան իրենց քաղաքին կանանց հետ ամուսնանալ, գոնէ խառնուած ցեղի մը կանանց հետ ամուսնանան։ Այս տեսակ ամուսնութիւններով է միայն որ մարդկային ցեղը կրնայ կատարելագործուիլ. Նոյնպէս ընտանեկան կենդանիք ալ այս կերպով կրնան կատարեալ զարգացում տանիլ։

Եթէ մարդուն՝ կատարելագործուելու ատակութիւնը երազ մը չ'է, եթէ մոլութիւնը՝ օր մը առաքինութեամբ պիտի ջնջուի և պէտքերը բարեկեցութեան այժմի փոխանակուին, անտարակոյս այս այն ատենը պիտի ըլլայ, երբ աւելի լուսաւորեալ և նուազ ցանկայէր մարդոց մեծ բազմութիւն մը՝ սերնդեան գործողութիւնը խիստ ծանր և կարևոր գործ մը համարէ և ոչ թէ պարզապէս ցանկութեան վարկեան մը. սա՛ այն ատենը պիտի պատահի, երբ սերնդագործք՝ ինքզինքնին իրենց ծննդագործած էակաց պատասխանատու համարելով, գործարանները տկարացնող ցոփութեան և կենաց զօրութիւնները ապականող ցանկական չափազանցութեանց բնաւ չը հետամտին. Սպառման վիճակի մը մէջ գտնուող ծնողաց զաւակները թէ՛ կազմապէս և թէ՛ բարոյապէս գձուձ կըլլան։ Իրենց հանճարովը երեւելի եղող տկար և վատուժ եղող անձանց բացառական օրինակները իրենց ցեղին կամ սերնդեան համար չեն կրնար երաշխաւորել։ Կազմական անկատարելութիւնք և վատթարութիւնք բարոյական կարողութեանց զարգացմանը միշտ խոչընդոտն են և «Միտք առողջ 'ի մարմին առողջ» ըսուած առակը ամենամեծ ճշմարտութեամբ ըսուած է։ Ուրեմն

մենք կը հաւատանք որ եթէ օրէնսդրական իշխանութիւնը՝ մարդկային ցեղին կազմական բարւոքման խնամոք և յարատեւութեամբ պարապի, բարոյական բարւոքումը անտարակոյս ատոր բնական հետեւութիւն պիտի ըլլայ ։

Կենդանեաց զուգաւորութիւնը տարւոյն մէկ քանի եղանակին սահմանուած է, այս ժամանակը անցնելուն պէս սեռերու մերձաւորութեան բնազդումը կնջէ և յետոյ քիչ կամ շատ կանոնաւոր շրջաններու մէջ վերստին կը զարթնու ։ Մարդուն այս մասին ունեցած բնազդումը տեւողական է, հեշտութեան զրգռուելու համար կնոջ մը ներկայութիւնը բաւական։ Սակայն թէպէտեւ մարդը ամեն եղանակի մէջ տարփական գործողութիւնը կատարելու մենաշնորհն ունի, այսու ամենայնիւ ամուսնութեան նպատակին հասնելու համար աւելի կամ նուազ յարմար և յաջող եղանակներ կան ։ Ինչպէս ամառուան ջղատիչ սաստիկ տաքութիւնները և ձմեռուան սաստիկ ցուրտերը տառապեցուցիչ եղանակներ ըլլալով անյարմար են, վասնզի այս ձախող ժամանակներուն մէջ յղացած տղայք նուազ գեղեցկածին կըլլան։ Ընդհակառակը գարնան կամ աշնան սկիզբները արգասաւորեալ տղայք խիստ գեղեցիկ կըլլան։

Ցասման, ատելութեան, յուսահատութեան և ասոնց նման սաստիկ կրքերէ պատճառուած ջղային ցնցումէ մ'ետքը ծննդական գործողութեան երբէք պարապելու չ'է. Նոյնպէս հարկ է հրաժարիլ այս գործողութենէն, երբ մարդ կազմական կամ բարոյական սաստիկ ցաւ մ'ունի. պէտք է համբերել որ հանդարտութիւնը գործարանաց մէջ հաւասարակշռութիւն հաստատէ ։

ԱՆՀԱՏԱԿԱՆ ՊԱՏՃԱՌՆՔ ։ Իւր սկզբունք հաստատուած է որ երկու գծուծ հակաց միաւորութիւնը ընդհանրապէս նոյն և նման, այսինքն քիչ կորովի և վատթար հակներ կարտադրէ և ընդհակառակը՝ զօրութեամբ և առողջութեամբ կատարեալ երկու հակներ կորովի տղաքներ կը ծննդագործեն։ Եթէ առարկուէր թէ կը պատահի երբեմն որ երիտասարդ և առողջ կազմուածքի տէր երկու ծնողքներ՝ տկար և հիւանդոտ զաւակներ կը ծննդագործեն. մենք կը պատասխանենք թէ բաւական չէ որ ծնողք միայն անցեալ շաբթու լի առողջութեամբ և զօրութեամբ ըլլան, այլ հարկ է նաև որ նոյն խակ սեռական միաւորութեան ատեն ըլլան. վասնզի եթէ այս միաւորութիւնը այն ատեն ըլլայ, ուր այրը և կինը որ և իցէ մէկ չափազանցութեամբ սպառած ըլլան, անտարակոյս արդասաւորութիւնը պիտի կրէ այս սպառման վիճակէն. յետոյ ծնողք վերստին կը կազդուրին, և իրենց նախնի կորովութիւնը կստանան, սակայն տղան տկար կը մնայ և անոր այս տկարութիւնը իւր ծնողաց տարփական անխոհեմութենէն առաջ եկած ըլլալը ակն յայտնի կը տեսնուի ։ Ասկէց 'ի զատ, ինչպէս փորձն ալ կստուգէ որ, զօրութեան և առողջութեան բոլոր երեւոյթներն ունեցող երկու ամուսինք շատ ատեն փափուկ կազմութիւն ունեցող տղաքներ կը ծննդագործեն, և այս ալ անոր համար որ ծննդական գործողութիւն կատարեցին այն ատեն, որ թէ՛ մարմնական կամ իմացական երկարատեւ աշխատութեամբ, թէ՛ բարոյական սաստիկ ազդեցութեամբ և թէ՛ թատրոնի, պարի, երեկոյթներու եւ անհանգստութեամբ պատճառուած ջղային սպառման վիճակի մը մէջ կը գտնուէին ։

Ցանկական գործողութիւնք կատարուած վայրկեանը՝ ապածին էակին կենացը վրայ հաստատ ազդեցութիւն մ'ունին, վասնորոյ ծնողք պարտաւորեն բոլոր իրենց ուշադրութիւնը այս գլխաւոր կէտին վրայ ամփոփել։ Պարզմտութեանց իսկ կրնայ նկատուիլ որ երկու ամուսնոց ծննդական գործողութեան ատեն ունեցած կազմական և բարոյական վիճակը անտարակոյս արգասաւորութեան վրայ ազդեցութիւն պիտի ընէ։ Այս նկատմամբ եղած բազմաթիւ դիտողութիւնք ա՛լ բնաւ տարակոյս չեն ձգեր թէ ծննդագործողաց լաւ կամ վատթար որակութիւնքը անտարակոյս ծննդագործուող էակաց վրայ կը փոխադրուին։ Վերջին ծայր բարկութեան, սաստիկ վշտի, ըմպանոլութեան վիճակի եւ եւ, ատեն եղած արգասաւորութիւնք միշտ տարին պտուղներ կ'արտադրէ, այնպիսի էակներ, որք՝ եթէ ապրին՝ իրենց կազմական և բարոյական աղետիցը պատճառաւ միշտ իրենց ծնողացը դէմ ամբաստանութիւն և յանդիմանութիւն մը պիտի ըլլան։

Եթէ կորովի և առողջ ծնողք՝ ուժեղ զաւակներ ունենալէն ետքը տկար էակներ ծննդագործեն և այս անկանոնութեան պատճառը հասկնալ ուզեն, անտարակոյս պիտի յիշեն որ գձուձ էակ մը ծննդագործած ատեննին առողջապահութեան պահանջած բարւոք պայմանները չունէին։ Ի վերայ այսր ամենայնի գիտելի է նաև որ ցաւութեան և չափազանցութեան ատեն տեղի ունեցած արգասաւորութիւնք՝ թէ՛ մարմնով տկար և թէ՛ մտօք անհանճար էակաց ծննդեան պատճառ կըլլայ։ Ըմպանոլութեան վիճակի ատեն տեղի ունեցած արգասաւորութիւնք՝ ապուշ զաւակներ առաջ կը բերէ։

Վերջապէս անդիմադրելի ճշմարտութիւն է որ անհանգստութեան, հիւանդութեան, սաստիկ յոգնութեան կամ ջղային սպառման վիճակի մէջ ծնընդագործուած տղայք գրեթէ միշտ ոսնած են, որոց ծնունդը և մահը գրեթէ միեւնոյն ատեն կըլլայ. կամ թէ քիչ տեւողական ու ցաւալի գոյութեան մը ծանր բեռան տակ տաժանութեամբ կ՚ընկճին։ Դըժբաղդաբար այս տեսակ դէպքեր միշտ կը նորոգուին ՚ի վնաս մարդկութեան՝ ընկերութեան լկտի կարգաց մէջ և յաճախ կը պատահին նաեւ այն անձանց մէջ, որոնց կրթութիւնը զիրենք խոհեմ և նախատես ընել հարկ էր։ Վերջապէս եթէ ազազուններուն և տկար կամ նենգեալ տղայոց թիւը այնչափ մեծ չէ, որչափ որ մարթ էր ըլլար, պատճառը այն է որ բնութիւնը շատ անգամ սպառման, չափազանցութեան և ցոփութեան այս վայրկեաններուն մէջ արգասաւորութիւնը կը մերժէ, այսինքն արգասաւորութիւն չը պատահիր։

Ահա կը բերենք հոս Տօքթ. Պոլոյին այլակերպութեանց պատմութենէն քաղուած օրինակ մը, որպէսզի ընթերցողը՝ առողջապահական օրինաց համաձայն վարուող ամուսնութեան մը սերունդին ստացած բարեաց լաւ խելամուտ ըլլայ։

Գ. Թէոփիլէ. Վ*** . աշխարհական մարդը, որնոր իւր ծնողքէն խիստ տկար ծնած էր, եռեսունէ տարիքը հասաւ, առանց ամուսնութիւնը մտքէն անցնելու։ Իւր կազմական կացութեան վատթարութեան հակառակ իւր իմացականութիւնը զարգացած ըլլալով, կը խորհէր որ իւր հիւանդոտ վիճակը չի ներեր իրեն ամուսնութեան հաճոյքը վայելելու. սակայն տղայոց տէր ըլլալու և սիրելի ընտանիքի մը

մէջ ապրելու փափաքը այնչափ սաստիկ և անխափա-ղական եղաւ որ անմիջապէս կարգուիլ որոշեց։ Բայց իւր բժշկին խորհուրդ հարցուց և սա ալ անոր պէտք ըլլալիք խրատներն տուաւ, որոնց կէտ առ կէտ հետեւեցաւ Գ. Թէոփիլէ։

Այս անձը իւր գաւառին գիւղաքաղաքներուն մէջէն առոյգ, աղէկ կազմուածքով, կատարեալ զօրութեան և առողջութեան քսան և չորս տարեկան կին մ'ընտրեց։ Ամուսնութենէն տասը ամիս ետքը աղջիկ մ'ունեցաւ, որուն իւր կազմութեամբը ճիշտ մօրը կը նմանէր. իւր կինը այս անդրանկին նման երկու ուրիշ տղաքներ ալ բերաւ, բայց Գ. Թէոփիլէ ալ ստոյգը ըսելու համար գեղեցիկ սերունդ մ'ունենալ փափաքող անձանց կերպաւութեան օրինաց անվրէպ հետեւեցաւ։ Իւր կնոջը մերձենալէն առաջ ամիս մը ժուժկալութիւն ընելով, զօրացուցիչ կերակուրներ տուաւ, և երբ կինը յղացաւ, ա՛լ այնուհետեւ յղութեան երկը նեղելու կարող եղող ամեն տարփական քջուանքէ հեռու կեցաւ։

Այն ամուսնութիւնը մեզի պիտի ապացուցանէ այն տխուր տպաւորութիւնը, զոր ծնողաց վատառողջութեան վիճակը սերնդեան վրայ կը ներգործէ։

Գ. Թէոփիլէ քաղաքագիտական պաշտօն մը կատարելու համար իւր կինը ձգելու պարտաւորած ըլլալով, քանի մը ամիսէն վերադարձաւ. և սակայն յոգնած և վաստանկարէկ էր սաստիկ աշխատութեանց աղագաւ և սպառած էր խել մը երեկոյթներու և կոչունքներու պատճառաւ, որոնց՝ իւր ընկերական կացութիւնը մասնակցիլ կը պարտաւորէր։ Իւր գալստեան իրիկունը իւր կնոջ մերձենալու անխոհեմութիւնն ըրաւ. արգասաւորութիւնը սե-

ղի ունեցաւ։ Սակայն արգասիքը բնաւ առջիններուն չնմանեցաւ ։ Այս չորրորդ տղան՝ օրօրոցէն 'ի վեր իրեն տարուած անհուն խնամոց հակառակ, գձուձ և վատթար մնաց միշտ, այնչափ որ կրնար ըսուիլ թէ իւր ծնողքը սպառած ըլլալուն պատճառաւ , պէտք ըլլալիք կենդանութեան չափը չէին փոխադրած իրեն , սակայն աճեցաւ բայց տկար նուաղեալ, նման այն տնկոց , որք թելի մը պէս կ'երկննան և շուտով կը չորնան ։ Գ. Թէոփիլէ այսպէս տկար ճակի մը կեանք տալուն համար իւր մտքէն ինքզինքը կշտամբելով՝ տղան հինգ տարեկան չեղած անոր մահը տեսնալու կսկիծն ունեցաւ ։ Այս կորուստը իրեն հաստատուն խղճմտանութիւն մ'եղաւ , վասնզի անցելոյն վրայ փորձառութիւն ունէր , և խմաստուն մարդը , հեշտութեան հրապուրանաց ինքզինքը յանձնելէ առաջ պարտի պաղ արեամբ անոր հե-տեւութիւնները հաշուի տակ ձգել ։

Հոս կրկնենք դարձեալ թէ սիրոյ սաստիկ եռան-դը նոյնպէս ցանկական չափազանցութիւնք արգասա-ւորութեան կը վնասեն ։ Նոյնպէս հեշտութեանց անյագ և անչափ փափաքը գեղեցիկ սերնդեան մը թշնամիներն են ։

Լուդովիկոս ԺԴ կը հարցունէր իւր բժշկին թէ ինչու համար իւր թագուհիէն ծնած զաւակները գձուձ և տձեւ են , մինչդեռ իւր հարճերէն ծնած-ները գեղեցիկ և կորովի են։ — Տէ՛ր իմ, պատասխա-նեց բժիշկը, պատճառը այն է որ դուք թագուհւոյն միմիայն ձեր սերման լուացուքը կուտաք ։

Ամուսինք պարտին յիշել նաեւ թէ ամսոյն ամեն օրերը յղութեան յարմար և նպաստաւոր չ'են ։ Դաշտանի հոսման երեւումէն հինգ կամ վեց օր

տուաջ և անոր երևման տուաջին օրն է որ արգա-սաւորութիւնը աւելի դիւրին և աւելի ստոյգ կըլլայ։ Վասնզի մարդկային ձուն հասուննալով ձուաման էն կելնէ և վրանաձեւ փողերուն մէջ կը մտնէ, վասնզի այն ատեն կնոջ ամբողջ ծննդական դրութիւնը ար-գանդին չնջատորական շարժմանց ամենէն աւելի նպաստաւոր խլրդման վիճակի մը մէջ կը գտնուի: Քանի որ այս 'օրերէն հեռանանք, արգասաւորու-թիւնը երթալով անստոյգ և անկարելի իսկ կըլլայ մինչև հետեւեալ ամսոյն։

Թէ՛ առաջին և թէ երկրորդ պարագայից մէջ ամուսինք կրնան օգուտ քաղել այս նշանակութիւն-ներէս։

Դիտողութիւն եղած է որ գուարթուն դաշտի մը մէջ, ծաղկանց կամարի մը տակ, արձաններով և զմայլուն պատկերներով զարդարուած դաստիկանի մը մէջ գործադրուած սիրոյ գործողութիւնը առ-խուր և մթին վայրերու մէջ գործադրուածէն աւե-լի գեղեցիկ սերունդ մը կ'արտադրէ. սոսր պատ-ճառը կրնայ 'ըլլալ կամ ասն և կնոջ չուրջը պատող զմայլուն իրերն, որք անոնց հեշտութիւնը կրկնա-պատկելով երեւակայութեան վրայ ազդեցութիւն կըննեն. կամ գեղեցիկ բնութեան հեշտիւ գրգռած զգայարանաց ձգտումը. բայց որն որ ալ ըլլայ պատ-ճառը, միշտ այն է որ արդիւնքը կայ։

Այս բարեբաստիկ ազդեցութիւնք ապացուցա-նող հազարաւոր զարմանալի դիպուածներուն մէջէն միմիայն Կալենուս երեւելի բժշկին դիտողութիւնը պիտի պատմենք, որնոր ամենէն աւելի հետաքրք-րական է։ «Գաճաճ, տգեղ և սոսկատողն հոռմա-յեցի Կուսակալ մը ամուսնանալով իւր կնոջմէն ու-

նեցաւ որդի մը, որնոր ճիշդ Եզովբոսի կաղապարին վրայ ձեւուած էր ։ Հռովմայեցին այս պզտիկ հրէշին տեսքէն զարհուրելով և այսպէս տձեւ տոհմի մը հայր ըլլալէն երկնչելով Կալենոսի խորհուրդ հարցուց, որնոր պատուիրեց իրեն՝ ամուսնական անկողնոյն քով երեք սիրոյ արձաններ դնել. մէկ հատ մը ոտից կողմը և երկու հատ ալ իւրաքանչիւր կողմը ։ այնպէս որ իւր կնոջ աչքերը անդադար այս գեղալուն պատկերներէն զուարթանան ։ Կուսակալը այս մեծ բժիշկին խրատուցը ճշտիւ հնազանդեցաւ , այսուհետեւ իւր կինը տղայ մը բերաւ, որուն գեղեցկութիւնը յուսացածէն խիստ աւելի էր ։

Դիոնէսիոս Սիրակուսայի բռնաւորը՝ գեղեցիկն Յասոնի պատկերը իւր կնոջ անկողնոյն առջեւ կախել տուաւ գեղեցիկ զաւակ մ'ունենալու նպատակաւ ։

Կազմական գեղեցկութեան մասին այնչափ երեւելի եղող Յոյները իրենց կանանոցներուն մէջ շատուածներու , կիսատուածներու , և շատուածուհիներու խիստ շքեղ և խիստ շնորհալի կերպով շինուած մամարեայ արձանները և նկարները անթիւ բազմութեամբ դնել կուտային ։ Ապողոնի , Նարկիսի , Կաստոր և Պողիկեւաիսի . եւ Ասոդկան , Հեբէի և Աթենասի և բոլոր գմայլագեղ շատուածուհեաց արձաններով իրենց պալատները զարդարելէն զատ կանանոցներու , պարտէզներու և հասարակաց հրապարակներու մէջ առատութեամբ կը գտնուէին. Այս միջոցներով անոնք յաջողած էին , ինչո՞ւ համար մենք ալ անոնց օրինակին չը հետեւինք։

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ԿԱԶՄԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՊԱՀԵՑՈՂՈՒԹԻՒՆՔ ՈՐՈՑ ՊԱՐՏԻՆ ՀՊԱՏԱԿԻԼ ԾՆՆԴԱԳՈՐԾՔ։

*Թէ՛ այրը և թէ՛ կինը ծննդագործութենէ տասն և հինգ օր առաջ պարտին պատրաստուիլ, ցանկական հեշտութիւններէ ժուժկալելով։ Այս ժամանակը հարկաւոր է երկուքին ալ, էրիկ մարդուն՝ որպէսզի ծննդագործ հեղուկը իր կազմական ամենաբարձր աստիճանը ստանայ. կնոջ՝ որպէսզի իւր ծննդական յօրինուածքը ընդունելու և ըմբռնելու կատարելապէս տրամադրուած ըլլայ։*

*Թէ մէկը և թէ միւսը չափաւորութեամբ գործածելու են կենաց պիտոյքները. կանուխ պառկելու և կանուխ ելլալու են, ջղային յօրինուածքը դրդող և կենսական պաշտօնները խանգարող սաստիկ յուզմունքներ և կիրքերը մերժելու են։*

*Առողջ և առատ սնունդ մ'առնելու են, բայց ստամոքսին մարսողական զօրութեանց համեմատ կերակրոց քանակութիւնը կարգադրելու են, վասն զի ուտելու և խմելու մէջ ըրած չափազանցութիւնք ամբողջ գործարանաց վրայ կը ծանրանան։*

*Զիրենք վաստակաբեկ ընելու կարող՝ մտաւորական և մարմնաւորական ամեն աշխատութիւններէ հեռու կենալու են։ Շրջագայութիւնք, չափաւոր մարմնամարզութիւնք և գիւղագնացութիւնք թոքերուն մաքուր օդ մը կը հայթայթեն շնչելու և զուարճալի զբօսանքներ առաջ կը բերեն։*

*Տասն և հինգ օրը անցնելէն զկնի պարտին*

խորհրդակցիլ միմեանց հետ և մեկզմեկէ հասկնալ թէ կատարեալ առողջութեան, ամեն նեղութիւններէ և ամեն անհանգստութիւններէ ազատ վիճակի մը մէջ կը գտնուին, վասնզի եթէ երկուքէն մէկը քչիկ մ՚անհանգիստ ըլլայ, պէտք է սպասել որ հաւասարակշռութիւնը հաստատուի:

Վերջապէս գեղեցիկ ծննդագործութեան համար հարկաւոր եղած ամենէն աւելի յարմար ատենը և տեղին են ըստ մեզ, առաւօտուն, արշալուսի ատենը, և անկողնոյն մէջ, երբ բոլոր գործարանները կազդուրիչ քնով մը զօրութիւն ստացած են:

Ահա ճիշտ այս ատենն է որ այրը պիտի գրկէ սիրով իւր կինը և աս ալ փոխարէն պիտի հատուցանէ անոր իւր սիրալիր գգուանքները, որպէսզի իւր էրկանը ուրախութիւնը և տարփական զօրութիւնները շատցնելու կարող ըլլայ: Այս ատենն է որ երկու ամուսինք, հեշտալի կապով մը միացեալ, պարտին յայտնել և խառնել իրենց սրտին մէջ իբր 'ի ծածուկ պահած եռանդը, երջանկութիւնը և սէրը:

Գեղեցկորդեծնութեան կանոնները այս չափով միայն չեն լրմնար. և եթէ վերոյիշեալ սկզբանց վրայ գրեթէ ասոնց չափ էական հետեւեալ սկըզբունքներն ալ չ՚աւելնան, յաջողութիւնը անկատար կը մնայ, որք են, օրինակի աղագաւ, կնոջ յղութեան միջոցին իր կազմական և բարոյական վարմունքը. — ամուսնոյ մը իւր կնկանը նկատմամբ ունեցած կազմական և բարոյական վարմունքը. — նորածնոյն դիեցումը և անոր առաջին տղայութեան ատեն պէտք ըլլալիք առողջապահական խնամքները. աւելի ետքը անոր սնունդը, անոր մարմնաւոր կըր-

թութիւնը, իւր աչացը առջեւ ունենալիք օրինակները եւ եւ. գեղեցկորդեծնութեան անհրաժեշտ ամեն պայմանք ։

## ՑՂԻ ԿՆԿԱՆ ՄԸ ՎԱՐՄՈՒՆՔԸ.

Կին մը իւր յղութեան ամբողջ տեւողութեան ատենը աւելի կանոնաւոր վարք մը պիտի ունենայ։ Մտաց եւ սրտի հանդարտութիւնը իրեն անհրաժեշտ պէտք են։ Սաստիկ յուզմունք, ինչ տեսակ ալ ըլլայ, ուրախութիւն, ցաւ, երկիւղ, սոսկումն եւ իր արգանդը կրած պտղոյն վնասակար են, մինչդեռ բարոյական զուարթութիւն մը, քաղցր հանդարտութիւն մը ընդհակառակը անոր նպաստաւոր են ։ Ուստի կազմական եւ բարոյական այս հանդարտութիւնը խռովող ամեն պատճառներէ հեռու կենալու է. եւ եթէ դիպուածով խանգարուեցաւ, իմացականութիւնը եւ իւր բարեկամաց խրատները իւր յուզեալ զգայարանաց մէջ իսկոյն խաղաղութիւն բերելու են ։—Տխուր իրերէն հեռանալու եւ զուարթուն իրերու մօտենալու է. իր ներսի դին քաղցր տպաւորութիւններ ընելու յատկացեալ զուարճալի իրերուն վրայ դարձնելու է միշտ իւր աչուըները. եթէ տրտմութեան վայրկեան մը զինքը նեղէ, միշտ իւր խորհրդածութիւնը զուարթուն գաղափարներու եւ բարեբաստիկ յիշատակներու վրայ դարձնելու է ։—Եթէ ջղային քստմունք պատահին իրեն, իմացականութիւնը իրեն օգնութեան կանչելով զանոնք վանելու է։—Իւր առողջութեանը վնաս բերող արտաքին ամեն պարագաներէ զգուշ. կենալու է ։ Եթէ բոլոր այս զգուշութիւններն իսկ ընելով դարձեալ հիւանդութիւն գայ վրան, իսկոյն

արհեստին հմուտ մէկուն խորհուրդ հարցնելու է, որպէսզի անմիջապէս դարման ըլլուի ։

Ցղի կին մը հաստատապէս իւր միտքը ունենալու է սա ճշմարտութիւնը թէ, ինչ որ իւր վրայ ազդեցութիւն կընէ թէ 'ի լաւն կամ 'ի չարն, թէ 'ի կազմականն, թէ 'ի բարոյականն, անտարակոյս և տղային պրծանելու սաղմին վրայ ալ կը ներգործէ ։ Եւ ինչպէս որ ժառանգականութեան գլխոյն մէջ պիտի ապացուցանենք, տղայոց որպիսութիւնքը, մարմնաւոր պակասութիւնքը, բնաւորութիւնքը, զգացմունքը, իմացական կարողութիւնքը և բարուց ախտութիւնքը մեծագոյն մասամբ մօր մը յղութեան տեւողութեան ատենը գտնուած կազմական և բարոյական վիճակէն կախումն ունին ։ Զմեզ կարդացող կանանց վրայ ամենամեծ պարտք մը դնենք որ զբաղութեան այս կէտը աղէկ դրոշմեն իրենց մտացը մէջ, ասոր ամենամեծ կարեւորութիւնը պիտի հասկընան վերջը ։

Եթէ կինը արհեստաւոր է կամ որ և իցէ արհեստ մը գիտէ ։ պարտի զայն գործածել իբր զուարճալիք կամ զբօսանք, և ոչ թէ վաստակաբեկ ըլլալու չափ ։ Չափաւոր մարմնամարզութիւնք, մաքուր օդ, և գիւղագնացութիւնք են իրեն խիստ օգտակար կըլլան. վերջապէս չափաւորութեամբ կրնայ պարապիլ այն ամեն զուարճութեանց, որք իրեն վնասակար չեն. կրնար ըլլալ և միշտ չափազանցութիւններէն զգուշանալու է ։

ԶԳՈՒՇՈՒԹԻՒՆՔ ԱՌՆ ։— Հին ազգաց շատերուն մէջ՝ յղի կինը նուիրական կը համարուէր ։ Օրէնքը շատ խիստ պատիժներ սահմանած էր այն անձանց համար, որք կը չարչարէին իրենց կանայքը

անոնց արդասաւորել սկսած օրէն մինչեւ վերջը ։ Յոյնք և Հռովմայեցիք իրենց Հանրապետութեան ատեն՝ յղի կանանց դէմ ըլլուելիք յարգանաց պարտաւորութիւնը օրինօք վճռած էին ։ Հռոմայ մէջ ով որ անոնցմէ մէկուն առաջը գտնուէր, կը պարտաւորէր անոր ճամբայ տալ և զինքը յարգանօք ողջունել ։ Սոկրատ և Պերիկղէսի դաստիարակը Անաքսակորաս Աթէնայի նեղ փողոցի մը մէջ պատին առջին չարուեցան, հասարակ ժողովրդեան յղի կնկան մը ճամբայ տալու համար ։ Կորնթոսի յաղթող Մումիոս բդեշխը հասարակաց հրապարակը գտած ատեն, հոն տեղէն անցնող յղի կնկան մը առջեւ իւր սակրաւորները 'ի կարգ հրամայեց. և անոնց խրձաւոր գլխարկները հանել տուաւ ։ Բդեշխը սա գործողութեամբ ուզեց հասկցնել թէ, ինչ պատիճան պէտք է յարգել այն կինը, որնոր ազատ բուն քաղաքացի մը կը կրէ իւր արգանդը ։

Այսօր տարբեր սովորութեանց տէր ըլլալով՝ այս յարգանքը միմիայն աղէկ դաստիարակուած անձանց մէջ կը գտնուի ։ Ժողովրդեան և արհեստաւորաց աղքատիկ կանանց մեծագոյն մասը իրենց էրիկներէն կը բռնաբարուին և շատ անգամ ալ կը չարչարուին. մինչեն կարգ ժողովրդեան մէջ գրեթէ շատ քիչ անգամ կը պատահի որ անասնաբարոյ և վայրենամիտ այր մը իւր ողջոյն մայրը չարչարել համարձակի ։

Թեպէտ և մենք մեր նպատակէն խոտորեցանք, սակայն ասոնք գրելն իսկ իւր օգտակարութիւնն ունի, վասնզի եթէ վայրենամիտ այր մը կարդացուածն, կը յուսանք թէ պիտի կրնայ ամչցնել զինքը իւր արհամարհելի վարմունքին վրայ ։

**ՅՂԻ ԿՆԿԱՆ ՄԸ ԴԷՄ ԱՄՈՒՍՆՈՅ ՄԸ ՎԱՐՄՈՒՆՔԸ։** Դո՛ւք, հայր կոչուելու արժանի մարդիկ, դո՛ւք, որ ձեր երջանկութիւնը ձեր կնոջը երջանկութեանը և ձեր զաւակացը առողջութեանը և լաւ կազմութեանը մէջ գտնալ կը հաւատաք, հետեւեալ սկզբունքները լաւ 'ի միտ առէ՛ք և 'ի գործ դրէ՛ք։

Յղի կինը ամենայն խնամօք և զգուշութեամբ հոգացէ՛ք, հազարաւոր մեծարանօք և սիրելի ակնածութեամբ գգուեցէ՛ք զանի. երբ անոր հետ խօսիք, միշտ զուարթադէմ եղի՛ք. աչքերնիդ անոր լեզուն և շրթունքներնուդ վրայ սիրալիր խօսքեր ըլլա՛յ։ Միշտ անոր հետ հաւասար բնաւորութեամբ վարուեցէ՛ք. անոր հակառակ երեւցած ամէն բան մերժեցէ՛ք. անոր կամացը և նոյն իսկ մտացածին հաճոյիցը գերի եղի՛ք այն բաներուն մէջ միայն, որք մօրը և իւր պտղոյն վնասակար չեն կրնար ըլլալ, երբ անոր կամացը կատարումը ձեր վիճակին անհամաձայն և առողջութեան ալ վտանգաւոր ըլլայ, համոզեցէ՛ք զինքը քաղցրութեամբ և առանց անոր անձնասիրութիւնը վիրաւորելու բացադրեցէ՛ք որ պարտի մերժել այնպիսի փափաքներ, որոնք աղետալից կըլլան մօրը, տղուն և հետեւաբար ամուսնոյն, որ իւր կինը կը սիրէ՝ անոր վիճակին յատուկ յարմարութիւն ունեցող և ուրիշ ներդաշնաւոր փափաքներ յարուցանելով, վնասաւոր խղճերը մերժել ջանացէ՛ք։ Յիշեցուցէ՛ք անոր մայրենական սէրը։ Այս նուերական անուամբ՝ որուն համար կինը խիստ կը հրճուի, դուք կարող պիտի ըլլաք դիւրութեամբ ստանալ այն ամէն բան զոր ձեզմէ պիտի մերժէր ուրիշ որ եղանակաւ որ ուզէիք։

Եթէ ձեր կինը ջղային քստմունք, ձանձրոյթի և տրտմութեան վայրկեաններ ունենայ, ինչպէս որ շատ անգամ կը պատահի. յարգեցէ՛ք այս անցաւոր վիճակները, և ձեր հարցումներովը և ձանձրացուցիչ խօսքերովը մի՛ նեղացնէք զինքը, ձգեցէ՛ք զինքը առանձին, եթէ ինքը այնպէս կը պահանջէ, և սպասեցէ՛ք որ իւր անհանգստութիւնը անցնի. այնուհետեւ դարձեալ շարունակեցէք ձեր խնամքները։

Ձեր կնոջ բարոյականին մէջ քաղցր և հաստատուն ուրախութիւն մը պահելու համար միշտ զուարճալի զբօսանքներ հայթայթեցէ՛ք. վերջապէս անոր հաճելի ըլլալու համար ամեն ջանք ի գործ դրէ՛ք և ձեր մտաց ամեն հնարքները գործածեցէ՛ք և զինքը ձեր սրտին հետ համաձայնեցնելու համար ձեր սիրոյ ամեն զգացումը արտայայտեցէ՛ք. Այն ատեն ապահով եղի՛ք որ ձեր կինը ձեզի պիտի մտիկ ընէ, դուք պիտի կրնաք զայն վարել անարգել և առանց ընդդիմութեան ըստ ձեր փափաքելի բարեբաստիկ դիտաւորութեան, և այս կերպով ծնած տղայք թէ՛ կազմութեան և թէ՛ բարոյականի նկատմամբ պակասաւոր բան մը չը պիտի ունենան։

Վերոգրեալ սկզբունքները տակաւին բաւական չեն, այլ ասոնց վրայ ուրիշներ հարկ է աւելցնել, որոնք գեղեցկորդեծնութեան նուազ էական պայմաններ չեն. ինչպէս, կնոջ յղութեան ատեն իւր առողջապահական վարմունքը, նորածին տղուն դիեցումը, ասոր յատկացեալ ծանօթ խնամքները, ասոր սնունդը, և աւելի ետքը ասոր մարմնական կրթութեան մասն եղող մարմնամարզական կրթութիւնները։ Ասոնք գեղեցիկ յառաջացման և գործարանաց զարգացման անհրաժեշտ պայման-

ներեն ։ Այս կարեւոր խնդիրները յղութեան և ծննդաբերութեան վրայ խօսող գլխոյն մէջ պիտի բացատրուին ։

Պէտք է լաւ համոզուիլ որ կազմական էակը կատարելագործելով՝ կրնանք բարոյական էակը կատարելագործել․ եթէ մարդ՝ ամուսնութիւնը՝ իբր ընկերական մեծ պարտաւորութիւն մը և իւր ծնընդագործած տղայոց համար ամենամեծ պատասխանատուութիւն մը մտածէր և այնպէս համարէր, եթէ ծննդագործելու պաշտօնք միմիայն զգայական ցանկութիւն մը համարելու տեղ այս պաշտօնը իր վախճանին նկատմամբ ամենակարեւորն սեպէր, դրամի պայմանները մեկդի ընելով, այնպիսի կին մը կառնուր, որուն կազմական և բարոյական որպիսութիւնքը գեղեցիկ արդիւնքներ յառաջ բերելու ապահովութիւնը կուտային իրեն ։

Վերջապէս սիրոյ հեշտութեան չափաւորապէս կը պարապէր և զանոնք չարաչար վարելով չէր տկարացնէր․ վասնզի ինքզինքը այդ չափազանցութիւններէ հեռու պահելու համար առ՛ խորհրդածութիւնը միայն բաւական է թէ՝ տղայք իրենց կազմութեան տկարութեամբը և ախտերովը և իրենց գձուձ գոյութեան հիւանդութեամբը և դառնութեամբը միշտ իրենց ծնողացը չափազանցութիւնքը կը տուժեն ։



## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ՏԱՐՓԱՆԱՑ ՏՂԱՅՔ ՈՒՐԻՇՆԵՐԷՆ ԱՒԵԼԻ ԿԸ ՅԱՋՈ՞ՂԻՆ ԿԱԶՄԱԿԱՆԻՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆԻՆ ՄԷՋ ԹԷ ՈՉ ։

Այս խնդիրը՝ կազմագիտութեամբ և փորձով բացատրական կերպով լուծուած է ։ Մերոյ տղայոց մէջ այս տարբերութիւնը կայ . ոմանք մեկզմէկ պաշտող երկու էակաց ծնունդն են , և ոմանք ալ ծննդագործուած են այնպիսի մարդէ մը , որնար , առանց կնոջ համար սիրոյ զգացում մ'ունենալու , ծննդական գործողութիւնը իբր կարիք մը , պէտք մը հոգալու միջոց համարած է ։ Այս տղայք կամ պոռնկորդի են և կամ բնական. արդ՝ քննենք թէ արտաքոյ ամուսնութեան ինչ բաներ . կը պատահի ծննդական գործողութեան մէջ ։ Երկու սեռերը՝ գրեթէ միշտ գաղտնագողի և ծածկապէս կրնան հաղորդակցութիւն ունենալ մեկզմէկու հետ ։ Երիտասարդուհին կամ ամուսնացեալ կինը իւր 'ի գործ դրած ապօրինաւոր գործողութեան առեն կ'դողայ։ Ոչ ցանկական հեշտութիւնը և ոչ իսկ այն սէրը , զոր կը կրէ իւր սիրած անձին համար , չեն կրնար իւր երկիւղը փարատել և շատ անգամ գործողութիւնը կը կատարուի առանց զգալու ամենափոքր հեշտութիւն մը ։ Երբեմն ալ գործողութիւնը կրնայ ընդմիջուիլ կամ անկատար գործադրուիլ խիստ փոքրիկ ձայնէ մ'առաջ եկած երկիւղի պատճառաւ , և այս դիպուածին առեն ,

ստնդանք և ծննդական զանազան գործարանաց՝ ձգտմամբ կարծանալը՝ արգասաւորութեան քիչ կամ շատ կը վնասեն ։

Արդ՝ հետեւելով այսպէս արգասաւորեալ կնոջ՝ բացատրենք անոր կազմական և բարոյական վիճակը։ Նախ խղճի խայթերէն յափշտակուելով անհանգըստութենէ կը չարչարուի, քանի որ իւր արգանդը կը մեծնայ, այս խղճի խայթերը և այս անհանգըստութիւնները կը կրկնապատկուին, աւելի կը դառնանան և բոլոր ջղաց վրայ կը ծանրանան ։ Յանցանքը յայտնուելով անօթահար և նշաւակ ըլլալու մտածմունքը միայն զինքը մշտնջենաւոր յուզման մէջ կընկղմէ։ Յետոյ՝ թալկանալու չափ իւր գոտին կը սեղմէ և փորը կը ճնշէ (որպէս զի վիժէ ։) Մարսողական գործարանները, այս ճնշմամբ նեղուելով՝ մօրը և իւր սաղմին պէտք ըլլալիք սննդեան քանակութիւնը չեն կրնար ընդունիլ. որով սաղմին զարգացումը արգելքներու պատահելով ազատօրէն չը յառաջանար. և սաղմին հարկաւոր սննդական հիւթերէ զրկուիլը, իւր կրած նեղութեանց հետ միանալով, կը կասեցնեն կամ կը թիւրեն այն կերպարանափոխութիւնները, որոնցմէ պիտի անցնի սաղմը իր ծնանելէն առաջ ։

Եթէ այս ամեն անյաջող պարագաներուն վրայ աւելցնենք նաև այն տխրամած ցաւոց և յուսահատութեան վիճակը, ուր կ՚անկանի խեղճ աղջիկը երբ կը տեսնայ թէ զինքը մայր ընող անձը զինքը երեսէ ձգած է (որնոր հարիւրին իննսունը ինը այսպէս կը պատահի), այն ատեն շուտով կը համոզուի մարդ թէ այս դասակարգութեան բնական տղայքները, օրինաւոր ամուսնութենէ առաջ եկած տղա-

յոց չափ յաջող վիճակի մէջ ըլլալէն խիստ հեռու կը գտնուին ։

Միւս կողմանէ եթէ առաջ բերենք այն յաջող հանգամանքները, որոց մէջ կը ծնին օրինաւոր ամուսնութեան տղաքները, ծնողաց կազմութիւնը և առողջութիւնը երկկողմանի հաւասար ըլլալով, պարտաւոր ենք խոստովանիլ որ օրինաւոր ամուսնութեամբ ծնած տղայք ապօրինաց տղաքներէն բնականաբար գերազանց պիտի գտնուին ։

Այս ընդհանուր կանոնը կրնայ հազուադէպ խոտորումներ ունենալ, սակայն ասոնք չեն կրնար կերպով մը մեր վարդապետութիւնը եղծանել. և եթէ երբեմն սիրոյ տղայք մեծնալով իրենց կազմական և բարոյական որպիսութեամբքը երեւելի եղած են, հարկ չըկայ տարակուսիլ, հետազօտէ՛ անոնց ծնունդը և պիտի տեսնաս թէ անոնք ծնած են այնպիսի ծնողքներէ, որք թէև օրինաւորապէս ամուսնացեալ չեն, բայց ամուսնութեան բոլոր ազատութեամբը ապրած են միմեանց հետ ։ Ի վերայ այսր ամենայնի եթէ ընկեցեալ մանկանց արձանագրութիւնները դիտենք, կը տեսնանք որ երբեք բնական կազմութեամբ յաջողած չ'են ։ Ընկեցեալ հարիւր տղայոց վրայ ճիշտ մէկ չորրորդը 14 ամսուան ըլլալէ առաջ կը կորնչին, միւս մէկ չորրորդը, անձեւ, յոռի կազմութեամբ և փուխտ կըլլան. և վերջին կէսին մէջ ալ երկու հինգերորդը հազիւ լաւ արարածներ կրնան ըլլալ ։ Բոլոր ասոնք ծնողաց պակասութենէն առաջ կու գան ։



## ԳԼՈՒԽ ԺԷ։

## ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ։

Ժառանգականութիւնը՝ կազմագիտական հայեացքով, ծննդագործ էակաց կազմական և բարոյական մասին ունեցածնին ծննդագործեալ էակաց փոխադրելն է։

Ժառանգականութիւնը երկու տեսակ կըլլայ։ Ա. ռոյուն կամ անփոփոխ ժառանգականութիւն, Բ. փոփոխական ժառանգականութիւն։

Առաջինը, հաստատուն օրէնքի մը վրայ կայանալով, տեսակի, ցեղի, և սեռի եւ արտայայտութեամբ կը գործադրուի, ինչպէս մարդ ծննդագործէ զմարդ. ձի, շուն և ամեն էակներ թէ՝ կենդանական և թէ բուսական ցեղէ ըլլան. իրենց նման էակներ կարտադրեն։

Բ. ը կը գործադրուի կազմական և բարոյական բարի կամ յոռի որպիսութեանց՝ բազմաթիւ անկանոնութեանց ենթարկեալ փոխադրութեամբ. այս փոխադրական կարողութիւնը կրնայ առաւելուլ կամ նուազիլ, ընդհատել, կարձել և նաև տակաւ տակաւ աներեւութանալ։ Այսպէս կատարելութիւնք, թերակատարութիւնք, վատթարութիւնք, անհեթեթ ծնունդք կամ ճիւաղականութիւնք և խումբ մը տխուր հիւանդութիւնք եւ, եւ կրնան փոխադրուիլ ինչպէս նաև չը փոխադրուիլ. այս տեսակ ժառանգականութիւնը երբեք ծանուցեալ օրինաց չենթարկուելով, անթիւ փոփոխութեանց ենթակայ է։

ժառանգականութեան վրայ գրուած իմաստալից և խիստ երեւելի գործքի մը հեղինակ, Փ. Լուկաս կընդունի թէ անհատական տպաց պատկերը հետեւեալներուն մէկուն կը նմանի.

1° Ծնողաց մէկուն.— ժառանգականութիւն ուղիղ:

2° Մերձաւոր ազգականաց մէկուն.— ժառանգականութիւն անուղիղ:

3° Ծնողաց նախնեացը մէկուն.— ժառանգականութիւն ընդ դարձ:

4° Նախնի զուգակցաց մէկուն.— ժառանգականութիւն ազդեցութեան:

Ա. ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՈՒՂԻՂ: Առօրեայ տեսանց ընդդիմութեան ընդունուած է. տղայք երբեմն իրենց հօրը և երբեմն ալ իրենց մօրը կը նմանին:

Բ. ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՆՈՒՂԻՂ: Այսկայ այն տղայոց քով կը հաստատուի, որոնք իրենց ծնողաց և ոչ մէկուն նմանութիւնը և բարքը ունենալով, իրենց ժամանակակից ազգականաց հետ ամենամեծ նմանութիւն մը կունենան:

Գ. ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԸՆԴ ԴԱՐՁ. Այսկա կը տեսնուի այն տղայոց քով, որոնք իրենց ծնողացը չեն նմանիր, այլ իրենց հաւուց պատկերը կը կրեն: Մէկ պորտէ միւս պորտ և երբեմն ալ երեք պորտ անդին կանցնին. ժառանգականութեան այս տեսակը՝ մասնաւորապէս սեաւ և սպիտակ ծնողքներէ սերուած տղայոց քով կերեւնայ: Այս տեսակ ժառանգականութեան Հաւանմանութիւն անունը կը տրուի:

Դ. ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱԶԴԵՑՈՒԹԵԱՆ: Հոս երեւոյթը շատ նշանաւոր է, տղան ոչ հօրը և

ոչ մօրը կը նմանի, այլ կը նմանի այն մարդուն, որ արգասաւորութեան կցորդութիւն մ'ունեցած է մօրը հետ յառաջագոյն։ Ինչպէս կին մը՝ երկրորդ անգամ ամուսնանալով, իր առաջին ամուսնոյն մահուանէն երեք տարի ետքը տղաքներ կը ծնանի, որոնք փոխանակ ամուսնոյն ճիշդ պատկերը կը կրեն և ոչ թէ կը նմանին այն մարդուն, որ զանոնք ծննդագործած է։ Այս զարմանալի և հետաքրքրական ժառանգականութիւնը կարծուածին չափ հազուադէպ չէ, մանաւանդ անասնոց քով։

Հօմ կը պատմէ թէ Ափրիկեան խարդեաշ էշ մը զուգաւորեցաւ Անգղիական մատակ ձիոյ մը հետ, այս զուգաւորութենէն պիսակաւոր ջորի մը ծնաւ. նոյն մատակ ձին աւելի ետքը՝ երեք արաբացի մատակախազերէ արգասաւորեցաւ երեք տարուան մէջ, և ծնած բոլոր մտրուկները Ափրիկեան իշուն բիծերը կը կրէին։

Ապերտինի դպրոցին դասատուն Հարվէյ բժիշկը՝ կոյս իգի մը հետ զուգաւորող առաջինը արուին ազդեցութեանը վրայ խիստ երեւելի երկասիրութիւն մը ըրաւ, որուն մէջ կ'ըսէ թէ այդ ազդեցութիւնը իւր ցեղը երկու երեք պորտ կը փոխադրէ, թէպէտ և յետոյ նոյն էգը՝ ուրիշ արուներու հետ զուգաւորի։ Շատ մը կազմագէտներ գրած են որ նոյն երեւոյթը մարդկային ցեղին մէջ ալ բաւական ստէպ կը պատահի, խել մը այրի և կրկին ամուսնացեալ կիներ կը պատմեն, որոնք իրենց առաջին ամուսնոյն շատ կամ քիչ կատարեալ նմանութիւն ունեցող տղաքներ ծնած են։

Ուրեմն ժառանգականութիւնը վաւերական գործ մը և կենդանի էակաց շարքին մէջ օրէնք մ'է,

որուն լաւագոյն փորձը արգասաւորութիւնն է, վասն զի արգասաւորութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ գործարանաւորեալ կամ սերմնական նիւթին՝ էգին ձուին մէջ փոխադրութիւնը ։ Մենք մարդկային ցեղին մէջ երկու տեսակ ժառանգականութիւն պիտի որոշենք, կազմական ժառանգականութիւն և բարոյական ժառանգականութիւն ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա․

## ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԿԱԶՄԱԿԱՆ

Ընդհանրական և նուազ փոփոխելի ժառանգական փոխադրութիւնները ասոնք են․ կազմական տիպը կամ արտաքին համաձեւութիւնը, երեսին պատկերը, հասակը, ձեւը, գոյնը եւն, եւն․ ուսկից յառաջ կուգան ազգային, ընտանեկան նմանութիւնները, հօր և մօր նմանիլը ։

Ցետոյ կուգան, ժառանգականութեան շաղւօք, գործարանաց կազմութիւնը․ —մարմնական յօրինուածոյն զանազան կացութեանց վարգացումը․ —արտադրութեան եղանակը․ —խառնուածք․ —գործարանաւորութեան ընդհանուր յատկութիւնք որք խառնուածք, կազմուածք, մարմնաւոր սեփհական հանգամանք անուններով կը նշանակուին, և իրենց հետ կը կրեն գոյութեան՝ երկար կամ կարճ տեւողութեան վերաբերեալ մէկ քանի պայմաններ ։ —Այն անձինք, որք սերած են այնպիսի ընտանիքէ, որոց նախնիքը աւելի հասարակ մ'ունեցեր են, երկարակեցութեան բաղդը ունին ։ Իսկ

անոնք, որոց հաւերը անկայուն առողջութիւն մը և կարճ կեանք մը ունեցած են, հակառակ բաղդին մէջ կը գտնուին: Մահը զանոնք կանուխ պիտի հնձէ. իսկ եթէ անոնց մէջէն գտնուին այնպիսիներ, որք այս մահաբեր օրէնքէն ինքզինքնին ազատեն. ընդհանրապէս անոնք են, որք առողջապահական նախզգուշութիւններ և խնամներ կընեն, որոնցմէ երբէք հեռանալու չեն:

Ամեն բանէ աւելի ծնողաց լաւ կամ յոռի կազմութիւնն է որ ուղղապէս սերնդեան կը փոխադրուի. հազարաւոր դէպքեր միշտ կը հաստատեն զայս: Ձիադարմանք խիստ քաջ գիտեն որ երկու յոռի երիվարք մէկ լաւ ձի մը չեն կրնար ծննդագործել: Միշտ նոյնն է մարդուն համար ալ. երու հիւանդոտ կամ անհամեմատ հասակաւ ամուսիններ բնաւ կորովի տղաքներ չեն կրնար արտադրել: Ամուսնութեան ընտրութիւնը միշտ այս ճշմարտութեան վրայ պէտք էր կայանալ: Եթէ մարդկային ցեղը քաղաքակրթութեան մեծամեծ կեդրոններուն մէջ կը վատթարանայ, առաջին յանցանքը մարդունն է. եթէ մայրաքաղաքաց մէջ, գձուձ, հիւանդոտ, ախտաժէտ, նենգեալ այնչափ հակներու կը պատահինք, ասոնց վատթարութիւնը վերաբերելու չենք միմիայն այն չափազանցութեանց, որոց մէջ երիտասարդութիւնը ատէպ կ'անկանի, այլ նաև ծնողաց ակար կազմութեանը, անբարեխառնութեանը, և ամուսնանալու ատեն հասակներու անհամեմատութեանը: — Լակեդեմոնացիք տուգանաց դատապարտեցին իրենց Արքիտամոս թագաւորը, պըզտիկ և փափուկ կնոջ մը հետ ամուսնանալուն համար, ըսելով որ այն կինը Սպարտացւոց քաջերուն

տարքային մը ծնանելէ ուրիշ բան չըկրնար ընել ։

ԿԱԶՄԱԿԱՆ ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ ։ —Հին Յունաստանի մէջ, երեսի և ձեւերու գեղեցկութիւնը մէկ քանի ընտանեաց մէջ կը մշտնջենաւորէր ։ —Ալկիպիադ, իւր ժամանակի Յունաց ամենէն գեղեցիկը, իրենց գեղեցկութեամբը երեւելի հանդիսացող նախնիքներէ կը սերէր ։ —Կորնթացի ԼԱՅԻՍԸ, ըստ Արիստոփանի, դուստր էր Քարմիտէս անուն անձի մը, որուն համար Սիկիոնի մէջ կըսէին թէ Աֆրոտիթէսի (Աստղիկ) որդին էր ։ —Զմայլելին ՍՏՐԱԴՈՆԻԿԷ, դուստր էր Դեմետրիոս Պոլիորկետէ, որուն գեղեցկութեանը վրայ բոլոր Աթենք կը հիանար ։ Իսկ մեր՝ Ազգային ժողովոյ անդամ Նոր Ապօղոն մականուանեալ Պարսպարուն ծնած էր մօրէ մը, որնոր Գաղղիոյ ամենագեղեցիկ կիներէն մին էր ։ —Կրէտէի մէջ հին օրէնք մը կար, որ կը հրամայէր ընտրել ամէն տարի ամենէն գեղեցիկ մանչը և ամենէն գեղեցիկ աղջիկը և զանոնք ամուսնութեան պարտաւորել՝ որպէսզի իրենց գեղեցկութեան տիպը մշտնջենաւորի ։

ՆՄԱՆՈՒԹԻՒՆ ԵՐԵՍԱՑ ։ Երեսաց կազմակերպութեան կանոնաւորութիւնը կամ անկանոնութիւնը, անոնց հրապոյրը, անոնց տգեղութիւնը ժառանգական են. ամէն մարդու ծանօթ է այս ։ Այն անձինք, որ Նուրրի անուն երեւելի երգիչը ճանչցած են, պիտի յիշեն հարկաւ Երկուոց Սօզիանց թատերգութիւնը ։ Նուրրի իրեն որդւոյն հետ տեսարանին վրայ կերեւար և, իրենց նմանութիւնը այնչափ մեծ էր որ հանդիսականները զարմացեալ չէին կրնար մէկը միւսէն որոշել ։

Հռովմայի մէջ այնպիսի ընտանիքներ կային,

որոնք իրենց քթին մեծութեանը և շրթանցը հաստութեանը պատճառաւ ճահճոտին, ճահճաշունչին մականունները կը կրէին :

Արծուաքիթը, դարերէ 'ի վեր և մինչեւ այսօր ժառանգական է Պուռպոնեան և Միլանի Պոռոմեան ընտանեաց մէջ :

Ցած ճակատք, երկայն ծուռ և սրածայր ծնօտք, փոքրիկ ակռունք, մեծ բերանք ընտանեաց մէջ կը մշտնջենաւորին։ —Կիւզք՝ բերանով և ականջով մեկըզմեկու կը նմանէին : —Մօն Թմօրանսիք իրենց լայն ճակատովը մեկզմէկ կը ճանչնային :

ՊԱՐԱՆՈՑ, ԻՐԱՆ, ԱՆԴԱՄՔ : Մարմնոյն այս մասերուն ձեւը, մեծութիւնը և երկայնութիւնը խիստ դիւրութեամբ կը փոխադրուին։ Ընտանեաց ոմանց մէջ մեծ գլուխն է որ ծնողք իրենց սերնդեան կը փոխադրեն. ոմանց մէջ ալ՝ պզտիկ գլուխը։ Ոմանց մէջ՝ երկար իրան և կարճ սրուններ. ոմանց մէջ՝ յաղթանդամ ձեռքեր և ոտքեր, և ոմանց մէջ ալ՝ ամենափոքր ձեռքեր և ոտքեր : Մարդկային չէնքին ամեն մէկ մասերուն համար այսպէս է, իրենց ձեւերը և ծաւալը ժառանգական են :

ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՍԱԿԻ. Այս տեսակ ժառանգականութիւնը ամենէն աւելի ընդհանրական է։ Պզտիկ հասակ ունեցող մարդիկ՝ կարճ, և մեծ հասակ ունեցող մարդիկ՝ երկայն զաւակներ կը ծննդագործեն : Մեծն Փրետերիկոսի հայրը այս սկզբան հետեւելով հսկայից գունդ մը կազմած էր։ Այս թագաւորը իր պահնորդներուն՝ իրենց միմիայն հասակով նմանող կանանց հետ ամուսնանալու հրաման կուտար : Մէկ քանի տարի առաջ անգղիական օրագիրք դէպք մը կը պատմէին, որ-

թռչնաբոյծք և հողագործութեան արհեստին տեղեակ եղող անձինք զանազան տեսակ գոյներ ստանալու համար միեւնոյն սեռէ այլ և այլ ընտանեաց խառնուրդէն օգուտ կրնան քաղել։ Մարդկային տեսակին մէջ ճերմակ ցեղին՝ ուրիշ գոյն ունեցող ցեղերու հետ խառնուրդէն առաջ եկած են մեր մինչեւ այսօր ճանչցած գոյները. ինչպէս ճերմակը և սեւը [illegible] կարտադրեն, ճերմակը և ունաթուխը [illegible] կարտադրեն. ճերմակը և սպիտակաթուխը [illegible] կարտադրեն. այս վերջինը ճերմակին հետ միացնելով [illegible] կարտադրուի. և այսպէս հետզհետէ խառնուրդին գոյնը աստիճանաբար իջեցնելով մինչեւ իւր սկզբնական տիպին կը հասնի։

Կրնայ պատահիլ նաեւ որ ճերմակին և սեւին գունոց խառնուրդը իրենց ծննդագործած տղայոց մէկ քանիին վրայ տեղի ունենայ և մէկ քանիին վրայ, ոչ։ Զօր օրինակ. Պեռլինցի խարշիկ մը ճերմակ կնոջ մը հետ ամուսնանալով, ասկէց եօթը սեւաթուխ աղջիկներ և չորս ճերմակ մանչեր ունեցաւ։ —Փարիզցի բանկոնագործ կին մը՝ ազգաւ խարշիկի մը հետ ամուսնանալով իրեք տղայ ունեցաւ, առաջինը՝ խարշիկ, երկրորդը՝ սեւաթուխ, իսկ երրորդը՝ իւր մօրը չափ ճերմակ էր։ (տես Փ. Ղուկասի գործքը)։

Եթէ ցեղական տիպն եղող գունոյ ժառանգականութենէն անցնինք ճերմակ ցեղին մէջ պատահած մօրթի երանգաց ժառանգականութեան, կը տեսնանք որ այս երանգները ընտանեաց մէջ քիչ կամ շատ ճշտութեամբ կը փոխադրուին։ Այսպէս երկու խարտեաշք ընհանրապէս խարտեաշ տղայք-

ներ կարտադրեն. և. երկու գործեր ալ գործ զաւակունք կը ծննդագործեն՝ խարդեաշին և գործին խառնուրդն ալ միջանկեալ երանգ մը կուտայ, եւն եւն:

ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԽԱՌՆՈՒԱԾՔԻ: Ժառանգականութեան օրէնքը հաւասարապէս մարդկային մարմինը բաղադրող հաստատուն և հեղուկ մարմնոց վրայ ալ կը ներգործէ: Գործարանական դրութեանց առաւելագոյն ազդեցութիւնը ասկից առաջ կուգան արիւնային, մաղձաւոր, ջղային և աւշաւոր խառնուածքները, ժառանգականութեան համբուն կընծեռուի: Խառնուածքի մը՝ տարբեր խառնուածքի հետ զուգաւորութիւնը միշտ նոր խառնուածք մը յառաջ կը բերէ որնոր ընդհանրապէս օգտակար է: Ասոր համար է, որ տարբեր խառնուածք ունեցող անձանց ամուսնութիւնները միշտ գեղեցիկ պտուղներ կ'ունենան:

ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՂԱՆԱԿԱՑ ԱՐՏԱԴՐՈՒԹԵԱՆ: Այս ժառանգականութիւնը՝ ծննդագործելու մէջ աւելի կամ նուազ ատակութիւն ունենալով կը յայտնուի:

ԱՐԳԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆ: Շատ ընտանեաց մէջ արգասաւորութիւնը ժառանգական է: Լըբեյթիէ իր նշմարագրութեան մէջ կը պատմէ որ Մանսցի կին մը քսան երեք զաւակ ծնաւ: — Գեղջկուհի մը երկու ամուսինէ քսան և ութը զաւակ ունեցաւ: Մեծն Քօնտէի որդին և թոռը տասն և ինը տղաքներ ունէին: — Ջորս առաջին Կիւզք 'ի միասին քառասուն և ինը զաւակներ ունէին: — Հայլեյցի Լուդովիկոս տասն և ութը զաւակաց հայր էր: — Էյի Փօքուա քսան երեք զաւակ ունեցաւ: — Օսիանդէր գեղջկուհւոյ մը վրայ աղքեկութիւն տալով կըսէ թէ տասն և հինգ տար-

տուան. մէջ տասն անգամ յղացաւ․ Իր բնական ծննդաբերութիւնքը միշտ բազմապատկուելով, քսան և ութը տղայ արտադրեցին ։ Իր վերջի ծննդաբերութեամբը երեք աղջիկ ունեցաւ, որոց երեքն ալ ապրեցան, ամուսնացան և ծնան առաջինը՝ երեսունը վեց․ երկրորդը՝ եռեսուն և մէկ, և երրորդը՝ քսան և եօթը տղաքներ ։

Պիւրտաք իւր նողմաքանոռնեան մէջ կնոջ մը վրայ կը խօսի, որ քսան և չորս արու և վեց էգ զաւակ ծնաւ․ վեց աղջիկները զանազան ամուսիններէ վաթսուն և վեց զաւակներ ունեցան, որոնց վաթսունը արու էին ։ — Ժիրու կը պատմէ կին մը, որ քսան և չորս զաւակ ունեցաւ, իր աղջիկներէն հինգը քառասուն և երկու զաւակ ծնան ։ Այս արգասաւորութիւնը յայտնապէս ժառանգական էր։ Ամլութիւնն ալ բոլորովին հակառակ արդեամբ՝ շատ ընտանեաց պատահելով, սերնդեան պակասութեան պատճառաւ զանոնք կ'անհետացնէ ։ Ցես- տոլոնեան գլուխը, ուր դրուած են այս ծննդական դժբախտութիւնը ընկճելու ամենէն աւելի միտաւորական և հաւանեցուցիչ միջոցները ։

ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՐԿԱՑՆԱԿԵՑՈՒԹԵԱՆ

Այս ժառանգականութիւնը և մէկէ մը իսկ մերժուած չէ․ հազարաւոր գործեր միշտ ստուգեցին որ երկայնակեցութիւնը շատ ընտանեաց մենաշնորհ մ'է ։

1844 ին Բաքավիա, Աստիրացւոց մէջ հարուստ հողագործ մը մեռաւ հարիւր տասն և ինը տարեկան։

1846 փետրվար 6, Թոլոզայի մէջ կին մը մեռաւ հարիւր չիսուն տարեկան ։

Հունգարիայի մէջ, Յովհաննէս Ռօվիրի ընտան-

նաց հայրը հարիւր եօթանասուն երկու տարի ապրեցաւ , կինը հարիւր վաթսուն և չորս . անդրանիկ տղան իր հօրը մահուան ատեն հարիւր տասն և հինգ տարեկան էր և երկրորդ տղան մէկ դարը կամբողջացնէր :

Պօլօնեայի Կռօժէք անուն երկիրներուն մէջ գիւղացի մը մեռաւ հարիւր յիսուն և եօթը տարեկան , իր հայրը հարիւր յիսուն տարի ապրած էր :

Նօրվեկիայի մէջ , Պերղեմի շրջանականները , Յովհաննէս Միրենկթօն հարիւր յիսուն և մէկ տարեկան հասակին մէջ տղայ մը ծննդագործեց և ինը տարի ետքը մեռաւ , առանց կորսնցնելու իւր մարմնաւոր կարողութիւնները :

Թովմաս փառ տեսաւ տասը թագաւորի կամ թագուհւոյ Անգղիոյ գահը ելլալը , մեռաւ հարիւր վաթսուն և ութը տարեկան , ձգելով հարիւր քսան և եօթը տարեկան որդի մը :

Հոս կրնար չինուիլ հարիւրէն աւելի մարդոց ցանկ մը , որոնք սովորական սահմանէն անդին ապրեցան : Բայց վերոյիշեալները բաւական համարելով կը վերջացնենք հետեւեալ պատմութեամբ , որնոր խիստ հանրածանօթ է :

1554 յուլիսի 31 ին Ալխանտեաքի կարտինալը , Փարիզի փողոցներուն մէկէն հետիոտն անցնելու ատեն , ութսուն և մէկ տարեկան ծերուկ մը տեսաւ , որ իւր տանը առջեւը նստած կուլար : Կարտինալը հարցուց անոր՝ իւր լալուն պատճառը :
—Որովհետեւ պատասխանեց ծերուկը , ուրիշ ծեր մը ցցունելով , հայրս զիս ծեծեց : —Նորին գերապատուութիւնը գնաց հօրը քով, որնոր հարիւր հինգ տարեկան էր , տեղեկանալու համար թէ ինչ կէշ

գործ ըրած էր անոր տղան, և այս պատասխանը ընկալաւ :

—Վասնզի իւր մեծ հօրը ընելիք յարգութեան մէջ պակասաւոր գտնուեցաւ : Այս վերջինը իւր հարիւր երեսուն տարուանը մէջն էր :

**ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ՀԱՄԱԿԱԶՄԱԿԱՆ ԱԽՏԻՑ ԵՒ ՃԻՒԱՂԱԿԱՆՈՒԹԵԱՆ:** Ի մեծ դժբաղդութիւն մարդկային ցեղին, այս տեսակ ժառանգականութիւնը խիստ ստոյգն է : Ախտից փոխադրութիւնները թէ և վերոգրեալ ժառանգականութեանց չափ հաստատուն չեն, սակայն տակաւին յաճախ կը տեսնուին : Ի վերայ այսր ամենայնի շատ հազուադէպ է որ ընտանիքի ամեն զաւկընները այս ախտը ժառանգեն . շատ անգամ ալ ախտական փոխադրութիւնը մէկ կամ մէկ քանի զաւակաց վրայ կը պատահի և միւսներն ազատ կըլլան :

Համակազմական ախտք, գործարանական խոտորմունք, տձեւութիւնք, խեղութիւնք և ճիւաղականութիւնք կրնան փոխադրուիլ կամ նաև չը փոխադրուիլ: վեցմատնեան տղաքներ ծննդագործող վեցմատնեան ծնողաց օրինակները հազուադեպ չեն : Պլին կը պատմէ թէ Քայիւս Հորաթիւս՝ իր աղջկանցը միմիայն իւր մատնաշատութիւնը փոխադրեց :

Մօբէրթիւս ստուգած է որ վեցմատնեայ Յակոբ Ռուհէլի մայրն ալ վեցմատնեայ էր . նաև թէ Վիքթուար Պարրէ անուն կինը՝ իւր հօրմէն ժառանգած էր մատնազրկութիւնը, որով կը չարչարուէր, և զոր փոխադրեց իր մանչ զաւակացը միայն :

Պիւրտաք կազմագէտը խել մը ատոնց նման դէպքեր կը պատմէ :

Վան Տերպայք կը պատմէ սպանիացի ընտանիք մը, որուն քառասուն անդամները սահմանեալ թիւէն աւելի մատուընէր ունէին։ —Մարք բժիշկը ընտանիք մը կը ճանչնար, որուն մէջ պորտէթափութիւնը կամ աղէթափութիւնը մինչեւ երէք սորտ սրու զաւակաց փոխադրուեցաւ։ —Մորիսօ կըսէ թէ, կաղ հայր մը իւր կաղութիւնը իր երէք աղջըկանցը և մէկ մանչուն ժառանգութիւն ձգեց։ —Ժիւրու տը Պիւզարէյնկ դիտողութիւն կ՚ընէ խել մը նենգեալ սապատող, կաղ, ստերիւր ծնօղքներու վրայ, որոնք իրենց տձեւութիւնը իրենց տղայոց չատերուն փոխադրեցին։ Այս մատենագիրը կը տեղեկացնէ թէ տձեւութեանց փոխադրութիւնքը շատ անգամ սորտ մը անդին կը ցատկեն, այսինքն մեծ հօրմէն՝ թոռան վրայ տեղի կունենան։ —Նապաստակաշուրթն շատ դիւրութեամբ կը փոխադրուին։ —Կուրութիւնը, խլութիւնը, հոտ չըզգալը, յոռի հնչումը, եւն. յամառութեամբ մէկ քանի ընտանեաց կընկերանան և զանոնք հազիւ կը թողուն երկար սերունդէ մը ետքը։ —Ծնօղաց կրած դիպուածական ծայրաքաղութիւնք քիչ դիւրութեամբ կը փոխադրուին, սակայն այս փոխադրութեանց ալ բաղմաթիւ օրինակները կան։ —Պօէրհաավ և Պլիւմենպաք այս նկատմամբ խել մը դիտողութիւններ ձըգեցին. աս վերջինը գործաւորի մը վրայ կը խօսի, որնոր կացինի հարուածով իւր ցուցամատը կտրած էր. այս մարդը երկու զաւակ ունեցաւ, որք իրեն պէս ծայրաքաղ էին։ Կինը մեռնելով գործաւորը կրկին ամուսնացաւ և ունեցաւ երկու աղջիկ և մէկ մանչ, որոնց միեւնոյն մատը կը պակսէր։ —Թիւլփիւս տեսած է կին մը որ հինգ տարեկան տղայի

մը ծիծ տալով զուարճանալ ուզած ատեն, ծամելեաց ջղաձգական սեղմամբ յանկարծ իւր պտկունքներէն մին կորսնցուց այս դիպուածէն ետքը կնոջ ծնած աղջկանց մէկ մէկ ծիծը առանց պտկունքի էին, սա տարբերութեամբ միայն որ ոմանց աջ և և ոմանց ձախ ծիծն ունէր այս պակասութիւնը: —Կաղութիւնը ժառանգ ունեցող ընտանիքի մը մէջէն մէկ անդամը ճողոպրելով այս պակասութենէն, ամուսնացաւ և երկու մանչ ունեցաւ, որք բարեձեւ էին և մէկ աղջիկ, որնոր կաղ էր: Յետոյ այս մանչերէն մին ալ ամուսնանալով աղջիկ մ'ունեցաւ որնոր խիստ կաղ էր և մանչ մը, որնոր աղջըկան չափ կաղ չ'էր:

Ուղեղին մէջ օթեւանող զգայարանաց ախտերը կըփոխադրուին. ինչպէս հոտ չզգալը, կարճատեսութիւնը, աչաց անզգայութիւնը, խլութիւնը, կուրութիւնը երբեմն ժառանգական են:

Նեարդական քստմունք, ատելութիւնք, հակառակութիւնք, հակակրութիւնք կը փոխադրուին նաեւ: Անգղիոյ Յակոբոսը մերկ սուր մը տեսած ատեն կը սոսկար և կը թալկանար. վասնզի Մարիամ Ստուարդ իւր մայրը, իրմով յղի եղած ատեն, տեսած էր Սկովտիացի պարոններ, որք նման մերկ զէնքերով իւր առաջին քարտուղարը սպաննեցին և նոյն իսկ ինքն ալ խել մը թեթեւ վէրքեր ընդունած էր:

Ո՞վ չ'է կարդացած կամ չէ իմացած այն երիտասարդին պատմութիւնը, որուն մայրը գրեթէ եւացեալ դեղով իրեն գրեխ մ'ըլլուելուն պատճառաւ, այնպիսի ատելութիւն մ'ունէր անոր դէմ, որ ամենափոքր գրեխ մը տեսած ատեն թալկանալով

կ'ըլլար ։ Իր տղան , որուն իր մայրը՝ այս անյաղթելի ատելութիւնը ժառանգութիւն ձգած էր , հիւանդանալով , հիւանդանոց մը մտաւ , ուր այս դեղը իրեն պատուիրուեցաւ. այս դեղը չը գործածելու համար իր ըրած մերժմանց, աղաղակներուն և դիմադրութեանց հակառակ , բռնի գործադրուեցաւ , քանի մը վայրկեան ետքը խեղճը մեռած գտան ։

Եթէ անբարեխառնութիւնք , ըմպամոլութիւնք , ատելութիւնք , բարկութիւնք , նախանձը . և բոլոր յոռի կիրքերը կը փոխադրուին , ապա ուրեմն պէտք է բարձրաձայն ըսել թէ բարեկրթութիւնք ևս փոխադրութեան ընդունակ են . բայց միշտ մտաբանական կրթութիւնն է որ սքանչելիք պիտի գործէ , եթէ իշխանութեան կողմանէ կարելի ըլլայ մեր վրայ գրուիլ և մեր բարուցը մէջ մտնալ ։ Այս տեսակ կրթութիւնը, որ երիտասարդութեան աւանդուած աւելորդապաշտական և սնոտի կրթութենէն հարիւր անգամ աւելի կ'արժէ , ուղեղին յաճախ դադրութիւնները պիտի չափաւորէր, կիրքերը պիտի սանձէր, մոլեգին բնազդումները պիտի հանդարտեցնէր և 'ի խնամս չարին արձանացեալ յօժարութիւնները պիտի անհետացնէր. և ընկերութեան համար կորսուած կամ չարամիտ կարծեցեալ այնչափ անձինք պիտի վերադարձնէր իրեն ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ․

## ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԲԱՐՈՅԱԿԱՆ․ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԲՆԱԶԴԱԿԱՆ ԵՒ ԻՄԱՑԱԿԱՆ ԿԱՐՈՂՈՒԹԵԱՆՑ

Ժառանգական փոխադրութեանց օրէնքը միմիայն կազմական գործարանաց չը վերաբերիր, այլ նաեւ անհատի մը բնազդական և բարոյական կարողութեանց ալ կը ներգործէ։ Հմուտ և դիտօղ որսորդներ հետեւեալ առակին ճշմարտութիւնը վերահասու եղած են թէ․ լաւ շունը իր ցեղին ստորոգ է, այսինքն մատղաշ շան մը լաւ որսկոութիւնները գրեթէ միշտ իր հօրը և մօրը որպիսութիւններէն կախումն ունին։ Նոյնպէս է մարդուս համար ալ։

Իմացական ժառանգականութիւնը՝ կազմական ժառանգականութեան բնական մէկ հետեւութիւնը կերեւայ մեզի։ Արդարեւ նմէջ երեսի պատկերը, մարմնական որպիսութիւնքը և պակասութիւնները, խառնուածքը, ուղղոյ համակազմութիւնը կը փոխադրուին, բարոյական կարողութիւնք և հանգամանք պարտին նաեւ փոխադրուիլ․ վասնզի ասոնք մեծագոյն մասամբ կազմական գործարանաց արդասիքն են։ Ստոյգ է և ապացուցինք ալ թէ ինչ որ մարմնական որպիսութեանց և ախտից կը վերաբերի ինչպէս ուժ, առողջութիւն, քաջութիւն, եւ, ակարութիւն, կազմական անկատարելութիւնք, հիւանդութիւնք, բոլորն ալ ժառանգական փոխադրութեանց օրինաց կը հետեւին․ զօրեղները զօրեղներ կը ծննդագործեն, տկարները տկարներ,

դժուար և հիւանդոտ անձինք ալ իրենց նման չակներու կեանք կուտան ։

Կազմական նմանութիւնը բարոյական նմանութիւն կը ներգործէ, այսինքն մարմնոյ այս ինչ ձեւը՝ բարուց այս ինչ որպիսութիւնը կը նշանակէ, և որդիք իրենց հօրը և մօրը որպիսութիւնները այնչափ աւելի ճշդութեամբ կ՚արտադրեն, որչափ որ իրենց՝ անոնց հետ ունեցած մարմնաւոր նմանութիւնը աւելի աղդու ըլլայ ։ Կրթութիւնը և ապրելու կայքերը այս կանոնը կրնան փոփոխել, բայց և այնպէս դարձեալ սկզբնաբար նման ճաշակ և նման աւիւն տեղի կ՚ունենան ։

Իմացականութեան, բարոյական կարողութեան կամ տկարութեան ժառանգականութիւնը միւսներուն [illegible] անբացկայելի է ։ Այսուհետեւ ճանչցուած է որ ուղղոյ լաւ [illegible] ունեցող, բնական կրթութեամբ մշա[illegible] իմացականութեան տէր ծնողքներ՝ իմացական և կարող զաւակներ պիտի ծնդագործեն ։ Ինչպէս որ թանձր տգիտութեան մէջ ընկղմուած ծնողքներն ալ շատ անգամ տալուշ չակներու կեանք պիտի տան ։ —Շատ ընտանիքներ կան, որ պորտէ պորտ, մեծ հանճարի և բարձր իմացականութեան տէր անձինք արտադրեցին, ինչպէս նաեւ այնպիսի ընտանիքներ ալ եղան, որոնց մէջ սահմանափակ միտքը, ապշութիւնը, տկարամտութիւնը և պանդորրութիւնը մօրմէն մանչ զաւկին և հօրմէն աղջկանը փոխադրուեցան ։

—Միլտիադէսի ընտանիքը դիւցազուններ առաջ բերաւ, Պերիկղէսինն ալ խորամիտ քաղաքագէտներ ։

Ճարտարախօսական արհեստը այնչափ բնական

էր՝ Հօրթանսիուսի, Կիւրիոնի և Լեւկիոսի ընտանեաց, որ ոչ թէ միայն իրենց արու զաւակացը այլ նաև իրենց աղջկանցը կը փոխադրուէր :

—Պեփինեան ընտանիքը մեծ Մարդկերով խիստ արգասաւոր եղաւ : Պեփէն Լանտենեան 'ի վեր ․ Պեփէն տ'Էրիսթալ, Կարոլոս Մարձէլ, Կարճն Պեփին, մինչեւ Շառլըմայն ; որոնք նոյն ընտանեաց ոգւոյն ամենաբարձր և վերջին պատկերն եղան :

Կարգա՛ պատմութիւնը և տե՛ս թէ միտքը և չուայտութիւնք չէի՞ն փոխադրուէր Յովհաննէս ԺԲ․ի, Պենուա Թ․ի, Աղեքս Զ․ի և Փորճիայի ընտանեաց մէջ : —Տե՛ս, առանց սոսկումէդ սառելու կրնա՞ս կարդալ Միլանի բռնաւոր Վիսքոնթիի ընտանեաց պատմութիւնը, որոնց մէջ կատաղութիւնը իր՝ տանջանաց սաստիկ ծառաւովը կը փոխադրուէր : Յառա՛ջ գնա՛, հոն Լիւքչինօ մը իր շուներուն մարդեր փառաւորել կուտար : —Իւր եղբօրորդին Բառնաբաս անագորոյն տանջանքներ կը հնարէ իւր աչքերը զբօսցնելու համար : —Կալէաս՝ նախորդին եղբայրը, Բառնաբասի անգթութիւնը կը կատարելագործէ, և քառասունօրեայ տանջանքը հնարելով իւր գարշելի և այրոծ ճաշակը կատարեալ յայտնէ : Շատ պատմագրութիւններ, մանաւանդ [illegible] անուն գիրքը այս տանջանաց նկարագրութիւնը կ'ընեն, որոց ընթերցման ատեն մազերդ կը ցցուին, ընդհանուր սոսկումն և ջղային քստումն մէջդ կը մտնեն, և ընթերցողը, այս հրէշներուն դէմ անէծք կարդալով, այսչափ եղեռան և ոճրագործութեան համար աստուծմէ արդարութիւն կը պահանջէ :

—Մէտիչիսի ընտանեաց մէջ իշխանութեան և

կաց միտքը իր բնական ուղղութենէն խոտորեցնեն։

Անտարակոյս պիտի առարկուի թէ այս օրէնքը խել մը բացառութիւններ ունի և խել մը հանճարեղ ընտանիքներ տեսնուած են, որք տկարամիտ ճակներ ծննդագործած են։ Արդարեւ ասիկայ կը պատահի, բայց կարծուածին չափ յաճախ չէ։ Յետոյ այս տկարամտութիւնը, մտաց այս քիչ զարգացումը կրնայ յառաջ գալ խել մը պատահական ազդեցութիւններէ և պարագաներէ, որք բոլորովին կախումն չունին առջի գործարանաւորութենէ։ Օրինակի համար ուղեղի կողմանէ բարեկազմ տղայ մը, որ նոր գեղեցիկ յոյսեր կը տածէր իւր ծնողաց սրտին մէջ, եթէ հիւանդութեանց և աղտից ենթակայ ըլլայ կամ ուղեղին վրայ ազդող գաղտնի հեշտութեանց պարապի, իւր իմացականութիւնը անտարակոյս հարուած պիտի կրէ և իւր ընթացքը մէջ պիտի կասի. կարելի է խակ պիտի մնայ կամ ոսնի. բայց միթէ՞ այն ատեն պակասութիւնը ժառանգականութեան է։ Ոչ. բնաւ երբէք։

Պիտի առարկուի դարձեալ թէ վաղեմի և արդի երեւելի մարդիկ ինչպէս, Սոկրատ, Պղատոն, Արիստոտել, Պիւֆիօն, Ուաթ, Քիւվիէ ևն. իրենց ընդարձակ իմացականութեան մէկ կտորն իսկ չը փոխադրեցին իրենց սերնդեան։ Բացադրենք։ Այս մարդիկը միմիայն իմացական կարողութեանց տէր չէին, այլ բան մ՚ալ աւելի առած էին բնութենէն. այն է հանճա՛ր։ Եւ հանճարը բնաւ փոխադրական չ՚է, և հեռուէն հեռու ընկերութեանց մէջ կ՚երեւայ, ինչպէս կ՚երեւան այն թափառական հրեղէն գունտերը միջոցին մէջ։ Հանճարի մը ծննդեանը համար, կարծես բնութեան մէկ մասնաւոր ջանքը կը կարօտի,

և յետոյ բնութիւնը, իբր վաստակաբէկ, կը հանգչի քիչ կամ շատ երկար ատեն, նման ջանք մը վերստին ձեռք առնելէ առաջ։

Ժառանգականութեան միւս տարօրինակ երեւոյթներէն մէկը ընդհատութեան երեւոյթն է։ Ցայտնի է որ ընդհատութիւնը, թէ՛ առողջութեան և թէ՛ հիւանդութեան վիճակի մէջ, մեր մարմնական յօրինուածոյն գործարանական շարժմանց քիչ կամ շատ երկարատեւ դադարումն է։ Ինչպէս հանգիստը՝ գործողութեան ընդհատումն է, քունը՝ արթնութեան, և երեքօրեայ ջերման երկու մերձեցմանց կամ շրջանաւոր ջղացաւութեան մէջ տեղի ունեցած անդորրութեան վիճակները ընդհատութիւններ են։ Նոյնպէս ժառանգականութիւնն ալ իւր ընդհատութիւնները և ընդմիջումներն ունի. պորտէ մը միւս պորտը կը ցատկէ, երբեմն շատ պորտերու տեւողութեան մէջ չերեւար, բայց յետոյ մէկէն 'ի մէկ կը յառնուի բոլոր իւր ուժգնութեամբը, որպէս թէ երբէք ընդհատումն չ'էր կրած։

Բայց ամենէն աւելի բուսեղինաց մէջ յաճախ տեղի կունենայ ժառանգականութեան ընդհատումը։ Բուսաբանք, որք միշտ զարմացեալ են անոր յաճախ պատահման վրայ, այս օրինաց՝ ժառանգականութեան նախնեաց կամ օրէնք շրջման անունը կուտան։

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

Հոս պիտի փորձենք ընթերցողին կազմագիտական բացատրութիւն մը տալ այն խորհրդաւոր ազդեցութեանը վրայ, զոր հայրը էգ զաւակացը և

զոր մայրը արու զաւակացը կըներգործէ որչափ բարոյականին այնչափ ալ կազմականին մէջ։

Հայրը և մայրը իրենց ծննդագործութեանը մէջ տարբեր յարաբերութեանց տակ կ'երեւան։ Այսպէս հայրը իր աղջկանցը կը փոխադրէ, գլխուն, լանջական կազմուածոյն և վերին անդամոց ձեւերը. իսկ մայրը ծնօտներին, որովայնի ստորին կողման և ստորին անդամոց ձեւերը։ Արու զաւակաց համար ընդհակառակն է, իրենց մօրմէն կ'առնուն գլխուն և վերին անդամոց ձեւերը, իսկ իրենց հօրմէն կը ժառանգեն իրանի և ստորին մասանց ձեւերը։ Ուսկից կը հետեւի որ իմացական կնիկներէ ծնած արու տղաք իմացական պիտի ըլլան, իսկ տաղանդաւոր հարց ծննդագործած աղջկունք տաղանդաւոր պիտի հանդիպանան։

Արու երկուորեակ տղաք իրենց մօրը կը նմանին, էգ երկուորեակները իրենց հօրը նմանութիւնը կը կրեն, երբ երկուորեակները տարբեր սեռերէ ըլլան, մէկը հօրը իսկ միւսը մօրը կը նմանի։

Հասակաւոր հօրմէ և մատղաշ մօրմէ ծնած որդիք միշտ իրենց հօրը հիւանդութիւնները ժառանգելով՝ աւելի իրենց մօրը կընմանին. և փոխադարձ։

Վիք տ'Ազիր, Լինէ, Սէնկլէր, Ժիրու տը Պիւզարէնկ, Պիւրտախ և Միւլլէր կը խորհին որ մայրը՝ աւելի ազդեցութիւն կ'ընէ սաղմին կերպարանաձեւութեանը վրայ և հայրը՝ կենդանութեանը վրայ։

Բնազննչաց, կազմագիտաց և բժշկաց հաւաքած անհամար դիտողութիւններէն կրնայ հետեւիլ որ ընդհանրապէս մայրը իւր բարոյական որպիսութիւնը կը փոխադրէ արու զաւակացը և հայրն ալ

Անտիպատրոս, որ Մակեդոնիոյ կառավարիչն և իւր ժամանակի մեծ քաղաքագէտներէն մէկնէր. դժուարին պարագաներուն մէջ իւր Փիլա անուն աղջկանը խորհուրդ կը հարցնէր:

Լիվիա՝ Լիվիոս ճարտարախօսին աղջիկը, իր հօրմէն ժառանգեց ճարտարախօսութեան ձիրքը:

Նոյնպէս Հորթանսիոս իւր Հորթանսա աղջկանը փոխադրեց իր ճարտարախօսութիւնը և իր եռանդուն ստացուածքները։ Յայտնի է որ այս քաջասիրտ կինը․ Հռովմայի կատարի Երեք պետաց առջեւ Հռովմայեցի կանանց դատը վարեց և վաստկեցաւ:

Գրակքոսեանց մայրը՝ Սկիպիոնի աղջիկն էր:

Փորցիա, որուն քաջասրտութիւնը և անձնապանութիւնը պատմութեան մէջ եզական են, Կատոնի աղջիկն էր:

Լիվիա՝ Տիբերիոսի կընմանէր և Ակրիփինէ՝ վասն Ներոնի:

Կալիգուղայի աղջիկը, իւր հօրը չափ անգութ էր։ Մարկոս—Աւրելիոս իւր մօրը առաքինութիւնները ժառանգեց և Գոմոտ ալ՝ իր մօրը մոլութիւնները։

Հիղիոկապալոս՝ իր Սօմիա մօրը արժանի ուստրն էր:

Գլոտիոն՝ իր կռուասէր ոգին իր մօրմէն կը ժառանգէր:

Գլոտէր՝ իր մօրը նման բարկասիրտ էր:

Շառլըմայն իր աղջկանցը անկարգութիւնները տեսնալով աչքերը կը գոցէր, վասնզի անոնք իրեն-ները կը յիշեցունէին:

Լուդովիկոս՝ Հիւթէնի վէս աղջիկէն Ջարաքարոյ Լուգովիկոսն ծնաւ:

Լուդովիկոս ԺԱ. իր մօրմէն ուխտադնացութեան

փափաք և ուրիշ մասնաւոր բարեպաշտութիւններ և ուխտադրութիւններ ժառանգեց :

Հռչակաւորն Յովհաննէս Աներկիւղ, իր մօրը Մարգարիտա Պրապանի նման քաջ և արի հանդիսացաւ :

Կարոլոս Յանդուգն իր կասկածոտ և անվստահ բնաւորութեամբը իւր մօրը կընմանէր, որնոր իր հօրը Բարի Փիլիպպոսի ազատ ուղղամտութեանը հակապատկերն էր :

Ճինկիզ-խանը պատերազմասէր մայր մ'ունէր :

Թիմուրլէնկ՝ Ճինկիզ-խանէն կը սերէր կանանց ճիւղէն :

Ալփօնս Թ. Քաստիլլայի թագաւորը, որնոր կրօնի համար ունեցած եռանդեանը պատճառաւ երեւելի էր, բարեպաշտ մայր մ'ունէր :

Էլէօնորա, Նաւարայի թագուհին, իր հօրը՝ Յովհաննէս Բ. ի նման փառասէր և ամբարտաւան եղաւ :

Մետիչիզի Կատարինէն իւր հօրը նման խորամանկ և կեղծաւոր եղաւ, և որ աւելին է, մոլեռանդն և անգութ: Կատարինէ իրեն արժանի երկու ուստր ունեցաւ. Կարոլոս Թ. որ նոր աղանդները հրացանի բռնել տուաւ. և Հենրիկոս Գ. որ Կիւզերը սպանել տուաւ: Իր աղջիկը Մարգարիտա տը Վալուա, իր տարփաւոր բնաւորութեամբը իր հայրը կը յիշեցնէր:

Յովհաննա տ'Ալպեր՝ քաջ և ուղղամիտ Հենրիկոս Դ. ի կնմանէր : Գաղղիոյ Հենրիգան իր միամտութեամբը Մեծն Հենրիկոսի կը նմանէր :

Լուդովիկոս ԺԳ. և իւր եղբայրը Կաստոնն բոլորովին իրենց մօրը՝ Մարիամ տը Մետիչիզի կընմանէին :

Աւստրիոյ Աննան իր որդւոյն՝ Լուդովիկոս ԺԴ.-ի փոխադրեց իւր զեղխութիւն և ամբարտաւանութիւն և գեղեցիկ հագուստներու համար ունեցած ճաշակն ալ այն տարաբաղդին, որուն պատմութեան մէջ Այր ի դիմակի Երկաթեայ անունով ճանչցուած է ։

Տերութեան խնամակալը՝ իւր մօրը ոգւոյն սկզբնական հանգամանքներն ունէր և իւր աղջկանը՝ Պերրիի դքսուհիին փոխադրեց իր լկտի բնաւորութիւնները ։

Ցօն Փետր Անգուլթ իր մօրը ռոնհաչար բնութիւնը ժառանգեց ։

Հենրիկոս Ը. որ գլխատութեան բեմին վրայ իր երկու ամուսինները սպաննել տուաւ, ունեցաւ երկու ուստրեր՝ խիստ մարդասէր բնաւորութեամբ և երկու դստերք՝ իրեն չափ անգութ ։

Արէտէ, Հիփասիա, Տիկին Սթաէլ, և Գէորգ Սանդ այս չորսին ալ հայրերը փիլիսոփաներ էին ։

Միքայէլ Նոսթրադամոս, որուն թէ՛ իր գիտութեանը և թէ՛ իւր խորագէտ ճարտարմտութեանը համար իր ատենի մարդոց մէջ ճշմարտապէս տարօրինակ մարդ մ'էր, կը պարծենար թէ ինքը սերած էր Հրէայ ցեղէ մը, որուն գուշակելու ձիրքն ունէր ։

Ժառանգականութիւնը՝ բանաստեղծութեան, երաժշտութեան, քանդակագործութեան և պատկերահանութեան մէջ ալ շատ ատեն տեղի կ'ունենայ ։

Եսքիլոս բանաստեղծը՝ իւր նախնեացը մէջ ութը բանաստեղծ և չորս երաժիշտ կը թուէր ։

Պեռնարտօ Թասոյին մայրը ոտանաւորներ կ'ինե-

լու ձիրքն ունէր. իւր Թոռը Թօրքուաթօ իր հանճարն ունեցաւ ։

Գիւֆֆօն՝ ստէպ կը պատմէր իւր մօրը հարուստ երեւակայութիւնը ։

Գիւանս, Ջօնսօն, երկու Շէնիէները, Կեօթ, Վալթէր Սքօթ, Պայրըն, բանաստեղծները և Լամարթին գաղղիացւոց մեծ բանաստեղծը, իրենց կեանքը կը պարտաւորին այնպիսի կանանց, որք իրենց տաղանդովը և գեղեցկաբանութեամբը երեւելի եղած են ։

Մօլիէռի աղջիկը, իր տաղանդովը Գաղղիացւոց առաջին կատակերգակը կը յիշեցնէր ։

Հին Յունաստանի երեւելի քանդակագործերուն շատերը՝ քանդակագործերու ընտանիքէ մը կը սերէին։ Նոյնպէս էր մեծ պատկերահաններու համար ալ։ Վանլօն՝ պատկերահաններու եղբայր, թոռն և թոռան որդի էր։ —Վանտայքի մայրը՝ ծաղիկներ նկարելու, երեւելի տաղանդ մ'ունէր։ —Վեռնէի ընտանիքը՝ երկար ատենէ 'իվեր երեւելի նկարչաց շարք մը կը կազմէ ։

Պէթթուվէնի մայրենական հանիկն՝ ընտիր նուագածու մ'էր —Մօցարտի մայրը՝ ինքն աւանդեց իր որդւոյն նախակրթական դասերը ։ Այս հռչակաւոր նուագայարդարին քոյրը՝ իր եղբօրը տաղանդին կը մասնակցէր —Նուագայարդարաց խումբ մը յառաջ եկած է Յօվհաննէս-Սեբաստիէն Պաքի ընտանիքէն ։ Ձայնի քաղցրութիւնը, յստակութիւնը և հնչիւնը կը փոխադրուին, երաժշտաց ընտանիքներ ըլլալուն նման՝ երգիչներու ընտանիքներ ալ կան ։ Փորձուած է որ գեղեցիկ ձայն ունեցող հարք իրենց ձայնը ազատել աղջկանց կը փոխադրեն

քան թէ մանչերուն ։ Մօրը համար ընդհակառակն տեղի կունենայ առաւել մանչերը և խիստ քիչ անգամ աղջիկները կը ժառանգեն այս յատկութիւնը ։

Շատախօս ծնողքներէ ծնած տղաք շատախօս կըլլան ։ Ղուկաս բժիշկը օրինակ մը կը պատմէ աղախնոյ մը համար, որուն շատախօսութիւնը մոլեգնութեան հասած էր ։ Մեկու մը հետ խօսած ատենը՝ անոր շունչ առնելու ժամանակ չէր ձգեր ։ Կենդանեաց հետ կը խօսէր, կարասեաց հետ կը խօսէր, պատերուն հետ և երբ ալ չըկարենար խօսելու մէկը կամ բան գտնալ կըսկսէր ինքնիրեն խօսել բարձրաձայն ։ Ասիկա անտանելի հիւանդութիւն մ՚էր ։ Եւ երբ պետք ըլլար զանի ճամբել ։ «Ես յանցանք չունիմ կըսէր իւր տիրոջը, ասիկա իմ հօրմէս ժառանգութիւն մնացած է ։»

Այս օրինակները, որոց նման շատերը յառաջ բերելը խիստ դիւրին է, կապացուցանեն դրականաբար հօրը՝ իւր աղջկանը վրայ և մօրը՝ իւր մանչուն վրայ ըրած անմիջական ազդեցութիւնը, և երբ այս ազդեցութիւնը վրիպի, ասոր համար պէտք չ՚է ուրանալ զայն, վասնզի երբ նախնեաց դիմենք, պիտի գտնանք զայն կամ հաւուն, կամ հաւուն հօրը, կամ հաւուն պապուն մէջ ։

Ի վերայ այսր ամենայնի այս ընդհանուր կանոնս խիստ անհամար բացառութիւններ ունի ։

Ուսմամբ և արհեստիւ հռչակաւոր շատ մարդիկ բնաւ երեւելի նախնիքներ չ՚ունին, բաւական է որ իմաստուն, զգաստ, մարմնով և հոգւով առողջ ծնողքներ ունենան, որոց իմացականութեան շրջանը պորտէ պորտ ընդարձակելով կ՚ընթանայ ։

Մեծ մարդկանց շատերը իրենց ընտանեաց փառ-

քը կսկսին և կը վերջացնեն։ Խիստ ուշիմ մարդիկ կըրնան պալուշ էակներ ծննդագործել, բայց տեսնուած չէ այնպիսի ծնողքներ, որք բոլորովին պալուշ ըլլալով, բարձր իմացականութեան տէր անձինք ծնընդագործած ըլլան ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

## ԱԽՏԱԿԱՆ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԿԱՄ ՋԱՆԱՁԱՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ ՓՈԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հիւանդութեանց ժառանգականութեան խնդիրն ալ վիճաբանութեան ներքեւ չ'է, ասիկա ընդունուած գործ մ'է։ Ախտական ժառանգականութիւնը չորս եղանակ ունի. փոխադրութիւն հիւանդութեան, տրամադրութիւն կամ պատշաճութիւն, —սերմն կամ ծածկեալ վիճակ, —կատարեալ զարգացումն կամ յատկանիշ ։

Սերնդեան յարող աղետալից ժառանգականութեան անհամար հիւանդութեանց գլխաւորներն են, տարափոխիկ հիւանդութիւնք, խուլական, որքինական, ասոզկեան, քաղցկեղական խառնուածք եւն., գործարանական ախտք, միզական ուղւոց հիւանդութիւնք, հալեւմաշ, կաթուած եւն. եւն. ընդհանրապէս, ջղացաւութիւնք և ամեն տեսակ ջղային հիւանդութիւնք. իմացականութեան խանգարմունք, ապուշութիւն, ցրումն մտաց, որք, ափսոս՛, լաւորալխութիւններէն աւելի՛ փոխադրական են։ Ու ԳԴԴ

խանգարմանց փոխադրութիւնն ալ նմանապէս տեղի կ'ունենայ հօրմէն՝ աղջկանը և մօրմէն՝ մանչուն ։ Պ. Ժերու իւր [illegible] [illegible] անուն գրքին մէջ կը պատմէ այս նկատմամբ տպացուցիչ շատ մը դէպքեր ։ Երբ , ընտանիքի մը մէջ ; հայրը կամ պապը մտաւորական խանգարումն ունի , շատ երկիւղ կայ աղջկանց համար , և եթէ մայրն ունենայ այդ հիւանդութիւնը, խիստ հաւանական է որ մանչերը կամ անոնցմէ մէկը այդ ախտէն պիտի բռնուի ։

Խղճալի՜ բնութիւն մարդկային. քու վրադ ծանրացող հիւանդութիւնները և կազմական վատաբաղդութիւնները բաւական չ'էին, պէտք էր տակաւին որ ենթակայ ըլլայիր բարոյական վատթարութեան և, յիմարութեան՝ ... պէտք էր տակաւին որ քու թշուառութիւններդ լրացեալ ըլլալու համար այս տակալի հիւանդութիւնը ժառանգական ըլլար ։

Ցանցանաց բնազդմանց ժառանգականութիւնը դժբաղդաբար խիստ ստոյգ է , գողութիւն , անձնասպանութիւն, մարդասպանութիւն, և բոլոր յանցանք փոխադրութեան աղետալից օրինաց կը հետևին ։ Անհուն գիրք մը կայ , ուր յանցանաց տեսարաններն մանրամասնաբար պատմուած են ' և ուր գողերու և մարդասպաններու ազգահամարը կրնանք կարդալ. այս գիրքը պատմութիւնն է։ Պատմութեան գրեթէ ամեն մէկ երեսին մէջ ցոյց տըրուած է, աւա՜ղ, յանցաւոր մարդկանց սերունդները թէ իրենց հօրը ահարկու յօժարութեանը կը մասնակցին։ Կարդա՛ Ատրիտաց, Հերակլեանց, Նամկիդեանց պատմութիւնները , ևն , մինչև մարդասպանութիւն ... ։ Կարդա՛ Եգիպտոսի և Ասորեստանի

Թագաւորաց պատմութիւնները, Նինուէն մինչեւ Սելեւկեանց վերջը, մինչ մարդասպանութիւն․․․ կարդամ Պարսից Թագաւորաց, Խալիֆայից և Սուլթանաց պատմութիւնը, մինչ մարդասպանութիւն, որոնք սոսկալի յարատեւութեամբ մը նոյն ընտանեաց մէջ կը մշտնջենաւորի․ վերջապէս կարդամ Դուրանեան տոհմէն [illegible], որոնք երբ սոսկալի եղեռնագործութեան մը տղերը իւր բաժանորդաց հաղորդէ, դուն պիտի տեսնաս հոն թէ դասաւորք իրենց խուզարկութիւնները մինչեւ ամբաստանեալն նախնեացը տանելով, յանցաւոր հայր մը, պապ մը, կամ հաւ մը գտած են անոր ազգատոհմին մէջ։ Յանցանաց ժառանգականութիւնը, որոնք միւս փոխադրութեանց չափ շօշափելի է, Ճամմեր Պատմագրոյն ըսել տուած է թէ «միեւնոյն սերնդեան մէջ որդեսպանութիւնը՝ հայրասպանութեան կը զուգընթանայ և թոռան դաշոյնը՝ պապուն մարդասպանութեան վրէժը՝ հօրը վրայ կը լուծէ»։ Այս ամէնքը յայտնել մ'իթէ՝ սոսկալի չ'է․․․ Բայց ինչ ընենք․ այսպէս է ժառանգականութեան օրէնքը։ Յանցաւոր հօր մը որդւոյն մէջ յանցանաց յոյս մը նշմարողներէն չըլլալով իսկ, կը պարտաւորեմ ընթերցողներս չը վստահիլ այնպիսի անձանց, որոնց ընտանեացը մէջ՝ բնութեան և պատուոյ դէմ մեղանչողներ կը գտնուին։ Այսինքն նախազգուշութիւն մ'է, որ իւր օգտակարութիւնը կրնայ ունենալ։

Իւր ծագման կէտէն զննելով կը տեսնուի որ հիւանդութեանց ժառանգականութիւնը սերտ յարաբերութիւն, ընթացից անկանոնութիւն և առնչումն ունի․ խիստ դժուարին է տեսնալ որ ժառանգական ախտը ընտանիքի մը ամէն անհատներն ալ չարչարէ

մանաւանդ երբ այս ընտանիքը բազմամարդ ըլլայ ։ իւր ընթացման ճանապարհը միշտ ուղիղ չ՚է ․ երբեմն անընդհատ ուղղութեան մը կը հետեւի, երբեմն մէկ պորտէ կը ցատկէ ուրիշի մը վրայ կիյնայ ․ երբեմն մէկ սեռը կը ձգէ և միւսին վրայ կը յարձակի և երբեմն ալ ցեղական կոճղը կը թողու և կողմնական ճիւղերուն կը յարի ։ Օրինակք ․ ծիւրախտացեալ ծնողքներէ ծնած հայր և մայր մը կատարեալ առողջութիւն մը կը վայելեն մինչդեռ իրենց որդիքը մեկզմեկու ետեւէն կըսպառին ծիւրախտէն՝ այս սոսկալի աղէտէն, որնոր այնչա՛փ մատղաշ էակաց կեանքը կը հնձէ ։ Լուսոտ հայր մը իր ախտը իւր աղջկանը կը փոխադրէ մինչդեռ սա իւր մանչուն կուտայ։ —Շատ ընտանեաց մէջ կաթուածը և յօդացաւութիւնը կը չիջանի և յետոյ հեռաւոր թոռանց վրայ վերստին կսկսի ։ —Շատերու մէջ ալ ժառանգականութիւնը կը դադրի և երբէք յերեւան չիգար, ժառանգական փոխադրութեանց այս խորհրդաւոր ընթացքը մինչեւ այսօր անբացատրելի և արհեստագէտ մարդուն աչքէն ծածկեալ մնացած է ։

Ժառանգականութիւնը ստոյգ է երբ տղան ծընած ատեն հիւանդութեան սերմը յինքեան կը բերէ , ժառանգականութիւնը աւելի նուազ ծանր եղած կըլլայ , երբ միմիայն տրամադրութեան վիճակի մէջ է ․ թէ՛ հիւանդութեան սերմը և թէ տրամադրութեան վիճակը բնաջինջ ընելը բժշկութեան կը վերաբերի ուստի այս տեսակ պարագաներու մէջ պէտք է հմուտ բժիշկի մը դիմել , վասնզի միմիայն նա կրնայ թշնամիին հետ մարտնչիլ և յերկիր կործանել ։

## ՀԱՏՈՒԱԾ Ե.

## ԱԽՏԱԿԱՆ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԴԻՄԱԿԱԼԵԼՈՒ ՄԻՋՈՑՔ

Ժառանգականութիւնը դարմանելու համար երկու միջոց կայ. մէկը նախնական կամ նախապահեստ, զոր ամուսնութենէ առաջ փեսայացուներուն և հարսնցուներուն վրայ կը գործադրեն. միւսը յետնական կամ բուժիչ, զոր ծնողագործեալ տղայոց կը գործածեն ։

### ՆԱԽԱՊԱՀԵՍՏ ԴԱՐՄԱՆ

Արգիլուած ամուսնութիւն այն անձանց, որք ժառանգական ծանր և անդարմանելի հիւանդութենէ մը բռնուած են, վասնզի անվրէպ և առանց բացառութեան կը փոխադրեն զայն իրենց սերնդեան ։ Այն օրէնքը, որ կենդանեաց համար յառաջընկալեցուցիչ ախտեր կ'ընդունի, միեւնոյն ախտերու համար՝ ամուսնութեան մէջ լռութիւն կը պահէ, այնպէս որ անասնական ցեղը՝ այս յարաբերութեան տափուակի օգուտ կը քաղէ քան թէ մարդկային ցեղը։ Շատ անգամ և կրնայ ըսուիլ միշտ՝ իրենց զաւակները ամուսնացնել փափաքող ընտանիք, անոնց ունեցած այլևայլ հիւանդութիւնները ծածկելու աղէկ ջանք կ'ընեն. խուլագար. տկարակազմ աշտան ջղայնոտ և արգանդի ախտացեալ աղջիկ մը կամուսնացնեն մանչու մը հետ, որոնք զանի առողջ կը կարծէ ։ —Նոյնպէս լուսնոտ, որքինոտ, անկարող՝ անժառանգական ախտերու ախտացեալ երիտասարդ մը կ'ամուսնանայ աղջկան մը հետ, որ զինք, սիրով զգու-

չանար ամուսնանալու եթէ իւր խօսնաւն գաղտնի հիւանդութեանը տեղեկութիւն ունենար։ —Միեւնոյն դատակարգութեան մէջ են, խլութեամբ, գրեթէ կուրութեամբ, ապշութեամբ, զառանցանօք, նորընկիցքն մտաւորական ցրմամբ, կատաղի բարուք եւ ախտացեալ անձինք։ Այս տեսակ անձանց կազմական արտիցը վրայ խորին գաղտնիք մը պահելով զանոնք ամուսնացնելը վատ խաբեբայութիւն մ՚է, յանցանք մը՝ զոր օրէնքը կը պարտաւորէր պատժել եւ ամուսնութեան հանդիսական լուծմամբը դատավճիռը կատարել։

Շատ ազգեր, զորս մենք յետնեալ կը համարինք այսօր, այս կէտիս վրայ այնպիսի օրէնքներ ունին, որոնք մերիններէն աւելի բարոյական են։ Հնդկաց եւ Չինաց օրինագրոց մէջ այս յօդուածը կը կարդանք «եթէ հայր մը՝ գլխաւոր պակասութեամբ մը ախտացեալ աղջիկը, առանց ամուսնացող անձին իմաց տալու, ամուսնացնէ, փեսան իրաւունք ունենայ զինքը խաբող չար անձին գործողութիւնը ոչընչացնելու։»

Նմանապէս արգելուլ խիստ մօտաւոր համարիւնային անձանց ամուսնութիւնը, վասնզի այս միացումները միշտ եղծեալ պտուղներ կուտան, եւ որ առաւելն է կը կրկնապատկեն բոլոր այն հիւանդութիւնները, որք արդէն միեւնոյն կոճղէ սերեալ ընտանեաց մէջ կը գտնուին։

Պատմութիւնը՝ մեզի կը ցուցնէ որ ազնուապետականք ուզելով միայն իրենց մէջ բազմանալ, կորուսին իրենց առողջութիւնը՝ քիչ քիչ վատթարացան, տկարամտութեան մէջ ինկան եւ յետոյ անբերրութեան։ Միւլլըրի, Սէնկլէրի, Գիւսօնի, ժօֆրուայի,

Հարթմանի, Գաքվէլի, Փրէնաէվի, Ֆայրայթի և այլոց երեւելի կազմագիտաց և անասնաբուժից անխափոխ դիտողութիւնները մեզ կ'ապացուցանեն թէ համարինային զուգաւորութիւնները վատթարապէս կը յաջողին և եթէ անոնք յամառութեամբ շարունակուին, անստոյգ ցեղ կորովութիւն, առողջութիւն, արդասաւորութիւն. ամենքը կը վատթարանան և կը չքանան:

Անձնաւորութեան յարմար անձ ընտրել, — այսինքն կարելի եղածին չափ ամուսնանալ ջանալ այն անձանց հետ, որք ժառանգական ծանր հիւանդութիւններէ ազատ են: Եթէ անձի մը աղքատ կազմութիւնը և իր անհաստատ առողջութեան վիճակը՝ ամուսնութեան անյարմար են, պարտի այն անձը, իբր կարեւորութիւն և իբր պարտք, այնպիսի անձի մը հետ ամուսնանալ, որոնք իր կազմութեան հակառակ կազմութիւն ունենայ. որպէս զի միայն հարստութիւնը միւսոյն աղքատութիւնը ընկճէ: Վերջապէս այս՝ այն զուգացուցման կը նմանի, զոր մեք կը գործածեմք այնչափ խնամով՝ մեր ընտանեկան անասնոց ցեղերուն վրայ:

Հասակ ընտրել, — վաղանցի կանխաժամ և անագան ամուսնութիւնք միմիայն տկար և կարճատեւ կեանք ունեցող պտուղներ կուտան:

Ցեղէ ընտրել, — ծննդագործութեան պատրաստելու համար: Այս պատուէրիս վրայ ալ պէտք չ'է անտարբեր մնալ, ինչպէս շատերը կը կարծեն, և ընդհակառակը շատ կազմագէտներ և անասնաբոյծներ արդասաւորութեան և հետեւաբար տղայոց ապագայ կազմութեան վրայ մեծ ազդեցութիւն տըպաւորող կը համարին զայն: Փրոսբէր Ղուկաս բժիշկը ժառանգականութեան վրայ մեծ խնամով

գրած վարդապետութեանը մէջ այս պարագան մեծաւ եռանդեամբ կը բացայայտէ։ Այսպէս, օրինակի համար այն ամուսինք, որք կը վախնան թէ խոյլը, ծխուրախտը, գործարանական վատառողջութիւնը, արքաւչական կազմութիւնը իրենց որդւոց կը փոխադրեն, պարտին ցած, խոնաւ, օդէ և լոյսէ զուրկ տեղերը ձգել, և աւելի առողջարար վայրեր երթալ։ Երբեմն՝ միմիայն փողոցի մը, թաղի մը, քաղաքի մը փոփոխութիւնը բաւական կըլլայ տղաքը ախտաժառանգութենէ ազատելու։ Գլխաւոր պատուէրներէն մէկն ալ այս է որ պէտք չ՛է տեղափոխութենէ անմիջապէս ետքը ծննդագործութեան պարապիլ, այլ նախնի բնակութեան ապականիչ ազդեցութիւնը բոլոր անհետանալու ժամանակ ձգելու է։ Ուստի երկու ամուսինք, սեռական մերձաւորութենէ առաջ պարտին ութը կամ տասը օր սպասել։

## ԲՈՒԺԻՉ ԴԱՐՄԱՆ ՏՂԱՅՈՑ ԳՈՐԾԱԾԵԼԻ

1° Ժառանգական ախտին վարդացման առաջքն առնուլ, եթէ տակաւին ծլած չ՛է։ Այս նպատակին ծառայելու համար պէտք է տղան կորզել այն ամեն հանգամանքներէն, որք ծնողաց կազմութիւնը վատթարացուցին, որպէս՝ անառողջ բնակութիւն, գէշ սնունդ, ախտացուցիչ սովորութիւնք, եւն. եւն.

2° Բժշկական և առողջապահական ամեն միջոցներով ընկճել ախտը երբ արշաւանաց սկսի։ Պէտք է աւելի կամ նուազ զօրաւոր ընել դարմանը ախտին տոհմական հնութեանը, անձին մեծութեանը, ձեւոյն և խառնուածքին, լուր ուժին, վերջապէս այն ամեն պարագայներուն բաղդատմամբ, որք ախտանիշը կրնան յայտնել։ Կական կէտ մը, զոր բժիշկը

երբէք մոռնալու չ՚է, այն է որ կատարեալ արգասիք մը ստանալու դիտմամբ լաւագոյն համարած միջոցներըդ աւելի կանոնաւորապէս, հաստատութեամբ և բովանդակութեամբ գործածելու համար միշտ յիշելու որ ախտը ժառանգական է։

Ահա ասոնք են փորձառութեան ցոյց տուած ընդհանուր դիտողութիւնք, այժմ մասնաւոր դիտողութեանց վրայ խօսինք։

## ԿԵՐԱԿՐՈՒԹԻՒՆ —ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՔ —ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ՄԻԱՑՈՒՄՆ

Ախտաւոր ժառանգականութիւնը ընկճելու և առաջքն առնելու համար գործածական միջոցներուն առաջինն է ախտաւոր անձը՝ իր կրած ախտին սերմը զարգացնող պարագայներուն բոլորովին հակառակ՝ և տրամադրեալ գործարանները այլափոխելու յատուկ պարագայներու ենթարկել։ Այսպէս խոյլէ սպառնացեալ անձը՝ ցուրտ և խոնաւ գաւառները ձգելով, տաք և չոր գաւառներ երթալ և միշտ հոն բնակիլ պարտի՝ խորովեալ միսերով, համեմատ բանջարեղեններով պէտք սնանի՝ զօրացուցիչ ըմպելիներ պէտք գործածէ. մարմնական կրթութեան, մարմնամարզութեան պէտք պարապի։

Երկրորդ միջոցը՝ որնոր միշտ յաջողութեամբ պսակուած է, ամուսնական միացումն է։ Ամէն մարդ գիտէ և փորձն ալ այնպէս կը ցուցնէ որ ընտանեկան կենդանեաց ցեղը ազնուացնելը կամ վատթարացնելը զանոնք զուգաւորելու համար ընտրուած կենդանիէն կախումն ունի։ Բացարձակապէս նոյնն է մարդուն համար ևս, Երկու անառողջ էակաց միացումը, որոնցմէ մէկը ժառանգական

ախտ մը կը կրէ, միմիայն պձուձ և Թշուառ պտուղներ կրնայ տալ։ Զօրաւոր խառնուածք մը՝ տկար կազմուածքի մը հետ միանալով առաջին պորտին մէջ գոհացուցիչ պտուղներ առաջ կը բերէ, վասնզի զօրաւորը տկարին պակասը կը լեցնէ, երկրորդ պորտին մէջ՝ եթէ ամուսնական միացումը նշանակեալ օրինաց համաձայն կատարուի, սերունդը լաւընտիր կըլլայ։

Այսպէս ծայրագոյն աւշալից խառնուածքի մը՝ չոր կամ մաղձաւոր—արիւնային խառնուածքի մը հետ միաւորութիւնը խիստ յարմար է կերպափոխելու, ջնջելու խուլական տարրը, զոր առաջինը իւր հետը կը բերէ։

ՀԱԿԱՌԱԿՔՆ ԲԺՇԿԻՆ ՀԱԿԱՌԱԿՕՔ։ Ամուսնական միացման մէջ միմիայն այս առածը 'ի կիր արկանելով, կրնայ գտնուիլ այն միակ և արդիւնագործ դարմանը, որնոր կարող պիտի ըլլայ ժառանգական ախտից և հիւանդութեանց առաջքն առնուլ, որոնցմէ այնչափ ընտանիքներ կոտորած կը կրեն։

Ճերմակ դաշտանաւոր կամ հալեւմաշ ախտի տրամադրեալ աղջիկ մը ամուսնացո՛ւ մէկ մը՝ առողջ կորովի, արիւնային, հարուստ գործարանաց տէր ամուսնոյ մը հետ. տո՛ւր այս տկար, փափուկ և ջղային հիւանդութեամբ մը նախատկարացեալ երիտասարդին՝ զօրաւոր, արիւնային խառնուածքի տէր, մ' առողջութեամբ և հիւթալից աղջիկ մը, ահա՛ այն ատեն անտարակոյս դուն կրնաս յուսալ որ ախտական ժառանգականութիւնը պիտի չիջանի և որ առաւելն է, առողջ և զօրաւոր սերունդ մը պիտի սկսի, որնոր պորտէ պորտ պիտի կատարելագործուի։

դութիւնը և խնասուութեամբ մատակարարուած Հանգիստը գրեթէ միշտ կը գտրմանեն գործարանական ախտերը , նախ զօրացնելով այն հիւանդները և գործարանները , որք ակարանալու ծիւրելու նշտում մ՚ունին . յետոյ չափաւորելով չափազանց կենդանութիւն ունեցող գործարանաց ազդեցութիւնը և սնունդը ։ Բայց այս միջոցները՝ կանոնաւոր յաջողութեամբ պտուղ բերելու համար , ուղղամտակիչ և մարզապետ բժիշկ մը գործադրուելու են . կամ գոնէ՝ բժշկութեան այս ճիւղին մասնաւորապէս պարապող կալմագետ մը ։

Ժառանգական ախտից յայտնութիւնը անորոշ ժամանակներու մէջ և անտարբերութեամբ չը կատարուիր , այլ՝ ինչպէս որ բուսոց սերմերը՝ ծլելու համար , բնական օրինաց իրենց յատկացուցած եղանակին կսպասեն , նոյնպէս ժառանգական ախտից սերմերն ալ՝ իրենց բնութեան համեմատ կսպասեն այն հասակներուն , որք իրենց զարգացման համար նպաստաւոր են ։

Այսպէս կարկամութիւնը՝ մանկութեան ատեն կը յայտնուի . սրտի և կուրծքի հիւանդութիւնք՝ երիտասարդութեան ատեն . յօդացաւութիւնը , կաթուածը , խցաքար այսինքն միջական փամփուշտին մէջ քար ունենալը , արգանդի բորբոքումն , թանչք , ախտնդկացաւը , մոլեգնութիւնք և այլն . միջին հասակի մէջ , վերջապէս այտուռնք , թալկումն , առաջին ծերութեան մէջ ։ Այս հասակներու մէջ՝ ախտին տրամադիր անձինք պարտին կարի զգուշութեամբ ենթարկուիլ նախապահեստ դարմանի մը եթէ նախանշմար հանգամանք զայն որոշեն ։

Սերնդեան փոխադրուող հիւանդութեանց մէջ

ջէն ։ կարելի է , Աստըղկեան կամ յօանական ախտէն աւելի ընդհանրականը չկայ ։ Պատճառը՝ վտանգի խիստ քիչ անձինք կը ճանչնան , որք իրենց ազատութեան . ատեն Կիթերայի պատերազմաց մէջ վէրք մ՚ընդունած չըլլան, այսինքն տարփուհիներէն կամ բոզերէ ստացած չըլլայ այս ախտը , որ այնչափ սոսկալի արագութեամբ մարմնոյն կը պատուաստուի ։

Երբ ապականութիւնը թեթև կերպով մը տեղի կ՚ունենայ , ընդհանրապէս կը կարծուի թէ թեթեւ դարման մ՚ալ բաւական կըլլայ․ և երբեք անոր հետեւանացը վրայ հոգ չը տարուիր։ Երիտասարդք չեն մտածեր կամ մանաւանդ չեն գիտեր թէ այս սոսկալի հիւանդութիւնը ուրիշներու նման չըբժշկուելէ 'ի զատ , կազմութեան ներսիս կը յարի , և անոր ներկայութիւնը յառաջագոյն իմացնող արտաքին նշան մը չեղած ատեն իսկ՝ գործարանաց մէջ գաղտ կընիւթէ՝ աւելի ետքը սոսկալի սաստկութեամբ յառաջդիմելու համար ։ Առաջին ապականութենէն շատ ժամանակ ետքը՝ յօդացաւի, քամիի՛ անոտոշ ցաւերու , ոսկերաց ցաւի, մորթոյ բիծերու , արիւնախառն և ջրալի պալարներու , շրթանց ճեղքուածներու և ուռեցքներու , կեղերու և ատոնց նման ուրիշ անհամար ախտերու և վէրքերու ձեւերով կը յայտնուի , առանց միտք բերելու թէ ատոնց պատճառը անցեալին մէջ կատարուած ապականութենէ կախումն ունի ։ Որչափ դարման որ ըլլուի , որչափ դեղ որ առնուի , ամէնքն ալ անօգուտ են․ վտանգի նշանը ընկճելու տեղ պատճառը ջնջել պէտք է , վտանգի ապականութիւնը բժշկելու համար միմիայն արդիւնաւոր կերպ մը կայ ։

Ցօնական ախտէ բռնուած ծնողաց զաւկըները՝ այս դժնդակ ժառանգականութիւնը ճանչցուելու չափ թէ մթին և թէ՝ տեսանելի նշաններ կը յայտնեն ։ Այս անմեղ արարածոց վրայ ախտին թոյնը երբեմն ծանր և մեղմով կ՚ազդէ ․ երբեմն ալ այնպիսի ահռելի արագութեամբ կ՚ընթանայ, որ շատ անգամ բժշկական արհեստին ամեն ջանքերը ՚ի դերեւ կելլան ։ Ասկից առաջ կուգան այն փձուձ, կարկամ և նեխեալ էակները, որ անախորժ հիւանդութեամբք կը վշտակրին, և այնպիսի կեանք մը կը վարեն, որ ելթալով իրենց բեռ մը կըլլայ ։ —Եթէ ճշգրտեալ կարծիք մը կայ, առանց ընդդիմութեան այն է որ շուայտական ախտին ժառանգականութիւնը՝ կենաց աղբիւրները ամենէն աւելի ցամքեցնող և մարդկային գործարանաւորութիւնը իր առողջութեանը և գեղեցկութեանը մէջ ամենէն աւելի վատթարացնող հիւանդութիւնը կը համարի։ Ուստի ամենէն աւելի անճապարանք պէտք է զայն բժշկելու համար, որպէս զի իր սոսկալի կոտորածին առաջքն առնուի ։

Ցօնական ախտը երբեմն մարդկութեան ահաւելի աղէտ մ՚էր ․ Թէպէտ և բժշկութիւնը և առողջապահութիւնը՝ անոր շրջանակը բազմագոյնս սեղմեցին, սակայն դժբաղդաբար տակաւին խիստ ընդհանրական է ։ —Գրեթէ հինգ հարիւր տարի է ՚ի վեր այս աղէտին դէմ ․ բազմաթիւ սեպհական դեղեր հնարուեցան և կարի գովուեցան, բայց անոնցմէ և ոչ մէկը այս գովութեան արժանի չ՚էին, նամանաւանդ հիւանդութենէն աւելի վնասակար էին։ Որչա՜փ աղէտալի դիպուածներ, որչա՜փ գործարանական վատթարութիւնք, կրնայ բերել նաեւ որ-

չա՛փ թունաւորութիւններ պատճառեց այն անդիկը՛ ։

Չմոռնանք տեսական և ճարտար կիրարկու բժիշկներ յօնական ախտը իւր ամեն տեսակներով, ձեւերովը և կերպարանքներովը ուսնելէն և անոր դէմ հնարուած ամեն տեսակ դեղերը խորագոյնս քննելէն և բաղդատելէն վերջը ․ միաձայն համաձայնութեամբ՝ արդիւնաւորած միմիայն դարման մը հրամայած են, այն է Ժընեւ ժուռնալոյժ ըսուածը։ Արդարեւ այս մեթոտը ոչ թէ միայն մարմնական յօրինուածոյն մէջէն այս վտանգաւոր թշնամին պիտի վանէ, այլ նաեւ գործարանները ամեն տեսակ ախտաբեր գործողութիւններէ ազատ կը կացուցանէ։ Ուստի մեք ևս այս բժշկաց հետ համոզուած ենք և մեր այս համոզումն ալ երկար փորձառութեամբ հաստատուած է որ յօնական ժանտագործ ախտին դիմադրելու ամենէն զօրաւոր դեղերը՝ ժուռնալոյժ-դէնեան ըսուածներն են ։ Բայց աշխարհի բոլոր մագըրագործք անարդիւն պիտի մնան․ եթէ անոնք տող-Չեխանական կանոնաց վրայ հաստատեալ չըլլան․ այնպիսի կանոններ, որք անձին կազմութիւնը վերանորոգելու յատկացեալ են ։ Վասնորոյ այս կանոնը պատուիրելը և կարգի դնելը բժիշկի մը գործքն է ։

Հարկ կը համարենք հոս աւելցնել իբր գործք խոհեմութեան, իմաստութեան և բարոյականութեան, թէ փափաքելի է որ Աստղիկեան ախտէն ըմբռնեալ ամեն անձինք՝ թէեւ ամենաթեթեւ կերպով ալ եղած ըլլայ, ամուսնանալէ մէկ քանի ամիս առաջ, մաքրագործ դարմանի մ՚ենթարկուին ։ Այս կերպով իրենց արիւնը ապականող թոյնէն, և վատաբաղդ զաւակաց կեանք տալու ախտոր դառնութիւններէն և կսկծեցուցիչ թաղձութիւններէն ապա-

ոտի նզովածին, եղկելի տղայոց, որք, աւա՜ղ, իրենց հօրը սոսկալի ախտին գարշելի նշանները զլխոր կրեն ընդ միշտ :

Մինչեւ ցայս վայր առողջութեան և հիւանդութեան ժառանգականութիւնը քննեցաւ և ապացուցուեցաւ, արդ անցնինք ուրիշ խնդրոց, որք աւելի նուազ կարեւոր չ'են :

---

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### ՄՇՏԱՄԱՔՐՈՒԹԻՒՆ — ԲԱՑԱՐՁԱԿ ԿԱՄ ՀԱԿԱՐՆԱԿԱՆ ԺՈՒԺԿԱԼՈՒԹԻՒՆ — ՅԱՃԱԽԱԳՈՅՆՍ ԳՐԳՌՈՒԹԻՒՆՔ ԾՆՆԴԱԿԱՆ ԱՆԴԱՄՈՑ — ՅԱՆԿԱԿԱՆ ԶԱՓԱԶԱՆՑՈՒԹԻՒՆՔ — ԱՆԱՌԱԿՈՒԹԻՒՆ :

ՄՇՏԱՄԱՔՐՈՒԹԻՒՆ. ՈՒԽՏ ԺՈՒԺԿԱԼՈՒԹԵԱՆ (կուսութեան) Ամեն ժամանակ և ամեն ազգերէ յարգուեցաւ և մեծարուեցաւ ամուսնութիւնը. ընդհակառակը մշտամաքրութիւնը միշտ արհամարհանօք նշանակուեցաւ : Եւ եթէ մէկ քանի՛ ազգաց պատմութեան մէջ մշտամաքրութիւնք պատուեալ կը տեսնուի, մարդկային մտաց այս մոլորութեան պատճառը ուրիշ բան չէ բայց միայն խորհրդածութեանը ուղեղի ճշմարիտ ջղացաւ մը, որնոր ամեն տարափոխիկ հիւանդութեանց նման կը տարածի : Ամուսնութիւնն է սէր որ կը ճառագայթէ և կեանք կը ծնանի. մարդկային խնամարկու կարգութեանց արտայայտումն է : իսկ մշտամաքրութիւնը կործ

թիւն է, մահ է և ոչնչութիւն: Ամեն օրենսդիրք, իմաստասէրք և բարոյագէտք մշտամուրութեան դէմ խօսած են:

Սուրբ Պափնիւկէ՝ Նիկիոյ ժողովին մէջ չէր վախնար առաջարկել թէ առն՝ իւր կնոջ հետ ընկողմանելը սրբութիւն և աստուծոյ առջեւ ընդունելի գործք մ՚է:

Անմահն Ժան Ժաք. Ռուսօ կը մտածէր թէ մշտամուրութիւնը՝ բնութիւնը կը վշտացնէր և անոր որոշումը կը թիւրէր:

Վօլթէր կըսէր որ մշտամուրութեան ուխտը՝ կեղծաւորութեան լրումն է:

Լութեր՝ մշտամուրութեան պաշտպաններուն հետեւեալ ծիլլիչ խօսքերն ուղղեց. «Ինչպէս որ մարդ չլինելը իմ ձեռքս չ՚է, նոյնպէս ալ մշտամուրաւորապէս առանց կնոջ ապրիլը իմ կարողութենէս վեր բան է. վասնզի այս ինձ այնչափ հարկաւոր է, որչափ որ ուտելը, խմելը և մարմնոյս ուրիշ պէտքերը գոհացնելը հարկաւոր են: Պէտք է ըլլալ մարդ այնպէս, ինչպէս աստուած ուզեց որ ըլլայ: Աստուծոյ մեզի տուած պատուիրանը չարաչար գործածելով իր կամաց դէմ երթալը՝ հայհոյանք կամ յիմարութիւն է»:

Մեզմէ կը յաւելուին: Ամեն էակ որ մարմնաւորական փոխ մ՚ունի, կուտէ և կը մարսէ բնաբար. ամբողջապէս մարմնէն եղածը կը յաջորդէ բանի անջատումն հիւթոց: Թէեւ էակը չուզէ անջատել, բայց բնութիւնը կ՚ուզէ և բանի պէտք անջատէ: Նոյնպէս ամեն էակք, որք ծննդական գործարաններ ունին, անհրաժեշտ նախատարրով մը այս գործարանց պաշտօններուն ենթակայացեալ են. և

եթէ ծննդական գործնէութեան ամբողջ տեւողութեան ատեն այս պաշտօններուն արգելքներ դրուին, հետեւեալ երկու գործողութիւնները անպատճառ պիտի կատարուին։ Այսինքն կամ բնութիւնը՝ ինքնին սեռական պաշտօնը յառաջ կը վարէ կամ էակը կը մեռնի ծննդական ջերման սոսկալի յուզմանցը մէջ։

ԲԱՑԱՐՁԱԿ ԺՈՒԺԿԱԼՈՒԹԻՒՆ։ Կազմագիտաբար խօսելով, ժուժկալութիւնն է այն ջանքը, զոր կ՚ընէ էակ մը՝ զինքը սիրոյ հաճոյից մղող բնազդման դէմ դնելու։ Զգաստութեան և ժուժկալութեան մէջ այս տարբերութիւնը կայ, որ առաջինը զգաստ կենալու բնական յօժարութիւն մ՚է, իսկ երկրորդը բնազդման և կամաց մէջ մաքառման ենթադրութիւն մը, այնպիսի մաքառման, որոնք միշտ առողջութեան վնասակար է։

Արդարեւ՝ կենդանի գործանաւորութեան օրէնքներէն խուսափելու համար եղած ջանքն անպատիժ չըմնար։ Ամեն անոնք, որ կ՚ապրին, բուսականէն մինչեւ ցմարդ, անդիմադրելի ճակատագրով մը ենթակայ են օրինաց սիրոյ, զոր մէկ սեռը միւսին համար կը կրէ. մարդը միայն, կենդանի էակաց այս անթիւ ընտանեաց մէջ, մարդը միայն, մոլեռանդութեամբ կամ աւելորդապաշտութեամբ, հպարտութեամբ կամ փառասիրութեամբ կուզէ այս օրէնքէն խուսափիլ կամ աւելի լաւ է ըսել կուզէ հաւտացնել որ կրնայ ինքզինքը անկէ զերծանել։ Բայց կազմագէտք, որք մշտնջենաւոր ամուրութեան ուխտէն դիւրախաբ չեն, կը պատուիրեն ամուսնացեալ անձանց և կը պարտաւորեն իսկ զանոնք որ մշտամուրի մարդկանց՝ վստահութիւն չ՚ընեն. վասնզի լաւ գիտեն որ արութեան ամբողջ

աւելորդութեան մէջ՝ միայն անոնք ճշմարտապէս և առանց բացառութեան կրնան իրենց ուխտադրութեան հաւատարիմ մնալ. որոնք որ թերակատար , կատարելապէս ծիւրացեալ կամ ծնողական գործարաններէ զրկուալ են . միւսները բնազդման յօժարութեան կը հետեւին , բայց ծածուկ և պատնչելեաց տուներին մէջ։ Ո՛վ մարդիկ. ինչու կը ծածկէք խմելը , երբ ծարաւի էք . ինչու կը թաղուցանէք ուտելը , երբ քաղց ունիք , ի՞նչու կը պահէք սէրը , երբ կը սիրէք ։

Մոնթէյն կաղաղակէր . «ծնողական գործողութիւնը , որ այնչափ բնական և հարկաւոր է , ի՞նչ ըրած ունի մարդկանց որ զայն կը մերժեն , անկէ կը փախչին , անոր վրայ առանց ամաչելու չ'են կըրնար խօսիլ , և խօսակցութենէ գրեթէ բոլորովին դուրս հանած են ։ Սպաննել , գողանալ , մատնել և շնութիւն մը գործել են բառերը համարձակութեամբ կարտաբերեն , և այն գործողութիւնը , որ էակի մը կեանք կուտայ , չ'են կրնար հնչել ...։ Կեղծ զգաստութի՛ւն, ամօթալի կեղծաւորութի՛ւն ։»

Մարդուս կենացը մէջ այնպիսի հասակ մը կայ , ուր սիրոյ հեշտութիւնք ծնողական գործարանաց համար այնչափ ստիպողական պէտք մ'են , ինչպէս կերակուրք՝ ստամոքսին համար , և ուր մարդ չըկըրնար , առանց իւր գործարանաց պաշտօններուն ներդաշնակութեանը միջամտելու , ժուժկալութիւն պահել ։ Կրօնքի , եռանդոտ կազմուածքի տէր եղող անձանց համար մշտնջենաւոր ժուժկալութիւնը մըտաւորական վատթարութեան և ծնողական խանգարմանց կը տրամադրէ և պատճառ կըլլայ ախտաեան , սատիրեան , արգանդական սնոտից և հարը-

նամոլութեան . այնպիսի կերպարանքներով , որք ատենոցը կը սոսկացնեն ։ Այն ատեն տեղի կունենան զառանցական յուզմունքներ , անպարկեշտ ձեւեր , յիմարութիւն բայց գարշելի և պղծախօս յիմարութիւն և շատ անգամ ալ մահ կը պատահի ահարկու ջղային սանդանաց մէջ ։

Այս նիւթիս նկատմամբ՝ ամենէն ճարտար կազմագիտաց և բժշկաց գործքերը 'ի խորհուրդ կոչելով , կը տեղեկանանք որ ծննդական գործարանին վրայ միմիայն յետնուղեղը և ողնայարի ծուծը չ'են իշխէր , այլ նաև ուղեղն ալ կը մասնակցի և. ահա ասոր համար է որ բացարձակ ժուժկալութիւնը՝ արգանդական , պրիապեան ախտեր , տարփական յիմարութիւն կամ ծննդական կատաղութիւն եւն. եւն. կը պատճառէ , որոնցմէ անմիջապէս ետքը կուգայ մտաց ցրումն և ..... մահ ։

Արիստոտէս դիտած էր որ երկարատեւ ժուժկալութիւնը՝ սոսկալի հիւանդութիւններ յառաջ կը բերէր ։

Եւսեփուհի՝ Քոնսթանս կայսեր կինը իր ժուժկալութեանը զոհ գնաց ։

Պօլօնիայի թագաւորին տղան՝ Քազիմիր իշխանը նոյն վիճակը ունենալով մեռաւ ։

Առջի ատենները՝ տարփական խառնուածքի տէր եղող բազմաթիւ արք և կանայք, պատրանաց կամ մոլեռանդութեան պատճառաւ վանական կեանքը ընդունելով , ծննդական հուրով կըսպառէին և կը մեռնէին ։ Եւ մեր օրերն իսկ երկու սեռէ որչա՛փ անձինք՝ վանքերու մէջ այս սպառիչ վիշտէն տակաւին ըմբռնեալ են և որչա՛փ մարդիկ՝ իրենց խառնուածքին անկարելի եղող ժուժկալութեան զոհ երթալով կը մեռնին ։

Ամեն բժիշկ միաբանութեամբ կ'ընդունին որ ջղային—ծննդական խառնուածքի տէր եղող երկու սեռէ անձանց պահած բացարձակ ժուժկալութիւնը յիմարութեան կառաջնորդէ ։ —Քօղանիօ կըսէր որ ծննդական գործարանները շատ անգամ յիմարութեան կայարանն են ։ —Էսքիրօլ գիտած էր որ պարզշոտութիւնը վանքերէ եղող խենդերու քով գրեթէ միշտ կը պատահէր ։ —Լէօրէի նոյնը հաստատելով կըսէ թէ տարփական յիմարութեամբ բռնուելով վանքերէն եղող արանց և կանանց թիւը պէտք էր սոսկումն ազդել մարդկանց և իրենց ուխտադրութենէ առաջ իրենց ըրածին վրայ մտածել տալ ։ Մատթէոս բժիշկը իր Ռ[illegible] ֆ[illegible] Բժշկօ-Ընթեան զկանոնսթ անուն գրքին մէջ կը պատմէ թէ ուխտադրութենէ եաքը հարսնամոլութենէ ըմբռնեալ աղջիկներ խնամելու համար ինքը շատ անգամ կանչուած է ։ Այս բժիշկը իրաւամբ յառաջ կը բերէ թէ աղջիկ մը, որուն արգանդը մեծ ժրութիւն մը ունի, ուխտադրական առօրէն դիւրաւ կը բռնուի, և եթէ այս ժրութիւնը խստիւ ճնշուի, աղջիկը հարսնամոլ կըլլայ, —Հէյնէ կըպատմէ թէ բազում ջղաձգականք թէ այր և թէ կին իրեն խոստովանած են որ իրենց ջղաձգութեան առեն մարմնաւոր եռանդուն հաճոյքներ կըզգան ։ Ասկէ 'ի զատ կը տեղեկացնէ թէ՝ այն գայթակղեցուցիչ տեսարանաց մէջ, ուր արու անձինք Մօրօյէն անուամբ էգ Չըռնֆօռնանօց կը ներկայանային, ուրիշ այրեր չէին տեսնուէր, բայց միայն եռանդոտ երիտասարդներ, որոնց օգնութեան զօրութիւնը իրենց կորովութենէն կախումն ունէր ։ Ջղաձգական կին մը, կը յաւելու, խաչակրութեան կարգը մընալու պատճառաւ բոլոր իւր

հաղթուածները հանեց և թողուցին մեզի ներկայա-
ցնել կղերի մը ։ Մի՞թէ տակաւ հարսնամոլութեան
ժամանակ չէ ։ Սալբեթրիէրի (զգաստարան կանանց
ի Փարիզ) հարսնամոլները ասկէ աւելի բան մը չէին
ըներ։ Երկու սեռէ ճգնաւորները աւելի կամ նուազ
երկայն տարփական բանդագուշանքներ ունէին, որք
ամփոփաբար ցանկական զգացողութիւնը կը գրգ-
ռէին ։ Պօղոսէ նաև այս տեսարանները տարփական
խօլաբերանք կանոնաւորէր ։

Բայց գլխաւորապէս եռանդոտ երեւակայութեան
տէր եղող կնոջ պահած ժուժկալութիւնը և ճգնա-
ւորական կեանքն է որ ուղղոյ բորբոքումն և ծնըն-
դական անդամոց գրգռումն կը պատճառէ ։ Հին
ժամանակաց մէջ դիտէ՛, մի՞թէ Պիւթեանք, Սի-
բիլլեանք և Բագոսեանք՝ ուղղոյ և ծննդական յօ-
րինուածոյն ժամանակաւոր անկարգութեան նշան-
ները չէին ընծայեր ։ Իսկ տակաւին մեզի աւելի մօտ
ժամանակի մը մէջ Մարիամ Ակրէտաններ, Քասի-
էններ, Բուրինեոններ, Մարիամ Ալաքօքներ,
Մայքըն Պաղզըն և ուրիշ բազմաթիւ խեղճ յիմար կի-
ներ, իրենց ճգնաւորական մտաց յուզման տակ,
հարսնամոլութեան ախտին ժամանակ նշանները
ցուցնելով իրենց սէրը կէս բարեպաշտական, կէս
—տարփական խօսքերով կարտայայտէին ։

Աւելի յիմարական և ծաղրելի գործ մը տեղի կու-
նենար վերջ հարիւր տարիէն աւելի միջոցի մէջ կո-
նվուլսիոնարներուն ըսուած ծաղրական անուանք այ-
սինքն չըջանաւոր արխանահանութիւն մը ։ որուն
կրօնաւորք և կրօնաւորուհիք պատուաւորած էին հը-
նազանդիլը Հիւանդ կամ առողջ՝ վանականներէն և
ոչ մէկը նշդրակի հարուածէն չ՚էր կրնար ազատիլ

պէտք էր արիւն հանել, որպէսզի մարմնոյն դրդման սաստկութիւնը մեղմանար։ Զարմանալի չէ որ այս չքնաւոր արիւնահանութիւնը 1788 թուականին տակաւին կը գործադրուէր երկուց սեռից վանքերուն մէջ։ Նա որ աւանդեալ է, իբր օծանելիք կը գործածէին նշմիկայի, հազնիի, անմեռուկի, հազարի չարաքներ, գոլացուցիչ լոգանքներ, և նորընծայից կուրծքին և մէջքին վրայ կապարէ թիթեղներ կը կախէին, և ըմպանք տկարացուցիչ կերպառութեան կենթարկէին. բայց ամեն այս միջոցները անբաւական և տկար հնարքներ էին ընդդէմ այն ցանկական խըլրդման, զոր տարփական խառնուածքի տէր եղող անձինք կը կրէին և այս հակաբնական զգուշութիւնք՝ մարսողական գործողութիւնները խանգարելէ և տարփական բղձին սերմը զարգացընելէ ուրիշ բանի մը չէին ծառայեր։

Այն բժշկիկները, որք վանքերը դարմանելու կը պարտաւին, սակայն կը պատմէին խմացականութեան տկար և կրօնական աւելորդապաշտութեանց և սխալ գաղափարներով ուռճացեալ կիներ, որոնց չափազանց ժուժկալութիւնը հարսնամոլութեան ախտը զարգացուցած է։ Այս կանանց մէջէն, որք հաստատակորէն խիստ բարուց տէր կ'ըլլան, կան որ իրենց հարսնամոլութեան ծածանաց տանեն չուայտական փորձեր կարտասանեն և այնպիսի գործողութեանց կը պարտաւին, որոց անպարկեշտութիւնը իրենց նախնի սովորութեանց և անաղարտ բարուց բոլորովին հակառակ են։

Այս պատճառաւ բժիշկ վճռած են որ սեղմեալ գաղափարաց տէր և բարոյականաւ տկար անձանց համար, չափազանց կրօնական կրթութիւնը՝ մար-

փական հիւանդութեանց պատճառներէն մին է ։ Փորձառութեամբ հաստատուած այս ճշմարտութիւնը հետեւեալ առակին տեղի տուած է։ Վանքը և խոստովանարանը արգանդի հիւանդութեան և հարսնամոլութեան օրօրոցն են ։

Լրացնենք այս խնդիրը Լաչեզ բժիշկին իմաստուն խօսքերով․ «Ամենեւին պէտք չէ տարակուսիլ․ վանուց և մենաստանաց կործանումը՝ մեր քաղաքական վերածնութեան բարիքներէն մին եղած է։ Պատմութիւնը օր մը, ճշմարիտ փիլիսոփայութեան կնքոյն իբր դրոշմը պիտի յիշատակէ այն մեծ դարը, որ մարդկութեան այս գերեզմանները գոցեց ։ Աշտագին երգոց և նուիրեալ հեծեծանաց տեղ մուրճերու ձայնը փոխանակեցաւ այն հողին վրայ, ուր ընկերութենէ կամաւ տարագրեալ մէկ քանի Թշուառներ կը հեծէին, հարիւր գործաւորք աշխատութիւն և հանգիստ գտան ։ Գաղղիան հիմա աւելի քիչ վանքեր ունի, բայց աւելի շատ գործատուններ․ եթէ կրօնքը տուն մը կորսնցուց, կարեւոր ձեռագործք փոխանակ եկան ազգային բարեբաստութիւնը և անհատական բարեկեցութիւնը աճեցնել, և ո՞րն աւելի կարժէ, իրաց հին կարգը թէ նորը։ Ցաւէ ուրեմն անցելոյն վրայ․ դու որ բարիք ընել կը կարծես․ մաղթէ՛ անոր վերադարձը դու որ կը փափաքիս վերստին չինութեան մէկ քանի հաստատութեանց, որք ճշմարտապէս հակառակ են մարդկային ճշմարտութեան և զորս մեր դարը պարծանօք ջնջեց յաւիտեան ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

ՅՌԱՋՂԽԱԳՈՅՆՍ ԳՐԳՌՈՒԹԻՒՆՔ ԾՆՆԴԱԿԱՆ ԱՆԴԱՄՈՑ — ՑԱՆԿԱԿԱՆ ՋԱՓԱԶԱՆՑՈՒԹԻՒՆՔ. — ԱՆԱՌԱԿՈՒԹԻՒՆՔ : — Երկու սեռից մէջ այնպիսի խառնուածքներ կան, որք ծննդական ազետալից ժրութեան յատկութեամբ նշանաւոր կըլլան. ազետալից ըսենք, վասնզի այս խառնուածքով վըտացեալ թշուառները սեռական անհնաստարիկ ցանկութեանց շարունակաբար որս կըլլան և միմիայն իրենց գազանական կիրքը հագեցնելու համար, կարծես կապրին :

Իւրաքանչիւր դար, իւրաքանչիւր ազգ աւելի կամ նուազ զարմանալի ծննդական կորովութեան դիպուածներ կընծայէն : Հերակլէսի հռչակաւոր աշխատութիւնը, որնոր մէկ գիշերուան մէջ յիսուն մատաղ աղջիկներ արգասաւորեց, և Պրոկղէս կայսեր վաստակը, որնոր տասն և հինգ օրուան մէջ հարիւր Սարմատացի կոյսերու միեւնոյն ծառայութիւնը մատոյց՝ սկիզբ բռնելով, պատմութիւնը խել մը սիրոյ մէջ դիւցազուններու նկարագիրը կը մատուցանէ, որոց արութեան գործքերը աւանդութեամբ ստուգաբանելով, իրր վիպասանութիւններ մեզի հասած են, այնպէս որ մարդ անոնց չըկրնար հաւատ ընծայել : Սակայն չըկրնար ուրացուիլ նաև թէ այնպիսի այրեր և կիներ կը գտնուին, որք շարունակաբար ծննդական գործարանաց ազդեցութեանը տակ կ'ապրին : Այս տեսակ բնութեան տէր եղող անձինք, ընդհանրապէս իմացականութեամբ տկար և ապուշ անձանց մէջ կը պատահին :

Կալլիէն կը պատմէ Ափրիկեցի ստրուկ մը (սե-

տակ մը մարդագաղան՝ որ ամեն ծառայութեանց անյարմար է, բաց 'ի կանանց ծառայութենէն) իւր սեռական տարօրինակ կորովութեան համար, այն ժամանակի Մեսալինայէ մը (կին կարի չուայտասէր) խիստ սուղ գնով ծախու առնուեցաւ։

Փասէս կը պատմէ թէ Մաւրիտանացի իշխան մը երեք օրուան մէջ կը գոհացնէր քառասուն կիներ, որոնցմէ բաղկացեալ էր իր արքունեաց կանանոցը։

Կին մը՝ Արակոնի թագաւորի մը ոտքը նետուելով, իւր ամուսնոյն ցանկական եռանդեանը համար օգնութիւն խնդրեց. Թագաւորը կնոջ ամուսինը բերել տալով, անոր բերնէն իմացաւ թէ կանոնաւորապէս իւրաքանչիւր գիշեր տասն անգամ մերձաւորութիւն կընէր իւր կնոջ։ Թագաւորը՝ կենաց տուգանօք, արգիլեց այս մարդուն՝ վեց անգամէն աւելի մերձաւորութիւն ընելը։

Արեւելեան—Պիրինեանց լեռնցի մը՝ տասն և հինգ տարուան մէջ յաջորդաբար տասն և մէկ կանանց հետ ամուսնացաւ։ Իւր զուգաւորութիւնները այնչափ բազմակրկնակ և եռանդագին էին որ բոլոր իւր կիները՝ իրենց արգանդա—ցնցուղային անդամոց մէջ սաստիկ խանգարմանց պատահելով կը մեռնէին։ Կառավարութիւնը դէմ կեցաւ իւր ԺԲ ամուսնութեան։

Այս տեսակ և ասոնց նման դէպքերը խիստ քիչ կը պատահին և բոլորովին բացառական են։ Ծնըն-դական գործարանաց չափազանց ժրութիւնը, որուն վրայ կը խօսինք, կախումն ունի այս գործարանաց առաւելանութենէն այսինքն սննդական և ջղային առաւելութենէն, որ սովորաբար աղետալից վախճանի մը կը հասցնէ։ Այն ատեն իւր կորովու-

թեանը մէջ ծննդագործական կարողութիւնը չ'է որ կը գործէ, այլ գարշելի ախտ մը, որ Սաֆոյեան կը կը կոչուի:

Երբեմն կը պատահին այնպիսի երիտասարդներ որք տարափական կուսոյն մէջ ունեցած քաջասրտութիւններին իրենց յիմարական փառքը մը կը համարին եւ կըսեն թէ ութնէն մինչեւ տասն եւ երկու ճակատամարտ կրնան տալ եւ պատրաստ են փորձելու: Այս խօսքերը պարզապէս անձնագովութիւններ են եւ ոչ ինչ աւելի, վասնզի եթէ այս ընդարձակ մարդիկ՝ ամօթալից կացութեան եւ սերման անջատման վրայ պզտիկ գաղափար մ'ունենային, այս տեսակ պոռնկական խօսքեր չ'էին համարձակէր ըսելու: Ընթերցողը թող՝ մէկ մը նորէն աչքէ անցնէ գրքիս այն գլուխը, ուր կը գտնուի ամօթալից եւ իրենց պաշտօններուն նկարագիրը, եւ այն ատեն պիտի տեսնայ թէ սերման անջատումը խիստ երկար ատենի կը կարօտի. վասնզի այս հեղուկը՝ իրեն ընդունարանին եղող սերմնական փամփուշտներուն մէջ հանգելէ առաջ, 250 մեթր երկայնութիւն ունեցող անցքերու մէջէն պըտըտիլ կը պարտաւորի. ուստի կազմագիտաբար անկարելի է որ մարդ մէկ քանի ժամու մէջ ութը, տասն եւ տասն եւ երկու անգամ մերձաւորութիւն ընէ, կամ եթէ ըլլայ. այն ատեն այս մերձաւորութիւնները՝ առանց սերմնական հեղուկին կորստեանը կատարուած են: Ամենէն աւելի կորովի եւ ծննդագործական ամենէն աւելի զարգացեալ մարդը մէկ քանի ժամու մէջ հինգ եւ վեց ցայտեցուցումէն աւելի չը կրնար պատահել. այսու ամենայնիւ վերջիններս միակայն ջըրբարից հեղուկ մը եւ ջերմութեամբ ու կսկիծով ընկե-

բացեալ սերմնագեղձական անջատումն մ'են ։ Վերջապէս այն անձը, որ ասկէ աւելի առաջ կը տանի իւր չափազանցութիւնքը, այն ատեն սերման տեղ արիւն տալ պիտի սկսի ։

Սեռական հեշտութեան ամենէն աւելի միտեալ անձը՝ մէկ քանի զուգաւորութենէ վերջը, տեսակ մը վայրկենական անկարողութեան վերածեալ կը գտնուի ինքզինքը · Ջլատեալ գործարանը՝ անոր փափաքները չը կրնար յագեցնել · Վասնորոյ պարտաւորեալ է սպասել որ բնութիւնը՝ ջղային և սերմնական հեղանիւթոց կորուստները դարմանէ, որպէս զի կարող ըլլայ ցանկական գործողութեան վերըստին պարապիլ ։ Այս խառնուածքն ունեցող մարդիկ՝ իրենց այրական կարողութիւնները շուտով կը կորսնցնեն, և անկարող անառակութեանց թիւը կը շատցնեն։ Վասնորոյ Բարնիի հետեւեալ ոտանաւորը՝ այս ծննդական վատթարութեան խիստ յարմար կուգայ ։

Երբ կոճղէն՝ ոստ մը կորզի,
Ա՛լ չ'առնու զիւր նախնի կորով ·
Զի ոչ ևս է կոճղին դալար,
Որ սնունդ տայ իրեն հիւթով ։
Ի զուր ծաղկին տան ջուր առատ,
Երբ չոր 'ի հող՝ կայ իւր արմատ ։

Կանանց քով իրերը տարբեր կերպով տեղի կ'ունենան, ինչու որ այս մասին կրած կորուստնին կարի խիստ փոքր է · Վասնզի սերմն չ'ունին բնաւ և գործողութիւննին ալ առանց կանգնման կատարուելով, ամեն ժամու, ամեն վայրկենի մէջ զուգաւորութիւնը գործադրելու ատակ են ։ Ցանկական

Հնչատութեանց վաստակոցը՝ աւելի կամ նուազ երկար ատեն կրնար դիմանալ և նոյն իսկ անոնցմէ շատերը , իրենց չափազանցութիւններուն պատճառաւ ուրիշ անհանգստութիւն մը չ'են զգար բայց միայն , ձանձրութիւն մը , տաքութիւն մը և չփոռուած մասանցը վրայ այտուցում մը ։

Հնախօսութիւնը , մանաւանդ Հռովմայեցւոց պատմութիւնը , ստորին և վերին կարգի խել մը կանանց ցանկական եռանդեան և մոլեգին գրգռութեանց մասին մեզի շատ օրինակներ կընծայէ ։

Հին Յունաստանի մէջ , Փրինէ , Էղեփանթիս , Մեսիդէ , Կորիննա , Փիլէնիս և խել մ'ուրիշ տարփուհիներ՝ իրենց վարուքը հռչակաւոր եղան ։ Երկու սեռի չուառատէրք յանդգնեցան հաստատել ֆող-նէ+ Կոտիտոյէ տօնախմբութիւնը , Աերեպի տօնախմբութեանց օրինակին հետեւելով․ այս գործողութեանց մէջ այնպիսի բաներ կ'անցնէին , որոց վրայ հնութիւնը քող մը ծածկած է ։ Նեւպողիս բանաստեղծը՝ իւր Պոզինոյ կատակերգութեանը մէջ , Կոդիտոյի պաշտամանց ատեն տեղի ունեցած գաղտնեաց մէկ քանիները բացադրած ըլլալուն համար սպաննուեցաւ Ալկիբիադէն , որնոր կարծած էր թէ թիքնալ բանաստեղծին նշանակած չուայտաւորաց թուոյն մէջն է ։ — Հռովմայի բազմատեսակ անառակութեանց մէջ , ուր կը թափառէին մեծամեծ տիկնայք , ոչոք կարողացաւ հաւասարիլ Մեսաղինէի անյագցանկութեանը ։ Այս կինը Լիկիւքա կեղծ անուամբ պոռնկական վայրերը պտըտելով , գէճն էնոք մարդիկը կը գրգռէր , այնչափ որ ալ կը վռնտէին զինքը այգուն բոզանոցէն , կեղեքուած , 'ի գործ դրած զուգաւորութիւններէն ձանձրացած , բայց

անյագ · յոգնած բայց չյագեցած ։ Այս կողեալ կնոջ չափազանցութիւններէն վերջը կուգան Կղէոպատրայի, Յոսթինէի, Փոփէի, Ագրիպինէի, Նէկտամէնի, Վալէրիայի, Յուլիայի, Սեզոնիի, Տարփէայի, Սեմիրամիսի, Վիատրիղայի, Քարթիղայի չափազանցութիւնները · այս վերջինը բնաւ չ՚էր յիշէր իր կուսութեան հասակը, և ուրիշներ ալ, որք իրենց անհաւատալի չափազանցութեամբքը այսպիսի տխուր համբաւ մը ստացան ։ Աւելի ետքը Նափօլիի Յովհաննան և Լիւքրէս Բորճիա՝ Մեսաղինէ արիւնաթաթաւ լկտութիւնները նորոգեցին ։

Այս կողեալ կանանց ցանկին վրայ ստուար վարագոյր մը ձգելով լմնցունենք այս գլուխը մէկ քանի նոր դիտողութիւններով, որք պիտի ապացուցանեն թէ ծննդական առաւելագոյն ազդեցութեամբ վշտակրեալ կինը՝ այրէն աւելի կը դիմանայ ցանկական չափազանցութեանց ։

Թէոդոսի թագաւորութեան ատեն, կին մը թաղեց քսան երկու ամուսիններ, որք կը մեռնէին հետեւելով այն չափազանցութեանց, որոց այս անյագ լկտին կստիպէր զիրենք ։

Բօղ... գնդապետը կը պատմէ թէ պոռնիկ մը՝ զինուորներէն յափշտակուելով և պահնորդատեղին տարուելով, առանց յոգնելու նշան մը ցոյց տալու պարտասեցուց եռեսուն մարդիկ · որք պահակը կը բաղկացնէին ։

Պիթրան Ռիվալ կը պատմէ թէ Մաչսթրիխթցի դեղեցիկ և ողջախոհ օրիորդ մը՝ գաղղիացւոց առաջին յեղափոխութեան ժամանակ, ստիպուեցաւ քսան և ութը հեծելազօրաց բղջախոհութեան ենթակայ ըլլալ, և արգանդի գրգռման և մէկ քանի

կեղեքածքի պատճառաւ անոնց ձեռքէն ազատեցաւ այս վերքերը մէկ քանի օրէն բժշկեցան ։

Ալքատոց ձրի բժշկարանի մը բժիշկը ինձ ցոյց տուաւ քառասուն տարեկան կին մը, որ քան երկու տարիէ 'ի վեր շարունակ՝ քսան և չորս ժամուան մէջ տասն ընծայ կը մատուցանէր սիրոյ ։

Անուրանալի է նաև թէ բազմաթիւ կիներ կան՝, որք կը տրտնջան թէ իրենց ամուսինները զիրենք չեն կրնար յագեցնել. քանի որ շատ քիչ կը պատահի թէ արք այս կէտիս վրայ տրտնջան իրենց կիներէն ։

Այս պատմութիւններէն և գործողութիւններէն կը հետևի թէ տարփական պայքարին մէջ կինը այր էն աւելի դէմ կըդնէ և թէ միշտ անխոհեմութիւն և յիմարութիւն է երիկ մարդուն եթէ ուզենայ բնականայէս փոխադարձը փորձել ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ՁԹԻԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՉԱՐԱՉԱՐ ԳՈՐԾԱԾՄԱՆ ԵՒ ԳԻՆԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ՝ ՄԱՐՄՆՈՅՆ ՅՕՐԻՆՈՒԱԾՔԻՆ ՎՐԱՅ ԿԱՏԱՐԱԾ ՄԵԾԱՄԵԾ ՎՆԱՍՆԵՐԸ ։

Սեռական հեշտութեանց չարաչար գործածումը քիչ ատենի մէջ միտքը և մարմինը կը վատթարացնէ, և կերեւայ թէ չափազանցութիւններէն և ոչ մէկը ցանկականին չափ դառնայէս կը պատժուի։ Որոնց համար կը պատճառէ նախ ծննդական գործարանաց տկարութիւն. յանկանդամոյն թուլութիւն ,

ակամայ սերմնական կորուստ , ամորձեաց ծիւրութիւն, փամփուշտի ջղալուծութիւն եւն եւն : Իսկ կանանց համար ծննդական անդամոց յաճախագոյն գրգռութիւնք , որոնց կը հետեւի ճերմակ դաշտանը , այնչափ աւելի վնասակար եւ աւերիչ որչափ որ աւելի առատ ըլլայ : Ասոնցմէ անմիջապէս ետքը վրայ կը հասնին ջղացաւութիւնք, սրտի տրոփիւնք, թակացումն, եւ արգանդի անկարգութիւնք, որք ամբողջ գործարանաց վրայ կազդեն : Մարսողութիւնը գէշ կը կատարուի , եւ անուղը՝ մեքենան հոգալու անբաւական եւ անատակ կ՚ըլլայ, ամեն բան կը նուաղի։ Խեղճ եւ ողորմելի անձը դժգոյն դէմք մը կառնու , աչքերը խոռոչաւոր եւ գրեթէ մարած կ՚ըլլան, քունքերը եւ այտերը գոգաւոր , եւ խնձորները նիհարագոյն . ականջները կը չորնան եւ կը տափակնան , լսելիքը , հոտոտելիքը եւ ճաշակելիքը տակաւ առ տակաւ իրենց յատկութիւնը կը կորսնցնեն։ Անտարակոյս ուղեղն ալ այս ընդհանուր տկարութեան կը մասնակցի , յիշողութիւնը կը տկարանայ , ուշադրութիւնը անկարելի կ՚ըլլայ , դատողութիւնը եւ բոլոր իմացական կարողութիւնք կը վատթարանան , կեղծուին եւ անձը՝ մելամաղձութեան , արգանդի խօթութեան, թանձրամտութեան եւ ապշութեան մէջ կիյնայ : Յուսկալի նիհարութիւն մը կը չորցնէ մարմինը , որնոր կը կորանայ եւ հազիւ հազ կըմախները վեր կը բռնէ : Վերջապէս ընդհանրական ըսպառումը կը լմնցնէ այն խեղճին կեանքը , որնոր չը կրցաւ խլել ինքզինքը ծննդական կրից չափազանցութենէն :

Մասնաւորապէս դիւջագործութեան յամառութեամբ պարապող անձանց վրայ է որ ապառման

Նշանները սոսկալի յատկութիւն մը կընծայեն։ Ցան-կական եռանդեան զոհերը տեսքով գարշելի են․ մարդուն զազրութիւն կ'ազդեն և խղճալի են․ և եթէ կազմական կամ բարոյական սաստիկ վնաս մը՝ զիրենք իրենց ամօթալի սովորութենէն չը կասեցնէ, ալ իրենց անպիտան կեանքը բան մը չարժէր, ամեն օր մէկ մէկ քայլ աւելի կ'առնեն դէպ 'ի գերեզման, և կատարեալ հիւծման մէջ կը շիջանին։

Անառակութեան զոհերը թախանձանօք կը պարտաւորենք որ կենդանի էակաց արտադրութեան վերաբերեալ՝ բնութեան սահմանած օրէնքը խիստ լաւ խորագրեն իրենց մտացը մէջ։ —Բուսական ցեղին մէջ արդասաւորութենէն անմիջապէս ետքը արու գործարանները կը թառամին, իգական գործարանները կանեբեւութանան և պտղոյն տեղի կուտան, և ծաղիկը որ առագաստական անկողնոյ տեղ կը ծառայէր, կեղծանի։ —Կենդանական ցեղին մէջ ճճիներու խումբ մը տեսակներ զուգաւորութենէն անմիջապէս ետքը կը մեռնին․ սեռական միաւորութեան վայկեանը՝ իրենց կենաց վախճանն է։ —Կենդանեաց մէջ զուգաւորութեան գործողութիւնը՝ զօրութեանց կորստեամբ մը կը կատարուի, որնոր կը յառնուի տեսակ մը նուաղութեամբ և կենսական վատթարութեամբ․ իրենց գոյները կը նսեմանան, ձայներնին կայլայլին, [illegible] կսկսի և իրենց մարմինը այս վատթարութեան մասնակցելով, իւր՝ ոգլխութեանցը մէկ մասը կը կորսնցնէ․ Նուազ հիւթէզ և նուազ սնդարար կըլլայ։ Ուրեմն ամեն էակ՝ կազմագիտական այս օրինաց ենթակայ է․ Այն գործողութիւնը՝ որ ցեղը կը մշտնջենաւորէ, ամէնը կը հատցնէ․ կամ ուրիշ կերպով ըսելով։ Ամեն անգամ

որ անհատ մը կը ծննդագործէ կամ ծնեցուցիչ գործողութիւնը կապակէ, նոր կեանքը մը արծարծելու համար իր կենաց մէկ մասը կուտայ. և եթէ իր ըրած կորուստները դարմանելու համար ժամանակ չը ձգէ բնութեան, մնասուած կենսականութիւնը՝ անխոհեմութեամբ վերստին ըրած կորստեանց համեմատութեամբը կը նուազի: Իսկոյն կատարեալ տկարութեան մը մէջ կիյնայ, և կեանքն ալ իր կարգին զինքը կը լքանէ: — Այս ճշմարտութիւնները այնպէս ստոյգ են որ ալ պէտք է հոն կենալ:

Այս գլխոյս եզրակացութիւն այս է. չափաւանց ժուժկալութիւնը նոյնպէս անժուժկալութիւնը՝ սեռական հեշտութեանց անդադար գործողութիւնք երկու ծայրայեղութիւններ են, որք հաւասարապէս կը մերժուին բնութենէ և քաղաքականութենէ: Աշանջենաւոր ժուժկալութիւնը, եթէ կրնայ ըլլալ, խել մը սոսկալի հիւանդութեանց և դժնդակ յիմարութեանց աղբիւրն է: Յանկական չափազանցութիւնք մարմնոյ և մտաց աւերումն է: Զուգաւորութեան չարաչար գործածման չափ, ուրիշ ծայրայեղութիւն մը չիկայ որ կազմականը և քաղաքականը այնչափ սաստիկ յուզացուցանէ: Իսկ եթէ մեծ քաղաքաց մէջ կը պատահին այնչափ գձուձ, նուաղեալ անձանց, որք վատթարացեալ մարմնոյ մը փեկորները կ'ընդքարշեն, պատճառը ուրիշ բան չէ բայց միայն անառակութիւնք: Նոյնպէս անառակութիւնք, չուայտութիւնք պատճառ են այն գարշելի հիւանդութեանց, որք կենաց աղբիւրները կը ցամքեցնեն, ընտանեաց մէջ կը մշտնջենաւորին, սերնդեան կը յարին և ցեղը կը վատթարեցուցանեն:

Այն երիտասարդը, որ իր կորովութեանց վրա-

տանջանալով. ցանկական հեշտութիւնները չարաչար կը գործածէ, շուտ մը կը ջլատի և կանխահաս ծերութեան մը ցաւոց կը պատրաստէ ինքը զինքը: Անկարողութիւնը, մեղկ սկարութիւնը և երբեմն ալ ծննդական գործարանին ջլատութիւնը կը ժամանեն իբր հետեւութիւն այս չարաչար գործածմանց:

Այն մատաղ աղջիկը կամ կինը, որ իւր սեռին բնական եղող սրբութիւնը և ամօթխածութիւնը բանի տեղ չդնելով, թաքուն և առանձնակի գործողութեանց պարապի, քիչ ժամանակէն իր թարմութիւնը, իւր առողջութիւնը կը կորսնցնէ և արհամարելի կամ խղճալի անձ մը կը դառնայ: Ծննդական գործարանաց մէջ կեդրոնացած կենսական այս ժրութիւն խոտորեցնելու և անոր ուրիշ ուղղութիւն մը տալու համար պէտք է կազմական և բարոյական կրթութեանց, ճանապարհորդութեանց, ազդու զբօսանաց և սաստիկ զբաղմանց ձեռնարկել:

Եթէ անառակութեան կենսակուլ անդունդին տակաւին եզերքը գտնուող անձինք, իրենց նախապատրաստած տխրալի ապագան կանխատեսէին, եթէ գեղերէին հիւանդանոցներու սրահները, ուր կը նուաղին և չքանային մոլութեան և շուայտութեան կիսով ապականեալ զոհերը, ո՜հ անտարակոյս, սարսափելով և սոսկալով պիտի կենային այն անդունդին քով 'ի վայրկեան վրայ:

Ասկից 'ի զատ փորձուած է թէ անառակութիւնը՝ մարդուն բարոյական որպիսութիւնները կ'ոչնչացնէ և կը խեղաթիւրէ, թէ խորամանկութիւնը, կեղծաւորութիւնը, վատութիւնը կը զարգացնէ և մինչեւ անգթութեան կը հասցնէ: Տէրէր.

Ներօն, Կալիկուլա, Սօմիթիէն, Հելիօկապալ, Քօրճիա եւ եւ· և մարդկային կերպարանքով ուրիշ շատ հրէշներ, որք իրենց աղտեղի շուայտութիւններէն ելած ատեններին արեանց հեղեղներ վազցնելով կը զուարճանային, աս ըսածիս սոսկալի օրինակներ են։

Վերջապէս փիլիսոփայք՝ անառակութիւնը՝ ամեն մոլութեանց իբր աղտեղի ակն և աղբիւր, և ժողովրդական կարգաց մէջ անոր տարածումն ալ՝ մարդոց վատթարութեան իբր նշան և կայսրութեանց անկման իբր կարապետ նշանակած և համարած են և խիստ մեծ իրաւունք ունին ։



## ԳԼՈՒԽ ԺԹ.

### ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ՃԵՐՄԱԿ ԴԱՇՏԱՆ ։

Այս տխուր ախտը որ այնչափ մատաղատեսիլ կանանց թարմութիւնը մէկ քանի տարուան մէջ կը թարշամէ, մեծ քաղաքաց մէջ խիստ ընդհանրական եղած է ։ Այս մասին եղած վիճակագրութիւնք ճշմարտապէս ցաւալի և ողբալի են։ 100 կանանց մէջ 80 ը այս ախտէն բռնուած են զանազան աստիճանաւ ։

Կազմագիտութեան անտեղեակ եղող ընթերցողաց կը գիտցնենք որ մարմնոյն ամեն բացուածքները և ուղիները պատող մաղասաւոր թաղանթները երբ գրգռուին, իրենց բորբոքման շրջանին և

տարինանին համեմատ կանաչագոյն, ճերմակ կամ դեղնագոյն մաղաս մը կ՚անջատեն։ Քէչէլը կամ ուղղոյ հարբուխը, հազագաբորբոքը, ներմնակաթութիւնը ճերմակ, դաշտանի կամ սպիտակ հոսմանց տեսակներ են, որք մաղասաւոր թաղանթներէն կը բղխին։

Կնոջ ծննդական անդամոց ճերմակ դաշտանը, երբեմն արգանդի ցընցուղին մաղասաւոր թաղանթէն, երբեմն արգանդի մաղասաւոր թաղանթէն և երբեմն ալ այս երկու թաղանթներէն միանգամայն յառաջ կուգայ։

Ճերմակ–դաշտանի պատճառները բազմաթիւ են. միմիայն գլխաւորները հոս յիշենք։

Կակուղ, անախտաւոր և ճերմակ հիւթերով խճողուած գործարաններ ունեցող չափազանց առչալից խառնուածքը. —Խիստ գրգռելի ջիղեր ունեցող խառնուածքները. —Կանաչ ախտի, արգանդի խօթութեան եւ վիճակը։

Միգոտ կլիմաները, խոնաւ վայրերը, ջերմութեան և խոնաւութեան փոփոխակի յաճախումնք. լուսազիրկ և օդափակ բնակութիւնք։

Խիստ գրգռեցուցիչ կամ յոռի որպիսութեան սնունդ մը, համեմաչաքարաց, բանդակաց, կաթնեղինաց, կանաչ պտղոց, թթու, ալքոլական ըմպելեաց չափազանց գործածութիւնը, գարեջուրը և թէյը, որոնք սովորաբար կը գործածուին, դժուարամարսելի մարսողութիւնք, վերջապէս ամէն բան որ մարմնական յօրինուածքը խախտէ կը գրգռէ կամ կը տկարացնէ։

Երկարատեւ ոտնկայնապնդութիւնք, բորբոքարկու լոգանք. թոնիրներու յանչափս աղետալից գոր-

ծածութիւնը, տաք բաղանեաց յաճախ և չարաչար կիրառութիւնը, ներքին բաճկոնակին ճնշումը ճերմակ դաշտան կը պատճառեն, շունչը կ'ախտաւորեն և նենգահոտ կը գործեն ։

Մարմնոյ և մտաց խիստ վաստակք. երկարատեւ արթնութիւնը, միշտ նստողական կեանքը, մարմնամարզութեան պակասութիւնը, ամսական արեան հոսման անկանոնութիւնք ։

Տխուր կիրք, սաստիկ յուզմունք. ծննդական յօրինուածոյն ջղական խռովմունք, յայրատ մտածմունք, խաղատանք, արգանդի խօթութիւն, հարսնամոլութիւն ։

Շրջանաւոր ապավիժման ; արհեստական կեղէ մը, հնացեալ ախտի մը՝ մորթային հիւանդութեան մը բարձումը ։

Կանայք կը պարտաւորին ուշադրութեամբ կարդալ և աղէկ միտ պահել հետեւեալը։ Ճերմակ դաշտանը՝ ամբողջ մարմնական յօրինուածքը կը յոգնեցնէ և առողջութիւնը կ'եղծանէ, ստամոքսի ցաւ և ճմլումն կը պատճառէ և մարսողական խողովակին ամբողջ երկայնութեանը մէջ հով կը գոյացնէ։ Ախորժակը կը փոխուի. կը կորսուի. մարսողութիւնը կը դժուարանայ. ընդհանուր նիհարութիւն մը կը տիրէ մարմնոյն վրայ, որնոր օրէ օր կը տկարանայ, խել մը ջղային հիւանդութիւնք կը ծանրանան ճերմակ դաշտանաւորին վրայ և իմացականութեան խանգարմունք կը պատճառեն։ Կանանց ախտը, թալկացումը, սրտի արագաթնդիւնը, հեղձումն և ընջարգելութիւնը շատ անգամ առատ և բազմամեայ ճերմակ-դաշտանի մը անժխտելի հետեւութիւնքն են ։

Սովորական ճերմակ-դաշտանին պատճառած աղետալից խանգարմանց գլխաւորն է արգանդի անցքին այտումը, որնոր երակներուն ուռենալէն առաջ կուգայ. արգանդի ցնցուղին մաղասաւոր թաղանթը՝ չարունակ անջատելովը կակղնալով քիչ ատենէն կը քերուի և կը յոռանայ: Արտաքին մասերը՝ թոյլ, թառամեալ և սեւաքարի նման կըլլան: Ճերմակ-դաշտանի խոնաւութիւնն ալ՝ կանաչ, դեղին կամ ճերմակ գոյներով և նողկացուցիչ հոտով անդադար ծնծակէն դուրս կը վազէ: Ախտաւորին մարմինը՝ վտիտ, գձուձ և անզօր կըլլայ, անոր մորթը՝ մեղրամոմի սպիտակութիւն մը կառնայ կամ դեղնեալ և անկենդան կըլլայ, անոր աչքերը կանաչ բակով մը կը շրջապատուին, սորին արտեւանունքին տակը կը ուռքանայ, ամեն բան կը յայտնէ թէ գործարանաւորութիւնը վատթարացեալ է, արիւնը կը լուծուի և ջուր կը դառնայ ինչպէս ռամկօրէն կըսեն:

Տակաւ առ տակաւ ճերմակ-դաշտանը առողջութեան աղէտալի հարուած մը կուտայ, վայրական անկարգութիւններ կը պատճառէ, որք պարզ կեղեքածքէ կըսկսին և մինչև քաղցկեղի կրնան հասնիլ. քաղցկեղ՝ այն սոսկալի հիւանդութիւնը, որուն դէմ ամեն դեղ և դարմանք 'ի դերեւ կ'ելլան նոյն իսկ ամենախոր խարումն....: Դժբաղդ և խեղճ կանայք, տակաւին անխոյթ կը կենա՞ք ձեր ճերմակ-դաշտանին վրայ. աղէկ գիտցէք որ անկէ աւելի անդութ և անկէ աւելի վտանգաւոր թշնամի մը չունիք:

Ճերմակ-դաշտանի հոսմունքներ կան, որոց բարկ դառնութիւնը՝ իրենց ազդեցութեանը ենթակայ եղող մասանց միշտ բորբոքումն կը պատճառէ. ուս-

եւ այն այրը, որ այս տեսակ ճերմակ դաշտանէ ըմբռնեալ կանանց հետ զուգաւորելու անխոհեմութիւնը կունենայ, այնպիսի ցաւալի սրտմնակաթութիւն մը կստանայ, որուն սաստկութիւնը՝ ճերմակ դաշտանի բարկութեան և զուգաւորութեան տեւողութեան հետ ուղիղ համեմատական է:

Արեւելեան ազգաց և մանաւորապէս Հրէից մէջ ճերմակ դաշտանաւոր կինը փակարգել կ'ընէին և անոր հետ զուգաւորիլը պիղծ կը հրատարակէին: Այս ամենամեծ առողջապահական զգուշութեան գործածութիւնը սրտերու մէջ խորարմատ հաստատելու համար, այն ազգաց օրենսդիրները հաւատոյ մաս մ'ըրին զայն: Ի վերայ այսր ամենայնի Արեւելցիք ազատ են այս աղետալից ախտերուն չատերէն, որք մարդկային ցեղը կը վատթարացնեն:

Մեր գաւառաց մէջ, ճերմակ-դաշտանը՝ ընկերական սանդուխին երկու ծայրերուն վրայ կը պատահի և հարստագոյն կարգին և աղքատագոյն կարգին վրայ հաւասարապէս կը խստանայ: Դու՛ք, գեղեցիկ Տիկնա՛յք. որ մեղկ դատարկութեան մը մէջ զեղխութեան ամեն տեսակ հաճոյքներովը կապրիք, դու՛ք, որ զմայլեցուցիչ բոյրճայներ կը շնչէք. դուք որ ձեր ստամոքսը՝ հաղուագիւտ կերակրովք և ջերմ կամ սառուցեալ ըմպելեօք կը գրգռէք, դուք, որ կազմական և բարոյական ամեն տեսակ գրգռեցուցիչք չարաչար կը գործածէք. դուք որ ցորեկը կը քնանաք և գիշերը կապրիք. դուք որ ձեր փափուկ անդամոց՝ միմիայն պարերու և երեկոյթները տըխուր մարզը կ'ընծայէք, ո՛վ դուք, գեղեցիկ Տիկնայք սրահից, պիտի կրէք այս կցկցեալ և պաճուճական կենաց հետեւութիւնը՝ ճերմակ դաշտանի

ախտին․ որ զձեզ կայլայլէ, կը ջլատէ և տա՛ղ՝ ձեր զաւակաց կազմութեանը վրայ կ'անդրադառնայ։

Ձեզ, դժբաղդ արարա՛ծք, որ թշուառութեան աղբեւաց վրայ կը փտիք, որ ինքզինքնիդ ծածկելու համար միմիայն ցնցոտիներ ունիք. զձեզ, որոց սնունդը անբաւական և յոռի որպիսութեամբ է. զձեզ, որ բնակած խցիկներնուդ մէջ երբէք լուսոյ ճառագայթ մը չէք ընդունիր, որ աղտեղութեանց մէջ կը լողաք և գարշահոտութեամբ 'ի օդ մը կը շնչէք. զձեզ, որոց գարշահոտ երկուորիքը՝ Աւկիասի ախոռներուն հետ կըրնայ բաղդատուիլ. զձեզ կըսեմ, ճերմակ-դաշտանը անդադար կըսպառէ և ձեր կեանքը կը մաշեցնէ. և մահը կը հնձէ իրենց օրօրոցին մէջէն ձեր զաւակաց շատերը, որոց դուք կեանք տուած էք։

## ՋԱՆԱՋԱՆ ԿԵՐՊ ԴԱՐՄԱՆՆԵՐ ։

Խել մը արտաքին և ներքին դարմաններ 'ի գործ դրուեցան ճերմակ-դաշտանի ախտը բժշկելու համար. այս ինչ մեթոտը լաւագոյն կը համարուէր ուրիշէ մը և այս ալ տեղի կ'ուտար նորագունի մը, զոր հինէն աւելի զօրաւոր և օգտակար կը դատուէր, և միշտ այսպէս, առանց մեծ օգուտ մ'ընծայելու հիւանդին։ Եթէ մէկ մը դառնալ և ետեւնիս նայելու համարձակութիւն ունենանք. այն ատեն պիտի տեսնանք թէ բժշկութիւնը միշտ միեւնոյն շրջանի մէջ կը դառնայ. հիւանդութեանց տեղւոյն և ընթացիցը մասին շատ աւելի լուսաւորուած է, որ առաջ այնչափ չ'էր. իսկ դարմաններու մասին՝ տակաւին այնչափ յառաջացած չ'է։ Հոս իմ կարծիքս դնելու համար հազար անգամ ներողութիւն կը խնդրեմ բժըշ-

դական մարմինէն՝ այսինքն թէ բժիշկը չէ որ կը բժշկէ, այլ կենսական զօրութիւնն, որ միշտ կը ձգտի ախտաւոր գործօնն արտաքսելու կամ վանելու։ Բժիշկին դերը՝ պարզապէս այս գործօնին արտաքսումը կամ վանումը դիւրացնելու վրայ պիտի կայանայ։

Փորձը մեզի ապացուցած է որ հնացեալ զանազան ախտից և մասնաւորապէս ճերմակ-դաշտանի դարմանները բոլորովին առողջապահական պիտի ըլլան։ Հազարաւոր դէպքերու դիտողութիւնք կապացուցանեն նաև թէ կիզողական և ուրիշ սաստիկ դարմաններու միջոցաւ ճերմակ-դաշտանի կարծեցեալ բժշկութիւնները սուտ չեն և թէ հիւանդութիւնը քիչ ատենէն երևան ելած է այն կանանց քով, որք բօցօրանի ենթարկուած, խորագոյն մասերը խէլըզ որանուած, այրուած, խարուած են։ Խորագոյնին բժիշկ մը կըսէր թէ բացարանի բարբարոսական հնարումէն 'ի վեր արգանդի և իւր ցնցուղին ախտերը սոսկալի կերպով մը բազմապատկուեցան. սուտ ճշմարտութիւն մ՚է այս. վասընզի մարդկութեան և ոչ մէկ դարուն մէջ այս հիւանդութիւններէն բռնուած այսչափ կանայք տեսնուած չ՚է բնաւ։

Խել մը իմաստուն բժշկաց հետ մենք ալ կը կարծենք որ ճերմակ-դաշտանի հիւանդութիւնը՝ հասակի, խառնուածքի, կենաց որպիսութեան, սովորութեանց, անձին կազմական և բարոյական վիճակին, հասման բնութեան և որքանութեան, վերջապէս ախտին պարզութեան, տեւողութեան և խառնուրդին վրայ հիմնուած դարման մը կը պահանջէ, որուն նպատակը պիտի ըլլայ արգանդի և

իր ցնցուղին մաղասաւոր թաղանթները իրենց նախնական վիճակին դարձնել. այս նպատակը ըմբռնելու համար պէտք է բժշկել գործարանական այլայլութիւնները և ընդհանուր անկարգութիւնները, որոնք պաշտօնները եղծած և խանգարած են. վասընզի ճերմակ–դաշտանի ախտը՝ ոչ թէ միայն ծընընդական մասերը վնասելով կը բաւականանայ, այլ ամբողջ մարմնական յօրինուածոյն վրայ կը ծանրանայ ։

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ԴԱՐՄԱՆ.

Սննդական կերառութիւնք և մարմնամարզութիւնը խիստ մեծ օգուտ ունին, զօրացուցիչ և միանգամայն դիւրամարս կերակուրք աղքատացած արեան մէջ մեծ քանակութեամբ սնուցիչ հիւթեր կը մատակարարեն։ Չափաւոր մարմնամարզութիւնը, դաշտին մաքուր օդը՝ ախորժակը և մարսողական զօրութիւնները պիտի զարթուցանեն ։ Ընտանեկան լոգանք, շփմունք, շրջագայութիւնք, զբօսանք, բարոյական հանդարտութիւնը եւ ասոնց ամենքն ալ հիւանդութենէն ազատելու կը նպաստեն ։ Սակայն պէտք է հեռու կենալ. պարերէ, երեկոյթներէ, թատրոններէ և այն ամէն տեղերէ, ուր օդը բազմութեան արտաշնչմամբը կապականի ։ Տռփական գործողութիւնք ժամանակի մը համար արգիլեալ պիտի ըլլան ։ Մահաբէր ներքին բաճկոնակին և անիծեալ թոնիրին գործածութիւնը բոլորովին և ընդմիշտ արգիլեալ են։ Գիւղագնացութիւնը և դաշտավայրից կեանքը անհուն օգտակարութիւն կը մատուցանեն ։

## ՎԱՑՐԱԿԱՆ ԴԱՐՄԱՆ

Նստոյ լոգանք, որք պէտք ըլլան համեմախառն, պնդացուցիչ, քիչ տեւողութեամբ և օրը երկու կամ երեք անգամ պէտք կրկնուին ։ Ֆանէլայէ կտորով մը ազդրերուն ներքին կողման վրայ շփշփումն, —այն կողմերուն վրայ մէկ քանի ընչահան տրուակներ փակցնելու է չոր կերպով, այսինքն առանց արիւն հանելու. —գրեխ և արգանդի ցնցուղի մէջ ծխարկութիւնք, որը՝ շատ անգամ կրկնելու է ։ Գրեխները պնդացուցիչ բուսաջրով գործածելու է մէջը 5–6 կաթիլ մզափիոն աւելցնելու է. Երբ այս գրեխները անօգուտ ըլլան, հետեւեալ խառնուրդը գործածելու է ։

| | | |
|---|---|---|
| Վարդեջուր . . . . . . | 300 | կրամ |
| Թթու թանէնէ . . . . . . | 5 | « |
| Ներկ իօտէ . . . . . . . . | 1 | « |

Մէկ քանի պարագաներու մէջ իօտի ներկին տեղ ծծմբաթթու պղինձի կրնայ գործածուիլ միեւնոյն չափով. մէկ քանի գործածողներ մեծ օգուտ քաղեցին ։

Ջերմակ դաշտանաւոր կինը խիստ մաքուր ըլլալու է, և իւր գաղտնի տեղեացը լուացմանը համար պէտք է գործածէ պնդացուցիչ և զօրացուցիչ բուսաջուր ։ Ամառուան եղանակին մէջ պաղ լոգանք, ծովու լոգանք և երկաթախառն ջերմուկներու բաղանիքները կրնան նաև գործածուիլ։ Բայց դարձեալ կըկրկնենք, թէ բոլոր այս միջոցները անօգուտ կըլլան, եթէ իրենց օժանդակ չունենան մարմնամարզութիւնը, գեղեցիկ օդը, ընտրեալ կերակրութիւն մը, արթնութեան և քնոյ կանոն մը, ջղա-

տիչ հեշտութեանց մերժումն, վերջապէս առողջապահական կերատութիւն և վարք մը իրենց բոլոր ճշգրտութեամբը :

Ահա ասոնք են ճերմակ–դաշտանի հոսումը թժշկելու պէտք ըլլալիք ամեն աւելի մասնաւորական դիտողութիւնք, որք եթէ կէտ առ կէտ գործադրուին, անտարակոյս ըլլայ այն կինը թէ վերջը փափաքելի յաջողութիւնը ստանալով գոհ պիտի ըլլայ :

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՍԵՐՄՆԱԿԱԹՈՒԹԻՒՆ

Սերմնակաթութիւնը տեսակ մը ճերմակ դաշտանի ախտն է, որնոր միզական անցքէն մէջէն կը թղխի· երկու սեռի ալ հասարակ է, մասնաւորապէս առն : Մենք հոս միմիայն առն՝ առանց յօնական ախտի եղած սերմնակաթութեանը վրայ պիտի խօսինք :

Այս ցաւալի ախտը՝ միզական անցքը պատառող մազասաւոր թաղանթին մէջ ունի իւր կայանը· իւր սովորական պատճառն է զուգաւորութիւն այնպիսի կանանց հետ, որք ճերմակ դաշտանի ախտէն ըմբռնեալ են կամ որոց արգանդի ցնցուղը կծու խոնաւութիւն մը կ'անջատէ և կամ դաշտանի հոսումն ունին :

Մարդիկներ կան, որոց միզական անցքը և գեղձը այնպիսի զգայականութիւն մ'ունին, որ աղտեղի կնոջ մը սակաւ ինչ մերձաւորելով սերմնակաթական

ախտէն կ'ըմբռնուին . այսպիսի մարդիկ կնոջ մեր-ձենալէ առաջ պարտին նախզգուշութիւն մ'ընել այսինքն իրենց միզական անցքը և գեղձը իւղով օծանել: —Համեմախառն կերակուրք, թէյի և զօրաւոր գարեջրոյ չափազանց գործածութիւնք այս տեսակ հոսումներ կը պատճառեն նաև :

Երբ սերմնակաթութիւնը տռփական ախտէ ըմբռնեալ աղտոտ կնկան մը հետ զուգաւորելէ առաջ եկած է , այն ատեն հիւանդութիւնը շատ խիստ կըլլայ և կըսուի **Սերմնակաթութիւն յօնական ախտի** :

Սերմնակաթութեան նշանները՝ ընդհանրապէս զուգաւորելէ երեք կամ վեց օր ետքը կը յայտնուին: Նախ՝ թեթեւ մարմաչիւն մը կզգացուի անցքին ծակին քով . յետոյ այրումն, կսկիծ : Իսկոյն գըրգռումը կաւելնայ և բոլոր անցքը կը գրաւէ, այրումը աւելի կը սաստկանայ և միզելու կարիքը հոգալու համար քիչ կամ շատ նեղութիւն և ցաւ կը զգացուի:

Նորածագ սերմնակաթութեամբ ախտացեալ այրը երբ անտարբերութեամբ դարձեալ առաջուան պէս սեղանի և սիրոյ ծառայէ, իւր ախտը խիստ կը ծանրացնէ : Նախ գրգռումը՝ իւր գործադրած չափազանցութեան համեմատութեամբ կ'աճի և յետոյ մէկ քանի օրէն սաստիկ բորբոքման ամեն յատկանիշները կառնէ: Առնի անդամը ստէպ կը կանգնի և խիստ ցաւալի կերպով . միզումը՝ անհանդուրժելի կիզմամբ կը կատարուի . երբեմն բորբոքումը մինչեւ միզական փամփուշտին կը հասնի և անկէ միզարձակութիւն կը պատահի, և երբեմն ընդհակառակը՝ այսինքն միզարգելութիւն . կրնայ պատահիլ նաև որ այս ախտը մինչեւ երկւորիօքները և ցայցից ծալքին ջղակծիկները հասնի, որոնք միշտ աղե-

տալի է ։ Վերջապէս գէշ վարմունքով և չափազանցութեամբք թունաւորեալ և զայրացուցեալ սերմնակաթութիւն մը հետեւեալ ախտանիշերը կրնայ յառաջ բերել ։

Խողովակը կամ ցայլից ծակքին ջղակծիկներուն այտումամբ բորբոքումն։

Խլիրդն կամ գեղձին և միզական անցքին ծակին մաշումն ։

Սերմնական գեղձին բորբոքումն
Միզարգելութիւն կամ դժուարամիզութիւն
Արեանամիզութիւն
Կծկուած անցք
Կորուստ սերմնական
Սերմնակաթական ուղղոցի ևն ևն ևն ։

Այս ախտանիշերը, որք ընդհանրապէս գործարանաց լռութեան և ամբողջ առողջութեան վտանգաւոր են, բժշկական ամենախիստ դարմաններ կը պահանջեն։ Վասնորոյ սերմնակաթութենէ բռնուեալ անձինք պարտին զայն դարմանել յառաջածագէն այսինքն այն ատեն, ուր անոր բժշկութիւնը դիւրին է ։

ԴԱՐՄԱՆ ։— Առանց տեղական ախտի տեղի ունեցած սերմնակաթութեան դարմանը խիստ պարզ է ․ զովացուցիչ և բանջարեղէն կերակուրներ գործածել ․ գրգռիչ ուտելիքներէ և դրդիչ ըմպելիքներէ հեռու կենալ ։ Գարիի կամ բորակաւոր սէզի եփաջուր առատութեամբ խմել, բաղանիք երթալ և հեռի կենալ ցանկական հեշտութիւններէ ու այն ամեն բանէ, որք ցանկութիւնը կը գրգռեն։

Սերմնակաթութեան յառաջածագման ատեն երբ բորբոքումը գեղձին նաւակաձեւ խոռոչին մէջ կեզ-

բռնացած է , զինքն ծծմբաթթուով գրեխը շատ օգտակար է , եթէ առանց անցքը բորբոքելու գործածել գիտցուի ։ Ահա կերպը ։ Կտաւով մեծկակ խից մը շինելով առնի անդամուն արմատոյն կողմերն և անդամին ալ անոր վրայ կը հեծցնեն, այն կերպով որ անցքին վրայ ճնշում մը հաստատուի . այս ճնշման նպատակն է արգիլել գրեխաջուրը որ մինչեւ փամփուշտը չերթայ . վասնզի եթէ երթայ , սաստիկ պիտի գրգռուի . այսպէս ընելէն վերջը, անցքին ծակին մէջ կը խոթեն՝ զենկի ծծմբաթթուով լեցուած պզտիկ գրեխի մը կլոր նուրբ խողովակը և աջ ձեռքին ցուցամատով աստիճանաբար կը հրեն գրեխին միջնաձողիկը, մինչդեռ ձախ ձեռքին բթամատը և ցուցամատը գեղձը կըբռնեն, և գրեխաջրոյն դուրս ելլալուն ճնշմամբ դէմ կըդնեն ։ Գրեխը ետ առնելով կը ձգեն հեղուկը որ մէկ քանի երկվայրկեան այրէ, և յետոյ ճնշումը դադրեցնելով անոր ելք կուտան ։ Այս գործողութիւնը երկու , երեք անգամ կրկնելէն վերջը առնանդամը՝ երկու կամ լուծեալ զինկ պարունակող ջրոյ մէջ կը թաթխեն ։ Օրը երեք անգամ առաւօտուն , ցորեկին, և իրիկուան այս գործողութիւնը կը կրկնեն , որով գրեխներուն թիւը իննի կը հասնի ։ Երեք օր բաւական է նորածագ սերմնակաթութիւն մը բժշկելու ։

Բայց եթէ ախտը բորբոքման շրջանի մը հասած է, այն ատեն գրեխները օգտակար չըլլալէն 'ի զատ վնասակար են . ուստի պէտք է մաղասաւոր թաղանթներուն բորբոքումը բժշկելու դարմանին հետեւիլ . բաղանիք , կէս—բաղանիք , կակղիչ դեղեր, մակարդ գործող ըմպելիներ , ժուժկալութիւն կերակրոյ, կակղիչ լոգանք. և եթէ կանգնումները խիստ

ցաւալի ըլլան լողանաց մէջ մէկ քանի կաթիլ մրգա-փիոն պէտք է աւելցնել, և մէկ կամ երկու ամիա-նաւոր կամ ուրիշ քնածու դեղահատիկներ առնելու է․ ազդուեկներու գործածութեանը միայն այն ատեն դիմելու, երբ սերմնան դեղձի կամ փամփուշտի բորբոքումն կայ։ Քօթօնէյէ բալասանէ շինուած թամփօնները՝ հիւանդութեան վերջերը առնուելու են, հոտումը դադրեցնելու համար։

Արծաթի բորակաթթուով տեսակ մը դրեխ կայ որ, կըսեն թէ, մէկ քանի օրուան մէջ սերմնակաթութիւնը կը բժշկէ։ Մենք խորտ կուտանք սերմնակաթ ախտաւորաց որ այս տեսակ դեղերուն վստահութիւն չ՚ընեն, վասնզի խիստ դեղերը իրենց անցած դեղերուն վրայ միշտ վնասաբեր հետքեր կը ձգեն։

**ՍԵՐՄՆԱԿԱԹՈՒԹԵՆԷ ԱԶԱՏ ՄՆԱԼՈՒ ՆԱԽԱՊԱՀԵՍՏ ՄԻՋՈՑ** — Շատ միջոցներ առաջարկուեցաւ անպատիժ կերպով Աստղկան դիմագրաւելու այսինքն առանց ախտաւորելու երկիւղ ունենալու․ եթէ կինը կասկածելի ըլլայ․ Այս միջոցներէն ոմանք կը պատուիրեն լուալ կնոջ ծննդական անդամները թէ Քլորիւրեալ ջրով, թէ՛ նաեւ կեղեւի եփածջրով կամ Թաննինէ լուծաջրով, թէ՛ վերջապէս 800 կռամ ջրով որուն մէջ լուծուած է 3 հարիւրորդական մաշիչ անդկի պարզած։ Մենք կը կարծենք որ առն համար ամենէն լաւագոյն նախապահեստ միջոցն է թենփօն ըսուած կերպը․ այսինքն նախապէս առնանդամը օծելու է ճարպաւոր հիւթով մը, ինչպէս իւղով․ Փօմատայով, Քօլտ-քրէմով եւն, և կոտր մ՚ալ միզանցքին ծակին մէջ խոթելու է, և ցանկութիւնը յագեցնելու համար ճիշտ պէտք ըլլալիք ժամանակէ առ-

ւողութենէն աւելի առեն տալու չ՚է այդ գործողութեան, այսինքն անմիջապէս առատ ջրով լուացուելու է, բառնալու համար այն ամեն նիւթեր, որք իրենց ծծուելովը ժանտահոտութիւնը կը դիւրացնեն ։ Ըստ մեզ այս է ամենէն լաւագոյն նախապահեստ միջոցը ։ Ի վերայ այսր ամենայնի այր և կինը բաւական խոհեմ և բաւական օրինաւոր ըլլալու են, որպէս զի երբ անոնցմէ մէկը կասկածելի վիճակ մ՚ունենայ, մէկզմէկու չը մօտենան ։



## ԳԼՈՒԽ Ի.

## ԱՆԶԳԱՅՈՒԹԻՒՆ ԿԱՄ ԱՆՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ Ի ՀԱՃՈՅՍ ՍԻՐՈՅ

Սիրոյ անզգայութիւն ըսելով պիտի հասկնանք բարոյական անտարբերութեան և ծննդական գործարանաց անգործութեան այն վիճակը, ուր կը գտնուի անհատ մը ծննդագործութեան վերաբերեալ ամեն գործողութեանց նկատմամբ ։ պէտք չէ շփոթել անզգայութիւնը՝ անկարողութեան հետ ։ Առաջինն է ցանկական հաճոյից ամբողջապէս բացակայութիւն ։ Իսկ Բին այսինքն անկարողութեան մէջ կայ ցանկութեան փափաք․ բայց զայն գոհացնելու համար կազմական անկարելիութիւն կը գտնուի ։

Երկու տեսակ անզգայութիւն կայ, մէկն է բնական կամ սահմանադրական․ միւսն է պատահական կամ դիպուածական ։

Բնական անզգայութիւնը չափազանց աւշալից խառնուածքէ մը և զօլամամալին, թոյլ և սեռական ամեն գրգռութեան յոյլ կազմութենէ մը սկիզբն կ'առնու։ Այս տեսակ անզգայութիւնը խիստ հազուադէպ է, և միմիայն կատարեալ թոյլ, աւիշով լցեալ և ճարպով խճողեալ կանանց քով կը գտնուի, որոց բթացեալ զգայարանքները սիրոյ պչրանաց համր կը մնան։

Երկրորդ տեսակ անզգայութիւնը, որ յաճախ պատահական է, կազմականին կամ բարոյականին և կամ այս երկուքին միանգամայն ներգործող խել մը պատճառներու և զանազան ազդեցութեանց արդիւնքն է։ Այս պատճառներուն մէջէն ամենէն աւելի սովորականներն են. ծննդական ախտք, ցանկական չափազանցութիւն կամ չափազանց ժուժկալութիւն, գիջագործութիւն, սովորական կլղիթորականութիւն կամ կնաբրականութիւն, ոգելից ըմպելեաց և գրգռիչ կերակրոց չարաչար գործածութիւնք, ինչպէս նաև բոլորովին տկարացուցիչ կերառութիւնք, արթնութիւնք, երկարատև ուսմունք, խորին մտածմունք, վիշտ, տխուր և տկարացուցիչ կիրք. երկիւղ, սոսկումն, յուսահատութիւնք ևն ևն։

Այս տեսակ անզգայք բոլորովին անբժշկելի չեն, մանաւանդ թէ անձը տակաւին երիտասարդ ըլլայ. իրենց բնական դեղն է վերոյիշեալ պատճառներուն բարձումը և անզգային կազմութեան յատկացեալ կերառութիւնը։ Քիչ մը ետքը պիտի տանք իրենց յարմարելի դարմանին մանրամասն տեղեկութիւնները։

Սիրոյ հեշտութեանց անտարբերութիւնք, որոնք առողջ և երիտասարդ ատն քով խիստ հազուադէպ

է , կանանց համար ըստ բաւականի սովորական է ․ Նախ՝ վռանգի իրեն մարմնական յօրինուածքը կազմող մասանց թուոյն մէջ ծննդագործ հեղուկն անջատող գործարան չը գտնուիր։ Կազմագիտութիւնը մեզի կը սովրեցնէ որ այս հեղուկը երբ սերմնական փամփուշտները ամբողջապէս լեցնէ , կսկսի վերըստին շրջաբերիլ մարմնոյն մէջ ․ այս շրջաբերութիւնը և հեղուկին՝ արեան հետ խառնումը առնքով կը պատճառէ սեռական միաւորութեան սաստիկ փափաք մը , որնոր ընդհանրապէս ծննդական տարփանաց ընկերանալով, աւելի կը սաստկանայ և այն ատեն միայն կը ցրուի , երբ այս սերմէն որ և իցէ քանակութեամբ դուրս հանուի ։ —Երկրորդ՝ վռանգի աւշալից խառնուածքը կանանց աւելի ընդհանրական ըլլալով, սիրոյ գրկախառնութեանց մէջ նուազ եռանդն , նուազ աշխոյժ կունենայ կինը ։ Ի վերայ այսր ամենայնի այս ընդունակութիւնը միմիայն մարդկային սեռին իգականութեան յատկացեալ չ՚է , այլ կենդանածին ամեն անասնոց էգերուն ․ վռանգի միշտ արուն է որ ներգործաբար զհետ կը պնդի և կը տանջէ էգը ․ սա կարծես կըբաւորաբար կըկենայ և արուին սիրոյ թռիչներուն միմիայն կը յանձնէ ինքզինքը ։ Իրաց այս վիճակը արդասաւորութեան հարկաւոր է ․ վռանգի սիրոյ յուզմունք և եռանդոտ բացագանչութիւնք անոր վնասաբեր են․ եռանդոտ և արգանդական կրիւք վրդովեցեալ կանայք ընդհանրապէս անյարմար են արգասաւորութեան և անոնք ամուլ կըմնան, մինչեւ այն ատեն , ուր արհեստը և շատ անգամ բնութիւնը կարող ըլլան արգանդի կողուցքը նուազեցուցանելու ։

բաներ ըլլայ. կը պահանջէ նաեւ որ քաղցրանուագ խօսքերով գրգռուի. որպէսզի բարոյականն՝ կազմականին վրայ ազդելով զինքը յօժարեցնէ հեշտական ճնշման անձնատուր ըլլալով չիջանելու։ Եթէ այրը կնոջ հետ այսպէս վարուէր, շատ ստոյգ էր որ կինն ալ նուազ կատարեալ անզգայութեամբ, հեշտութենէն կ'ստանար. բայց գրեթէ միշտ ուրիշ կերպով է, Այրը եսական, անհամբեր եւ իւր տարփանաց մէջ տմարդի է. առանց միտ դնելու լաւ կամ յոռի կացութեանց, որոց մէջ կարող է իւր կինը գտնուիլ. կուզէ որ իր կարիքը գոհացնէ, կուզէ զայն, եւ պէտք է որ կինն ալ հնազանդի։ Երբեմն կինը՝ այս վայրենական գրկախառնութենէն ազատելու համար պատճառանք մը կը գտնայ. բայց շատ անգամ կըբաւորաբար անձնատուր կըլլայ, որպէսզի կարող ըլլայ ժամ առաջ ազատիլ մարդու մը անհանգըստութիւններէն. այնպիսի մարդու մը, որ անասնական գործողութեան մէջ կարիք մը գոհացնելէ ուրիշ բան չուզեր նկատել։

Անզգայ կանայք՝ ծանծաղամիտ, խարտեաշ, տժգոյն եւ ջլատեալ կըլլան. իրենց կուրծքերուն վրայ գրեթէ բոլորովին ստինք չ'են ունենար, եւ ցայլից ոսկրին վրայ ալ՝ մազ. իրենց ձայնը՝ սուր եւ նուրբ, աչքերնին՝ մթին, նայուածքնին՝ առանց աշխուժի կըլլան, եւ շարժման մէջ մեծ դանդաղութիւն մը կունենան նա։ Երեսունէն մինչեւ երեսուն եւ հինգ տարեկան հասակին մէջ, այս կիները ընդհանրապէս խիստ գէր կըլլան, կազմութիւննին՝ թոյլ, մարմնոյ գոյներնին՝ դեղնեալ, եւ դանդաղաձեւերով։

Այժմ կանցնինք պատահական անզգայութեան

դիւրաւոր պատճառներուն, որպէսզի վարժ ըլլանք լաւագոյն կերպով հասկցնել զայն բժշկելու. համար պէտք ըլլալիք մտաւորական դարմանաց կերպերը։

1° ԾՆՆԴԱԿԱՆ ՅՕՐԻՆՈՒԱԾՈՅՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐԸ։ Ծննդական գործարանաց մէկ քանի հիւանդութիւններ զուգաւորութիւնը ցաւալի և նաեւ անկարելի կ'ընեն. այն ժամանակ ցաւոց երկիւղը՝ ցանկութեան փափաքը կը հեռացնէ, և կամաց կամաց անզգայութեան կը տանի։ —Ան համար· տռնանդամուն և ամորձեաց որքինական, յօնական և քաղցկեղային ախտերը, այս գործարանաց տկարութիւնը կամ յուլութիւնը, անոնց պաշտօններուն այլայլութիւնը և անկարգութիւնը, սպառումն, ինչ որ ալ ըլլայ պատճառը, չափազանց զուարճութիւններէ առաջ եկած տկարութիւնը եւն։ —Կնոջ համար· արգանդա—ցնցուղային անցքին կարի լայնութիւնը, ծննդակին, արգանդին և սոր ցնցուղին հիւանդութիւնները, առատ ճերմակ դաշտանի ախտը, որ արգանդի ցնցուղին մաղասաւոր թաղանթը կ'ապականէ, անոր զգայականութիւնը կը ջնջէ, կնաբերին կամ կղիթօրիին պզտիկ շրթանց կանգնականութիւնը կ'եղծանէ, զանոնք թոյլ կը գործէ, և վերջապէս անոնց բորբոքականութիւնը բոլորովին կը վերցնէ։ —Այս ախտերէն առաջ եկած անզգայութեան միակ դարմանն է գիտնալ բժիշկի մը կամ վիրաբուժի մը և ամբողջապէս բժշկել։

2° ։ ՏՌՓԱԿԱՆ ՉԱՓԱԶԱՆՑՈՒԹԻՒՆՔ, ԳԻՋԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ, ԿՆԱԲՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ։ Ծննդական գործարանաց տկարութիւնը շատ անգամ տռփական չափազանցութիւններէ և չարաչար գործածութիւններէ, և որ աւելի վտանգաւորն է,

առանձնակի հեշտութիւններէ առաջ կուգայ ։ Արդարեւ այս չափազանցութիւնները՝ գործարանները թոյլ թմրութեան մը մէջ կընկղմեն, կանդնումները ոչ առն եւ ոչ կնոջ քով տեղի չեն ունենար․ չօշափմամբ մաշած մասերը իրենց զգայականութիւնը կորսնցուցած են, եւ ալ այնուհետեւ սիրոյ հեշտութեանց անզգայ կըլլան ։

Ցուփական հեշտութեանց չափազանցութիւններէ առաջ եկած անզգայութեան դարմանը՝ սպառումէ պատճառած անկարողութեան դարմանին հետ նոյնն է ։ (Տե՛ս Անկարողութիւն անուն գլուխը) ։ Իսկապէս դարմանիչ եւ զօրացուցիչ սննդական կերառութիւն մը, մէջքին եւ ազդրներուն ներքին մասանց վրայ դրդուիչ շփումներ, պաղ լոգանք․ վիժալոգանք, մարմնամարզութիւն, ցանկական հեշտութիւններէ բացարձակապէս հրաժարումն, բարոյական խթիչք, ինչպէս հանճարեղ եւ հրապուրիչ կանանց ընկերութիւնը, տարփական ընթերցմունք․ մեղկ երաժշտութիւնը, զոր բազում բժիշկ անզգայութեան իբր չքնաղ դարման կը համարին, այս տեսակ անզգայութիւնը յաղթական կերպով բժշկելու յատկացեալ դարմանաց բովանդակութիւն մը կը կազմեն ։

3° Մշտապահ եւ խիստ ժուժկալութիւնը՝ ծննդական գործարանները այնպիսի թմրութեան մը մէջ կ'ընկղմէ որ անզգայութեան կը տանի, երբեմն ալ ընդհակառակը կը պատահի, այս գործարանները ընդ մի վայր հոսեալ չարժեան մը կայանի ըլլալով ծննդական անդամոց խլրտումն կը պատճառեն․ Նւանդուն երիտասարդութեան առեն՝ ժուժկալութենէ՝ բնութեան օրինաց այնչափ ընդդէմ է,

որ ամենախիստ անկարգութիւններ կը պատճառէ առողջութեան մէջ, ասոր յայտնի ապացոյց հակառակ ծայրայեղութիւններ են, որ մեր մարմնական յօրինուածոյն հաւասարապէս վնասակար են։ Այս անկարգութիւնները երբեմն անզգայութեամբ և անկարողութեամբ կը յայտնուին, երբեմն ալ տարփական մոլեգնութեամբ, արգանդի խօթութեամբ, ջարանամոլութեամբ, լուսնոտութեամբ, և ուրիշ զարշելի և սոսկալի յիմարութեամբք։ Նախընթաց գլխոց մէկուն մէջ արդէն թուեցինք ժուժկալութեան աղետալից հետեւանքները. այժմ միայն կը մնայ մեզ կարճախօս բժշկաց հետ կրկնել այս ճըշմարտութիւնը թէ, ցանկական հեշտութիւններէ բացարձակապէս զրկուիլը ինչպէս նաեւ ասոնց չարաչար գործածմունքը ամենածանր անկարգութիւններ կը պատճառեն. վասնորոյ այս երկու ծայրայեղութիւններէ հեռու կենալը իմաստութիւն և խոհեմութիւն է։ — Գործոն, բացարձակ ժուժկալութենէ պատճառած անզգայութիւնը՝ սովորաբար իր զօրաւոր դարմանը կը գտնայ՝ ցանկական հեշտութեանց չափաւոր և պատշաճ գոհացուցման մէջ. եթէ անձին կազմութիւնը և հասակը ապաքինութեան երբէք չը հակառակին։

4°. Ոգելից ըմպելեաց, նոյնպէս բորբոքարկու կերակրոց չարաչար գործածութիւնք պատճառ են անզգայութեան։ Զօրաւոր հեղուկները՝ ստամոքսին ընդերաւոր ծոպերը գրգռելով, զանոնք քիչ մը ատեն կը զարգացնեն, յետոյ այս գործարանին զգայականութիւնը կը չիջանեն, որոնց համակրութեամբ ծննդական գործարանաց վրայ կ'ազդէ։ Առակ մը կայ որ Բաքոսի բաժակները՝ իրենց

ընծաները Աստղական տաճարին ընծայելու մասին խիստ քիչ կարող, իսկ ջուր խմողները՝ տարփանաց մենամարտութեան մէջ կորովի ըմբիշներ կը համարի : Արդարեւ այն անձը, որ իր կեանքը կերակրոց և ըմպելեաց մէջ կը կեդրոնացնէ, որ իր որովայնէն 'ի զատ ուրիշ աստուած չ'ունի, տակաւ առ տակաւ իր ծննդական կարողութիւնները կը կորսնցունէ և անզգայութեան կը հասնի : —Բաւական սընընդեան պակասութիւնը, նոյնպէս նաեւ տկարացուցիչ կերակրութիւնք հաւասարապէս անզգայութեան կառաջնորդէն :

Այս ծննդական տկարութիւնը բժշկելու համար լաւագոյն միջոցն է, առաջին պատահման համար՝ ուտելու խմելու մասին բարեխառնութիւն, և երկրորդ պատահման համար՝ գրգռիչ, զօրացուցիչ և ու եղի առատ սնունդ մը :

5° Մտաւոր աշխատութեանց չափազանցութիւնք, խորին մտածութիւնք, երկարատեւ արթնութիւնք, յամառ խորագիտութիւնք · բոլոր կենդանական զօրութիւնները ուղեղին մէջ կեդրոնացնելով · գործարանները ծննդագործութենէ կզրկեն որք կը նուաղին և կամաց կամաց գործադրելու ատակութիւնը կը կորսնցնեն : Այս բանս յայտնի կը տեսնուի անկից որ ուսման մարդիկ, գիտնականք ընդհանրապէս անզգայութենէ կըմբռնուին, և ապուշներն ալ ծննդական տարօրինակ կարողութիւն մը կը յայտնեն :

Այս տեսակ անզգայութեան բնական դարմանն է ամեն աշխատութեանց դադարումն, զբօսանք և ճանապարհորդութիւնք : Գիւղագնացութիւնը և պարտիզպանութեան զբաղմունք՝ մեր քա-

րեկամներէն ուսումնական անձի մը վրայ մեծ և գեղեցիկ արդիւնք մը առաջ բերին ։

Վիշտերը, տխուր և տկարացուցիչ կիրքերը, ինչպէս, ատելութիւն, նախանձ, երկիւղ, սոսկում, յուսահատութիւն ևն., նմանապէս պատճառեն աւելի կամ նուազ կատարեալ անզգայութեան, ըստ հասակի և կազմութեան անձին ։ Մաքի յագեցումէ և բարոյական վշտակրութենէ առաջ եկած անզգայութիւնը հեռացնելու համար պէտք է նախ իմացական կենաց՝ կենդանական կենաց վրայ բերած ծանրակշռութիւնը ջնջել, վիշտերը մերժել, տկարացուցիչ կիրքերը խաղաղեցնել և յետոյ ծննդական գործարանները գրգռել ։

Ցանկասէր կնոջ մ'առջեւ ծաղր և ծանակ ըլլալու երկիւղն և ամօթը անզգայութեան կամ աւելի լաւ է ըսել ծննդական չիջման ամենէն աւելի յաճախ պատահող պատճառներէն մէկն է, մանաւանդ երկրորդ երիտասարդութեան մէջ եղող արանց համար ։

Կանանց ոմանց աղտեղութիւնը, իրենց ազդած զզուանքն ու զազրութիւնը՝ իսկոյն կանգնումը կ'իջեցնեն և անախորժութիւն կը պատճառեն ։ Շատ մարդիկ, որք զուգաւորելու չատապ կը յայտնէին, այս պարագայիս մէջ ետ քաշուելու կստիպուին ։ Բայց այս ծննդական շիջումը վայրկենական է, և հարկ է ամօթահար ընել այն կինը, որ այրը գրգռած է ։

6՚ Երիտասարդաց քով կը գտնուի տեսակ մը դիպուածական անզգայութիւն, որնոր զգայուն սիրոյ մը չափազանցութենէ կը պատճառի, երբ երեւակայութիւնը պաշտելի առարկան կ'երգէ ։

Արիւնք կ՚եփէ, սիրտը սաստիկ կը տրոփէ, մարմինը կ՚ոստոստէ, ուղեղը կ՚այրի և կը զառանցէ, բայց գործարանը համր կը կենայ։ Ասանկ վայրկեանի մը մէջ 'ի զուր է երբ մարդ կը ջանայ իւր սիրոյն բնական կամ կազմական ապացոյց մը տալու։ Յուզմունք կայ ուղեղին մէջ, ուր կենաց բոլոր եռանդը կեդրոնացած է, բայց առանձնական թմրութենէ հարեալ է։

Երբ դու գնաս մօտ սիրելւոյդ,
Սանձ դի՛ր կրիցդ, անսա՛ ինձ փոյթ.
Խանդ տարփանաց կանճէ զհաճոյս
Եւ տայ մնաս նոյն իսկ սիրոյդ։

Գրական և ուսումնական անձինք, որք իմացական չափազանց աշխատութեան մը կը պարապին, ծննդական շիջումէ կամ դիպուածական անզգայութենէ կրնան ըմբռնիլ. այսու պատճառաւ որ մըտաց յագեցումը, խորին մտաւորական գրաւումը՝ ուղեղը կենսական զօրութեան կեդրոն գործելով, ծննդական գործարանները իրենց պաշտօններուն հարկաւոր եղած կենսունակութենէն կը զրկեն։

Ընթերցողը դիւրաւ կրնայ հասկնալ որ վերագրեալ անզգայութեանց ամենէն աւելի բնական դարմանն է հեռացնել, ջնջել, եթէ կարելի է, վըշտակրութեան պատճառը, և յետոյ տպաւորել այնպիսի կեանք մը կամ վարք մը, որ բոլորովին հակառակ ըլլայ այն կենաց կամ վարուց, որք ծննդական գործարանները տկարացուցին. այսինքն դարմանը պարտի ազդել թէ բարոյականին և թէ կազմականին վրայ միանգամայն։

Ցանկական հեշտութեանց չափազանցութենէ և

ծննդական գործարանաց տկարութենէ առաջ եկած անզգայութիւնը ամենէն աւելի սովորական ըլլալով. մանաւանդ արանց քով, կը վերջացնենք այս գլուխը դարման մը նշանակելով. որնոր յաջողութեան ամեն հանգամանքները կընծայէ ։ Առաջին պայմանն է յոգնած գործարանը հանգստեան դատապարտել, և զայն ամեն տափական մերձաւորութենէ բոլորովին հեռի պահել. ամեն օր շատ անգամ զայն ընկղմել մէկ քանի դգալ համեմատւոր երփնաւշի յաւելմամբ զօրացեալ պաղ ջրոյ մէջ. և կամ մանանխոյ ալիւրի պաղած թեթեւ եփաջրոյ մէջ. այս վերջի կերպը շատ բժիշկներէ կարի գովուած է այրական գործարանը իւր թուլութենէն ազատելու մասին իբր նախամեծար միջոց ։ —Երկրորդ պայմանը կը կայանայ խնկապէս զօրացուցիչ և նորոգիչ սննդական կերատութեան մը մէջ ։ Խորովեալ միսեր՝ իրենց բոլոր հիւթովը թաթաւեալ, գետնախնձորով կերակուրք, միս երէոց, ձուկ և թարմ հաւկիթ, խեցէմորթք, և սերով Չօփօլաթ. եւն. իսկ ըմպելեաց մասին, մէկ քանի պզտի գաւաթ ազնիւ գինի տակաւ առ տակաւ պիտի նորոգեն և զօրացնեն տկարացեալ կազմութիւնը ։ Մասնաւորապէս անըզգայութիւնը բժշկելու զբաղեալ բժիշկ մը՝ հետեւեալ ձուաղեղը կը պատուիրէ նախաճաշ ընելու համար ։

Թարմ հաւկիթ . . . . . . 4
Կովու ուղէղ . . . . . . 60 կրամ

Աղէկ մը զարկ և աւելցուր

Ցամպարի ներկ . . . . . . 8 կրամ
Շնդկապղպեղ (զէնճէֆիլ) . 8 «
Աղ, հարկաւոր չափով . . .

Ասոնք ամենքը պէտք է եփել մինչեւ որ ձուա-

դեղ մ՚ըլլայ ։ Նախաճաշէն վերջը խմէ՛ փոքր գաւաթ մը Ափրոդիտեան գինի (Տե՛ս ՚ի կազմութիւն դեղոց) ։

Արաբացւոց Ռաքահու անուամբ կերակուրն ալ պատուական կորովազդու դեղ մ՚է, զոր կրնայ գործածուիլ ։ Ահա կազմութիւնը ։

| | | |
|---|---|---|
| Քաքաօ . . . . . . . . . | 60 | կրամ |
| Գետնախնձորի ալիւր . | 150 | « |
| Խոլորձ . . . . . . . . | 30 | « |
| Վանիլիա . . . . . . . . | 8 | « |
| Շաքար . . . . . . . | 225 | « |

Ճիշտ այս չափերով խառնէ՛ մէկզմէկու ։

Այս զօրացուցիչ սննդական կերառութեան գըլխաւոր օժանդակ միջոցներն են, գիւղադնացութիւն, շրջագայութիւն, զինու կրթութիւն, լող, որս, պար, պաղ լոգանք ընդհանուր կամ մասնաւոր ։ զգուշութեամբ գործադրուած միժալոգանք, ծննդական գործարանաց վրայ համեմական ծխարկութիւն, երիկամանց ազդրերուն ներքին կողմանց վրայ շփումն, լոգանքէ վերջը փափկաշփումն, բազմատեսակ մարմնամարզութեան զբօսանք, ընկերական զուարճութիւնք. երաժշտութիւն, պարահանդէսք, երիտասարդ, գեղեցիկ, հանճարեղ և հրապուրիչ կանանց ընկերակցութիւնը, հոգւոյ կատարեալ հանդարտութիւն, յոգնութիւնը սկսելէն անմիջապէս ետքը հանգիստ, վերջապէս արթնութեան պատճառած կորուստները դարմանելու համար պէտք եղածին չափ քուն ։ —Շատ քիչ անգամ կը պատահի որ անզգայութիւնը այս ամեն կարգադըրեալ միջոցներուն առջեւ անբժշկելի մնայ և մարդ իւր ծննդական կորովութիւնը և կարողութիւնը վերստին ձեռք չը ձգէ ։

# ԳԼՈՒԽ ԽԱ.

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԱՆԿԱՐՈՂՈՒԹԻՒՆ

Դպրոցական անհամար մեկնութիւնները մէկդի ձգելով, պարզապէս կըսենք թէ, երբ զուգաւորութեան գործողութիւնը բնականաբար կատարելու վայրկենական կամ հաստատուն անկարելութիւն կայ, այն ատեն անկարողութիւն կայ։

Անկարողութիւնը աւելի մասնական է առն քան թէ կնոջ։ Վասնզի ասոր ծննդական գործարանաց կազմութիւնը, մէկ քանի հազուադէպ բացառութիւններէ 'ի զատ, միշտ ընդունելու յատկացեալ կը գործէ զինքը, քանի որ այրը միշտ փոխադրելու ատակ չ'է։ Արդարեւ կնոջ քով անկարողութեան միմիայն պարագայ մը կայ, այն է արգանդացնցուղային անցքին բացակայութիւնը կամ խցումը. մինչդեռ առն քով կանգման պակասութիւնը շատ պատճառներ ունի, որք այժմ պիտի նշանակենք։ Ուստի կինը առն վրայ այս առաւելութիւնն ունի զոր իւր սեռը իրեն կ'ընծայէ, որ ցանկական հաճոյից դրամադրեալ ըլլայ կամ թէ ոչ, զուգաւորութեան գործողութիւնը կատարելու վիճակին մէջ է միշտ և կրնայ օգտակարապէս յանձնել ինքզինքը տարփական յուզմանց առն. մինչդեռ սա չը կրնար գոհացնել պահանջող կինը եթէ կանգնումը իրմէ պակսի. այն ատեն հակառակ իւր եռանդուն տենչանաց, կը տեսնայ որ անկարողութենէ ըմբռնեալ է։

Երկու տեսակ անկարողութիւն կայ ՝ մէկն է անցաւոր , վայրական , դիպուածական · միւսն է ընդհանուր , կատարեալ , բացարձակ ։

1° Անկարողութիւնը բացարձակ է երբ զուգաւորութիւնը կատարելու անկարողութիւն կայ , թէ՛ ծննդագործիչ գործարանին բացակայութեամբը , թէ անոր ախտից կամ ծանրակշիռ պակասութեանց պատճառաւ, որք բնաւ դարման չունին , թէ՛ վերջապէս անոր վատթարութեան կամ թուլութեան , տկարութեան , և ջղալուծութեան անբժշկելի վիճակաց պատճառաւ ։

2° Անկարողութիւնը անցաւոր է երբ ծննդական գործարանները իրենց լրութիւնն ունին, և երբ զանոնք կասող պատճառները կրնան դարմանուիլ ։

Անցաւոր անկարողութիւնը ողջելի է , երբ խառնուածքի անզգայութենէ և կազմական ջղատութենէ և տկարութենէ պատճառի · ինչպէս ժամանակէ առաջ սպառեալ անառակաց քով։ Անկարողութիւնը անողջելի է, երբ առանց՝ խառնուածքի կորովութիւնը և ծննդական գործարանաց լաւ կազմութիւնը արգելք ըլլալու կը պատահի ։ Այս անկարողութիւնը սովորաբար կենսական զօրութեանց՝ մարմնական յօրինուածոյն մէկ կէտին վրայ ի վնաս ծննդական դրութեան կեդրոնանալէն առաջ կուգայ ։ Ինչպէս արիւնը՝ փոխանակ խառնուելու մարմնոյն մէջ երթալու , ուղեղին կամ ուրիշ որ և իցէ մէկ տեղւոյ մը մէջ հոսելով առաջ կը բերէ կանգման պակասութիւնը , և հետևաբար զուգաւորութեան անկարելիութիւն կամ վայրական անկարողութիւն կը պատահի ։

ՊԱՏՃԱՌՔ ԱՆՑԱՒՈՐ ԱՆԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ՝ Տա-

կաւին ծննդագործելու հասակին մէջ պատահած այս անկարողութեան բազմաթիւ պատճառներուն մէջէն ամենէն գլխաւորներն են — առաջին երիտասարդութեան ատեն զուգաւորելու կանուխ սկսելէ կամ չափազանցութենէ առաջ եկած՝ ծննդական գործարանաց տկարութիւնը, բացարձակ ժուժկալութիւնը, ոգելից ըմպելեաց և գրգռիչ կերակրոց չարաչար գործածութիւնը, թթու կամ զովացուցիչ ըմպելիները. — յոռի և տկարացուցիչ սնունդ մը — անզգայացուցիչ նիւթոց երկարատև գործածութիւնը, երասանի այսինքն նստոյ տեղւոյ վրայ սաստկապէս անկումը, չափազանցութիւններէ վատտակաբէկ եղած, հնացեալ ախտերէ, ջղացաւէ, յօդացաւէ, կաթուածէ, մասնաւոր անդամալուծութենէ, ապառեալ կազմութիւնը, ծննդական դրութեան վրայ սաստկապէս ծանրացող և զանի ցանկական խթանին անզգայ ընող մէկ քանի հիւանդութիւնք, ուղղոյ կամ մտաւորական երկարատև աշխատութիւնք, խորին մտածմունք, դիւրահաւատ հոգւոյ վրայ տիրած յիմարական սոսկմունք. երևակայութեան զառանցանք, հոգւոյ սաստիկ յուզմունք, երկիւղն, ամօթն, զզուանք, չափէն աւելի սէր, ցանկութեանց երկարատև ուժգնութիւնն։

Թէպէտև այժմ չենք գտներ այն ողբալի դիւրահաւանութեան ժամանակաց մէջ, որ ատեն ծննդական անդամոց կախարդք հարսանեաց հանդեսի ատեն կը գործածէին իրենց տառապեցուցիչ հնարութիւնը. սակայն կրնանք ըսել որ կորովի և պարզամիտ գիւղացի մը տակաւին կը հաւատայ որ ծեր կնոջ մը չար խօսիքը կապուած է. իրեն երիտասարդը, աւա՛ղ, հակառակ իւր ճգանց անճա-

նական պարտաւորութիւնը իւր ամուսնոյն հատուցանելու ամօթալի անկարելիութեան մէջ կը գըտնուի։ Այս կախարդաց հմայութիւնը ուրիշ բան չ'է, բայց միայն պարզամիտ գիւղացւոյն երեւակայութիւնը սաստկապէս յափշտակել և անոր կախարդական երկիւղ մ'ազդել։ Այսօր աւելի լուսաւորեալ անձինք այս խաբեբաները ընկերութեան ստորին կարգին մէջ աքսորած են ։

Այն քաղաքաց մէջ, ուր աւելորդապաշտութեան գառն անմտութեանց հաւատ չեն ընծայեր, կը տեսնուին քանի քանի՛ մոլեգին սիրեկաններ, որոց յանկութեան հուրը աչքերնէն կը ցայտէ, և որք սիրոյ սահմանեալ ժամուն անհամբերութեամբ կըսպասեն, յանկարծ անկարողութենէ ըմբռնուած են իրենց սիրուհեանց գրկացը մէջ։ Թէպէտ և իրենց խառնուածքին կորովութիւնը օգնութեան կը կանչեն, թէպէտ հազար համբոյրներով, հազար քըրքուանքներով ինքզինքնին գրգռել կը ջանան. սակայն զու՛ր ջանք, գործարանը համր կը կենայ, .... իրենց երակացը մէջ շրջան ընող և զիրենք սպառող հրացեալ յանկութիւնը չի կրնար գոհացուիլ .... ամօ՛թ և յուսահա՛տութիւն. զիրենք գրաւող այս յանկութիւնը, զիրենք փոփոխակի կարմրցնող և դեղնցնող այս ամօթը կարելի է վաղը և հետեւեալ օրերը իրենց անկարողութեան պատճառ պիտի ըլլան ։

Եթէ ինձ ներելի ըլլար, կրնայի դնել հոս գրականութեան մէջ խիստ ծանօթ և սիրոյ մէջ խիստ կորովի անձի մը օրինակը ։ Այս անձին այսպիսի դիպուած մը պատահեցաւ գեղեցիկ և մատղաշ կնոջ մ'առջեւ։ Այս դիպուածէն զգացած ցաւը և ամօթը

այնպիսի սաստկութեամբ մը իւր ծննդական գործարանաց վրայ ազդեցին, որ երկու ամիսէն աւելի ժամանակ 'ի զուր փորձել կուզէր իւր տիկնոջ որ իւր անկարողութիւնը անցաւոր էր ։ Այս անձը՝ իր անկարողութեան վկայ եղող կնոջ բազկացը մէջէն սարսափ դուրս ելած ատեն կրնար ուրիշ կանանց հետ շատ ասպարեզներու մէջ մրցիլ ։ Այս երեւոյթիս պատճառը ուրիշ բան չ'է բայց եթէ երկիւղն, որ իւր գործարանը կը ջղալուծէր մէկուն առջեւ, և վստահութիւնն, որ կըկրէր ուրիշներու հետ իւր պաշտօնը աղեկ վարելու մասին ։

Այս և ասոր նման ուրիշ շատ մը օրինակներ, որք երեւելի հեղինակներէ պատմուած են, կ'ապացուցանեն երեւակայութեան և ծննդական պաշտօններուն մէջ գտնուած սերտ յարաբերութիւնը և հաղորդակցութիւնը. այնպէս որ ամեն անյաջողութիւն ախտը կաճեցնէ ։ Զուգաւորութիւնը աղեկ կատարուած ըլլալու համար, կըսէ Ֆոտերէ, կը պահանջէ ուժոյ մէջ վստահութիւն, կնոջ կողմանէ հաճութիւն և քաղցրութիւն. հանգիստ և ծածուկ տեղ և ընդհակառակը՝ կ'արգիլուի կամ գոնէ գէշ կը կատարուի, երբ կայ ուժոյ մէջ անվստահութիւն, ձայն, երկիւղ, նախանձ, ատելութիւն, աղտեղութեան հոտք, տգեղութիւն, ցանկութեան, մեծ աշխուժութիւն. խիստ ակնածական սէր ևն ևն. որք ժամանակաւոր անկարողութեան պատճառներ են նաեւ ։

Կնոջ՝ զինքը քջուտղին քիչ կորովութեանը կամ կանգման դանդաղութեանը նկատմամբ ըրած ծաղրը կամ այպանումը կրնայ ծննդագործիչ գործարանք ամբողջապէս անգործութեան մատնել, և

մարդը բոլորովին անկարող ըլլալ ամեն անգամ որ ուզէ այն կնոջ մօտենալ ։ Ծաղրելի կշտամբանաց ենչաւակ ըլլալու երկիւղը կը հեռացնէ զայն ծաղրելու անխոհեմութիւն ունեցող կնոջմէն, և իւր տարփական կարիքը ուրիշ տեղ հոգալու կը դիմեցունէ։

Ամուսնացեալ կինը, որ այսպէս կը վարուի իւր երկանը հետ, ամենամեծ յանցանք մը կը գործէ, որ երբեմն անդարմանելի կըլլայ, և գրեթէ միշտ ամուսնական ներդաշնակութիւնը կեղծանէ ։

Ամուսնացեալ կանանց հետեւեալ դէպքը կը ներկայացնենք և կը պարտաւորենք՝ զիրենք որ աղէկ խորհին անոր վրայ ։

Երեսուն և հինգ տարեկան չուայտաբարոյ մը, որ հեշտութենէ յագեցեալ և ցանկութեամբ ջլատեալ էր, յանկարծ զգաստ և գեղեցիկ մատղաշ օրի-օրդի մը սէր կապեց և անոր հետ ամուսնացաւ ։ Բայց որչափ յուսահատեցաւ, երբ իր կնոջ բաղ-կացը մէջ անկարող մնաց, և հակառակ իւր եռանդագին տենչանաց՝ ամուսնական պարտաւորութիւնը չկրցաւ կատարել։ Երիտասարդ կինը՝ իւր ամուսնոյն անկարողութիւնը չը ծաղրելէն 'ի զատ, ինչպէս կընեն խել մը ռամիկ և տգետ կիներ, ջանաց ընդհակառակը իւր ամուսինը մխիթարել և յուսոյ անուշ իւղը լեցնել անոր սրտին մէջ ։ Անոր այնչափ խնամքներ ըրաւ որ երկու ամիսէն վերջը անկարողութիւնը բոլորովին անհետացաւ ։ Այնուհետեւ՝ էրիկը մեծ երախտագիտութեամբ և սիրով ամբողջ իւր կեանքը կնոջը նուիրեց, որ իւր այրութիւնը վերստին ձեռք ձգելու պատճառ եղաւ, և շատ մը գեղեցիկ տղաքներ ունեցան անկէ ։

Անկարողութեան ամփոփական պատճառ է նաև

ծննդական անդամոց մէկ քանիին իրենց գարշելի կազմութեամբ ազդած անախորժութիւնը, անոնց ախտերը, անոնց չափազանց լայնութիւնը, և անոնց գարշահոտութիւնը. ևն: Երբ առաջին երիտասարդութեան եռանդը կ'անցնի, այն ատեն փոքրագոյն անյաջող պարագայ մը բաւական է ցանկական թուիչները ջղալուծելու: Այրը և կինը, երբ չափահաս ըլլան, ընդհանրապէս անախորժութիւն կզգան, եթէ ծննդական անդամները, փոխանակ ցանկութիւնը արծարծող այն հրապուրիչ թարմութիւնը, և մաքրութիւնը ունենալու, միմիայն յետսընկրկիչ և զազիր կերպարանք մը ներկայացնեն: Ծննդական գործարանաց այսպիսի վիճակ մը՝ յետսընկրկման և անզգայութեան, լքման և չնութեան, անհաւատարմութեան ևն զօրաւոր պատճառ մ'է: Ուստի այն կիները, որոց մարմինը աւելի մաքրութեան և խնամոց կը կարօտի, պարտին միշտ գործածել վարդեղէններ, որք ցանկութեան տաճարին դռնիկը կը զարդարեն:

Ծննդական գործարանաց անդադար գրգռմամբը պատահած սերմնական կորուստները, ուսկից այս գործարանաց կատարեալ ծիւրութիւն և տկարութիւն կը պատճառի, ինչպէս կը տեսնուի գիջագործութեան աղետալից սովորութեան պարապող անձանց քով. գրեթէ միշտ անկարողութիւն առաջ կը բերեն: Այս կորուստները՝ որք նախ անդամը թեթեւագոյն կերպով չփելով կամ անոր դպչելով կը պատահին, երթալով այնչափ շուտ տեղի կ'ունենան որ հագքի կամ ձիու թեթեւ շարժում մ'իսկ բաւական կըլլայ պատճառել, մանաւանդ քնոյ մէջ այնպիսի սպառման վիճակի մը մէջ կըձգէ ախտաց-

եալը. որ իւր գոյութիւնը վտանգի մէջ կը դնէ ։

Անկարողութեան գլխաւոր յատկանիշներն են ընդհանրապէս, ճերմակ, նուաղեալ գոյն, մազերու դժգոյն–խարդեաշ երփն, ճարից և մօրուաց սակաւորութիւն, թոյլ միս, զեղուն ճարպով մսազուած ձեւեր, սուր ձայնի հնչիւն, յամրասիկ բարբառ, մթագոյն աչքեր, նսեմ և անեռանդն հայեցուածք, անձուկ ուսեր, թթու և անախորժական արտաշնչումն, փոքրածաւալ ամորձիք, առկախեալ պարկեր, երկարաձեւ, փոքր, թոյլ առնանդամ, կնճռեալ գեղձ, եւն եւն ։

Անկարողութեան նշանաց վերաբերեալ զանազան խորհրդածութեանց մէջ երկարօրէն չը դեգերելով կանցնինք անոր ընդհանուր և վայրական այսինքն ներքին և արտաքին դարմանին ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ԴԱՐՄԱՆ ԱՆԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ

Անկարողութեան դարմանը՝ պարագայից, խառնուածոց, հասակաց, և զայն պատճառող ու սնուցանող պատճառաց համեմատ կը փոփոխի ։ Մեր բացատրութեան մէջ աւելի որոշ ըլլալու և բժշկութեան անտեղեակ անձանց աւելի դիւրըմբռնելի գաղափար մ'ընծայելու նպատակաւ հետեւեալ շարադասութիւնները կ'ընենք ։

1° Այն անկարողութիւնը, որ բնականաբար ծերութեան կ'ընկերանայ բնաւ դարման չունի ։ Մէն մի հասակ իւր հաճոյքն ունի. ինչպէս մէն մի

եղանակ իւր ծաղիկները ։ Ցրտութիւնը ալ բնաւ ծննդագործութիւնը մտքէն անցնելու չ՚է ։

2° Այն անկարողութիւնը, որ ծննդական անդամոց ախտիւքը կամ անկատարելութեամբքը առաջ եկած է, վիրաբուժութեան կը վերաբերի, և բժշկուելու համար ճարպիկ ձեռք մը կը պահանջէ ։

3° Այն անկարողութիւնը, որ բարոյական ազդեցութեամբ ինչպէս երկչոտութեամբ, ամօթիւ, երկիւղիւ, մոլեռանդ երեւակայութեան յիմար սոկումներով պատահած է, բոլորովին բարոյական դարման մը կը պահանջէ, և ազդեցութիւնը ջնջուելուն պէս ինքնաւ կը դադրի ։

4° Այն անկարողութիւնը, որ ջղային ժրութեան՝ ուղեղին մէջ կեդրոնացմանքը, սիրոյ և յարգանաց զգայութեանց խանդիւ, ցանկական մոլեգնութեամբ եւս կը պատահի, բոլորովին հակադրական սովորութիւններ այսինքն մտաց հանդարտութիւն, մարմնամարզութիւն, զբօսանք, ճանապարհորդութիւն, գեղջկական կեանք՝ և աշխատութիւն, զաղջ լոգանք եւս կը պահանջէ ։ Թէ՛ անձի մը համար զգացուած չափազանց սէրէ, թէ՛ ցանկութեան մոլեգնումենէ պատճառուած անկարողութեան համար կը պատուիրեմք, մարմնամարզութիւն և զբօսանք ․ ասկէց ՚ի զատ հարկ է քիչ մը ժամանակ հեռանալ պաշտելի անձէն, մերժել այն գաղափարները և երեւակայութիւնները, որք կրնան սնուցանել ուղեղային բորբոքում մը, սննդական փափուկ կերակրութիւն մ՚ընել, և բարեխառնիչ ըմպելիներ գործածել, ինչպէս հաղարաջուր, շիճուկ մղուաշարակ նշոյ եւս ․ վերջապէս այն ատեն բան որ ամուսինքը կրնայ չխլուցանել որուն առաւելութիւնը

այրական կարողութիւնները շղթայակապ կը գործէ։

Մտաւորական յամառ աշխատութիւններէ պատճառուած անկարողութեան համար՝ շատ բժիշկներ կը գովեն քափուրը, որնոր կէս կօօռայէ շափ (56 ցորենահատ կամ 1/16 մսղա) բերնին մէջ դնելով թողելու է որ հալի։

Ց. Այն անկարողութիւնը, որ ծննդական գործարանաց տկարութենէն կը պատահի, և որնոր ամենէն աւելի հասարակ է, կը պահանջէ զօրացուցիչ և նորոգիչ դարման մը, որպէսզի ծննդական ջղային թմբրեալ յօրինուածքը զարթնու, սպառեալ ներարդական զօրութիւնները ոգեւորին, և առնանդամուն կանգնիչ հիւսկէնը վերակենդանանայ իմաստութեամբ և չափաւորութեամբ գործածուած ափրոտիտեան դեղերով։ Այս տեսակ անկարողութիւնը, ամենէն աւելի ընդհանուր, բժշկելու համար ամենէն աւելի դժուար ըլլալուն, և մասնաւորապէս չափահաս արանց քով պատահելուն համար բժշկաց ուշադրութիւնը ամենէն աւելի յինքն ձգած է. մեր ջանքն ալ այս հիւանդութեան դէմ մինչեւ հիմա հնարուած դարմաններուն մէջէն ամենէն զօրաւորները բացատրել է։

Այս տեսակ անկարողութենէ ըմբռնեալ անձինք պարտին նախ իրենց վատթարացեալ զօրութիւնները վերականգնելու յատկացեալ սննդական կերակրութեան մը ենթարկուիլ։ Խորովածք, արգանակ պարարտ և քաջեփ, դոնդողք, ձուկք, խեցգետինք, գետնախնձորք, կանկարք, մշկահոտ ազատքեղք, ասորեակ, (ռօզգա), ծնեփեկք, խատորեղէնք, ունաք փափաօէ և խել մը սննդական տունկեր, զորս ափրոտիտեան դեղերու գլխոյն մէջ պիտի նշանակենք,

ծննդական գործարանաց վրայ նշանաւոր ազդեցութիւն մ՚ունին ։ Հին գինի, սրտապնդիչ ըմպելիք, երկաթախառն ըմպելիք, որոց մէջ քէնքինա կրնայ խառնուիլ․ առանց բորբոքման նշանի սպառման ատեն գլխաւոր զօրացուցիչ դեղեր են ։

Այս զօրացուցիչ սննդեան զուգակցելու է կազմական մարզք ինչպէս որս, հեծելավարժք, սուսերամարզք, պար, լող, մարմնամարզութիւն, եթէ կարելի է, և ժամանակ ժամանակ պաղ լոգանք ամառ ատեն, և գաղջ՝ ձմեռը․ համեմատոր ջրոց վիժալոգանք, համեմատոր շոգիէ վիժալոգանք ծննդական անդամոց վրայ, ափրոտիդեան կակղիչ սպեղանիով մը ողնայարին, ազդրերուն ներքին կողման, ծննդական անդամոց, սրբանին և ամորձեաց միջավայրին, և նոյն իսկ առնանդամոյն մարմնոյն վրայ շփշփումն, մէջքին, ազդերուն ներքին կողման մորթին վրայ անուշադրով շփելով կամ մանանխոյ տաձահայս գործածելով կարմրացուցանել․ ծննդական անդամոց վրայ օրը երեք անգամ և ամմէն մէկ անգամուն 8 կամ 10 երկվայկեան տեւողութեամբ խիստ պաղ աղբրոց լոգանք շատ անգամ յաջողութեամբ պսակուած են ։ Խաղողի շիւով, երկաթախառն տիղմով լուացումն, համեմատոր կամ խաչածաղիկ անկոց եփաջրոյն մէջ ընկղմումն եւ ։ Եթէ այս ամեն միջոցք վրիպին․ այն ատեն հարկաւոր կըլլայ ամպարի, մշկախառն, անուշադրի, և ֆոսֆորոսէնէն կակղիչ սպեղանիներու, ճաղկանաց, եղճահարութեան, վերջապէս կալվանականութեան և ելեքտրականութեան ենթարկուիլ ։

Հիւնթէր՝ սերմնական կորուստի ախտին համար մզափիոնը կը գովէ 20–30 կաթիլ չափով, իբր խիստ

լաւ միջոց զայն դադրեցնելու համար ։ Այս ախտէն ըմբռնեալ անձինք աւելի լաւ կընեն եթէ Լա-կըման դատաստուին ընտիր գործքն ընթեռնուն ։

Հեղինակ մը , որուն գործքերը երկար ատեն ժողովրդեան օգտակար եղան , և որոց մէջ ընտիր սկզբունքներ կը գտնուին , Թիսօ՝ երեւելի բժիշկն ըսել կուզեմ , անկարողութեան դէպքի օրինակ մը կուտայ , զոր մէկ քանի շաբաթուան մէջ արմատախիլ ըրած է ։

Խիստ տարփական խառնուածքի տէր եղող երիտասարդ պարոն մը տարփուհեաց հետ խնամութիւն ընելով այնպէս սպառած էր , որ եռեսուն տարեկան հասակը հասած ատեն իւր ծննդական գործարանները ննջեցին իբր ջղալուծութենէ ըմբռնեալ ։ Այն ատեն իրեն խիստ տուին որ կարգուի , բայց ոչ իւր կնոջ սիրալիր գգուանքն , ոչ իր սէրը իւր կնոջ ապացուցանելու համար ունեցած սաստիկ տենչանքը չըկրցան վերստին ձեռք ձգել տալ իւր այրութիւնը ։ Իրաց այս վիճակէն յուսահատեալ գնաց խորհուրդ հարցնել Թիսօյին , որնոր հետեւեալ կերառութիւնը պատուիրեց ։

Պարոնը՝ առաւօտեան ժամը վեցին կը խմէր վեց օնցա քինաքինայէ եփաջուր , որուն մէջ երկու դգալ Մատէրէ գինի կը խառնէր ։ —Ժամ մը ետքը տասը օնցա այծի կաթ , թարմ և նարնջի ծաղկի ջրով (չիչէք սույու) համեմեալ ։ —Կէս օրին խորովեալ հաւ մը , գաւաթ մը ջրախառն Պուրկօնեի գինի․ ճաշէն ետքը մէկ ժամ շրջագայութիւն , որս կամ հեծելավարժք ։ —Ժամը չորսին , առաջնոյն չափ և նման քինաքինա մ'ալ ։ —Ժամը հինգին տասը երկվայրկանի չափ պաղ լոգանք , ասկէ ելլալէն վերջը

դարձեալ մէկ ժամ շրջագայութիւն · և վերադարձին մէկ ժամ հանգիստ , թէ անկողնոյ մէջ , թէ բազմոցի վրայ : —Ճաշը եօթնին ընթրիքը պարարդմիտէ , ջրախառն գինի Պօրտոյէն · մէկ ժամ շրջագայութիւն ոտքով կամ ձիով : Վերջապէս ժամը ինն ու կիսուն պառկելէ առաջ դարձեալ այծու կաթ , առաջինոյն չափ և ճանիչոյն մզուածքով համեմեալ :

Այս դարմանը այնչափ փառ ազդեց , կըսէ Թիսօ , որ տասն և հինգ օրէն վերջը երբ պարոնին տունը կը մտնէի , այսպէս աղաղակեց : —Օրհնեա՛լ է Աստուած , և շնորհակալ եմ քեզի իմ սիրելի բժիշկս , առողջութեանս առաջին նշանները վերըստին գտայ :

Նոյն Թիսօ կ՚ըսէ թէ չարաչար գործածմամբ ապառեալ ծննդական անգամոց նուազութեան վիճակը , ներսէն՝ տնկայի թթուիկ գինեմրրով , երկաթի խարտուցով , և քիչ մ՚ալ դարիճենիկով բաղադրեալ փոշի մը գործածել տալով շատ անգամ բժշկած է :

Առն և կնոջ ամլութեան վրայ գրուած գործքի մը հեղինակ Մօնտա բժիշկը , որնոր այս հիւանդութեան գործնական վարժութեան մէջ խիստ հմուտ էր , Պօլօնէզ իշխանի մը վրայ տեղեկութիւն տալով կըսէ թէ , եռեսուն և հինգ տարեկան հասակին մէջ ցանկական հեշտութեանց չափազանցութեան պատճառաւ կատարեալ անկարողութեան վիճակի մը մէջ կը գտնուէր :

Տասը տարուան միջոցի մէջ ինքզինքը ցուց խել մը անուանի բժշկաց ինչպէս , Հիւֆըլանդի , Օսիանտէրի , Կալօյի , Թօմասինի , եւ · բայց միշտ անյաջող : Այս վերջին բժիշկը ղրկեց իշխանը Մօն-

տայի , որնոր հետեւեալ կերպով ընկճեց , և բժշկեց իշխանին հնացեալ անկարողութիւնը ։ Նախ սկսեց զօրացնել ստնդական և մարսողական մնասեալ գործարանները , իսկապէս ապաքինիչ կերառութիւն մը պատուելով վեց ամիս շարունակելու համար ։ Գիւղագնացութիւնը , երէորսը , ձկնորսութիւնը , հեծելավարժը , եւ քիչ քիչ մարսողական զօրութիւնները զարթուցին , և ափրոտիդեան դարմանն սկսելու թոյլտուութիւն ըրին ։ Պարարտ սննդական կերառութեան հետ միացաւ ափրոտիդեան չիրոպներու գործածութիւնը , որոնք գործոյս վերջը դրուած դեղագրքին մէջ նշանակուած են դառն եղերդի մէկ լիտր եփաջրոյ մէջ խառնելով օրը հինգ դրգալ

Ամեն օր , առաւօտ և երեկոյ , անկարողին ողնայարը և ազդրերուն ներքին կողմերը ափրոտիդեան կակղիչ սպեղանիներով կը շփէին , որք նոյնպէս դեղագրքին մէջ նշանակուած են ։

Այս դարմանին ութերորդ ամիսը տակաւին չէր լմնցած որ իշխանը իւր այրական զօրութիւնները վերստին գտնելով ամուսնացաւ և այս ամուսնութենէն շատ մը գեղեցիկ զաւակներ ունեցաւ ։

Երբեմն կը պատահի որ կազմական սպառումը բժշկուելէն վերջը տակաւին ծննդական զօրութիւնը չի յայտնուիր . այն ատեն հարկ կըլլայ ուրիշ միջոցներ գործածել ։ Հետեւեալ դէպքը , որնոր ատենակալ դուքսի մը կենսագրութենէն քաղուած է , մեզ հաղորդուած է իւր բժիշկէն ։

Վ*** անուն դուքսը իւր երիտասարդութիւնը և չափահասութեան մէկ մասը աշխարհային յիմարական զբօսանաց և զգայարանական հեշտութեանց

մէջ անցուցած էր, առանց՝ իրմէ ետքը որդի մը ձգելու հողն և փափաքն ընելուն։ Առաջին կնոջմէն՝ ուսկից զաւակ չունեցաւ, այրի մնալով, քառասուն և հինգ տարեկան հասակին մօտ վերստին ամուսնացաւ, բայց բոլորովին անկարող գտնուեցաւ ամուսնական գործողութեան մէջ. վասնզի մինչեւ ուղեղը սպառած էր։ Յուսոյ տեսնալով որ իւր նախնեաց անունը իրմով պիտի վերջանայ, սկսաւ դառնապէս զղջալ իւր նախնի վարուցը վրայ։ Գ. դուքսը շատ ջանաց ափրոտիզեան դեղերուն մէջէն, իւր անկարողութեանը դարման մը գտնալ, բայց ՚ի զու՛ր։ Այն ատեն սկսաւ ամենէն անուանի բժշկաց դիմել, որք պատուիրեցին իրեն զօրացուցիչ և նորոգիչ կերառութիւն մը. բայց այս ալ չըկրցաւ ծննդական գործարանը զարթուցանել այն խոր թմբրութենէն, որուն մէջ ընկղմուած էր։ Վերջապէս կազմագէտ մը պատուիրեց իրեն շարունակ տասն և հինգ օր սննդական կերակուր մը և յետոյ տարփական իրաց տեսութեամբ ուղղ գրգռումն, վասնզի սննդական և բուժական ամեն գրգռիչք երբէք ազդեցութիւն մը չէին ըրէր անոր։ Այս միջոցը յաջողեցաւ։

ԱՆԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ ԴԱՐՄԱՆ, Քառասուն և քառասունէն վեր տարիք ունեցող և Կիտէրի խիստ ստէպ ճանապարհորդութեամբ կամ մտաւորական անդադար աշխատութեամբ սպառեալ և վաստակաբէկ անձանց համար հետեւեալ դարմանը ամենայն կերպով կը յաջողի։

ՍՆՆԴԱԿԱՆ ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ։ Առաւօտուն Ճէօդրօմ կամ սա հետեւեալ բաղադրութիւնը։

Մանրեալ ճանճլայով շէօթօլաքիօ . . . 60 կրամ
Սեր . . . . . . . . . . . . . 180 »
փոշի շաքար . . . . . . . . . . 50 »
Հաւկթի մը դեղնուցը ։

Զէօզօլաքեօն սերին հետ եռացու՛ր ։ Զատ ամանի մը մէջ շաքարը և հաւկթի դեղնուցը զա՛րկ , յետոյ ամենքը 'ի միասին խառնէ յարելով , ձգէ՛ որ պաղչանայ , և խմելէ առաջ դի՛ր մէջը քանի մը կաթիլ դարիճենիկի ներկ ։

ՆԱԽԱՃԱՇ ։ Քօնըլէն կամ ըէֆլնէ . միմիայն գաւաթ մը հին գինի ։

Նախաճաշէն վերջը , մէկ կամ երկու ժամու տեւողութեամբ շրջագայութիւն , կամ աւելի լաւ է , եթէ կարելի ըլլայ, մարմնամարզութիւն , յետոյ հանգիստ անկողնոյ մէջ կամ բազմոցի վրայ ։

Ճաշէն մէկ ժամ առաջ , ծովը կամ գետը մըտնալ , եթէ ամառ է , իսկ եթէ ձմեռ , առնի անդամուն վրայ մանանխոյ ջրով լոգանք , կամ այս անդամը այն ջրոյն մէջ ընկղմել ։ Դարիճենիկի ներկով ծործորակի կառկառեալ մասին , միջաց , ազդերուն ներքին-վերին մասանց վրայ շփշփումն , անմիջապէս ետքը գեղձը մանեակը ափրոտիդեան իւղով օծել ։

ԸՆԹՐԻՔ ։ Եգնախորովք արիւնալի ։ —Ձուկ ։ —Գետնախնձորեղէն կերակուրք ։ —Կանկառի ։ Աստրեակի , կարոսի աղցան ։ —Խմելու համար Պուրկօնի հին գինի ։ Ամեն մէկ կերակուրէն վերջը ափրոտիդեան գինւոյ փոքրիկ գաւաթ մը պարպել ։ —Շրջագայութիւն ։

ՅԱՌԱՋ ՔԱՆ ՁԱՆԿՈՂԻՆ ։ Միջաց, նաստոյ տեղւոյն ազդրերուն վրայ ցարասի աւելով մը ճաղկանք

և ճաղկումը նախ թեթեւ կերպով սկսելու է, և յետոյ աստիճանաբար զօրացնելու է մինչեւ որ այս մասերը սաստիկ գրգռուին և խիստ կարմիր ըլլան ։

Այս դարմանը խել մ'ատեն շարունակելու է ։ Կրնայ պատահիլ որ մէկ քանի օրէն կանգնումը յայտնուի, բայց թոյլ և առանց կորովի ․ ասիկայ անկէ առաջ կուգայ որ կանգնողական հիւսկէնը և գեղձը հարկաւոր եղած կենսունակութիւնը տակաւին չեն ստացած ․ այն ատեն հարկ կըլլայ վերստին դիմել գրգռիչ ծխարկութեանց և լոգանաց։ Գրգռիչ իւղով օծումն ալ մոռնալու չէ՛ ։ Վերջապէս եթէ ճաղկումը՝ փափաքելի յաջողութիւնը չը հայթայթէ ․ այն ատեն եղինճով ճաղկանաց սկսելու է նոյն իսկ առնանդամուն վրայ ալ ․ այս տեսակ ճաղկանաց յառաջ բերած գրգռումը ընդհանրապէս կանգնումն կը պատճառէ, միայն թէ անդամը բոլորովին տկարացած չըլլայ ։



# ԳԼՈՒԽ ԻԲ․

## ՃԱՂԿԱՆՔ ԻԲՐ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ ՄԻՋՈՑ ։

Մարմնոյն մէկ քանի մասերը խարազանով, ճաղկով կամ կաշիէ փոկով ծեծելը ճաղկանք կըսուի։ Անզգայութեան և անկարողութեան ատեն ճաղկանքը կը գործածուի, կռնակի, միջաց, նստոյ տեղւոյն և ազդերց վրայ, որպէս զի արեան յորդութիւնը մորթոյն և անոր տակ գտնուած դնդերաց վերաբերուի ։ Այս միջոցաւ ճաղկուած մասերուն ստացած սաստիկ գրգիռը իսկոյն ծննդական

յօրինուածոյն կը հաղորդուի, ողնայարի ծուծին և այս յօրինուածոյն ջղային ոստոցը մէջ գտնուած հաղորդակցութեան միջոցաւ։ Յոյնք և Հռովմայեցիք, որք ձաղկանաց յատկութիւնը կը ճանչնային, զայն առատապէս կը գործածէին սադուռնական տօնախմբութեանց ատեն, ուր երկու սեռերն ալ փոփոխակի մէկզմէկ կը ձաղկէին քաղցր սքանչելիքը լաւագոյն կատարելու համար։

Հիփոկրատ և Ասկղէպիատ շատ հիւանդութեանց համար ձաղկանքը կը գովէին։ Միւզա, բժիշկ Օգոստոսի կայսերութեան ատեն և Կալիէն տկարութենէ կամ թուլութենէ պատճառեալ անկարողութիւնը բժշկելու համար ձաղկանքը՝ պաղ լոգանաց հետ զուգակցելով կը պատուիրէին. —Պեթրոնէ պուէտը, ուսկից՝ քչիկ մը ետքը վկայութիւն մը պիտի բերենք, կը գովէր ձաղկանքը և մանաւանդ եղինձովը, Հռովմայի շուայտաբարոյ անձերէն գործածուած իբր ընդրելագոյն միջոց սպանդարամետեան պաշտամանց մէջ շիջեալ տարփական զօրութիւնները կենդանացնելու համար։ —Աէթէ, Կաէլիւս, Աւրելիանիւս, Ռաձէս և ուրիշ շատ երեւելի բժիշկները իրենց գրուածոցը մէջ կը պատմեն ձաղկանքով ըրած բազմաթիւ բժշկական դարմաններնին։ Քամբանելլա կը պատմէ թէ իշխան մը չըկրնալով իւր կնոջ հատուցանել ամուսնական պարտքը, առանց առաջուընէ ինքզինքը խստիւ ձաղկել տալու, այս կարևոր ծառայութեան համար յատկապէս ճարպիկ և կորովի սպասաւոր մը բռնած էր։ Կաէլիւս Ռօտիկենիւս կը պատմէ թէ մեծ իշխան մը միևնոյն միջոցը բանեցնել կուտար, որպէս զի կարող ըլլայ իւր ամուսնոյն պահանջ-

մունքները գոհացնել. զուգաւորութենէ առաջ ինքզինքը ձաղկել կուտար այն աստիճան որ ալ արիւն կուգար. և եթէ երբեմն սպասաւորը իւր ակնածութենէն կամ մեղքնալով խարազանի հարուածները չափաւորէր, իշխանը կը կատղէր և հրաման կընէր որ երկրորդեն ձաղկանքը, մինչեւ որ ալ սկսէր ցաւէն աղաղակել: Այն ատեն միայն՝ ծնընդական անդամը կրնար կանգնիլ, և իր ու իր կնոջ փափաքները գոհացնել: —Մէխիպօմիւս երեւելի կազմագէտն քերթուած մը յօրինեց. որուն մէջ անկարողները մեծապէս կը պարտաւորէր ինքզինքնին ձաղկել տալու, եթէ ուզենան իրենց այրական կարողութիւնը վերստին ստանալ:

Համառօտիւ ըսելով, թէ՛ հին և թէ՛ նոր շատ մը բժիշկներ կը գովեն ձաղկանքը իբր զօրաւոր դարման ոչ թէ միայն ծննդական գործարանաց տկարութեանը համար, այլ նաև մորթոյ և ասոր տակ գտնուած խոռոչաւոր հիւսկեններին խել մը ախտերուն համար: Նաեւս կը կարծեն թէ նիհարութեան դեմ զօրեղ տարման մ'է. և զայն կը պատուիրեն նիհար անձանց, որք կուզեն գիրութիւն ստանալ:

Ձաղկանաց պատմութիւնը լրացեալ ըլլալու համար քչիկ մը խօսինք ինքնաձաղկ աղանդաւորաց թափօրաց վրայ, որք ասկէ մէկ քանի դար առաջ հրապարակաւ ինքզինքնին կը ձաղկէին խարազանաւ փողոցէ փողոց պըտըտելով: Չըկրնար գիտցուիլ թէ այս գործողութիւնք, որք հին Հռովմայի պանական պաշտամանց կը նմանէին, ինչ նպատակ ունէին: Այս սովորութեան մէկ քանի պաշտպաններ կը հաստատեն թէ բարեպաշտական նպատա-

այրական կարողութիւնները չղթայակապ կը գործէ։

Մտաւորական յամառ աշխատութիւններէ պատճառուած անկարողութեան համար՝ շատ բժիշկներ կը գովեն քափուրը, որնոր կէս կ—օ—ոյէ չափ (56 ցորենահատ կամ 1/16 ծոցա) բերնին մէջ դնելով թողելու է որ հալի։

Ց՝. Այն անկարողութիւնը, որ ծննդական գործարանաց տկարութենէն կը պատահի, և որնոր ամենէն աւելի հասարակ է, կը պահանջէ զօրացուցիչ և նորոգիչ դարման մը, որպէսզի ծննդական ջղային թմբրեալ յօրինուածքը զարթնու, սպառեալ ներարդական զօրութիւնները ոգեւորին, և առնանդամուն կանգնիչ հիւսկէնը վերակենդանանայ իմաստութեամբ և չափաւորութեամբ գործածուած ափրոտիտեան դեղերով։ Այս տեսակ անկարողութիւնը, ամենէն աւելի ընդհանուր, բժշկելու համար ամենէն աւելի դժուար ըլլալուն, և մասնաւորապէս չափահաս արանց քով պատահելուն համար բժշկաց ուշադրութիւնը ամենէն աւելի յինքն ձգած է. մեր ջանքն ալ այս հիւանդութեան դէմ մինչեւ հիմա հնարուած դարմաններուն մէջէն ամենէն զօրաւորները բացատրել է։

Այս տեսակ անկարողութենէ ըմբռնեալ անձինք պարտին նախ իրենց վատթարացեալ զօրութիւնները վերականգնելու յատկացեալ սննդական կերպառութեան մը ենթարկուիլ։ Խորովլյք, արգանակ պարարտ և քաջեփ, դոնդողք, ձուկք, խեցգետինք, գետնախնձորք, կանկարք, մշկահոտ աղաոքեղք, ասորեակ, (ռօգգա), ծնեփեկք, խատորեղենք, ունտք +ա+աօյ և խել մը սննդական տունկեր, զորս ափրոտիդեան դեղերուն գլխոյն մէջ պիտի նշանակենք՝

ծննդական գործարանաց վրայ նշանաւոր ազդեցու-թիւն մ՚ունին ։ Չին գինի , սրտապնդիչ ըմպելիք , երկաթախառն ըմպելիք , որոց մէջ քէնէքինա կրնայ խառնուիլ․ առանց բորբոքման նշանի սպառման ատեն գլխաւոր զօրացուցիչ դեղեր են ։

Այս զօրացուցիչ սննդեան զուգակցելու է կազ-մական մարզք ինչպէս որս , հեծելավարժք , սուսե-րամարտք , պար , լող , մարմնամարզութիւն , եթէ կարելի է , և ժամանակ ժամանակ պաղ լոգանք ամառ ատեն , և գաղջ՝ ձմեռը․ համեմաւոր ջրօք վիժալոգանք , համեմաւոր շոգիէ վիժալոգանք ծննդական անդամոց վրայ , ափրոտիդեան կակղիչ սպեղանիով մը ողնայարին , ազդրերուն ներքին կողման, ծննդական անդամոց, սրբանին և ամորձ-եաց միջավայրին , և նոյն իսկ առնանդամոյն մարմ-նոյն վրայ շփշփումն , մէջքին , ազդերուն ներքին կողման մորթին վրայ անուշադրով շփելով կամ մա-նանխոյ տածահայս գործածելով կարմրացուցանել․ ծննդական անդամոց վրայ օրը երէք անգամ և ամէն մէկ անգամուն 8 կամ 10 երկվայրկեան տե-ւողութեամբ խիստ պաղ աղջրող լոգանք շատ ան-գամ յաջողութեամբ պսակուած են ։ Խաղողի չիւով, երկաթախառն տիղմով լուացումն, համեմաւոր կամ խաչածաղիկ անկոց եփաջրոյն մէջ ընկղմումն եւ ։ Եթէ այս ամէն միջոցք վրիպին․ այն ատեն հար-կաւոր կըլլայ ամպարի , մշկախառն , անուշադրի , և ֆօսֆօռաչէչէն կակղիչ սպեղանիներու , ձայկա-նաց․ եղճահարութեան, վերջապէս կալվանականու-թեան և ելեքտրականութեան ենթարկուիլ ։

Չիւնթէր՝ սերմնական կորուստի ախտին համար մզափիոնը կը գովէ 20–30 կաթիլ չափով, իբր խիստ

լաւ միջոց զայն դադրեցնելու համար ։ Այս ախտէն ըմբռնեալ անձինք աւելի լաւ կընեն եթէ Լալըման դասատուին ընտիր գործքն ընթեռնուն ։

Հեղինակ մը , որուն գործքերը երկար ատեն ժողովրդեան օգտակար եղան , և որոց մէջ ընտիր սկզբունքներ կը գտնուին , Թիսօ՝ երեւելի բժիշկն ըսել կուզեմ , անկարողութեան դէպքի օրինակ մը կուտայ , զոր մէկ քանի շաբաթուան մէջ արմատախիլ ըրած է ։

Խիստ տարփական խառնուածքի տէր եղող երիտասարդ պարոն մը տարփուհեաց հետ խնամութիւն ընելով այնպէս սպառած էր , որ երեսուն տարեկան հասակը հասած ատեն իւր ծննդական գործարանները ննջեցին իբր ջղալուծութենէ ըմբռնեալ ։ Այն ատեն իրեն խիստ տուին որ կարգուի , բայց ոչ իւր կնոջ սիրալիր գգուանքն , ոչ իր սէրը իւր կնոջ ապացուցանելու համար ունեցած սաստիկ տենչանքը չըկրցան վերստին ձեռք ձգել տալ իւր այրութիւնը ։ Իրաց այս վիճակէն յուսահատեալ գնաց խորհուրդ հարցնել Թիսօյին , որնոր հետեւեալ կերառութիւնը պատուիրեց ։

Պարոնը՝ առաւօտեան ժամը վեցին կը խմէր վեց օնցա քինաքինայի եփաջուր , որուն մէջ երկու դգալ Մոռթէյի գինի կը խառնէր ։ —Ժամ մը ետքը տասը օնցա այծի կաթ , թարմ և նարնջի ծաղկի ջրով (չիչէք սույու) համեմեալ ։ —Կէս օրին խորովեալ հաւ մը , գաւաթ մը ջրախառն Պօրտօյի գինի . ճաշէն ետքը մէկ ժամ շրջագայութիւն , որս կամ հեծելավարժք ։ —Ժամը չորսին , առաջնոյն չափ և նման քինաքինա մ՚ալ ։ —Ժամը հինգին տասը երկվայրկանի չափ պաղ լոգանք , ասկէ ելլալէն վերջը

դարձեալ մէկ ժամ շրջագայութիւն․ և վերադարձին մէկ ժամ հանգիստ, թէ անկողնոյ մէջ, թէ բազմոցի վրայ։ —Ճամբը եօթնին ընթրիք պարարդ միւէ, ջրախառն գինի Պօրտոյի․ մէկ ժամ շրջագայութիւն ոտքով կամ ձիով։ Վերջապէս ժամը ինն ու կիսուն պառկելէ առաջ դարձեալ այծու կաթ, առաջինոյն չափ և քինքինոյի մզուածքով համեմեալ։

Այս դարմանը այնչափ վաղ ազդեց, կըսէ Թիսօ, որ տասն և հինգ օրէն վերջը երբ պարոնին տունը կը մտնէի․ այսպէս աղաղակեց։ —Օրհնեա՛լ է Աստուած, և շնորհակալ եմ քեզի իմ սիրելի բժիշկս, այրութեանս առաջին նշանները վերըստին գտայ։

Նոյն Թիսօ կ'ըսէ թէ չարաչար գործածմամբ ապառեալ ծննդական անդամոց նուաղութեան վիճակը, ներսէն՝ տնկաղի թթուիկ գինեմրրով, երկաթի խառնուցով, և քիչ մ'ալ դարիճենիկով բաղադրեալ փոշի մը գործածել տալով շատ անգամ բժշկած է։

Առն և կնոջ ամլութեան վրայ գրուած գործքի մը հեղինակ Մօնտա բժիշկը, որնոր այս հիւանդութեան գործնական վարժութեան մէջ խիստ հմուտ էր, Փօլօնէզ իշխանի մը վրայ տեղեկութիւն տալով կըսէ թէ, եռեսուն և հինգ տարեկան հասակին մէջ ցանկական հեշտութեանց չափազանցութեան պատճառաւ կատարեալ անկարողութեան վիճակի մը մէջ կը գտնուէր։

Տասը տարուան միջոցի մէջ ինքզինքը ցցուց խել մը անուանի բժշկաց ինչպէս, Հիւֆըլանդի, Օսիանտէրի, Կարօյի, Թօմասինի, եւ․ բայց միշտ անդաջող։ Այս վերջին բժիշկը ղրկեց իշխանը Մօն-

տայի, որնոր հետեւեալ կերպով ընկճեց, և բժշկեց իշխանին հնացեալ անկարողութիւնը ։ Նախ սկսեց զօրացնել սննդական և մարսողական վնասեալ գործարանները, իսկապէս ապաքինիչ կերառութիւն մը պատուելով վեց ամիս շարունակելու համար ։ Գիւղագնացութիւնը, երէորսը, ձիւնորսութիւնը, հեծելավարժը, եւ քիչ քիչ մարսողական զօրութիւնները զարթուցին, և ափրոտիդեան դարմանն սկսելու թոյլտութիւն ըրին ։ Պարարտ սննդական կերառութեան հետ միացաւ ափրոտիդեան չիրողներու գործածութիւնը, որոնք գործոյս վերջը դրուած դեղագրքին մէջ նշանակուած են դառն եղերդի մէկ լիտր եփաջրոյ մէջ խառնելով օրը հինգ դրգալ։

Ամեն օր, առաւօտ և երեկոյ, անկարողին ողնայարը և ազդրերուն ներքին կողմերը ափրոտիդեան կակղիչ սպեղանիներով կը շփէին, որք նոյնպէս դեղագրքին մէջ նշանակուած են ։

Այս դարմանին ութերորդ ամիսը տակաւին չէր լմնցած որ իշխանը իւր այրական զօրութիւնները վերստին գտնելով ամուսնացաւ և այս ամուսնութենէն շատ մը գեղեցիկ զաւակներ ունեցաւ ։

Երբեմն կը պատահի որ կազմական սպառումը բժշկուելէն վերջը տակաւին ծննդական զօրութիւնը չի յայտնուիր . այն ատեն հարկ կըլլայ ուրիշ միջոցներ գործածել ։ Հետեւեալ դէպքը, որնոր ատենակալ դուքսի մը կենսագրութենէն քաղուած է, մեզ հաղորդուած է իւր բժիշկէն ։

Վ*** անուն դուքսը իւր երիտասարդութիւնը և չափահասութեան մէկ մասը աշխարհային յիմարական զբօսանաց և զգայարանական հեշտութեանց

մէջ անցուցած էր, տղանց՝ իրմէ եօթը որդի մը ձգելու հողն և փափաքն ընելուն։ Առաջին կնոջմէն՝ ուսկից զաւակ չունեցաւ, այրի մնալով, քառասուն և հինգ տարեկան հասակին մօտ վերստին ամուսնացաւ, բայց բոլորովին անկարող գտնուեցաւ ամուսնական գործողութեան մէջ․ վասնզի մինչեւ ուղեղը սպառած էր ։ Ուստի տեսնալով որ իւր նախնեաց անունը իրմով պիտի վերջանայ, սկսաւ դառնապէս զղջալ իւր նախնի վարուցը վրայ ։ Գ․ դուքսը շատ ջանաց ափրոտիդեան դեղերուն մէջէն, իւր անկարողութեանը դարման մը գտնալ, բայց ՚ի զու՛ր ։ Այն ատեն սկսաւ ամենէն անուանի բժշկաց դիմել, որք պատուիրեցին իրեն զօրացուցիչ և նորոգիչ կերառութիւն մը․ բայց այս ևս չըկրցաւ ծննդական գործարանը զարթուցանել այն խոր թմբրութենէն, որուն մէջ ընկղմուած էր ։ Վերջապէս կազմագէտ մը պատուիրեց իրեն չարունակ տասն և հինգ օր սննդական կերակուր մը և յետոյ տարփական իրաց տեսութեամբ ուղղոյ գրգռումն, վասնզի սննդական և բուժական ամեն գրգռիչք երբէք ազդեցութիւն մը չէին ըրէր անոր։ Այս միջոցը յաջողեցաւ ։

ԱՆԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ ԴԱՐՄԱՆ, Քառասուն և քառասունէն վեր տարիք ունեցող և Կիտէրի խիստ ստէպ ճանապարհորդութեամբ կամ մտաւորական անդադար աշխատութեամբ սպառեալ և վաստակաբէկ անձանց համար հետեւեալ դարմանը ամենայն կերպով կըյաջողի ։

ՍՆՆԴԱԿԱՆ ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆ ։ Առաւօտուն Բիւօղջօմ կամ սա հետեւեալ բաղադրութիւնը ։

Մանրեալ վանիլեայով շօքօլաթ · · 60 կրամ
Սեր · · · · · · · · · · · · · 180 ·
փոշի շաքար · · · · · · · · · · 30 ·
Հաւկթի մը դեղնուցը ։

Ջօքօլաթն սերին հետ եռացու՛ր ։ Զատ ամանի մը մէջ շաքարը և հաւկթի դեղնուցը զա՛րկ, յետոյ ամենքը 'ի միասին խառնէ յարելով, ձգէ՛ որ գաղջանայ, և խմելէ առաջ դի՛ր մէջը քանի մը կաթիլ դարիճենիկի ներկ ։

ՆԱԽԱՃԱՇ ։ Քօնսէյն կամ պէֆթէք · միմիայն գաւաթ մը հին գինի ։

Նախաճաշէն վերջը, մէկ կամ երկու ժամու տեւողութեամբ շրջագայութիւն, կամ աւելի լաւ է, եթէ կարելի ըլլայ, մարմնամարզութիւն, յետոյ հանգիստ անկողնոյ մէջ կամ բազմոցի վրայ ։

Ճաշէն մէկ ժամ առաջ, ծովը կամ գետը մտնալ, եթէ ամառ է, իսկ եթէ ձմեռ, առնի անդամուն վրայ մանանխոյ ջրով լոգանք, կամ այս անդամը այն ջրոյն մէջ ընկղմել ։ Դարիճենիկի ներկով ծործորակի կառկառեալ մասին, միջաց, ազդերուն ներքին-վերին մասանց վրայ շփշփումն, անմիջապէս ետքը գեղձը մանեակը ափրոտիդեան իւղով օծել ։

ԸՆԹՐԻՔ ։ Եզնախորովք արիւնալի ։ —Ձուկ ։ —Գետնախնձորեղէն կերակուրք ։ —Կանկառ ։ Աւսորեակի, կարոսի աղցան ։ —Խմելու համար Պուրկօյնի հին գինի ։ Ամեն մէկ կերակուրէն վերջը ափրոտիդեան գինւոյ փոքրիկ գաւաթ մը պարպել ։ —Շրջագայութիւն ։

ՅԱՌԱՋ ՔԱՆ ՁԱՆԿՈՂԻՆ ։ Միջաց, նստոյ տեղւոյն ազդրերուն վրայ ցարասի աւելով մը ճաղկանք

և ճաղկումը նախ թեթեւ կերպով սկսելու է, և յետոյ աստիճանաբար զօրացնելու է մինչեւ որ այս մասերը սաստիկ գրգռուին և խիստ կարմիր ըլլան ։

Այս դարմանը խել մ'ատեն շարունակելու է ։ Կրնայ պատահիլ որ մէկ քանի օրէն կանգնումը յայտնուի, բայց թոյլ և առանց կորովի․ ասիկայ անկէ առաջ կուգայ որ կանգնողական հիւսկէնը և գեղձը հարկաւոր եղած կենսունակութիւնը տակաւին չեն ստացած․ այն ատեն հարկ կըլլայ վերստին դիմել գրգռիչ ծխարկութեանց և լոգանաց։ Գրգռիչ իւղով օծումն ալ մոռնալու չէ՛ ։ Վերջապէս եթէ ճաղկումը՝ փափաքելի յաջողութիւնը չը հայթայթէ․ այն ատեն եղինճով ճաղկանաց սկսելու է նոյն իսկ առնանդամուն վրայ ալ․ այս տեսակ ճաղկանաց յառաջ բերած գրգռումը ընդհանրապէս կանգնումն կը պատճառէ, միայն թէ անդամը բոլորովին տկարացած չըլլայ ։



## ԳԼՈՒԽ ԻԲ․

## ՃԱՂԿԱՆՔ ԻԲՐ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ ՄԻՋՈՑ ։

Մարմնոյն մէկ քանի մասերը խարազանով, ճաղկով կամ կաշիէ փոկով ծեծելը ճաղկանք կըսուի․ Անզգայութեան և անկարողութեան ատեն ճաղկանքը կը գործածուի, կռնակի, միջաց, նստոյ տեղւոյն և ազդերց վրայ, որպէս զի արեան յորդութիւնը մորթոյն և անոր տակ գտնուած դնդերաց վերաբերուի ։ Այս միջոցաւ ճաղկուած մասերուն ստացած սաստիկ գրգիռը իսկոյն ծննդական

ջօրինուածոյն կը հաղորդուի , ողնայարի ծուծին և այս յօրինուածոյն ջղային ոստոցը մէջ գտնուած հաղորդակցութեան միջոցաւ: Յոյնք և Հռովմայեցիք, որք ճաղկանաց յատկութիւնը կը ճանչնային , զայն առատապէս կը գործածէին սադիւռնական տօնախմբութեանց ատեն , ուր երկու սեռերն ալ փոփոխակի մէկզմէկ կը ճաղկէին քաղցր սքանչելիքը լաւագոյն կատարելու համար :

Հիփօկրատ և Ասկղէպիադ շատ հիւանդութեանց համար ճաղկանքը կը գովէին : Միւզա , բժիշկ օգոստոսի կայսերութեան ատեն և Կալիէն տկարութենէ կամ թուլութենէ պատճառեալ անկարողութիւնը բժշկելու համար ճաղկանքը՝ պաղ լոգանաց հետ զուգակցելով կը պատուիրէին . —Գեթրօնէ պուէտը , ուսկից՝ քչիկ մը ետքը վկայութիւն մը պիտի բերենք , կը գովէր ճաղկանքը և մանաւանդ եղինճովը , Հռովմայի շուայտաբարոյ անձերէն գործածուած իբր ընդրելագոյն միջոց սպանդարամետեան պաշտամանց մէջ շիջեալ տարփական զօրութիւնները կենդանացնելու համար : —Աւէթէ , Կաէլիւս, Աւրելիանիւս, Ռաձէս և ուրիշ շատ երեւելի բժիշկները իրենց գրուածոցը մէջ կը պատմեն ճաղկանքով ըրած բազմաթիւ բժշկական դարմաններնին : Քամբանելլա կը պատմէ, թէ իշխան մը չըկրնալով իւր կնոջ հատուցանել ամուսնական պարտքը, առանց առաջուընէ լինքզինքը խստիւ ճաղկել տալու , այս կարեւոր ծառայութեան համար յատկապէս ճարպիկ և կորովի սպասաւոր մը բըռնած էր : Կաէլիւս Ռօտիկենիւս կը պատմէ թէ մեծ իշխան մը միեւնոյն միջոցը բանեցնել կուտար , որպէս զի կարող ըլլայ իւր ամուսնոյն պահանջ-

մունքները գոհացնել․ զուգաւորութենէ առաջ ինքզինքը ձաղկել կուտար այն աստիճան որ ալ արիւն կուգար․ և եթէ երբեմն սպասաւորը իւր ակնածութենէն կամ մեղքնալով խարազանի հարուածները չափաւորէր, իշխանը կը կատղէր և հրաման կընէր որ երկրորդեն ձաղկանքը, մինչեւ որ ալ սկսէր ցաւէն աղաղակել։ Այն ատեն միայն՝ ծնընդական անդամը կրնար կանգնիլ, և իր ու իր կնոջ փափաքները գոհացնել։ —Մէիպօմիւս երեւելի կազմագէտն քերթուած մը յօրինեց, որուն մէջ անկարողները մեծապէս կը պարտաւորէր ինքզինքնին ձաղկել տալու, եթէ ուզենան իրենց այրական կարողութիւնը վերստին ստանալ։

Համառօտիւ ըսելով, թէ՛ հին և թէ՛ նոր շատ մը բժիշկներ կը գովեն ձաղկանքը իբր զօրաւոր դարման ոչ թէ միայն ծննդական գործարանաց տկարութեանը համար, այլ նաև մորթոյ և ասոր տակ գտնուած խոռոչաւոր հիւսկեններին խել մը ախտերուն համար։ Նաև կը կարծեն թէ նիհարութեան դեմ զօրեղ տարման մ'է․ և զայն կը պատուիրեն նիհար անձանց, որք կուզեն գիրութիւն ստանալ։

Ձաղկանաց պատմութիւնը լրացեալ ըլլալու համար քչիկ մը խօսինք ինքնաձաղկ աղանդաւորաց Թափօրաց վրայ, որք ասկէ մէկ քանի դար առաջ հրապարակաւ ինքզինքնին կը ձաղկէին խարազանաւ փողոցէ փողոց պըտըտելով։ Չըկրնար գիտցուիլ թէ այս գործողութիւնք, որք հին Հռովմայի պանական պաշտամանց կը նմանէին, ինչ նպատակ ունէին։ Այս սովորութեան մէկ քանի պաշտպաններ կը հաստատեն թէ բարեպաշտական նպատա-

նաւ է ։ Բայց փիլիսոփայք բացորոշապէս ապացուցած են որ այն դարուց ազատութենէն և մոլեռանդութենէն ծնած՝ այս ինքնաճաղկ աղանդաւորաց թափօրները անկարգութեանց և գայթակղութեանց պատճառ եղան ։ Արդարեւ ճաղկանքը ծննդական գործարանաց ամենէն զօրաւոր գրգռիչներէն մէկը համարուած ըլլալով , միթէ՞ անմտութիւն չէ թոյլ տալ որ այս սովորութիւնը՝ սրբութեան ուխտ ընող կրօնաւորաց դասը ընդունի ։

1260 ին էր որ ճաղկանքը կաթոլիկութեան մէջ մտաւ · և ահա ինչպէս Ռէնիէ անուն մէկը Կելֆերուն և Ժիպլլիններուն՝ Իտալիոյ վրայ հասուցած չարիքներէն յուզուելով և այս ապստամբական գործոց մէջ Աստուծոյ մէկ մասնաւոր պատուհասը նշմարելով կարծեց որ ինքզինքը խարազանելով Աստուծոյ բարկութիւնը կրնայ իջեցունել ։ Աստուծոյ բարկո՞ւթիւն .... ։ Միթէ՞ մեր պզտիկ կիրքերը Աստուծոյ վերաբերելը հայհոյանք կամ յիմարութիւն չէ՞ ։ Այսօր այս բնութեան ազէր մարդը յիմարանոցը կը դնեն , բայց երեքստասներորդ դարը զանի Սուրբ մը գործեց ։ Խել մը մոլեռանդներ ալ , Ռէնիէի օրինակէն քաջալերուելով , ինքզինքնին ճաղկեցին այնչափ որ ալ արիւն կը վազէր · և այս սովորութիւնը այնչափ առաջ գնաց որ քիչ ատենէն՝ ճաղկող և ճաղկուող բազմութեան բաւական խարազաններ չգտնուեցան ։ Նւ ահա ճիշտ այս թուականէս սկսեալ կազմուեցան ճաղկողաց խումբեր , որք փողոցէ փողոց կը շրջէին՝ դպրոցի խեռ աշակերտաց համար սահմանեալ պատիժը անձին վերաբերելով ։ Այս աղանդական սովորութեան մէջ ամենէն երեւելի եղաւ Սուրբ Դոմինիկոս անուանեալ

եալն զրահաւոր։ Այս գերերջանիկը ոչ թէ միայն իր հաշւոյն համար ինքզինքը կը ծաղկէր, այլ նաեւ ուրիշներու հաշւոյն համար ալ։ Յակոբոս Գուալօ, ծաղկիչներու վրայ շինած և 1700ին տպագրուած իր մէկ գործքին մէջ՝ զրահաւորն Դոմինիկոսի ընդունած հանապազօրեայ ծաղկանաց թիւը այսպէս կը հաշուէ։ Ան ատեն կը հաւատային որ հարիւր տարուան ապաշխարութիւնը՝ խարազանի հարուածով ընկերացեալ քսան անգամ Սաղմոսի քաղուածքով կրնայ վճարուիլ։ Երեք հազար հարուած մէկ տարուան ապաշխարութիւն կ'արժէր, և Սաղմոսի ամեն մէկ տասը տունը՝ հազար հարուած սեպելով, քսան սաղմոսարանը երեք հարիւր հազար հարուած կը բռնուէր։ Դոմինիկոս՝ հարիւր տարուան ապաշխարութիւնը վեց օրուան մէջ կը կատարէր, և սանկով ժողովրդեան մեղքերը կը գնէր։ Կըսուի թէ այս մշտնջենաւոր ծաղկանքը՝ Սրբոյն մորթը խարշիկի մը մորթոյն պէս սեւցուց։ Յակոբոս Գուալօ Սրբոյն հաստատամտութեանը և ծաղկանաց պատճառած ցաւերը արհամարհելու մասին իր զարմանքը յայտնելով կը խոստովանի նաև որ ծաղկանքը շատերուն՝ իրենց վատ սովորութիւնները ձգելու նպաստամատոյց եղաւ։ Այս ժամանակի ծագրալից ժամանակագրութիւններէն կերեւայ թէ Եկեղեցին՝ ծաղկանքը իբր բարեպաշտական և ապաշխարական գործ հրատարակած ըլլայ, և մեղաւորները արձակելու մասին իբր ամենէն վաղալոճար միջոցներէն մէկն գործածած ըլլայ։ Ինչպէս հետեւեալ դէպքերը կ'ապացուցանեն։

Փրանչիսկեան կրօնաւոր մը հրապարակաւ կը ծաղկէր Աստուածաբանութեան դասատու մը, որ-

նոր յանգներ էր հաւատոյ քարոզութեան մէջ հաւատալեաց. հակառակ կարծիք մը դնելու · և այս ձաղկանաց ներկայ գտնուող կիներն ալ կ'աղաղակէին «Հայր Փրանչիսկեան, մեր ամեն մէկերնուս համար չորսական հարուած ալ աւելցուր ։»

Բարեպաշտ անձ մը, որ իւր կնոջ հետ խոստովանութեան գացեր էր, տեսնալով որ խոստովանահայր քահանան՝ իւր կինը խոստովանարանին ետին կը տանի ձաղկելու, աղաղակեց, «Հա՛յր, այդ մեղաւորը շատ փափուկ է, եթէ հրաման տաք, ես անոր տեղ կընդունիմ ձաղկանքը» ։ Իսկոյն միամիտ անձը չոքեցաւ և խոստովանահայրն ալ իր պաշտօնը կատարեց ։ Կինը՝ իւր երկանը ձաղկուելու ատենը կ'աղաղակէր «Ամուր զա՛րկ, Հա՛յր, երկար զա՛րկ՝ վասնզի շատ մեղաւոր եմ ։

Շատ իշխաններ և բարձրաստիճան անձինք ձաղկողաց խումբերուն և մասնաւոր ձաղկանաց պատճառած գայթակղութեանց դէմ բողոքելով, Կղեմէս Զ Պապը՝ հրապարակական ձաղկանքը յայտնապէս արգիլեց ։ Բայց և այնպէս անոնք, որ խարազանի հարուածները ճաշակած էին, չէին կրնար դիւրութեամբ անկէ անցնիլ. վասնզի սոյն նորոգեալ արգիլմանց հակառակ գաղտնի ձաղկանքը կը շարունակէր միշտ ։ Ասկից շատ ժամանակ ետքը եկեղեցական առաջնորդութեան բանադրանքները և ոստիկանութեան ամենախիստ հրամանները վերջապէս ջնջեցին այս վտանգալի և մեղապարտ մոլութիւնը ։

Այսօր ձաղկանքը առողջապահական և բուժական միջոց մըն է և զանազան ազգաց մէջ կը գործածուի, ինչպէս Չինացւոց, Պարսից և մասնաւո-

բանակէս Ռուսաց մէջ ։ Այս վերջիններէն ինքզինքնին ծածկել կուտան բաղանեաց մէջ ցարայի խարազաններով իբր առողջապահական միջոց ։ Այն անձինք, որոց մորթը խարազանի հարուածոց չափազանցութեանը կարծրացած է, ծաղկերը քացախի մէջ թաթխել կուտան. և այս թթուին սաստիկ խայթոցը իրենց բթացեալ զգայականութիւնը վերստին կ'ըստանան ։ Կ'ըսուի նաև թէ Մոսկուայի մէջ այր և կանայք, եթէ մէկ մը իրենց երիտասարդութիւնը անցնի, պարտին ձաղկանաց ենթարկուիլ. որպէսզի սիրոյ գրգռին ։ Վասնորոյ խարազանը տնական կարասի մը դառնալով անկէ անզնիլը դժուար կըլլայ ։ Ահա փոքրիկ պատմութիւն մը, որ այս նիւթիս համար կը պատմեն ։

Գերմանացի մը Մոսկուայի մէջ բնակութիւն հաստատելով ամուսնացաւ ։ Իւր կինը սաստիկ սիրելուն համար բան մը չը խնայեց, որպէսզի անոր հաճելի և սիրելի ըլլայ ։ Բայց բոլոր իւր ջանքերը անօգուտ և անպտուղ մնացին. որովհետև իւր կինը իւր քրուանաց միշտ անտարբեր ըլլալով հառաջանօք և արտասուօք կը պատասխանէր անոնց ։ Օր մը Գերմանացին հարցուց անոր իր պաղութեան և տրտմութեան պատճառը, և այնպիսի թախանձանօք աղաչեց անոր որ կինը պարտաւորեցաւ հեծկլտանօք պատասխանել ։ —Ինչո՞ւ համար զիս սիրել կը կեղծես ։ Կը կարծես որ կրնաս ծածկել ինձմէ թէ դուն երբեք իմ գեղեցկութեանս հաւնած չես և ոչ ալ [illegible] [illegible] աչացդ ։։ Այրը այս պատասխանին վրայ ապշելով [illegible] իւր կինը. որպէսզի իրեն ըսէ թէ ինչ բանով զինքը վշտացուցած է ։ —Կինը՝ իւր արտասուքները կրկնելով

ըսաւ «Որովհետեւ դու չը գիտնալ կը ձեւացնես, վասնորոյ կը հարցնեմ, ո՞ւր են ուրեմն քու խարազաններդ, որոցմով դու կարող պիտի ըլլաս քու սէրդ ինծի ապացուցանել և զայն ինծի հաղորդել. չես գիտեր որ մեր մէջ այս է միակ միջոց, զոր պարտին գործածել այն երկու մարդիկ, որք ճըշմարտապէս իրենց կինը կը սիրեն։»

Բարի Գերմանացին ապշեալ մնաց իւր կնոջ այս պարզ խոստովանութեանը վրայ, և խնդալը բռնելու համար շատ դժուարութիւն կրեց։ Սակայն կնոջ առանց կատակի խօսած ըլլալուն վրայ հաստատ կենալէն այրը սկսաւ հաւատալ թէ այս դեղը հարկաւոր էր։ Քանի մ՚օր ետքը պատճառ մը բռնելով և մեծկակ խարազան մ՚առնելով աղուորիկ մը ծաղկեց զանիկայ։ Այս դեղը սքանչելապէս գործադրուեցաւ և այն օրէն սկսեալ՝ կինը իր ամուսնոյն սիրոյն և հաճոյից համապատասխանեց։

Պլինիոսի մէջ կը կարդանք թէ Կալլիոս՝ Վերգիլիոսի բարեկամը Հռովմայեցի երիտասարդ հարճ մ՚ունէր, որ երբեմն անզգայ և երբեմն հեշտասէր էր։ Օրեր կային որ տարփական քրքուանաց կատարելապէս անզգայ կը գտնուէր, օրեր ալ կային որ իւր տարփածուին համբոյրներուն թունդ տարփանքէն կ՚եռար և կը բանդագուշէր։ Կալլիոս այս երեւոյթին պատճառը բնտռելով գտաւ որ իւր հարճը միայն այն օրերը հեշտասէր կըլլար, երբ իւր հայրը՝ անոր պակասութեանցը համար զայն պատժել տալու նպատակաւ ծաղկել տար։ Կալլիոս այս գիւտէն օգուտ քաղեց և երբ իւր հարճը իւր տունը գար պաղ և անզգայ, խոշորիկեկ խարազանով մը զայն ծաղկել տալով, հեշտանեռանդն և հաճոյասէր կը գործէր։

ժան ժագ Ռուսօ իւր խոստովանութեանցը մէջ կը հաստատէ որ իրմէ հասակաւոր օրիորդէ մը ծաղկուելով, այնչափ սաստկութեամբ կը գրգռուէր որ օր մը աղջիկը տեսնալով թէ կայրանայ Ռուսօն, ալ այնուհետեւ դադրեցաւ ծաղկելէ :

Ծաղկանքը միմիայն ծաղկուողին վրայ չ'ազդեր. կերեւայ թէ ծաղկողին և ծաղկանքը տեսնողին համար ալ գրգռիչ մ'է : Պրանթօմ մեզ կուսուցանէ թէ ինքը իմացած է որ մեծ իշխանուհի մը, իր բնական ցանկասիրութիւնը գրգռելու համար, իր ամենագեղեցիկ կիները և աղջիկները ինչպէս նաև իր սիրուն մանկլաւիկները կը հանուեցնէր, և զանոնք այնպէս մերկ տեսնելով կը զուարճանար. յետոյ անոնց նստոյ տեղւոյն վրայ բաւական սաստկութեամբ՝ ափով կըզարնէր կամ զարնել կուտար. և յանցաւոր աղջիկներն ալ խարազանով կը ծաղկէր. և ինքն ալ կը բերկրէր, երբ անոնք գրգռէին և իրենց մարմնոյն և նստոյ տեղւոյն վրայ գալարելով ընդունած հարուածներուն համաձայն տարօրինակ և խիստ ծաղրալից տեսիլներ ընծայէին : —Մեր օրերուն մէջ շատ հարուստ ծերեր և սպառեալ հեշտաքարոյ անձինքներ կան, որք գաղտնի և լռելեայն այսպէս միջոցներ կը գործածեն, իրենց նուազեալ բնութեան առժամանակեայ գրգիռ մը դրոշմելու նպատակաւ :

## ԾԱՂԿԱՆԱՑ ԿԻՐԱՌՈՒԹԵԱՆԸ ԿԵՐՊԸ :

Օգտակար արդիւնք մը յառաջ բերելու համար ծաղկելու լաւագոյն գործիքն է Ռուսաց ցօրաօճ խարազանները : Չուանէ ծայրեր ունեցող խարազանը կամ կաշիէ ծաղկը շատ խստիւ կը զարնէ, և իւր

ազդեցութիւնը, փոխանակ առժամանակեայ զգացում մը պատճառելու, կրնայ յառաջ բերել՝ խացոյտներ և կապտագոյն խորին երաշխեպներ և նաեւ մորթը պատռել։ —Այն մասերը, որոց վրայ պարտի կատարուիլ ճաղկանքը, են երիկամունք, մէջք և նստոյ տեղի։ Այս մասերը ճաղկուելու են նախ պզտիկ հարուածով, յետոյ աստիճանաբար ուժը աւելցնելու է, և վերջապէս այնչափ սաստկութեամբ զարնելու է, որչափ որ ճաղկուած անձը փափաքի։ Մենք լսած ենք որ մորթին տակի և ողնայարի ծուծին վրայի ջիղերուն վրայ արտադրուած գրգռումը արագութեամբ ծըննդական գործարանաց ջիղերուն կը հաղորդուի և թէ ասոնք ևս գրգռուելով թոյլ կուտան ամուսնական գործողութիւնք կատարելու և սերունդ մը ունենալ յուսալու։

Այս գրգռումը այնչափ աւելի կատարեալ կըլլայ, որչափ որ ճաղկանքը աղէկ կատարուի։ Կը պատուիրեմ անկարողաց որ բաղնիքէ ելած ատեննին ճաղկուին, վասնզի այն ատեն մորթը աւելի փափուկ և աւելի զգայուն է. և աւելի աղէկ կըլլայ եթէ ճաղկողը կին մ՚ըլլայ, որպէս զի միեւնոյն ատեն թէ՛ բարոյական և թէ՛ կազմական գրգռում մը ստացուի։

## ԽՂՃԱՀԱՐՈՒԹԻՒՆ.

Ամեն մարդ գիտէ եղինձով մորթը ճաղկելէն առաջ եկած արդիւնքները, ճաղկուած մասերուն վրայ պզտիկ փամփշտիկներ կը տեսնուին, սաստիկ մարմաջում մը կ՚ելլէ, փամփշտիկներուն շրջագիծը կը կարմրնայ, կը բորբոքի և կծու տաքութիւն մը կը

տիրէ մորթին տակ, որ և իցէ ատենէ մ'ետքը գրգռումը կը ցրուի, և կամաց կամաց մորթը՝ իւր բնական վիճակը կստանայ։

Այս երևոյթին բացատրութիւնը գտնալու համար կազմագէտք մանրադիտով դիտած և տեսած են որ եղինճին տերևուն վրայ ցցուած նուրբ աղուամազները փոքրիկ խողովակներ են և ծայրերնին պզտիկ գեղձեր ունին, որոնք բարկ և կիզող հեղուկ մը կը պարունակեն։ Այս ցցեալ աղուամազները մորթին մէջ կը մուծուին և կոտրուելով իրենց գրգռիչ հեղուկը հոն կը վազցնեն, որնոր գրեթէ խոլոյն ձաղկանաց երևոյթը կը պատճառէ։

Ասկից կը հետևի որ պարզ ձաղկանաց և եղինճահարութեան մէջ սա՛ տարբերութիւնը կայ որ առաջինը արտաքնապէս կ'ազդէ և մորթին վրայ արեան յորդութիւնը կը կատարուի բախմամբ, որնոր շատ անգամ կայտոյտներ և մինչև անգամ պատառուածներ առաջ կը բերէ, մինչդեռ եղինճահարութիւնը ներքնապէս կ'ազդէ եղինճին աղուամազին կծու հեղուկին՝ մորթին հիւսկէնին մէջ արտադրած բորբոքմամբը, որնոր այնչափ աւելի սաստիկ կըլլայ, որչափ որ եղինճին աղուամազները աւելի կոտրելով մորթին մէջ աւելի հեղուկ հոսեցնեն։

Եթէ եղինճահարութիւնը միշտ գործածուած է մորթային մէկ քանի գրգռումներ յառաջ բերելու համար, որոց յապաղումը կամ դժուար և անկատար զարգացումը միշտ մարմնական յօրինուածոյն մէջ աղետալից անկարգութիւններ կը պատճառէ, նաևս աւելի ընդհանրապէս գործածուած է ծննդական գործարանաց տկարութենէ պատճառեալ անկարողութեան դէմ։ Ուղղակի ծննդական մասին

յուն վրայ կրնայ գործածուիլ, քանի որ ձաղկանքը այս գործը չըր կրնար կատարել այս մասերուն սաստիկ զգայականութեանը և փափկութեանը պատճառաւ։ Նաև ո՞ւր գտնալու է ասկից աւելի արագազդու և աւոր չափ զօրաւոր վայրական խթան մը։ Վասնզի եթէ գործարանը քչիկ մը եղճարհարես իսկոյն արիւնը առատութեամբ հոն կը յորդի, կը տաքցնէ, կուռեցնէ, և բնութեան՝ իրեն սահմանած գործողութիւնը կատարելու կը յարմարցնէ։

Եղճահարութիւնը կանաչ և զօրաւոր եղիճներով կատարելու է, որոց ամենէն լաւագոյնն է գունաւոր եղիճը կամ մանր եղիճը. վասնզի ասոր աղուամազերը շատ և աւելի ցցուեալ են և որոց գեղձերը աւելի կծու հեղուկ մը կը պարունակեն։ Ասով զարնելու է անդամոց վրայ ամեն կողմ, մինչև որ այրիչ եռք մը յարտագրուի. այն ատեն կենալու և վախճանին սպասելու է։ Խիստ հաղուադէպ է որ այս գործողութիւնը աղէկ կատարուած ըլլալէն վերջը առժամանակեայ կանգնում մը չը պատճառէ, և եթէ ժամանակ ժամանակ կրկնուի, խառնչաւոր մարմնոյն մէջ եկած արեամբ նոյն մարմինը կընդարձակի և վերջապէս կորսուած կանգնումը կը հաստատուի։ Կ'աւարտենք այս գլուխը, Փեթրոնէն վկայութիւն մը բերելով, որնոր բնաւ տարակոյս չը ձգէր եղճահարութեան արդիւնագործութեան վրայ։

«Մարմնոյս այն մասը, որով երբեմն Հերակլէս մ'էի, անկենդան և սառէն աւելի պաղ ինկաւ. կ'արծես զայն՝ աղեացս խորէն կը քաշկռտէին. երբ Ենօթէ՝ սառտղկան քրմուհին ձեռք մը կանաչ եղիճ

առնելով թեթեւ կերպով մը զարկաւ, և նուաղեալ մասը իսկոյն իւր առջի կորովութիւն ստացաւ ։



## ԳԼՈՒԽ ԻԳ.

## ԵԼԵՔՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԻԲՐ ԴԱՐՄԱՆ ԱՆԿԱՐՈՂՈՒԹԵԱՆ ։

Ելեքտրականութիւնը՝ այս սքանչելի և հզօր բնական զօրութիւնը, զոր արդի բժշկութիւնը կ՚արծես երեւէ. կը ձգէ կամ իւր բուժական գործողութեանց մէջ անոր վրայ շատ անհոգ կը կենայ, ելեքտրականութիւնը կըսեմ, խումբ մը հիւանդութեանց՝ ինչպէս լուծման, հիւսկէններու տկարութեան, ջղային վշտակրութեանց, անդամալուծութեան և ամենէն զօրաւոր դարմաններէն մէկը սեպուած և գովուած է ։ Դիւրաւ կրնայ մակաբերուիլ թէ գործարան մը, որ ջղային զօրութեան պակասութեամբ նուաղեալ է, իւր պաշտօններուն կիրառութեան վերածելու համար ելեքտրական հեղանիւթին միջնորդութիւնը պէտք է ։ Այս հեղանիւթը այնչափ արագընթաց և նուրբ է որ ամեն մարմնոց մէջ կը մտնայ և կարծես կեանք կու տայ անոնց, որոց քով այս կեանքը մարած է ։ Բայց խիստ կարեւոր է որ ճարտար կիրառու բժիշկներ մարդկային մարմինը վատթարացնող խումբ մը հիւանդութեանց համար գործածուած ելեքտրականութեան ուսում մը ձեռք առնեն ։

Անցեալ դարուն բժիշկներէն, կազմաբաններէն և բնագէտներէն շատերը՝ ելեքտրակա-

[illegible] բժշկութեան մէջ մուծանել փորձեցին և իրենց այս ջանքը շատ անգամ յաջողութեամբ պսակուեցաւ ։ Այս գաղափարը առաջին անգամ ունեցողն եղաւ Երևելին Նօլէ · իրմէ ետքը ճենովացի Վալլապէռ և Մօնբէլլիէցի Սօվաժը ելեքտրականութեամբ՝ անդամալուծութեան վերաբերեալ խել մը բժշկութիւններ ըրին , որք Գաղղիոյ , Իտալիոյ և Գերմանիոյ մէջ մեծ ձայն հանեցին ։

Մօռիսյիթ Բարիզի բժշկական ընկերութեան առաջարկութեամբը հիւանդաց վրայ խել մը փորձեր ըրաւ , որոնցմէ ոմանք կատարելապէս յաջողեցան և ոմանք ալ ոչինչ կամ գրեթէ ոչինչ արդիւնք ունեցան ։ Իտալիոյ մէջ նաև Թիպէռ Քավալլօ անուն բժիշկը ելեքտրական բժշկութեան կը պարապէր և խիստ մեծ յաջողութիւններ կատանար ։ Սա աստի–ճանաւոր և շարաւոր ելեքտրացուցմամբ կը գործէր , մինչդեռ Մօռիսյիթ շատ խստութեամբ և զօրաւոր կերպով կ՚ելեքտրացնէր ։ Քավալլօյի՝ յաջողութեամբ գործածած բաղնիքը հիւանդութեանց մէջ կը գտնուէին հետևեալ հիւանդութիւնք , պզդապարանա–կան գործարանաց ջղալուծութիւնը · ջղաձգական անդամք , յանկարծական թմրութիւն , ջղային հիւանդութիւնք , յօդացաւութիւնք , դաշտանի բարձում կամ դժուարութիւնք , անկարողութիւնք , անզգայութիւնք , ամլութիւնք են ։ Վերջապէս շատ մը անշնչացելոց կեանք տուաւ և [illegible] մահուընէ ազատեց [illegible] մեռեալ մը , որ մօտ էր թաղուելու ։

Կատտան , Պրըթօն , սը Լօսիա , սը Հաէն , Վերաթթի , Քանթօն , Բուաթօն , Հարթման , Գրատեն–քէ , Քավալլօ , Պոլիկօլի , Պոխլանթի , Աւէնպըէ , Աս–

կան բժշկութեան կազմածներ Լօնտրայի տուներէն մէկուն մէջ, որուն Ցանտր ստոքհոլմեան անունը կուտայ, և որուն համար հարիւր հազար ոսկի ծախք ըրած է օգտակարը՝ զուարճալեաց հետ խառնելու և չքեղութիւնը բուժական արհեստին հետ միացնելու նպատակաւ ։

«Խիստ երեւելի և ուսեալ անձինք կը խոստովանին որ այս տաճարին մէջ տիրած չքեղութեան նման երբէք չեն տեսած իրենց կենաց մէջ ։ Այս այնպիսի տաճար մ'է կըսեն, ուր քաղցր նուագներ կը լսուի, ուր ցոլացեալ լոյսը զմայլուն արդիւնքներ յառաջ կը բերէ, և ուր ամենէն անուշահոտ խնկոց հոտերը կը բուրեն ։ Իվերայ այսր ամենայնի Կրահամ բժիշկը այս տաճարին աստուածոյն այսինքն Հիգիէի ընծայուած զոհից մէջ մեծ չափաւորութիւն կը պահանջէ ։ Մագնիսա-ելեքտրական ըսուած սքանչելի անկողիններ, որք Թմբրեալ գործարանները զարթուցանելու և խիստ յամրահաս հեշտութիւնները գրգռելու կը ծառայեն, Պարսկական գորգերով յարդարուած և հեշտասիրական նկարներով զարդարուած հոյակապ դստիկոններու մէջ կառուցուած են ։ Այս անկողինները վեց ապակիէ ոտքերու վրայ հիմնուած են և ծածկոց ունին երկնագոյն կապուտէ շրջածոպերով ծիրանի անդուէ տաւեղէններ ։ Մերձակայ շենքի մը մէջ կը գտնուի մեքենան, ուսկից կը բղխի երկնային հուրը, զոր անտեսանելի հաղորդիչներ անկողնոց վրայ կուղղեն ։ Այս անկողնոյ մէջ պառկող անձինք այնպիսի կենդանացուցիչ բոցով մը կը ջերմանան որ ամենէն անտարբեր և ամենէն անզգայ կանայք հեշտութենէ կ'ոստնուն և ցանկական չափազանցութեանց

պատճառաւ այրական զօրութեանց սպառման և ջնջման մէջ ինկող արք ալ իրենց նախկին կորովութիւնը կստանան․ վերջապէս ամուլ կողակիցք հոն արգասաւորութիւն կը գտնան և տարւոց ծանրութեամբ վշտակրեալ կողակիցք հոն երիտասարդութեան բորբոքեանդն հեշտութիւնը կըզգան․․․․․ ։ Ո՞վ սքանչելի տաճար, դու տեսար քու մոգական անկողնոյդ՝ Հիմէնէի ճշմարիտ բագիններուն վրայ քաղաքին պինտ բարձրաստիճան գլուխները, որք առատաձեռնութեամբ վճարեցին, երբ ստացան, ոմանք մայր ըլլալու երջանկութիւնը և ոմանք ալ հայր ըլլալու խրոխտ պարծանքը․ և Կրահամ բժիշկն ալ հարստանալով կարողացաւ իրմէ ետքը մեծ համբաւ մը ձգել, որնոր առանց այս միջոցին անտարակոյս պիտի անհետանար ։

Ելեկտրականութիւնը հիւանդութեանց վրայ գործածելու նպատակաւ գրուած գրքի մը մէջ Պերթոլոն հետեւեալ դէպքը կը պատմէ, որուն ճշմարտութիւնը ինքը կը հաստատէ ։

«Տասը տարուընէ 'ի վեր ամուսնացեալ երկու անձինք չէին կրցեր ծննդագործել․ ելեկտրականութիւնը կենդանացուց իրենց յոյսը, զոր սկսեր էին կորսնցնել ։ Երբ իրենց առաջարկած միջոցիս խելամուտ եղան, իսկոյն իրենց անկողինը կղզիացուցին․ երկաթէ հաղորդակցութեան թել մը կանցնէր միջնորմէ մը, որնոր իրենց դատիկոնը կը բաժնէր ուրիշ մերձակայ չենքէ մը, որուն մէջ ելեկտրական մեքենայ մը զետեղուած էր ։ Երկաթէ թելը միջնորմէն անցնելու համար բացուած ծակին մէջ մուծուած էր ապակիէ պարզ խողովակ մը․ որ-

պէտքի այն հաղորդակցութեան թելը կզզիանայ-ցան. և հինգ օր ելեկտրականացնելէն վերջը կինը յղացաւ և ծննդաբերութեան հասնելով խիստ լաւառողջութեամբ տղայ մը բերաւ։»

Նոյն Պերթոլոն, որուն վերոյիշեալ գիրքը Լիոնի ճեմարանէն պսակուեցաւ, ըսած էր որ անզգայութիւնը՝ նուազ ելեկտրականութենէն և տարփանքութիւնն ալ՝ առաւել ելեկտրականութենէն կախումն ունի։ Այս երկու հիւանդութեանց դէմ առաջարկած դեղը տրամաբանական էր այսինքն անզգային՝ ելեկտրականութիւն տալ և տարփանքէն ալ զայն պակսեցնել։ «Եթէ հայեացք մը նետուի, կըսէր, օդերեւութական ցանկերուն և ծննդեան և մահուան ցուցակներուն վրայ, կը տեսնուի որ ելեկտրալի եղանակի մը մէջ առաւելագոյն յղութիւններ և հակառակ եղանակի մէջ ալ առաւելագոյն մեռեալք տեղի ունեցեր են։»

Վան Թրուցուիք՝ ելեկտրական բժշկութեան վրայ գրուած յիշատակագրոյ մը հեղինակը, որնոր Վըլանսի բժշկական ընկերութեան մրցանակին արժանացաւ, ելեկտրականութեամբ բժշկուած անզգայութեան և անկարողութեան խել մը դէպքեր կը պատմէ։

Քամիւս, Լիոնի ճեմարանէն, երիտասարդ հեշտասեր մը կը յիշէ որ հեշտութեանց չարաչար գործածմամբ սպառեալ իր անկարողութեան դարման կը գտնէ ելեկտրականութիւնը։

Թիլէյ, Պալտուին և Ժիրարդէն, մեր դարուն սկիզբները, ելեկտրականութիւնը կարի զօրակցին իբր զօրաւոր դարման այն ջղային հիւանդութեանց, որք ուրիշ դարմաններէ չը կրցան բժշկ-

Ակներեւ է հոս այս զանազան կերպերուն մէջէ մի բացատրութիւնը տալ, վասնզի զայն կրնանք գտնալ փորձառական բնագիտութեան ամեն գրքերուն մէջ. հոս պարզապէս զանոնք ընթերցողին նշանակելը բաւական համարեցինք ։

Բժշկին ճարտարամտութեան կը յանձնենք ընտրել այս միջոցներէն այն կամ անոնք, որք աւելի լաւ կը պատշաճին բժշկել ուզած հիւանդութեան. վասնզի շատ անգամ կը պատահի որ ելեքտրական հեղանիւթին գործածման սխալ եղանակն պատճառ կ'ըլլայ դարմանին անյաջողութեանը եւ ոչ թէ անոր անարդիւնագործութիւնը ։ Նաեւ դարմանին ամբողջ տեւողութեան ատեն հիւանդին կողմանէ ալ շատ համբերութիւն պէտք է. վասնզի կրնայ պատահիլ որ երբեմն խիստ երկարատեւ ըլլայ. ուստի այն անձը, որ կը քանի, միմիայն դոյզն ինչ մխիթարութիւն կը գտնայ, զոր միշտ ելեքտրականութեան անբաւականութեան վրայ ձգելու մտադիր կըլլայ ։ Երբեմն արմատական բժշկութիւն մը ստանալու համար երկու բան խիստ հարկաւոր են, մէկ կողմանէ ելեքտրաւորողին գիտութիւնը եւ ճարտարութիւնը եւ միւս կողմանէ ելեքտրացեալին համբերութիւնը եւ յարատեւութիւնը ։ Այս երկու միացեալ պայմաններով խիստ հազուադէպ է որ ելեքտրական դարմանը յաջողութեամբ չը պսակուի ։

Ամեն բան մեզի կը հաստատէ որ բժշկական ելեքտրականութիւնը քիչ ատենէն դուրս պիտի գայ այն մթութեան մէջէն, ուր այնչափ երկար ատեն ընկղմուած է. բժշկութեան առջեւ բացուած այս հարուստ կալուածէն քիչ ատենէն դուրս պիտի գան իմաստութեամբ կարգադրուած դար-

մաննէրուն յատկացիծեր, և արհեստը վերջապէս կարող պիտի ըլլայ բժշկել այն բազմաթիւ հիւանդութիւնները, որք տակաւին դարման գտած չ'են. մենք կուզենք խօսիլ ջղացաւութեանց, ջղալուծութեանց, նուաղեալ վիճակի, սպառման և մէկ քանի գործարանաց վրայ, որք չ'են գործեր նոյն իսկ այն հասակի մէջ, ուր մարդ տակաւին իւր բոլոր կորովութիւնը կը պահէ։

---

# ԳԼՈՒԽ ԻԴ.

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԱՄԼՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ։

Ամլութիւնը կամ իւր տեսակը մշտնջենաւորելու անկարելութիւնը աւելի հազուադէպ է արանց քանթէ կանանց։ Այս հիւանդութիւնը հին ազգաց մէջ նախատինք մը համարուած էր, և օրէնքը ամուլ միաւորութեանց արձակումը շնորհելէն 'ի զատ կը հրամայէր իսկ զայն. վասնզի այն ատեն ամուսնութիւնք քաղաքացւոց թիւը շատցնելու նպատակաւ կը կատարուէին և ոչ թէ, այսօրուան պէս, անձուկ եսականութեան և անձնական հանգստութեան նպատակաւ։

Ժողովրդեան սովորութիւնները որչափ պարզ և անմեղ ըլլան, կանայք այնչափ աւելի կը փափա-

քին անմանութեան և արգասաւորութեան ։ Մի-միայն քաղուց ապականութեան և վատթարութեան ժամանակին կը զարհուրի կինը մայր ըլլալու ։ Հնդկաստանի և Եգիպտոսի մէջ ամուլ կանայք իրենց վզերնին վրայ կը տառապէին և արք ալ դ՚անն խօսքերով անդադար զանոնք կը նախատէին ։ —Ամլութիւնը անօթ մ՚էր Եգիպտացւոց մէջ և երկնային պատուհաս մը կը համարէին զայն ։ —Հեթանոսուհիք՝ ամօթխածութիւնը ոտքի տակ առնելով , արգասաւորելու համար [illegible] քուրմերը իրենցմէ ինչ որ պահանջէին , անմիջապէս կը հնազանդէին ։ —Չինացիք և Արաբացիք ամուլ կինը իբր անօգուտ և անարժէք կարասի մը կը համարեն միշտ ։ —Մեր մէջ , տակաւին շատ ժամանակ չ՚ընէր , ամուլ կանայք իրենց ծոցը բժժանքներ կը կախէին , իննօրեայ բարեպաշտական պաշտամունքներ կը կատարէին , ուխտի կերթային , և մեծագին ընծաններ կը տանէին այնպիսի սուրբերու , որք ամլութիւնը բժշկելու մեծ համբաւ հանած էին ։ Այս համբաւը բնաւ սուտ չ՚էր , վասնզի այն ամէն բարեկազմ բայց անկատար կամ անկարող արանց հետ ամուսնացեալ կանայք այս ուխտագնացութենէն արգասաւորեալ ետ կը դառնային ։ Ի՞նչպէս կը կատարուէր ասիկա ։ Հարցո՛ւր պատմութեան . անցեալ դարուց ժամանակագրութիւնները քննէ՛ . և այն ատեն պիտի հասկնաս որ գործադրուած անվրիպելի միջոցը կուսապաշտ քրմաց ՚ի գործ դրած միջոցին հետ միենոյնն է ։

# ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՊԱՏՃԱՌՔ ԱՄԼՈՒԹԵԱՆ ։

*Ընդհանրապէս այս պատճառները երկու կարգի կը բաժնուին ։ Առաջինները ծննդական յօրինուածոյն մէկ կամ մէկ քանի գործարանաց աններկայութենէն կամ այս գործարանաց անբժշկելի մէկ ախտէն կախումն ունին ։ ինչպէս ամորձիքի, սերմնական փամփշտիկներէ զրկուած այր մը . —առանց արգանդի, առանց ձուարանի կին մը անշուշտ ամուլ պիտի ըլլան ։ —Միւս պատճառները, այնպիսի անկատարելութիւններէ կամ հիւանդութիւններէ կախումն ունին, որոց՝ արհեստը կրնայ դարման մատուցանել ։ Այս վերջի պատճառներուն մէջ կան այնպիսիներ, որք դիւրութեամբ կրնան բըժշկուիլ . կան ալ այնպիսիներ, որոց դարմանը ընդհակառակը երկարատեւ է . և շատ անգամ ենթակայ անձին համբերութիւնը կը հատցունեն ։*

*—Այս պատճառները հետեւեալ բովանդակութեան մէջ կրնանք տեսնել ։*

*Արանց կողմ ։*

*Ամորձեաց ծիւրութիւն և անոնց զանազան հիւանդութիւնք, Ջրգողութիւն պարկի երկուորեաց, այտումն սերմնական երակաց այտումն երկուորեաց.*

*Արտաքսաբեր անցքերուն խցումը, անոնց ընդլայնումը ։*

*Սերմնական փամփշտիկներուն հիւանդութիւնները ։*

*Այլասեռութիւն սերմին ։*

*Սերմնական կորուստք ։*

Սերմնական դեղձից ախտք ։

Առնանդամոյ անկատարելութիւնք ։

Միզանցքին անձկանալը , խորակեղ և ուրիշ հիւանդութիւնները ։

Վերնածակ և ստորածակ ։

Սեղմաթլփատ ։

Ցայտեցուցիչ ջղաց տկարութիւնը և ներդալուծութիւնը ։

Անզգայութիւն պատճառող խիստ ցուրտ խառնուածք ։

Երբեմն Սափիւրեան ախտ պատճառող խիստ տաք խառնուածք ։

Յետնուղեղի և ողնայարի . ծուծին հիւանդութիւնները ։ եա . եա ։

Կանանց քով ։

Զուամաններու հիւանդութիւնք , ձուոց ապականութիւն , վրանաձեւ փողերուն անձկանալը , փակումը և խցումը ։

Կնաքիրին կամ կղիթօրիին չափազանց երկայնութիւնը ։

Արգանդի ցնցուղին անձկանալը , խցումը , և չափազանց լայնութիւնը ։

Արգանդի մաղասներուն չափազանց աղկաղութիւնը և արգանդի ցնցուղին մաղասներուն չափազանց թթուութիւնը , որք սաէպ պատահող պատճառներ են ։

Արգանդի ցնցուղին խորակեղք , պոլիպոսք եա ։

Արգանդի լայնութեան պակասութիւնը և ծիւրութիւն , արգանդի փողին խցումը ։

Առատադաշտանութիւն ։

Անդաշտանութիւն և դժուարադաշտանութիւն ։

*Զափազանց ճերմակ դաշտան ։*

*Խօթութիւն արգանդի ․ —Հարսնամոլութիւն ։*

*Վերջապէս՝ կնոջ կազմութեան յարակից պատճառներէ արտադրուած մէկ քանի պարագաներ ։*

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ․

## ԱՐԱՆՑ ԾՆՆԴԱԿԱՆ ԱՆԴԱՄՈՑ ԶԱՆԱԶԱՆ ՎՆՏԱԿՈՒԹԵԱՆՑ ԵՒ ԱՆԿԱՏԱՐԵԼՈՒԹԵԱՆՑ ԴԱՐՄԱՆՔ ։

ԾԻՒՐՈՒԹԻՒՆ ԱՄՈՐՁԵԱՑ ։ *Երբ այս ծիւրութիւնը գործարանական ախտէ մ՚առաջ եկած չըլլայ, այն ատեն կրնայ բժշկուիլ․ գրգռիչ կիսալոգանօք․ համեմական ծխարկութեամբ, անուշադրի և քանփուրի կակղիչ սպեղանեօք, համեմական տածանեայով, և մանաւանդ գործարանին մարզովը, երբ հիւանդութիւնը երկարատեւ ժուժկալութենէ մը յառաջ եկած ըլլայ․ վասնզի մարմնի պակասութիւնը՝ գործարանի մը պաշտօնական գործնէութիւնը կնուազեցնէ և վերջապէս զայն ամբողջապէս ոչինչ կ՚ընէ ։*

ՋՐԳՈՂՈՒԹԻՒՆ ՊԱՐԿԻ ԵՐԿԻՈՐԵԱՑ, ԱՅՏՈՒՄՆ ՍԵՐՄՆԱԿԱՆ ԵՐԱԿԱՑ, ԱՑՏՌՈՒՄՆ ԵՐԿԻՈՐԵԱՑ ։ *Այս հիւանդութիւնները թեպէտեւ ամլութեան բացարձակ պատճառներ չեն, սակայն զուգաւորութիւնը անկատար և անպտուղ ընելու չափ կրնան վնասել ։ Այս հիւանդութիւնները բժշկելու համար Ձիրաբուժութեան դիմելու է ։*

ԱՐՏԱՔՍԱԲԵՐ ԱՆՑՔԵՐՈՒՆ ԽՑՈՒՄԸ ։ Այս հիւանդութիւնը որչափ որ հազուադէպ է, այնչափ ալ դժուար է զայն ճանչնալ արտաքին նշաններով. խել մը բժշկաց խօսքին նայելով, երկուորեաց բազմակրկնակ բորբոքմանց կը յաջորդէ ։ Արտաքսաբեր անցքերը խցուելով, երկուորեաց պատրաստած սերմը՝ սերմնական փամփուշտիկներուն մէջ չը կրնար տարուիլ, որով բանի ամլութիւն մը կը պատճառի ։ Այս խցումը բանալու միջոցները տակաւին անստոյգ են. սակայն պէտք է հաւատալ որ ամորձեաց վրայ կակղիչ տածահայսօք, նստալոգանօք և համեմական կակղիչ սպեղանեօք կամ անդկի մոմապեղանեօք այս խիստ հիւանդութիւնը քչիկ մը կրնայ լաւանալ ։

ՍԵՐՄՆԱԿԱՆ ՓԱՄՓՇՏԻԿՆԵՐՈՒՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐԸ ։ Այս հիւանդութիւնները ճանչնալն ալ խիստ դժուարին է. դիտեալ մէկ քանի դէպքեր միշտ ամլութեան զուգընթաց են ։ Այս հիւանդութեանց դարմանը խիստ անկատար է. ընդհանուր միջոցներու դիմել պէտք է. ինչպէս, լոգանք, կիսալոգանք, կակղեցուցիչ դեղեր, բարեխառնիչ ըմպելիներ. մէկ քանի բժիշկներ ծննդական անդամոց և սրբանին մէջի վայրին պատրոյգ դնելէն խիստ լաւ արդիւնքներ ունեցան ։

ԱՅԼԱՍԵՌՈՒԹԻՒՆ ՍԵՐՄԱՆ ։ Սա՝ ընդհանրական կամ վայրական ախտէ մ'առաջ կուգայ, զոր առողջարանութիւնը բժշկութեան հետ միանալով կրնայ բուժել ։ Արհեստապէտ մէկը գտիր՝ ։

ՍԵՐՄՆԱԿԱՆ ԿՈՐՈՒՍՏՔ ։ Միշտ աղետալից հիւանդութիւն, որնոր անմիջապէս դարման կը պահանջէ ։ Սերմնական կորուստք ընդհանրապէս զու-

գալարութեան չարաչար գործածումէն կամ գիջագործութենէ կը պատճառին, ուսկից առաջ կուգայ սերմնընկալ և սերմնարտաքորիչ գործարանաց տկարութիւն ։ Երբեմն այս կորուստը տեղի կունենայ ապաւիժման կամ միզելու ատեն․ երբեմն մի և նոյն գիշերուան մէջ մէկ քանի անգամ կրկնուած երազական գիջութիւններ են․ ուրիշ անգամ ալ սերմը աղէկ չը պատրաստուելով փամփշտիկներէն դուրս կելլայ, ցայտեցուցիչ անցքէն կանցնի և միզական անցքէն դուրս կը սահի առանց զգալու, այնպէս որ մէզը քիչ կամ շատ սերմով խառնուած կելլայ ։ —Ուրիշ պատճառներ, ինչպէս բացարձակ ժուժկալութիւն, միշտ նստողական զբաղմունք, սովորական որովայնապնդութիւնք, գրգռիչ լոգանաց, թէյի, սուրճի, գարեջուրի չափազանց գործածմունք, ևն ևն, կրնան պատճառել սերմնական կորուստ․ սակայն այս պարագաներուս մէջ հիւանդութիւնը նուազ աղետալից է և իսկոյն կ՚անհետանայ, երբ պատճառը ջնջուի ։ Ցանկական չափազանցութեանց և ծննդագործիչ յօրինուածոյն տկարութեանը պատճառաւ պատահած սերմնական կորուստք իրենց սաստկութեան համեմատ դարման կը պահանջեն ։

ՍԵՐՄՆԱԿԱՆ ԳԵՂՁԻՑ ԵՒ ՄԻԶԱՆՑՔԻՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐԸ ։ Ինչպէս անձկանալ, խորակէզ, տնկնակերպ ելունդն, պոռլիպոտն, ևն, վիրաբուժական ընդարձակօրէն դարմանի կը կարօտին ։

ՎԵՐՆԱԾԱԿ ։ Ասիկա կազմութեան պակասութենէ առաջ կուգայ, որով՝ հետեւ միզական անցքին ծակը փոխանակ գեղձին ծայրը բացուելու առնանդամուն վրայէն կը բացուի ։

ՄՏՈՐՆԱԾԱԿ ։ Այս ալ կազմութեան պակասութենէն առաջ կուգայ․ որովհետեւ միզանցքին ծակը փոխանակ գեղձին ծայրը բացուելու, առնանդամուն տակ, անոր արմատին քով կամ մէջ տեղուանքը կը բացուի ։

ՍԵՂՄԱԹԼՓԱՏ ։ Երբեմն թլփատը ամբողջապէս գեղձը կը գոցէ, այնպէս որ գեղձը բոլորովին կընգուղակիր կըլլայ և թլփատը մինչև պտուկը չը կըրնար իջնալ ։

Այս երեք անկատարելութիւնք վիրաբուժութեան պէտք ունին ։

ՑԱՑՏԵՑՈՒՑԻՉ ՋՂԱՑ ՏԿԱՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՆԵՐԴԱԼՈՒԾՈՒԹԻՒՆ ։ Սա՝ զօրացուցիչ ներքին դարման կը պահանջէ, գրգռիչ չփումն, և նաև կարմրացուցիչ պեղանի, ասկից 'ի զատ ծննդական անդամոց և որբանին մէջ տեղը խարան ։

ԽԻՍՏ ՑՈՒՐՏ ԽԱՌՆՈՒԱԾՔ ։ Որոնք կը բարեխառնուի գրգռիչ կերպառութեամբ և անզգայութեան վրայ խօսող գլխոյն մէջ պատուիրուած զանազան միջոցներով ։

ԽԻՍՏ ՏԱՔ ԽԱՌՆՈՒԱԾՔ, Որոնք կը չիջանի տկարացուցիչ կերպառութեամբ, և որուն հակափրոտութեան մէկ քանի միջոցներ ալ յարելու է ։ (Տես 'ի գլխոյս) ։

ՑԵՏՆՈՒՂԵՂԻ ԵՒ ՈՂՆԱՑԱՐԻ ԾՈՒԾԻ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ․ Բարձր բժշկականութեան դարմանաց կարօտութիւն ունենալով, հոս միայն նշանակելը բաւական համարեցինք ։

Տարփական վշտակրութեանց, Պլէնօռեան ախտից և Ճանքըրեան ախտից վրայ հետեւեալ գլխոյն մէջ մասնաւորապէս պիտի խօսուի ։

ԶԱՓԱԶԱՆՑ ԳԻՐՑՈՒԹԻՒՆ : Սա՝ ծննդական վատթարութեան կամ ծննդագործելու անկարող վիճակ մ'ունենալու սկզբնաւորութեան գրեթէ միշտ նշանն է : Այնպէս կերեւայ որ չափազանց գէր եղող մարդուն քով կենսական բոլոր զօրութիւնք ծննդական յօրինուածքը լքանելով ճարպաւոր յօրինուածոյն վրայ կեդրոնացած են : Ի վերայ այսր ամենայնի, բուսական ցեղին մէջ, ծաղիկները միմիայն այն ատեն ամուլ կըլլան, երբ իրենց արու, ծնաւէչը սնուցիչ հիւթերու չափազանցութեամբ տերեւի փոխուի : Այս դէպքը, զոր միշտ պարտիզպանք կը հաստատեն, չափազանց գէրերուն ամլութեանը պատճառը մեզ կը ներկայացնէ :

Այս տեսակ ամլութիւնը դարմանելու միջոցն է ամբողջ մարմնոյն մէջ հաւասարաբաշխել սնուցիչ հիւթերը, որք մասնաւոր ընտրանօք ճարպաւոր հիւսկէնին մէջ կը բերուին :

---

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

### ԿՆՈՋ ԱՄԼՈՒԹԵԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ ԵՒ ՋԱՆՈՒՆՔ ԲԺՇԿԵԼՈՒ ՑԱՏԿԱՑԵԱԼ ՄԻՋՈՑՔ.

Կնոջ ծննդական յօրինուածքը առն յօրինուածքէն աւելի ընդարձակ ըլլալով, այս պատճառաւ աւատէպ վշտակրութեանց ենթակայ կըլլայ : Ամլութիւն պատճառող հիւանդութեանց մէջէն կան որ կրնան բժշկուիլ և կան ալ որ անբժշկելի են : Ի վերայ այսր ամենայնի պէտք չէ որ կինը՝ բժշկական

դարմանոց անյաջողութիւնը տեսնալով յուսահա-տի՝ վանդի երբեմն կը պատահի որ բնութիւնը՝ որնոր արհեստէն աւելի զօրաւոր է, կնոջ արգաստա-ւորութիւն կը շնորհէ, ուսկից զրկեալ էր:

ԿՆԱԲԻՐ կամ ԿՂԻԹՕՐԻ: Այս գործարանին չափազանց երկայնութիւնը, ճիշդը խօսելու համար թէպէտ և ամլութեան պատճառ մը չը կրնար ըլլալ, եթէ ծննդական գործարանին միւս մասերը լաւ կազմուած ըլլան, սակայն դիտուած է որ այս գործարանին չափազանց զարգացմամբը կանայք անտարբեր կենալով առն քըւանաց, կսկսին իբր այր գործել, այսինքն կանանց ընկերութիւնները որոնել: Կղիթօրական ցանկութիւնը՝ այս տեսակ կանանց համար, զորս հիները Տրիպատ կը կոչէին, տագնապիչ կարիք մ'է, զոր կանճեցնէ անդադար իրենց երեւակայութեան բանդագուշանքը. իրենց տարփական խաղուցը մէջ խիստ պագշոտ ըլլալով, միշտ հարճերով կը շրջապատուին և բաւական կը նախանձին: Տրիպատական այս մոլութիւնը առաջ շատ սուէպ կը գտնուէր քան թէ հիմա: Սաֆօ, Էլէփանթիս: Քօրիթօ, Տեօնէ, Փիղենիս եւն, անուն-ները այս տխուր համբաւով մեզ հասած են: Լու-չիէն իւր Խօռօկէօրինեան անուն գրքոյն մէջ, Տրիպա-տի մը և իւր հարճին մէջ տեղի ունեցած՝ խիստ շուայտական մէկ տեսարան մը կը պատմէ: Ժիւվի-նալ խել մը Հռովմուհիներու դէմ կը յարձակի մա-նաւանդ Լօֆէլլայի և Մեսսալինայի, որք իրենց այրա-կան գրկախառնութեամբքը միւս կիները կը պղծ-ծէին: Մեղիւս Պուրէղիանոս ասանց վրայ կը խօսի Խոհասիրուէ վերնագրով, և Պրանտօմ ալ չէին, ... անուամբ: Միջին դարուն մէջ, Իտալիա և Գաղ-

ղխա ալ իրենց Տրիպատներն ունեցան , շէյխ և ճօղա-ճօթէ անուամբք ։ Գրեթէ միշտ մայրաքաղաքաց մէջ կը պատահին այսպիսի կանայք , որք ցանկական հեշտութեանց անշէջ ծարաւուքը բորբոքուած անվայել խաղերու կը պարապին և իրենց կնարիրը յոյժ ձգձգելով անոր մէկ քանի բթաչափ երկայնութիւն տալու պատճառ կըլլան , այնչափ որ ճիշտ առնանդամուն կը նմանցնեն · այն ատեն իրենց սեռին շնորհուած քաղցր պարծանքներէն զրկուելով , հայրանան և իրենց ամօթալի կիրքը յագեցնելու համար հարճեր կը փնտռեն ։

Մէկ քանի տարի առաջ Փարիզի մէջ կը պատմէին թէ հարուստ կին մը , որուն կնարիրը թէ՛ երկայնութեամբ և թէ՛ լայնութեամբ ճիշտ առնանդամու մը կը հաւասարէր , խիստ շուայտասէր ըլլալով հարճերու յատկապէս դրամ կուտար և զանոնք վատակարեկ ընելով քիչ ատենէն կը նուաղեցնէր ։ Մասնաւորապէս երիտասարդուհի օրիորդները նախամեծար կը համարէր · իսկ եթէ զանոնք չը գտնար , ամուսնացեալ կիներով գոհ կըլլար ։ Այս վերջիններէ կը հաստատէին թէ այս ճօղաճօթէը երիկ մարդու նման կը զուգաւորէր , բայց աւելի ցանկական կերպով եւ աւելի երկար ժամանակ ։ Շատ մը կիներ , որք այս կարծեցեալ որձև իգուն սեռական այլանդակութիւնը երթալ տեսնալու հետաքրքրութիւնը ունեցան , համոզուեցան որ ամուսնացեալ կանանց պատմածները կատարելապէս ստոյգ էին ։

Այս գրուածներէն կը հետեւի որ կնարիրին այլանդակ զարգացմամբը՝ կինը նուազ կարող պիտի դառնար ծննդագործելու , կամ այսպէս ալ Չինաց

նէ , անյաջող պիտի ըլլայ ։ Այս գործարանին հատումը ընդհանրապէս կինը իւր բնական ճաշակին կը վերածէ և արգասաւորելի վիճակի մէջ կը դնէ , եթէ ամլութեան ուրիշ պատճառներ չունենայ ։

Հռովմայեցւոց պատմութիւնը հետեւեալ դէպքը կը պարունակէ ։ Անթիպատոս մը՝ երկայն կնաբիր ունեցող կնոջ մը հետ յանդէտս ամուսնացաւ · այս կնոջ ամլութիւնը և իւր քըռւանաց դէմ ցուցըցած անտարբերութիւնը զինքը կը յուսահատեցնէին ։ Օր մը յանկարծ տուն մտնալով տեսաւ որ իր կինը տանը մէկուսի սենեակներէն մէկուն մէջ , բոլորովին մերկ , իւր գերուհեաց հետ , որք կնոջը նման մերկ էին , արական խաղ կը խաղայ ։ Մէկէն Հռովմայեցին կը կատղի , սենեակին դուռը կը կոտրէ և կինը բռնելով , իւր դաշոյնովը անոր կղիթորին կը կտրէ ։ Այս վայրկենէս տրիպատը՝ իր հակաբնական ճաշակը բոլորովին կորսնցունելով կին եղաւ , և իւր ամուսինը սիրելով , շատ մը տղաքներ ունեցաւ ։

Մօնտա բժիշկը ասոր գրեթէ նման դէպք մը կը պատմէ ։ —Մատղաշ կին մը , որ շատ տարիներէ ՚ի վեր ամուսնացեալ և ամուլ ըլլալով , իրեն թերուեցաւ · այս կինը իր տղայութենէն ՚ի վեր կնաբրական աղետալի սովորութեանց պարապած ըլլալով , իւր երկանը իրեն մատուցած հեշտասիրութիւններէն աւելի նախամեծար կը համարէր առանձնակի հեշտութիւնքը ։ Մօնտա բժիշկը Տիւպուա և Պելըրթան դասատուաց հետ խորհրդակցելով և համաձայնելով , կնոջ կնաբիրը կտրեց ։ Այս գործողութեամբ կինը՝ ինն ամիսէն ետքը մայրական քաղցր տիտղոսը ունեցաւ ։

**ԱՐԳԱՆԴԻ ՑՆՑՈՒՂԻՆ ԱՆՁԿՈՒԹԻՒՆԸ,** Սա՛ *արգանդի ցնցուղին ներքին երեսաց ախտաւոր երաշխիղներէն, յարումէն, թանձրութենէն և կարծրութենէն առաջ կուգայ և առնանդամուն ազատ ներմուծութեանը կը դիմադրէ. հետեւաբար արգասաւորութիւն չի պատճառէր: Այնպիսի արգանդի ցնցուղներ տեսնուած են, որք պնդացուցիչ գրելններով այնչափ կոշտացեալ և կարկամեալ են որ ամենանուրբ մարմիններն իսկ չեն կրնար ներս մտնալ: Կեղծ Թաղանթներէ, կեղերէ, պոլիպոզնային թանձրութիւններէ պատճառուած՝ արգանդի ցնցուղին անցքին խոռոչականութեան ընթացքը և խորանկեալ զուգաւորութեան և արգասաւորութեան քիչ կամ շատ նեղութիւն կը պատճառեն: Այս տեսակ անձկութիւնները բժշկելու խիստ դիւրին միջոցն է պողպատեայ ոզոանկէ բնակալի մը միջոցաւ անցքը ընդլայնեցնել: Այս սպունգը ցնցուղին խոնաւութիւնը կը ծծէ, կուռենայ և մէկ քանի օրուան մէջ փափքելի ընդլայնումը կատարէ: Այս սպունգը ցնցուղէն դուրս հանելու համար ամբողջ կամ ներսոյ լոգանք մ'ընել հարկաւոր է:*

**ԱՆՁԿՈՒԹԵԱՆ** *հակառակ վիճակը այսինքն արգանդի ցնցուղին լափլաղանց լայնութիւնը, մանաւանդ երբ այս ուղին մազասներէ կամ ճերմակ դաշտանէ շարունակաբար թրջուի, արգասաւորութեան արգելք մ'է: Արգանդի ցնցուղին ներքին երեսները տեսակ մը կակղութեան մէջ գտնուելով չեն կրնար ընդգրկել անդամը և բանել սերմնական հեղուկը, որոնք ցայտելուն պէս, փոխանակ արգանդի պարանոցին մէջ ելլալու, ծնծակէն դուրս կը վաթին: —Միակ դարմանն է ցնցուղին լայնութիւնը*

և հոսումը նուազցնել վիրաբուժական արհեստին ցուցած միջոցներով (տես 'ի գլուխն , ԹԱԳՈՒՆ ՑԱՐԴԱՐԱՆՔ) ։

Արգանդի խոռոչականութեան պակասութիւնը և իւր պարանոցին խցումը անտարակոյս ամլութեան պատճառներ են ։ Առատադաշտանութիւնը , դժուարադաշտանութիւնը , անդաշտանութիւնը և ընդհանրապէս արգանդի բոլոր վշտակրութիւնք ամլութեան հեռաւոր կամ մերձաւոր պատճառներ են ։ Արդարեւ արգասաւորութիւնը՝ արգանդի յօրինուածոյն առողջարանական լրութիւնը պահանջելով , որ և իցէ վշտակրութիւն աւելի կամ նուազ վնասակար են անոր ։ Մենք չենք կրնար այս պզտիկ գործոյս մէջ արգանդի՝ բազմաթիւ և բժշկելու դժուար հիւանդութեանց դարմանները դնել . այն կանայք , որք այս կերպով հիւանդացեալ են , պարտին մանաւորապէս այս տեսակ հիւանդութիւնները բժշկելու պարապող ճարտար բժիշկի մը խնամոց յանձնեն ինքզինքնին ։

Ընդհանրապէս , երբ այր մը կամ կին մը՝ իւր սեռական յայտարար յատկութիւններէն հեռանայ , այսինքն երբ ծննդական գործարանները բաւական զարգացած չըլլան , այն ատեն ծննդագործելու անատակութիւն մը կը հետեւի ։ Կնացեալ այրք և այրացեալ կանայք , երբ զուգաւորին , ընդհանրապէս ամուլ կըլլան ։

Այսպէս այն այրը , որուն ամորձիները զարգացման արգելք մը , կատարեալ ծիւրութիւն մը կրած են կամ որ և իցէ դիպուածով մը կորուսած են , իւր այրական յատկութիւնները կը կորսնցնէ ։ Իւր մօրուքը ալ չաճիր և կը թափի , ձայնը սուր , նուրբ

և ճշող հնչիւն մը կ'ունենայ , իւր ստինքները կը մեծնան , իւր ձեւերը կը կլորնան , կ'էգանայ ։ Այն կանայք ալ , որոց ձուամանները իրենց սկզբնական մանրակերտութեան միճակին մէջ կը մնան կամ հիւանդութեան մը պատճառաւ կորսուած են․ անոնք որ անծակ արգանդ մը կամ ծննդական յօրինուածոյն մէջ գլխաւոր անկատարելութիւն մ'ունին իրենց իգական յատկութիւնը կը կորսնցնեն․ իրենց երեսին վրայ մօրուք կը բուսնի․ իրենց ձայնը կըստուարանայ , ստիքներնին կը հալին , և իրենց փափուկ շրջագիծերը կաներեւութանան և անկիւնաւոր ձեւեր կառնեն , կ'այրանան ։

Ռիօլան քսան երեք տարեկան կնոջ մը երկու ձուամանները հանեց , որնոր թէպէտեւ իւր առողջութեանը վրայ ցաւալի տպաւորութիւն մը չըկրեց․ բայց ամսական արեան հոսումը ամբողջապէս դադրեցաւ , իւր բաւական մեծ ստինքները աներեւութացան , իւր մորթը փափկութիւնը կորսնցուց և օրէ օր , ամսէ ամիս արականութեան կը դիմէր ։ Գրեթէ մէկ տարուան մէջ կատարեալ առնադէմի մը աստիճան հասաւ ։

Զօտըլաք կին մը կը պատմէ որ բնականաբար զրկուած էր ձուամաններէ․ այս կինը իւր կզակացը վրայ մօրուք ունէր և իւր սեռին աշխատութիւնները արհամարհելով , զէնք կը գործածէր , ձի կը հեծնար և որսորդութիւն կ'ընէր ։

Յովհաննա տ'Արք․ Յովհաննա Հաշեթ , Թերուայն տը Մերիքուր , Թերեզա Ֆիկեռ , որնոր Հասարակապետութեան և կայսրութեան բոլոր պատերազմաց ճակատներուն մէջ գտնուեցաւ , նոյնպէս ալ ուրիշ խել մը կռուասէր կանայք , որոց

աւելի կը յարմարէր վարտիքը քան թէ շրջազգեստը , ծննդական անկատարելութիւններ ունէին և բնաւ դաշտանի հոսումն չ'ունէին :

Մաթիու բժիշկը , իւր հերմաֆրոդիտական պատմութիւն կնոջ անուն գրքին մէջ աղջիկ մը կը պատմէ որ արգանդի անծանօթութեամբ կը վշտակրէր և եօթը տարի՝ ամսական արեան ծծուելէն պատճառուած սաստիկ ցաւեր կրեց :

Քսան և վեց տարեկան հասակին մէջ ձուարան-ները ծիւրեցան և այս կնոջ շրթունքը մազոտեցաւ ; իւր ստինքները , իւր կլոր ձեւերը և իւր թաւշանման մորթը կորսնցուց , իւր ձայնը ստուարացաւ և անախորժացաւ և մէկ քանի տարի ետքը բոլորովին առնադէմ եղաւ :

Երջման հասակը , որնոր արգանդի և ձուարան-ներու ծիւրութեան սկզբնաւորութեան մէկ հետեւանքն է , կնոջ վրայ ընդհանրապէս այս տեսակ աւելի կամ նուազ ազդու փոխոխութիւններ կը բերէ :

Հասակէ պատճառուած՝ ամորձեաց ծիւրութիւնն ալ արանց գործարաններուն վրայ ոչ նուազ ազդու փոփոխութիւններ կը գործէ : Այրը և կինը ծերանալով իւրենց սեռը որոշող յատկութիւններն ալ չեն պահեր , կարծես կերպարանափոխ կըլլան և խառնուած էակի մը կը դառնան , որ ոչ այր է և ոչ կին :

Ամլութեան աւելի յաճախադէպ երկու պատճառներ , որք մինչեւ այսօր չ'էին մտածուած , են : 1° Արտանդէ մաղանթերան ԱՂԿԱՂՈՒԹԻՒՆԸ : 2° Արտանդէ ցեղայինին մաղանթերան ԹԹՈՒՈՒԹԻՒՆԸ : Բազմակրկնակ փորձեր մեզ համոզեցին թէ ալկաղիք

և թթուտը՝ սերմնորդները կըսպաննեն : Ուստի արգանդի ցնցուղը և ասկէ արգանդը ներմուծուած սերմին հետ գացող սերմնորդները անմիջապէս կը մեռնին, եթէ այս գործարանները լորձող խոնաւութիւնք խիստ ալկալական կամ խիստ թթու ըլլան : Այս պակասութիւնը դարմանելու համար ամենէն պարզ և միշտ յաջող միջոցն է զուգաւորութեան սկսելէ առաջ արգանդին և ատոր ցնցուղին մէջ գրեխ ընել ոռոգամանով : Այս գրեխին հեղուկը պէտք է շինուի ցորենի թեփի եփաջրով, որնոր բարակ կտաւէ մ'անցունելու է : Ամուլ ամուսնոց կը պատուիրենք որ այս կերպը գործածեն, որնոր ծննդական գործարանաց լուացման ալ կը ծառայէ : Ծննդական գործողութիւնը բնական կացութեամբ կատարուելու է, բայց կնոջ նստոյ տեղեն քչիք մը բարձրացած ըլլալու է միջաց տակ բարձ մը դնելով. Երկու ամուսնութիւններ գիտեմ, որոնցմէ մէկը շարունակ տասն և երկու և միւսը՝ ութը տարի ամուլ էին, այս կերպը գործածելով զաւակներ ունենալու երջանկութիւն ունեցան :

ՈՐՁԵՒԻԳՈՒԹԻՒՆ : Ամլութեան ուրիշ պատճառ մ'ալ կայ, որնոր բարեբաղդաբար խիստ հազուադէպ է, այն է որձեւիգութիւնը կամ միեւնոյն անհատի վրայ երկու սեռից միաւորութիւնը միեւնոյն ատեն : Բայց այս միաւորութիւնը մի միայն առերեւոյթս է. վասնզի մարդկային ցեղին մէջ որձեւիգութիւն բնաւ կատարեալ չ'է, բայց միայն բնախօսներուն մեզ պատմած մէկ քանի բացառութիւնները. որոնք ևս խիստ տարակուսելի են : Կազմագիտական խուզարկութիւնք վերջապէս յայտնած են թէ մարդկային որձեւիգութիւնը՝ ծննդական

գործարանաց մէկ անկատարելութիւնը կամ այլանդակութիւնն է ։ Կատարեալ և բացարձակ որձեւիգութիւն , միմիայն բուսական ցեղին և կենդանական սանդուխին ստորին աստիճաններուն վրայ դրուած էակաց վրայ կը պատահի , և վերին աստիճանները բռնող կենդանեաց գալով կաներևութանայ ։ Մեր ցեղին որձեւիգութիւնը թէպէտեւ կերպարանեալ այսինքն ծննդական գործարանաց անկատարութեան տրուած է , սակայն ծննդոց արձանագրութեանց վրայ դսրովանքներ յարուցանելու պատճառ եղած է . շատ մը տղաքներ կը պատմուին , որք իգական սեռին վերաբերեալ արձանագրուելով՝ աւելի ետքը մանչ եղած են . Նոյնպէս ուրիշ նորածիններ ալ , որք արական սեռէ կարծուած են , յանկարծ աղջիկ եղած են արբունքի ատեն ։

Տասն և վեցէն մինչեւ քսան և հինգ տարեկան շատ որձեւէգներ , որք մեծ քաղաքաց մէջ հասարակութեան հետաքրքրութեան դրուած են , ուրիշ բան չէին բայց միայն միաւորեալ երկու սեռից պատկերը ընծայող պակասաւոր կիներ կամ այրեր՝ որոնցմէ ոմանք ամորձեաց պարկին մէջ տեղը ծընծակի նման ըստ երկայնութեան ճեղքուած մը կը ներկայացնէին , ամորձեաց աներկայութեամբ և սրբանին ու ծննդական անդամին մէջ տեղ պզտիկ խառոչ մը գտնուելով կը կարծուէր թէ արգանդի ցնցուղ մ'ալ ունին ։ —Ոմանք ալ մեծ կղիթօրի մը ունէին , առնանդամու նման և կորավի կանգնմամբ և ծննծակային ճեղքուածին տակէն թաղանթային ծալքերը՝ որք փոքր շրթունքները կը ձեւացնեն կը կախուէին և ամորձեաց նման կը կծկուէին ։ Ըստ ըստ կաղմագիտական քննութեան մեր ցեղին որ-

ձեւէգները երկու կարգի բաժնուած են արական և իգական ։

Իգական որձեւէգները կամ երկայն կլիտորով կանայք ընդհանրապէս խիստ քիչ զարգացեալ ստինքներ, արգանդ և ձուարաններ կունենան, ցայլից ոսկրը տափակցած, ազդրերը նեղ, ձեւերը չոր, ոսկրոտ, յօրինուածքը առատ, վերին շրթունքը մազով զարդարուած, ձայնը ուժգին կըլլան և առնականութեան ամեն հանգամանքները կունենան ։ Արանց բնաւ չեն միտեր, այլ ընդհակառակը իրենց սեռէն անձեր կորոնեն անոնց հետ սիրական գըրկախառնութեանց պարապելու համար ։ — Այս տեսակ կանայք գրեթէ միշտ ամուլ են ։

Արական որձեւէգները կամ անկատար այրերը, որոց ամորձիները որովայնին մէջ մնացած են, իգութեան նմանելու մասին շատ պատշաճութիւններ ունին ։ Նախ առնէ մը ծնծակ, արգանդի ցնցուղին նմանութիւն և ստինքներ կունենան, որք երբեմն բաւական կը մեծնան, յետոյ կլոր ձեւեր, մազ և նուրբ ձայն մը կունենան, մօրուք քիչ կը բուսնի կամ բնաւ չեն ունենար ։ Այս հազուադիւտ էակները սիրոյ անտարբեր են և անկարողութեան մէջ կը նուաղին մինչեւ որ բնութեան մէջ ջանքը կամ ուժը որովայնէն դուրս նետէ ամորձիքները, որք հոն պահուած մնացած էին. այն ատեն այր կըլլան ։

Ամփրոսիոս Փարէ տասն և վեց տարեկան աղջըկան մը համար գրած է թէ փոս մը ցատկելով աղջիկը այր եղած է ։ Մօնթէյն, որ Վիթրիէն անցնելու ատեն այս այրը տեսած է, կը պատմէ որ նոյն թաղին աղջկանց երգոցը մէջ մեծ հռչակ գը-

տած էր այս անձը և անոնց կը պատուիրէին որ փոս չը ցատկեն կամ մեծ քայլ չ'առնեն , որպէս զի այր․ չըլլան Մարիամ Ճեռմենի պէս , այս էր վերոյիշեալ որձեւիգուն անունը ։

Հռովմայի մէջ մարմարիայ հին արձան մը կայ , որ որձեւէգ մը կը ներկայացնէ և որնոր երկու սեռի ծննդական անդամներն ունի կատարելապէս կազմակերպուած ։ Կարծիք կայ թէ այս արձանը կենդանի կաղապարի մը վրայ շինուած ըլլայ ․ կը կարծեն նաեւ թէ արձանագործը՝ ուզելով ցանկասէր տիպ մը հնարել, միեւնոյն անձի վրայ երկու սեռից յանկուցիչ իրերն ալ զուգադրած ըլլայ ։

Պլին իւր բնական պատմութեանը մէջ կը պատմէ թէ իւր ժամանակները՝ որձեւէգները շատ յարգի էին ։

Մեր Մօրրկոյին այլանկերպոսնեան անուն գործքին մէջ խիստ երեւելի որձեւիգաց պատմութիւնը աւանդած ենք ․ հոս բաւական կը համարենք միայն հետաքրքրական տեղեկութիւն տալ այս էակներէն մէկուն վրայ , որնոր փոխադարձաբար այր և կին համարուեցաւ և որնոր ճշմարտապէս կը կրէր իւր անձին վրայ երկու անկատար սեռից միաւորութեան նշանները ։

Ցորօթէ փեռիէ , 1780ին և օգոստոս ամսուն 17ին Բուսաստանի մէջ ծնելով , բազմաթիւ բժըշկաց ուշադրութիւն յինքն գրաւող որձեւէգներէն մէկն եղաւ ։ Ծննդոց արձանագրութեանց մէջ իբր աղջիկ գրուեցաւ , և արբունքի հասած ատեն ամսական արեան հոսում մ'ունեցաւ , որնոր վեց ամսուան մէջ վերստին յայտնուեցաւ ։ Հիւֆլանտ

թմիշկը 1801 ին մանրամասնր զննելով զայն վճռեց իգական սեռէ է ։ Ժ. Ֆրան, ոչինչ նուաղ զըննութենէ մը ետքը, խոստովանեցաւ թէ նա որ արական սեռին կը հակամիտէր ։ Տօռօթէ փեռիէ հետզհետէ Բրուսիա, Աւստրիա, Գերմանիա, Անգղիա և Գաղղիա երթալով, զինքը տեսնալ փափաքող արհեստագէտ անձանց կը ցուցնէր, որոնցմէ ոմանք զինքը այր և ոմանք ալ կին կը հրատարակէին. առանց՝ մէկ սեռէն աւելի միւս սեռին համար աւելի համոզիչ փաստեր ըլլալու ։

Տօրօթէ ծանր հիւանդութեան մ'աղագաւ հիւանդանոց մտնալով արանց սրահին մէջ դրուեցաւ, ուր մէկ քանի օրէն վերջը մեռաւ ։ Հոն ծառայող վիրաբուժը, այս դիակին վրայ կնկան ստինքներու մեծութեանը չափ ստինքներ տեսնելով՝ ապշեցաւ և անոր ծննդական գործարանները քննելու հետաքրքիր եղաւ ։ Առաջին հայեացքին տեսաւ որ երկու սեռերն ալ մէկը միւսին վրայ գըրուած են, առնանդամը վերը և ծնծակը վարը ։ Առնանդամին՝ մեծապէս զարգացած կնարիր մը և ծնծակին՝ պարապ նմանութիւն մը չըլլալուն վրայ աղեկ մը համոզուելէն վերջը վիրաբուժը անմիջապէս ներքին ծննդական գործարանաց հերձման ձեռնարկեց և գտաւ արտաքսարէր անցք մը, որ ամորձիներէն մեկնելով՝ աջ կողմը զետեղուած սերմնական փամփշտիկի մը մէջ կը բացուէր ։ Այս փամփշտիկը՝ ցայտեցուցիչ ուղիով մը միզուկին անցքին կը հաղորդուէր ։ Միզական փամփուշտին և աղիքներուն մէջ տեղը տափակցած արգանդ մը կար, որնոր մէկ փող մը և մէկ նեարդական յօդակապ մ'ունէր, ձուարանը՝ ձախ կողմը զետեղ-

ուած կատարելապէս առողջ էր և մեծ կազմի մը մեծութեանը չափ կար ։

Այս չափ բացորոշ արուական գործարանաց առջեւ հիւանդանոցին բժիշկները և վիրաբուժները խոստովանեցան թէ Տօրօթէ կրնար ինքնօրէն ար- դասաւորիլ առանց առն գործակցութեան և ոչինչ իւրք անկարելի էր ։ Այս կատարեալ որձեւիգու- թեան պարագան յիրաւի տարօրինակ է , և ինչպէս որ է այնպէս պատմեցինք առանց մեր կողմանէ ուրիշ մեկնութիւն մը աւելցնելու ։

Ուրիշ պարագայ ։ Մագտալինէ Միւնեէզ անուն կրօնաւորուհի մը , եօթը տարի վանքի մէջ կենա- լէն վերջը յանկարծ այրութեան փոխուեցաւ ։ Այս գործը իմացուելով անմիջապէս վանքէն վռնտուեցաւ , պատուիրուելով իրեն թէ այրական հագուստ հագ- նի ։ Կրկին մկրտեցին զայն և անունը Ֆրանչիսկօս Միւնեէզ դրին ․ բայց խիղճ մը կղերը երկուքի բաժ- նեց ․ այսինքն խնդիր էր գիտնալ թէ Մագտալինէի ուխտադրութիւնը կը պարտաւորէր զՖրանչիսկօս կրօնական զգեստն վերստին առնուլ ։ Այս դժուա- րութիւնը լուծելու համար աստուածաբաններ կան- չուեցան , որք բարեբաղդաբար ազատ հրատարա- կեցին զՖրանչիսկօս , որնոր ամուսնանալու գիտա- ւորութիւն ունէր ։

Հոս կը վերջացնենք ամլութեան պատճառախօ- սութեան պատմութիւնը , նշանակելով միանգամայն որ քաղաքակրթեալ ազգաց մէջ տեսակ մը կամաւոր ամլութիւն կայ , որնոր շատ տղաքներ ունենալու երկիւղէն կը ծագի ․ այս երկիւղը , առանց ամուս- նութիւնները ամուլ ընելու , մեծապէս կը վնասէ ժողովրդոց բազմամարդութեանը ․ վասնզի զոյգ մը

ամուսինք, փոխանակ հինգ, վեց կամ աւելի տղաք-
ներ արտադրելու, միմիայն մէկ կամ երկու կը ծը-
նընդագործեն և այս՝ եսականութեան նպատակաւ
մը, որնոր քաղաքակրթութեան յառաջդիմութեանը
համեմատ կաճի ։ Նաեւ շատ մը կիներ, առանց
ամուլ ըլլալու, բնութիւնը կը խաբեն և 'ի դերեւ
կը հանեն, վախնալով որ չըլլայ թէ յղութիւնը և
տղայաբերութիւնը իրենց գեղեցկութեան և հրա-
պուրանաց վնասէ. բայց այս երկիւղնին անհիմն է
և այս կիները իրենց համար մեծ վիշտեր կը պատ-
րաստեն ապագային մէջ ։

Հին ազգաց մէջ ալ այսպիսի ծայրայեղութիւն-
ներ կը գտնուէին ։ Վալեր Մաքսիմ մեզի կը տեղե-
կացնէ որ Հռովմայեցիք չէին կրնար ամուսնանալ
առանց բարձրագոյն երդումն ընելու որ իրենց
ամուսնութեան նպատակն է ծննդագործել ։ Այն-
ամէն կանայք որ զուգաւորական գործողութեան-
մէջ նենգութիւն բանեցնելով բռնուէին, վտար կը
հրատարակուէին և իրենց այս յանցանքը քաւելու
համար պարտաւորեալ էին ցիրեւցան մազերով և
մերկ գիստերով աւընթերակաց ըլլալ նախագի մը-
դհին .



# ԳԼՈՒԽ ԻԷ.

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԱՄԼՈՒԹԵԱՆ ԻԲՐ ՊԱՏՃԱՌ ՀԱՄԱՐՈՒԱԾ ԵՒ ԵՐԿՈՒ ՍԵՌԻՑ ՀԱՍԱՐԱԿ ԵՂՈՂ ՄԷԿ ՔԱՆԻ ՎՇՏԱԿՐՈՒԹԻՒՆՆԵՐ։

Այժմ պիտի քննենք այն հինգ գլխաւոր վըշտակրութիւնները, որք ծննդական յօրինուածքը կը խանգարեն։

Տարփամոլութեան — խօթութեան արգանդի — դիւրախանդ ախտ — սատիրեան ախտ — և հարսնամոլութեան կամ արգանդի կտղուցք։ Այս երկու վերջինները կ՚ըսուին նաև խանդամոլութեան։

Այս վշտակրութեանց մէջ եղած տարբերութիւնն ալ այսպէս կը հաստատուի. — այսինքն տարփամոլութիւն կամ տարփական զառանցութիւնը՝ իրեն բնակարան ունի գլուխը, միւս չորս վշտակրութեանց բնակարանքն են ծննդական յօրինուածքը և յետնուղեղը։ Արգանդի խօթութիւնը, հարսնամոլութիւնը և Սատիրեան ախտը՝ ծննդական գործարանաց առաւելանութենէն և չափազանց գրգռականութենէն առաջ եկած խանգարման զոհ են. տարփամոլք՝ զառանցութեամբ իրենց երևակայութեան խաղալիք եղած են։ Վերջապէս տարփամոլը իւր կրից յայտնութեանը մէջ սուրբ է, մինչդեռ խանդամոլը այնպիսի խօսքերու և գործողութեանց կը պարապի, որք պարկեշտութիւնը կ՚արատաւորեն։

**ՏԱՐՓԱՄՈՂՈՒԹԻՒՆ** կամ տարփական զառանցութիւնը անխտիր երկու սեռն ալ կը հարուածէ։ Տարփամոլը իրաւացի կամ գաղափարական նպատակի մը համար սիրով կը բորբոքի. միմիայն սէր, երջանկութիւն, քաղցր հեշտութիւնք կերազէ, և մի տարփանօք, որ զինքը կը տոչորէ, անդադար կը մատուցանէ այս նպատակին իւր եռանդուն երկրպագութիւնները։

Զինքը յուզող յուսոյ կամ անհանգստութեան համեմատ, իւր աչքերն ալ երբեմն եռանդալից և կենդանի կըլլան, երբեմն ալ նուաղեալ կամ լի տրտմութեամբ։ Քիչ անգամ տարփական զառանցութիւնը կը յառաջադիմէ, հիւանդը խորին ապշութեանց մէջ կանկանի. և այս միջոցին՝ կը խօսի, ձեւեր կ'ընէ և խիստ տյլանդակ երազներով կը տանջուի։ Հաստատ դիտաւորութիւնը երթալով զինքը աւելի կը չարչարէ. կը մոռնայ, կը լքանէ ամեն բան, ծնողք, բարեկամ և միմիայն իւր սիրոյն կը պարապի. բոլորովին իւր կրից մէջ ընկղմելով, իւր շուրջը գտնուող աշխարհին վրայ ալ ամենեւին ուշադրութիւն չընէր. ամեն բան կարհամարհէ և ամեն բանէ կը հեռանայ. կառանձնանայ և խիստ տարօրինակ բաներու կարող կը ցուցնէ ինքզինքը։ Տարփամոլը իւր կրից յայտնութեանը մէջ սուրբ է. վասնզի ամեն կենսական գործնէութիւն ուղեղին մէջ կեդրոնացած է. խիստ քիչ անգամ կը պատահի որ ծննդական գործարանաց հաղորդուի։ Հետեւեալ պատմութիւնը մեզի օրինակ մ'է։

Քսան երեք–քսան և չորս տարեկան երիտասարդ մը վաճառականի մը քով դրագիր դրուելով, յան-

կարծ իրեն տիրոջը կնկան սիրահարեցաւ. բայց ինքզինքը վատ կը համարէր, եթէ անհաւատարիմ գտնուէր տիրոջը, որուն զինքը իւր բուն որդւոյն նման կը խնամէր. այս փափուկ զգացումը՝ իւր սէրը իւր սրտին խորը մղեց: Սակայն կնոջը միշտ սիրած քայլեր կ'առնէր, զինքը գիշեր և ցորեկ կը տոչորէր և միտքի խանգարում մը կը պատճառէր: Փերրէ ընթերցումը բոլորովին իր գլուխը դարձուց. այս խեղճ տղան, որուն միտքը տակաւին իւր դաստուած բարի խրատուքը չըջապատեալ էր, ինքզինքը Հիփոլիթէս երեւակայեց, իւր տիրոջը մատղաչ կին Փեդրի և միամիտ վաճառականն ալ Թէզէի տեղ դրաւ: Հիփոլիթէսէն աւելի սիրավառ և ոչ նուազ առաքինի այս տղան օր մը ինքզինքը կարծեցեալ Թէզէի ոտքը կը նետէ և հոմերական սաստուածքով անոր այսպէս կը բանայ իւր գաղտնիքը:

— Հաչակաւորդ Թէ'զէ. կերդնում յանուն Ստիքսի որ յանցանքը տակաւին գործուած չ'է. Հիփոլիթէսի սրբութիւնը՝ Փեդրայի մաքրութեան վաւերական ապացոյցն է, սակայն Թէեւ մինչեւ հիմա ձեր կնոջը աղաչանաց և արտասուացը կարողացայ դիմանալ, բայց սիրոյ և պարտաւորութեան մէջ զայրացեալ այս կռիւը շարունակելու ալ զօրութիւնս չը մնաց և շատ հաւանական է որ ընկճիմ, եթէ զիս անոր ներկայութենէն չը հեռացնես:» Աւելորդ է ըսել մէկ Թէզէ վաճառականը որչափ զարմացաւ. և խելոյն հեռացուց տարփամոլը քննանկեան յարկէն, ուր անտարակոյս անկարգութիւն մը պիտի պատահէր:

Երբոր տարփամոլը անմեղանձնայ չ'ուզէ, պէտք է դիմել երկարատեւ դարձ խրատուց, խնդրաց

գործող և բորբոքող ըմպելեաց, բանջարեղէն կե-րառութեանց, լուծիչ դեղոց եւ. զբօսանքը, ճա-նապարհորդութիւնը, կազմական աշխատութիւննե-րը, որսորդութիւնը, հեծելավարժը, մարմնա-մարզը և բոլոր այն մարզերը, որք կազմական գոր-ծութիւնները 'ի շարժումն կը դնեն, միտքը իր բուռն գրաւումէն ազատելու յատկացեալ են։ Ամե-նէն ընտիր միջոցն է ամեն վտանգէ ազատ ուրիշ մէկ կիրք մը ծնուցանելն. զոր. նուագարանի, պատ-կերահանութեան, լուսանկարի և ասոնց նման ուրիշ բաներու հետաքրքիր ըլլալ։ Երբ տարփամոլին միտ-քը ուրիշ կէտի մը վրայ հաստատուի, այն ատեն բժշկուած է նա։

ԽՕԹՈՒԹԻՒՆ ԱՐԳԱՆԴԻ, Ոմանք կը կոչուի նա եւ ախտախտելոց ցաւ—ֆայծաղեանցու արգանդի գրգ-ռումէն, վշտակրութիւններէն և կարելի է անոր կարիքէն սկիզբն կ'առնու։ Այս գրգռումը տրա-գութեամբ գլխա—ողնայարական ներարդերուն կը հա-ղորդուի. վասնորոյ մէկ քանի բժիշկ կարծեցին թէ արգանդի խօթութիւնը ուղեղէն սկիզբն կ'առնու. բայց ասոնք բոլորովին բացառական պատահմունք-ներ են. իւր ճշմարիտ բնակարանն է արգանդը, ուսկից գրգռումը ուղեղին մէջ ճիւղեր կ'արձակէ։

Արգանդի խօթութեան արշաւանքը ընդհանրա-պէս արբունքէ ետքը կ'ըսկսի, և շրջման հասակի ատեն կ'աներեւութանայ. սակայն գրականապէս կը հաստատուի արգանդին՝ այս հիւանդութեան վրայ ունեցած ազդեցութիւնը։

Այս հիւանդութենէն բռնուած կանանց դիւ-րազգնութիւնք, մինչ անոնց ծննդական յօրին-ուածոյն մէջ անկարգութիւններ յայտնած են։

Արգանդի խօթութիւնը բազմաթիւ ձեւերով կ'արտայայտուի , թեթեւ նեարդական ձգտումէն մինչեւ լուսնոտամեան սոսկալի ջղձգարձներով կե-րեւայ : Փափուկ կանանց զգացած նեարդական քստմանց , տխրութեանց , եւ առանց պատճառի վը-հատութեանց շատերուն պատճառը արգանդի խօ-թութիւնն է : Այն սրտի արագաթնդիւնք . այն ջերմութեան ժամանք , այն ծնծակային մարմաջ-մունք , այն աղէաց կարկաչիւնք , այն յամր անձ-կութիւնք . այն առանց պատճառի հառաչանք նոյն-պէս արգանդի խօթութեան այլակերպութիւններն են . վասնզի այս հիւանդութիւնը դժբաղդաբար մեծամեծ քաղաքներու կանանց մէջ խիստ յաճախ-պատահական է . որք այնպիսի տեղւոյ մը մէջ կաց-ցին , ուր երեւակայութիւնը եւ զգայարանքները մշտնջենաւոր գրգռման մէջ են :

Արգանդի խօթութեան բազմաթիւ պատճառ-ները կնոջ նոյն իսկ խառնուածքէն եւ արգանդի կենսունակութիւնը աւելցնելու յատկացեալ ներքին եւ արտաքին գործօններէն ալ կը պատահին : Այս-պէս ցանկական չափազանցութիւնք կամ ճնշեալ ցանկութիւնք , թէ՛ ընթերցմամբ , թէ՛ տարփական իրաց տեսութեամբ ուղղոյ բազմակրկնակ բորբո-քումն , ոչ յագեցեալ սէր , ամուսնութեան փա-փագ ունենալով ամուրի մնալ ստիպուելու վիճակ , ջերմ բաղանեաց , թոնիրներու չարաչար գործած-մունք , երկարատեւ նստողական վիճակ , ներքին բանկոնակին ճնշումը , դաշտանի անկանոնաւորու-թիւնք եւն . եւն . ի վերայ այսր ամենայնի նեարդերը գրգռող իրաց չարաչար կերառութիւնք , որոց մէջ առաջին կարգը կը դասուին բարոյական առարկ

տպաւորութիւնք, մոլեռանդութիւնը, աւելորդապաշտութեան յիմարական սոսկումը, զառանցանք պատճառող ճգնաւորական մտածականք, ընդարմացումն եւն եւն․ խօթութիւն արգանդի կը պատճառեն ։

Ըստ մեծամեծ բժշկաց, ճգնաւորական կեանքը, պատշաճ և իրաւացի սահմանը անցնող կրօնական ուսումը, ամուսնութեան զրկումը արգանդի խօթութեան սովորական պատճառներ են ։ Փայծաղնացաւոտ կանանց բարոյականին ուշ դիր, և պիտի տեսնաս անոնց մէջ երեւակայական կարողութեան առատութիւն և դատողութեան վատթարութիւն․ ասոնք ընդհանրապէս չափազանց նեարդաւոր էակներ են, որոց դիւրահաւանութիւնը տղայութեան ատենէն պատրաստուած է ։

Տիտըրօ, որ մատղաշ աղջկանց տրուած խեղճ դաստիարակութեան վրայ կը զայրանար, կըսէր․ «կինը յինքենէ կը կրէ իւր ներսը գործարան մը, որնոր իւր երեւակայութեան մէջ կը գրգռէ ամեն տեսակ ցնորք և սոսկալի ստնգանք ։ Իր երիտասարդութեան ատեն արգանդի խօթութիւն ունեցող կինը իւր ծերութեան ատեն սուտ բարեպաշտօն կըլլայ ։»

Բժշկականութեան գործոց մէջ բազմաթիւ դէպքեր կան, որք մեր ըսածները կապացուցանեն ։ Արգանդի խօթութեան վրայ գրող ամեն բժիշկ կը միաբանին ըսել թէ կրօնաւոր կանանց, բարեպաշտուհեաց և միշտամուքի աղջկանց արգանդի խօթութեան շրջադարձը գրեթէ միշտ՝ զառանցանօք, տարփական բանդագուշանօք ընկերացեալ է․ վասն զի արգանդը զօրաւոր կերպով կազդէ ուղեղին

վրայ · արգանդի խօթութիւն ունեցող կին մը յուզմամբ կը սեղմէ երիկ մարդու մը ձեռքը , իսկ կնոջ մը ձեռքը հազիւ կը բռնէ ։

Արգանդի խօթութեան տենդը կը վերջանայ սովորաբար յօրանջմամբ , ջղային ձգտմամբ և նեարդական թուլութեան ուրիշ նշաններով , բայց ամենէն հաստատուն նշանն է արգանդի ցնցուղին և ծնծակին ներքին կողմէն գեղձերուն մաղասին քիչ կամ շատ անջատումը ։

Արգանդի խօթութիւն ունեցող կանանց մեծագոյն մասը իրենց բնական եղող ամօթխածութեան զօրութեամբ , նոյն իսկ խօթութեան ժամանակ ատեն , իրենց ծննդական զգայականութիւնը կրնան ծածկել ։ Սակայն իրենց մտերիմ բարեկամուհեաց և երբեմն ալ իրենց բժշկաց վստահացած գաղտնիքներէն բաւական կ'ապացուցուի այն կարեւոր դերը , որ ծննդական յօրինուածքը արգանդի խօթութեան մէջ կը խաղայ ։

ԴԱՐՄԱՆ ։ Բժշկութեան խրատանցը չըզպչելով՝ մենք կը մտածենք որ այս վշտակրութեան դարմանը առողջապահութեան կը վերաբերի և դեղագործական գործօններու գործածութիւնը մեծ օգուտ մը չը մատուցանէր ։ Երբ արգանդի խօթութիւնը հաստատակեալ , դժբաղդ կամ յագեցնելու անկարելի կրքէ մ՚առաջ կուգայ , այն ատեն ուրիշ դարմանէ օգուտ յուսալու չ'է բայց միայն զուարճութիւններէ , ճամբորդութիւններէ , կազմական մարզերէ և այն ամեն միջոցներէ , որք հիւանդութեան պատճառը կատարելապէս մոռցնել կուտան ։ — Երբ այս հիւանդութիւնը խանգարեալ երեւակայութեան մը անզգաստութենէ , աւելորդապաշտ գա-

ղաքարներէ՝ պատճառուած յիմարական երկիւղէ , միշտ խորհրդածող կեանքէ սնունդ կ'առնու , դարմանը բոլորովին բարոյական ըլլալու է այսինքն մըտաց բժշկութիւնը 'ի գործ դնելու է ։ —Արգանդի խօթութիւնը երբ սեռական բնածին յօժարութենէ , ցանկալեան հեշտութենէ յառաջ գայ , որնոր ամենէն աւելի ընդհանրականն է , ամուսնութեամբ գրեթէ միշտ կը բժշկուի . մանաւանդ երբ ամուսնութիւնը խօթացեալ կնոջ կամացն համաձայն ըլլայ ։

**ՊՐԻԱՊԵԱՆ ԱԽՏ** ։ Սա առնանդամուն՝ սաստիկ , տեւողական և շատ անգամ ալ առանց ցանկական փափաքանաց կանգնումն է ։ Այս ախտէն բռնուած անձը զուգաւորութեան մէջ հաճոյք մը չըզգալէ զատ ցաւ և վտանգ կ'ունենայ և երբեմն ալ սաստիկ արիւնահոսութիւնք կը պատճառեն ։ Երբ պրիապեան ախտը յետնուղեղի հիւանդութեան մը ախտանշանը չ'ըլլայ , այն ատեն կամ առնանդամուն ուղիղ բորբոքումէն , կամ Աֆրոտիզեանք ըսուած բորբոքարկու՝ ըմպելիներէ յառաջ կուգայ . առանց ազդեցութեանը տակ բորբոքեալ անդամը կ'այտոնու և ցաւալի կանգնում մը կ'ունենայ ։ Այն անձինները , որք իրենց անառակութիւնը յագեցնելու համար փօսփորէն կամ կանթարիդէն ըմպելիներ խմելու չեն երկնչիր , դժբաղդաբար այս ախտէն զոհ կ'երթան . վասնզի կանթարիդով կամ փօսփորով պատճառուած պրիապեան ախտը գրեթէ միշտ մահացու է ։

**ԾԱՏԻՒՐԵԱՆ ԱԽՏ** ։ Այս գարշելի ախտը , որոնք բարեբաղդաբար խիստ հազուադէպ է , իրեն յատկանիշ ունի . ծննդական անդամոց շարունակաբար այրումն և անյագուրդ ցանկասիրութիւն մը ,

որ անդադար յագենալ կը պահանջէ ։ Կը կարծուի որ այս հիւանդութեան աղբիւրն է յետնուղեղը և թէ ասկէ ծննդական յօրինուածոյն վրայ կը տարածի, որոնք մէկ մը այս ախտէն գրաւուի, ալ անձը անճանաչելի կըլլայ ․ իր երեւակայութիւնը միմիայն վաւաշոտ գաղափարներով կը սնանի, իր քունը տարփական երազներով լի են և ստէպ ստէպ երապափորձութեամբ կընդհատուին, երբ արթննայ, մարմինը սպառեալ կը գտնայ, սակայն ցանկութիւնը կը սաստկանայ, երեսը կարմիր, բերանը փրփրալից և աչքերը հրացայտ կըլլան, մարմնոյ եռանդեանց որս և անյագ ցանկութեան ենթակայ ըլլալով Սատիրեանը, պիղծ խօսքերու, չախորժելու գործերու կը պարապի և կը ջանայ, ինչ կերպով ալ ըլլայ, իր գազանական կիրքը յագեցնել ։

Սատիրեան ախտին գլխաւոր պատճառները կը համարուին մաղձալից–արիւնային խառնուածքը, արբունք, երկարատեւ ժուժկալութիւն, տարփական ընթերցմունք և խօսակցութիւնք, ցանկական կրաց տեսութիւնը, մորթի մէկ քանի հիւանդութիւնք, քոս, որքին և մանաւանդ բորը ։ Աղէկ դիտուած է որ որքինոտները և բորոտները մարմաջումը կըզգան, որուն սաստկութիւնը ստէպ կանգնումներ կը պատճառէ և երբեմն ալ սերմնական արձակմունք ։ Երիկամանց մէջ քար ունենալէն առաջ եկած վշտակրութիւնք, ափրոտիզեան նիւթեր և վերջապէս այն ամէն բան, որ ծննդական գործարանաց կենսունակութիւնը կը գրգռեն, Սատիրեան ախտի պատճառ մ՚են այն անձանց համար, որք նախապէս տրամադրեալ են անոր ։ Բժշկական Ընկերէն քաղուած դիտողութիւն մը Սատիրեանց

դանդաղեցուցիչ ցանկասիրութեան վրայ կրնայ աղէկ գաղափար մը տալ։

«Փրօվանցայի Որկոն քաղաքէն խեղճ մարդ մը նմանը չը տեսնուած մոլեգին Սատիւրեան ախտէ մը բռնուելով, մեզ աղաչեց որ զինքը զննեմ, կըսէ տօքթօր Գասլոլ. արդէն ծեր կնոջ մը խորհրդով եղինձի հունդերով, դալար սոխով և երկու տրամ կանթարիդով շինուած ըմպելի մը խմած էր. երբ մենք այս մարդը տեսանք, այս ըմպելիին զինքը ցանկութեամբ այնչափ կատաղի ըրած էր որ իւր նուաղեալ կինը իւր աստուծոյն վրայ երդուեալ ըրաւ թէ երկու գիշերուան մէջ լինեսուն և եօթն անգամ գիտած էր զինքը. ասկից 'ի զատ խեղճ մարդը մեր ներկայութեանը երէք անգամ գիջագործեց։ Այս տեսարանը զմեզ տրտմեցուց և այս մոլեգին ճռանդը յաղթահարելու համար պատուիրած դեղերնուս հակառակ, խեղճը մեր այցելութենէն վերջը մեռաւ։

ՀԱՐՍՆԱՄՈԼՈՒԹԻՒՆ կամ կտղուցք արգանդի, Սատիւրեան ախտը ինչպէս որ է առն համար, նոյնն է հարսնամոլութիւնը կնոջ համար. միայն՝ կնոջ իւր ծննդական յօրինուածոյն ազդեցութեանը տակ այրէն աւելի դիմանալէն, հարսնամոլութիւնը Սատիւրեան ախտէն աւելի սակաւ կը տեսնուի։

Արգանդի կտղուցքը երբեմն՝ ծնծակա-արգանդային անցքին նեարդական յօրինուածոյն մէջ վայրացած բորբոքման մը կուտային. բայց այսօր ընդհանրապէս ճանչցուած է որ այս գարշելի հիւանդութիւնը թէ՛ յետնուղեղին չափազանց գործնէութենէն և թէ՛ ծննդական գործարանաց կեդրոնական բորբոքումէն միանգամայն կախումն ունի։

Հարսնամոլութեան տրամադրիչ պատճառներն են, ամուլութիւն, ցանկական հեշտութեանց փափաք առանց զայն յագեցնելու կարող ըլլալու, միշտ մնալ ներկայ եղող հեշտասիրական յիշատակը, ծննդական անդամները գրգռող նիւթոց գործածութիւնը, ծնծակին շուրջը և մէջը և որբանոցին շուրջը տեղի ունեցած որքինները, կղնոյրէն չափազանց երկայնութիւնը · եւ : Ախտանիշներն են տրտմութիւն, առանձնանալն, ծննդական գործարանաց այտուցն և մարմաջումն : Հարսնամոլը առջի բերան կը ջանայ զինքը գրաւող բորբոքիչ եռանդեանց դիմանալ, բայց չը կրնալով 'ի գլուխ հանել, զանոնք գոհացնելու համար կ'առանձնանայ : Երբ էրիկ մարդու մը ներկայութեանը գտնուի, իր միտքը կը մոլորի : իր կամքը, իր ամօթխածութիւնը կը նուաղին, ամեն պարկեշտութիւն կ'արհամարհէ, և ոչ ինչ մը կարող է զինքը սանձել, իր ձեւերը և իր լեզուն սահման չ'են ճանչնար : Այն ատեն իր ծննդական անդամները կ'ուռենան, կը բորբոքին և գարշահոտ խոնաւութիւն մը կ'արձակեն : Ընդհանրապէս անդամոյն կրած մարմանջմունք և արգանդի ցնցուղքն ամփոփումը կը պատճառեն կաթնանման խոնաւութիւն մը, որնար մաղասաւոր փորախարերէն և ծընծակա–ցնցուղային գեղձերէն կ'արտադրուի :

Հարսնամոլներուն դիակաց զննութեամբը յայտնի եղած է որ անոնց ձուարանները և արգանդը միշտատեւ բորբոքմամբ ուռեցած են : Այս աղջկերեաց շատերուն դիակները հիւանդանոցաց մէջ հերձնուելով տեսնուած են որ անոնց ծննդական մաղասաւոր թաղանթները ընդհանրապէս բորբոքած և թարախալից խոնաւութիւն մ'անջատած են : Երբ

նընդական անդամներնին մեծապէս ընդլայնած էին, պատառուած շատ մը կէտեր յայտնի կը ցուցընէին այն խիստ միջոցները, զորս հարսնամոլները գործածած էին իրենց սոսկալի կիրքը յագեցնելու համար ։

Քոլլըրէ բժիշկը կնոջ մը վրայ խօսելով կըսէ թէ այս կինը իւր ծննդական անդամոց մէջ կրած մարմաջմանց չը կրնալով դիմանալ, մէկ գիշերուան մէջ մինչեւ տասն և վեց զուգաւորութիւն կը գործէր ։

Կալլ կը պատմէ թէ արգանդի կողուզը ունեցող կին մը իւր էրկանը մահուընէն մէկ քանի օր ետքը ջղաձգութեամբ բռնուեցաւ ։ Իւր գլուխը և ողնայարը սաստկապէս յետ կոյս նետուելով՝ ընդհանուր ըմբռնման կը նմանէր ։ Քսան և հինգ երեսուն վայրկենէ ետքը այս զարհուրելի ճգնաժամը կը վերջանար հեշտամիրական յափշտակութեամբ մը և ծննդական անդամներէն առատ խոնաւութիւն մ'անջատուելով ։ Այս կինը թէև բնականապէս պարկեշտ էր, բայց ժամանաց միջոցին բոլորովին իւր ամօթխածութիւնը կը կորսնցնէր ։ եռանդուն աչօք՝ կծկուած դիմօք, կիսաբաց բերանով, չըող չնչաւորութեամբ և վավաշոտ ձեւերով անպարկեշտ խօսքեր կ'արձակէր ։ վերջապէս այս զայրոյցքը կը չիջանէր ծնծակէն ելած առատ մաղասներու հոսմամբ ։ Ժամանքը անցնելէն վերջը հարսնամոլը իւր վիճակին վրայ մեծապէս ամչնալով և մէկէ մը տեսնուելու չը համարձակելով իւր տունը կը քաշուէր ։ Երկրորդ ամուսնութիւն մը զինքը բոլորովին բժշկեց ։

Երբեմն՝ այն խեղճ կանայք, որք կը հաւատային սանակերպ գիշերական ոգիի մը հետ ընկողն-

մանիլ, անոնք որ կերեւակայէին ներկայ գտնուիլ վհկաց գիշերական հեշտալից տեսարաններուն․ այս տեսակ կանանց ամենքն ալ արգանդիւ ախտացեալ կամ հարսնամոլ էին ընդհատեալ ճգնաժամուք։ Դիտողութեան առնուած այս ամեն դէպքերէն կը հետեւի թէ այս ծննդական ջղախտը արական սեռէն աւելի իգական սեռին սովորական է, և թէ ախտանիշներուն սաստկութեանը նայելով, սատիրեան ախտը հարսնամոլութեան մանրակերտն է։

Այն կանայք, որք ծննդական հարուստ գործարաններ ունին, որք զուգաւորելու յաճախամէտ գաղափարով մը կապրին, և որք զիրենք տռչորող ցանկութիւնը յագեցնելու 'ի զուր կը ջանան, արգանդի կտղուցքէ բռնուելու սպառնացեալ են։ Եթէ ցանկութիւնը յագեցուի, կըսեն բժիշկ, հիւանդութիւնը բնաւ չը յայտնուիր, վասնզի հարսնամոլութիւնը երբէք ծանրացած չէ այն աղջկանց վրայ, որք իրենց տարփական յօժարութեանց դէմ սանձարձակ կը գտնուին։ Ուստի սաստիկ բայց ճնշեալ ցանկութիւն ունեցող աղջկանց մէջ որոնելու է հարսնամոլները, որոց սոսկալի յուզմունքը և կտղուցքը զզուանք և սոսկումն կ'ազդեն։

Հարսնամոլութեան և սատիրեան ախտին դարմանը միեւնոյն է․ այսինքն ծննդական գործարանաց կենսունական զօրութիւնը նուազցնելու, չափաւորելու անոնց մէջ տեղի ունեցած բորբոքումը բուժելու, հիւանդին երեւակայութեանը վրայ հըզօրագոյնս ազդելու, և զինքը տռչորող տխրազգած կիրքը զարթուցանող կամ անոր սնունդ մատուցանող բոլոր խրերը իւր մտքէն հեռացնելու յատկացեալ միջոցներ 'ի գործ դնելու է։ Ուստի երբ սա-

տիւրեան ախտը և հարսնամոլութիւնը չափազանց ծննդական գործնէութենէն կախումն ունենայ, պէտք է արիւն առնել, տզրուկ փակցնել, երկարատեւ գաղջ լոգանք ընել, մէջքի վրայ սառն կապել, հակափրոդիտեան ըմպելեաց դիմել, որպէս են, բորակաւոր շիճուկ, թթու լեմոնատ, զովացուցիչ չորս տեսակ հունդերու եմալշոր, ափիոն եւն, վերջապէս բանջարեղէն ուտել. և ամեն տեսակ գըրգռիչ ուտելիքներէ և ըմպելիքներէ հեռու կենալ։ Ընդհակառակը երբ բորբոքումը ծննդական գործարանաց մէջ սահմանափակ է և մինչդեռ մարմնոյն մնացեալ մասը բոլորովին սպառման և տկարութեան մէջ ըլլայ. այն ատեն կազդուրիչ և ապաքինիչ դեղերը յաջողութեամբ կը գործածուին։ Բայց երբ հարըսնամոլութիւնը բռնի ժուժկալութենէ և սեռական միաւորութեան մոլեգին փափաքէ մը յառաջ եկած է. այն ատեն ամուսնութեան դիմելու է, վասնզի այս է նախամեծար դեղը։ Հետեւեալ դիտողութիւնը, որ նոր հազարաւորներու մէջէն ընտրուած է. անժխտելի ապացոյց մ'է ասոր։

Ալիպեռ բժիշկը հարսնամոլութենէ բռնուած մատղաշ օրիորդի մը այցելութիւն ընելու կանչուեցաւ։ Ծնողքը հաւատարմաբար նկարագրելով իրենց աղջկան ողբալի հիւանդութիւնը, ըսին բժիշկին թէ հիւանդութեան ժամանաց ատեն ամօթխածութիւնը բոլորովին կորսնցնելով, դժնդակ պագշոտութեան գործողութեանց կը պարապի։ Այս դժբաղդ օրիորդը տանը ներքին դատիկոններէն մէկուն մէջ գոցուած կը պահուէր. վասնզի երիկ մարդու մը տեսութիւնը միայն բաւական էր իր արգանդի կըռղուցքը գրգռելու։ Ալիպեռ հարսնամոլին բանտար-

կուած դստիկոնը երթալով, իրեն եղած նկարագրութեան հաւատարմութեան վկայ եղաւ․ ամենապիղծ խօսքեր և ձեւեր տեղի ունեցան, մինչեւ որ ինքը դուրս ելաւ։ Այն ատեն լռաւ ծնողացը։

«Հիւանդութիւնը շատ յառաջադիմութիւն ըրած է, բայց անբժշկելի ըլլալու չափ չ'է, անմիջապէս ասոր դարման ընելու է։ Ըստ իս միմիայն դեղ մը կայ, այն է ամուսնութիւնը․ բայց կարելի եղածին չափ շուտ, վասնզի վայրկեանները շատ դանկագին են և հիւանդութիւնը երթալով աւելի կը սաստկանայ, և եթէ կուզէք ձեր աղջիկը ազատել, աճապարեցէք․ փրկութեան մի միայն միջոց մ'ունի, ամուսնութիւն։»

Հարսնամոլը որ ականջը փականքին ծակին դընելով բժշկին խօսակցութիւնը մտիկ կ'ընէր, անոր խօսքերուն իմաստը հասկցաւ, մէկէն միտքը բան մ'եկաւ, և նոյն օրը իր հայրենական տունէն փախաւ։ Ծնողքը սպարապ տեղը մէկ քանի շաբաթներ աշխատեցան փախստականը գտնալու։ Վերջապէս իրիկուն մը երբ Ալիպէր ոտքով մայրաքաղաքին փողոցներուն մէկէն կ'անցնէր, տեսաւ այն երիտասարդուհի ազնուապետականը որ տռփական արհեստը կը գործէր, և մէկէն ճանչցաւ, թէեւ նա կերպարանքը փոխած էր։

«Ինչ կ'ընես հոս խեղճ արարած, ըսաւ անոր խիստ ձայնով մը․ —Տօքթօր, քու պատուերդ կը կատարեմ, ինքզինքս կը բժշկեմ, պատասխանեց հարսնամոլը ժպտելով մը։»

Արդարեւ ամիս մը ետքը աղջիկը ցանկական հեշտութենէ յագենալով իւր ծնողաց տունը դար-

ցաւ բոլորովին բժշկուած ․ վաղ ամուսնութիւն մը անոր փախստեան ամօթը խսպառ մոռացութեան մէջ թաղեց ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ․

### ԳԻՋԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ԻԲՐ ՊԱՏՃԱՌ ԱՄԼՈՒԹԵԱՆ ․

*Երկու սեռից մէջ ալ, առանձնակի հեշտութեանց յօժարութիւնը չըկարծուածէն աւելի յաճախադէպ պատճառ մ'է ամլութեան, մանաւանդ երբ այս սովորութիւնը՝ երիտասարդութիւնը սպառած և գործարանները ապականած ըլլայ ։ Այս ամօթալի մոլութեան պարապող երիտասարդք ըստոյգ ախտանիշներ չունենալով, ծնողաց՝ զգուշութեան նշաններ չկրնար տրուիլ ։*

*Ընդհանրապէս մեծ քաղաքաց մէջի գիշերօթիկ դպրոցներու, վանքերու ևն ևն․ մէջն է որ այս աղետալից սովորութիւնը իւր չարիքը կը շրջաբերէ ։ Հոն տեղուանք կը տեսնուին այս մոլութեանը պարապող երիտասարդ անձինք, որ ընկերութենէ կը փախչին և առանձին տեղեր կը փնտռեն, որպէսզի իրենց մոլութիւնը յագեցնեն․ տժգոյն, թմբրած, ծոյլ, երկչոտ, վատ կըլլան, բարոյականին նոյնպէս ալ կազմականին մէջ վատթարացած ։ Իրենց մարմինը կոր, իրենց գնացքը երերուն են, իրենց աչքերը խորը գնացած, իրենց ձեւեր նրբացած են, իրենց անկենդան ճակտին վրայ մոլութեան յառաջադիմութիւնը կը կարդացուի, և եթէ ամուսնութիւնը զիրենք այս ամօթապարտ սովորութենէն*

վրայ. արգանդի խօթութիւն ունեցող կին մը յուղ-մանք կը սեղմէ՝ երիկ մարդու մը ձեռքը, իսկ կնոջ մը ձեռքը հազիւ կը բռնէ։

Արգանդի խօթութեան տենդը կը վերջանայ սովորաբար յօրանջմամբ, ջղային ձգտմամբ և նեար-դական թուլութեան ուրիշ նշաններով, բայց ամե-նէն հաստատուն նշանն է արգանդի ցնցուղին և ծնծակին ներքին կողման գեղձերուն մաղասին քիչ կամ շատ անջատումը։

Արգանդի խօթութիւն ունեցող կանանց մեծա-գոյն մասը իրենց բնական եղող ամօթխածութեան զօրութեամբ, նոյն իսկ խօթութեան ժամանակ ատեն, իրենց ծննդական զգայականութիւնը կրնան ծածկել։ Սակայն իրենց մտերիմ բարեկամուհեաց և երբեմն ալ իրենց բժշկաց վստահացած գաղտնիք-ներէն բաւական կ'ապացուցուի այն կարեւոր դե-րը, որ ծննդական յօրինուածքը արգանդի խօ-թութեան մէջ կը խաղայ։

ԴԱՐՄԱՆ։ Բժշկութեան իրաւանցը չըդպչելով մենք կը մտածենք որ այս վշտակրութեան դարմա-նը առողջապահութեան կը վերաբերի և դեղագոր-ծական գործոններու գործածութիւնը մեծ օգուտ մը չը մատուցանէր։ Երբ արգանդի խօթութիւնը հակառակեալ, դժբաղդ կամ յագեցնելու անկարե-լի կրքէ մ'առաջ կուգայ, այն ատեն ուրիշ դար-մանէ օգուտ յուսալու չ'է բայց միայն զուարճու-թիւններէ, ճամբորդութիւններէ, կազմական մար-զերէ և այն ամեն միջոցներէ, որք հիւանդութեան պատճառը կատարելապէս մոռցնել կուտան։ — Երբ այս հիւանդութիւնը խանգարեալ երեւակայու-թեան մը անզգաստութենէ, աւելորդապաշտ փա-

ղալքարներէ՝ պատճառուած յիմարական երկիւղէ , միշտ խորհրդածող կեանքէ սնունդ կ'առնու , դարմանը բոլորովին բարոյական ըլլալու է այսինքն մը-տաց բժշկութիւնը 'ի գործ դնելու է ։ —Արգանդի խօթութիւնը երբ սեռական բնածին յօժարութենէ , ցանկալեան հեշտութենէ յառաջ գայ , որնոր ամենէն աւելի ընդհանրականն է , ամուսնութեամբ գրեթէ միշտ կը բժշկուի . մանաւանդ երբ ամուսնութիւնը խօթացեալ կնոջ կամացն համաձայն ըլլայ ։

**ՊՐԻԱՊԵԱՆ ԱԽՏ ։** Աս առնանդամին՝ սաստիկ , տեւողական և շատ անգամ ալ առանց ցանկական փափաքանաց կանգնումն է ։ Այս ախտէն բռնուած անձը զուգաւորութեան մէջ հաճոյք մը չըզգալէ զատ ցաւ և վնասակ կ'ունենայ և երբեմն ալ սաստիկ արիւնահոսութիւնք կը պատճառեն ։ Երբ պրիապեան ախտը յետնուղեղի հիւանդութեան մը ախտանշանը չ'ըլլայ , այն ատեն կամ առնանդամին ուղիղ բորբոքումէն , կամ Ափրոտիզեանք ըսուած բորբոքարկու՝ ըմպելիներէ յառաջ կուգայ . ասոնց ազդեցութեանը տակ բորբոքեալ անդամը կ'այտնու և ցաւալի կանգնում մը կունենայ ։ Այն անմիտները , որք իրենց անառակութիւնը յագեցնելու համար փոսփորեղէն կամ կանթարիտէն ըմպելիներ խմելու չեն երկնչիր , սովորաբար այս ախտէն զոհ կ'երթան . վասնզի կանթարիտով կամ փոսփորով պատճառուած պրիապեան ախտը գրեթէ միշտ մահացու է ։

**ԾԱՏԻՐԵԱՆ ԱԽՏ ։** Այս զարշելի ախտը , որնոր բարեբաղդաբար խիստ հազուադէպ է , իրեն յատկանիշ ունի . ծննդական անդամոց շարունակաբար այտումն և անյագուրդ ցանկասիրութիւն մը ,

որ անդադար յագենալ կը պահանջէ ։ Կը կարծուի որ այս հիւանդութեան աղբիւրն է յետնուղեղը և թէ ասկէ ծննդական յօրինուածոյն վրայ կը տարածի , որոնք մէկ մը այս ախտէն գրաւուի , աչանձը անճանաչելի կըլլայ ․ իր երեւակայութիւնը միմիայն վաւաշոտ գաղափարներով կը սնանի , իր քունը տարփական երազներով լի են և ստէպ ստէպ երազափորձութեամբ կընդհատուին , երբ արթննայ , մարմինը սպառեալ կը գտնայ , սակայն ցանկութիւնը կը սաստկանայ , երեսը կարմիր , բերանը փրփրալից և աչքերը հրացայտ կըլլան , մարմնոյ եռանդեանց որս և անյագ ցանկութեան ենթակայ ըլլալով Սատիրեանը , պիղծ խօսքերու , չախորժելու գործերու կը պարապի և կը ջանայ , ինչ կերպով ալ ըլլայ , իր գազանական կիրքը յագեցնել ․

Սատիրեան ախտին գլխաւոր պատճառները կը համարուին մաղձալից–արիւնային խառնուածքը , արբունք , երկարատեւ ժուժկալութիւն , տարփական ընթերցմունք և խօսակցութիւնք , ցանկական խրաց տեսութիւնը , մորթի մէկ քանի հիւանդութիւնք , քոս , որքին և մանաւանդ բորը ։ Աղէկ դիտուած է որ որքինոտները և բորոտները մարմաջումմը կըզգան , որուն սաստկութիւնը ստէպ կանգնումներ կը պատճառէ և երբեմն ալ սերմնական արձակմունք ։ Երիկամանց մէջ քար ունենալէն առաջ եկած վշտակրութիւնք , ափրոտիդեան նիւթեր և վերջապէս այն ամեն բան , որ ծննդական գործարանաց կենսունակութիւնը կը գրգռեն , Սատիրեան ախտի պատճառ մ՚են այն անձանց համար , որք նախապէս տրամադրեալ են անոր ։ Բժշկական Թերթերէն քաղուած դիտողութիւն մը Սատիրեանց

դանդաղեցուցիչ ցանկասիրութեան վրայ կրնայ աղէկ դաղուբար մը տալ։

«Փրօվանցայի Որկոն քաղաքէն խեղճ մարդ մը Նմանը չը տեսնուած մոլեգին Սատիւրեան ախտէ մը բռնուելով, մեզ աղաչեց որ զինքը զննեմ, կըսէ տօքթօր Գասյրօլ. արդէն ծեր կնոջ մը խորհրդով եղինճի հունտերով, դալար սոխով և երկու տրամ քամփուրով շինուած ըմպելի մը խմած էր. երբ մենք այս մարդը տեսանք, այս ըմպելւոյն զինքը ցանկութեամբ այնչափ կատաղի ըրած էր որ իւր նուաղեալ կինը իւր աստուծոյն վրայ երդումն ըրաւ թէ երկու գիշերուան մէջ յիսուն և եօթն անգամ գիտցած էր զինքը. ասկից 'ի զատ խեղճ մարդը մեր ներկայութեանը երէք անգամ գիջագործեց։ Այս տեսարանը զմեզ սրտմեցուց և այս մոլեգին նուանդը յաղթահարելու համար պատուիրած դեղերնուս հակառակ, խեղճը մեր այցելութենէն վերջը մեռաւ։

ՀԱՐՍՆԱՄՈԼՈՒԹԻՒՆ կամ կտղուցք արգանդի, Սատիւրեան ախտը ինչպէս որ է առն համար, նոյնն է հարսնամոլութիւնը կնոջ համար. միայն՝ կնոջ իւր ծննդական յօրինուածոյն ազդեցութեանը տակ այրէն աւելի դիմանալէն, հարսնամոլութիւնը Սատիւրեան ախտէն աւելի ստէպ կը տեսնուի։

Արգանդի կտղուցքը երբեմն՝ ծնծակա-արգանդային անցքին նկարագրական յօրինուածոյն մէջ վայրացած բորբոքման մը կուտային, բայց այսօր ընդհանրապէս ճանչցուած է որ այս գարշելի հիւանդութիւնը թէ՛ յետնուղեղին չափազանց գործնէութենէն և թէ՛ ծննդական գործարանաց կենսունական բորբոքումէն միանգամայն կախումն ունի։

Հարսնամոլութեան տրամադրիչ պատճառներն են , ամուլութիւն , ցանկական հեշտութեանց փափագ առանց զայն յագեցնելու կարող ըլլալու , միշտ մնաց ներկայ եղող հեշտասիրական յիշատակք, ծննդական անդամները գրգռող նիւթոց գործածութիւնը , ծնծակին չուրջը և մէջը և որբանին չուրջը տեղի ունեցած որքիւնները , նիմֆօրէէն չափազանց երկայնութիւնը · եւն : Ախտանիշներն են տռփութիւն , առանձնանալն , ծննդական գործարանաց այտուցումն և մարմաջումն : Հարսնամոլը առջի բերան կը ջանայ զինքը գրաւող բորբոքիչ եռանդեանց դիմանալ , բայց չը կրնալով 'ի գլուխ հանել , զանոնք գոհացնելու համար կ'առանձնանայ : Երբ էրիկ մարդու մը ներկայութեանը գտնուի , իր միտքը կը մոլորի : իր կամքը , իր ամօթխածութիւնը կը նուազին , ամեն պարկեշտութիւն կ'արհամարհէ , և ոչ ինչ մը կարող է զինքը սանձել , իր ձեւերը և իր լեզուն սահման չ'են ճանչնար : Այն ատեն իր ծննդական անդամները կ'ուռենան , կը բորբոքին և գարշահոտ խոնաւութիւն մը կ'արձակեն : Ընդհանրապէս անդամոյն կրած մարմանջմունք և արգանդի ցնցումքն ամփոփումը կը պատճառեն կաթնանման խոնաւութիւն մը , որնար մաղասաւոր փորախարերէն և ծնծակա-ցնցուղայքն գեղձերէն կ'արտադրուի :

Հարսնամոլներուն դիակաց զննութեամբը յայտնի եղած է որ անոնց ձուարանները և արգանդը միշտատեւ բորբոքմամբ ուռեցած են : Այս աղօրինեկաց շատերուն դիակները հիւանդանոցաց մէջ հերձնուելով տեսնուած են որ անոնց ծննդական մազաւոր թաղանթները ընդհանրապէս բորբոքած և թարախային խոնաւութիւն մ'անջատած են : Ըն-

ննդական անդամներնին մեծապէս ընդլայնած էին, պատառուած շատ մը կէտեր յայտնի կը ցուցընէին այն խիստ միջոցները, զորս հարսնամոլները գործածած էին իրենց սոսկալի կիրքը յագեցնելու համար։

Քորբըրէ բժիշկը կնոջ մը վրայ խօսելով կըսէ թէ այս կինը իւր ծննդական անդամոց մէջ կրած մարմաջմանց չը կրնալով դիմանալ, մէկ գիշերուան մէջ մինչեւ տասն և վեց զուգաւորութիւն կը գործէր։

Կալլ կը պատմէ թէ արգանդի կողուցք ունեցող կին մը իւր երկանը մահուընէն մէկ քանի օր ետքը ջղաձգութեամբ բռնուեցաւ։ Իւր գլուխը և ողնայարը սաստկապէս յետ կոյս նետուելով, Նիմֆոմանոյ ըմբռնուման կը նմանէր։ Քսան և հինգ եռեսուն վայկենէ ետքը այս զարհուրելի ճգնաժամը կը վերջանար հեշտասիրական յափշտակութեամբ մը և ծննդական անդամներէն առատ խոնաւութիւն մ'անջատուելով։ Այս կինը թէև բնականապէս պարկեշտ էր, բայց ժամանաց միջոցին բոլորովին իւր ամօթխածութիւնը կը կորսնցնէր. եռանդուն աչօք, կծկուած դիմօք, կիսաբաց բերանով, չչող չնչառութեամբ և վավաշոտ ձեւերով անպարկեշտ խօսքեր կ'արձակէր. վերջապէս այս զայրուցքը կը չիջանէր ծնծակէն ելած առատ մաղասներու հոմամբ։ Ժամանքը անցնելէն վերջը հարսնամոլը իւր վիճակին վրայ մեծապէս ամչնալով և մէկէ մը տեսնուելու չը համարձակելով իւր տունը կը քաշուէր։ Երկրորդ ամուսնութիւն մը զինքը բոլորովին բժշկեց։

Երբեմն՝ այն խեղճ կանայք, որք կը հաւատային աանակերպ գիշերական ոգիի մը հետ ընկող-

մանիլ, անոնք որ կերեւակայէին ներկայ գտնուիլ վհկաց գիշերական հեշտալից տեսարաններուն · այս տեսակ կանանց ամենքն ալ արգանդի խտացեալ կամ հարսնամոլ էին ընդհատեալ ճգնաժամուք։ Դիտողութեան առնուած այս ամեն դէպքերէն կը հետեւի թէ այս ծննդական ջղախտը արական սեռէն աւելի իգական սեռին սովորական է, եւ թէ ախտանիշներուն սաստկութեանը նայելով, սատիւրեան ախտը հարսնամոլութեան մանրակերտն է։

Այն կանայք, որք ծննդական հարուստ գործարաններ ունին, որք զուգաւորելու յաճախամէտ գաղափարով մը կապրին, եւ որք զիրենք տռչորող ցանկութիւնը յագեցնելու 'ի զուր կը ջանան, արգանդի կողուցքէ բռնուելու սպառնացեալ են։ Եթէ ցանկութիւնը յագեցուի, կըսեն բժիշկ, հիւանդութիւնը բնաւ չըյայտնուիր, վասնզի հարսնամոլութիւնը երբէք ծանրացած չէ այն աղջկանց վրայ, որք իրենց տարփական յօժարութեանց դէմ սանձարձակ կը գտնուին։ Ուստի սաստիկ բայց ճնշեալ ցանկութիւն ունեցող աղջկանց մէջ որոնելու է հարըսնամոլները, որոց սակայն յուզմունքը եւ կողուցքը զզուանք եւ սոսկումն կ'ազդեն։

Հարսնամոլութեան եւ սատիւրեան ախտին դարմանը միեւնոյն է · այսինքն ծննդական գործարանաց կենսունական զօրութիւնը նուազցնելու, չափաւորելու անոնց մէջ տեղի ունեցած բորբոքումը բուժելու, հիւանդին երեւակայութեանը վրայ հըզօրագոյնս ազդելու, եւ զինքը տռչորող տխրազգած կիրքը զարթուցանող կամ անոր սնունդ մատուցանող բոլոր իրերը իր մտքէն հեռացնելու յատկացեալ միջոցներ 'ի գործ դնելու է։ Ուստի երբ սա-

տիւրեան ախտը և հարսնամոլութիւնը չափազանց ծննդական գործնէութենէն կախում ունենայ, պէտք է արիւն առնել, տզրուկ փակցնել, երկարատեւ գաղջ լոգանք ընել, մէջքի վրայ սառն կապել, հակափրոդիտեան ըմպելեաց դիմել, որպէս են, բորակաւոր չինուկ, թթու լեմոնատ, զովացուցիչ չորս տեսակ հունդերու եմաշուր, ափիոն եւն, վերջապէս բանջարեղէն ուտել. և ամեն տեսակ գրգռիչ ուտելիքներէ և ըմպելիքներէ հեռու կենալ։ Ընդհակառակը երբ բորբոքումը ծննդական գործարանաց մէջ սահմանափակ է և մինչդեռ մարմնոյն մնացեալ մասը բոլորովին սպառման և տկարութեան մէջ ըլլայ. այն ատեն կազդուրիչ և ապաքինիչ դեղերը յաջողութեամբ կը գործածուին։ Բայց երբ հարսնամոլութիւնը բուն ժուժկալութենէ և սեռական միաւորութեան մոլեգին փափաքէ մը յառաջ եկած է. այն ատեն ամուսնութեան դիմելու է, վասնզի այս է նախամեծար դեղը։ Հետեւեալ դիտողութիւնը, որնոր հազարաւորներու մէջէն ընտրուած է. անժխտելի ապացոյց մ'է ասոր։

Ալիպեր բժիշկը հարսնամոլութենէ բռնուած մատղաշ օրիորդի մը այցելութիւն ընելու կանչուեցաւ։ Ծնողքը հաւատարմաբար նկարագրելով իրենց աղջկան ողբալի հիւանդութիւնը, ըսին բժիշկին թէ հիւանդութեան ժամանաց ատեն ամօթխածութիւնը բոլորովին կորսնցնելով, դժնդակ պագշոտութեան գործողութեանց կը պարապի։ Այս դժբաղդ օրիորդը տանը ներքին դստիկոններէն մէկուն մէջ գոցուած կը պահուէր. վասնզի էրիկ մարդու մը տեսութիւնը միայն բաւական էր իւր արգանդի կըտղուցքը գրգռելու։ Ալիպեր հարսնամոլին բանտար-

կուած դստիկոնը երթալով , իրեն եղած նկարագրութեան հաւատարմութեան վկայ եղաւ · ամենապիղծ խօսքեր և ձեւեր տեղի ունեցան , մինչեւ որ ինքը դուրս ելաւ ։ Այն ատեն ըսաւ ծնողացը ։

«Հիւանդութիւնը շատ յառաջադիմութիւն ըրած է , բայց անբժշկելի ըլլալու չափ չ'է , անմիջապէս ասոր դարման ընելու է ։ Ըստ իս միմիայն դեղ մը կայ , այն է ամուսնութիւնը · բայց կարելի եղածին չափ շուտ , վասնզի վայրկեանները շատ դանկագին են և հիւանդութիւնը երթալով աւելի կը սաստկանայ , և եթէ կուզէք ձեր աղջիկը ազատել , անձապարեցէք · փրկութեան մի միայն միջոց մ'ունի , ամուսնութիւն ։»

Հարսնամորը որ ականջը փականքին ծակին դընելով բժշկին խօսակցութիւնը մտիկ կ'ընէր , անոր խօսքերուն իմաստը հասկցաւ , մէկէն միտքը բան մ'եկաւ , և նոյն օրը իր հայրենական տունէն փախաւ ։ Ծնողքը սարսափ տեղը մէկ քանի շաբաթներ աշխատեցան փախստականը գտնալու ։ Վերջապէս իրիկուն մը երբ Ալիպէր ոտքով մայրաքաղաքին փողոցներուն մէկէն կ'անցնէր , տեսաւ այն երիտասարդուհի ազնուապետականը որ տափական արհեստը կը գործէր , և մէկէն ճանչցաւ , թէեւ նա կերպարանքը փոխած էր ։

«Ինչ կ'ընես հոս խեղճ արարած , ըսաւ անոր խիստ ձայնով մը · —Տօքթօր , քու պատուէրդ կը կատարեմ , ինքզինքս կը բժշկեմ , պատասխանեց հարսնամորը ժպտելով մը ։»

Արդարեւ ամիս մը ետքը աղջիկը ցանկական հեշտութենէ յագենալով իւր ծնողաց տունը դար-

*ձաւ բոլորովին բժշկուած ․ վաղ ամուսնութիւն մը անոր փախստեան ամօթը խապառ մոռացութեան մէջ թաղեց ։*

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ․

### ԳԻՋԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ԻԲՐ ՊԱՏՃԱՌ ԱՄԼՈՒԹԵԱՆ ․

*Երկու սեռից մէջ ալ, առանձնակի հեշտութեանց յօժարութիւնը չը կարծուածէն աւելի յաճախադէպ պատճառ մ'է ամլութեան, մանաւանդ երբ այս սովորութիւնը՝ երիտասարդութիւնը սպառած և գործարանները ապականած ըլլայ ։ Այս ամօթալի մոլութեան պարապող երիտասարդք ընտոյգ ախտանիշներ չունենալով, ծնողաց՝ զգուշութեան նշաններ չկրնար տրուիլ ։*

*Ընդհանրապէս մեծ քաղաքաց մէջն գիշերօթիկ դպրոցներու, վանքերու եւն եւն ․ մէջն է որ այս աղետալից սովորութիւնը իւր չարիքը կը շրջաբերէ ։ Հոն տեղուանք կը տեսնուին այս մոլութեանը պարապող երիտասարդ անձինք, որ ընկերութենէ կը փախչին և առանձին տեղեր կը փնտռեն, որպէսզի իրենց մոլութիւնը յագեցնեն ․ տժգոյն, թմբրած ; ծոյլ, երկչոտ, վատ կըլլան, բարոյականին նոյնպէս ալ կազմականին մէջ վատթարացած ։ Իրենց մարմինը կոր, իրենց գնացքը երերուն են, իրենց աչքերը խորը գնացած, իրենց ձեւեր նրբացած են, իրենց անկենդան ճակտին վրայ մոլութեան յառաջադիմութիւնը կը կարդացուի, և եթէ ամուսնութիւնը զիրենք այս ամօթապարտ սովորութենէն*

չ'ազատէ , այս խեղճերուն գործը լմնցած է ։ Մարմնական կորուստք առանց կանգման վրայ կը հասնին , կուրծքը կը կրէ , շրթունքները կ'այլագունին, յիշողութիւնը կը շիջանի , իմացականութիւնը կ'ապականի , և սպառման վիճակի մը մէջ կ'իյնան ․ այնպիսի սպառման մը , որուն դէմ բոլոր բժշկական ջանք և խնամք անկարող կը մնան , և այս ողորմելի անձինք տակաւ առ տակաւ կը շիջանին այս գարշելի հիւանդութեան վշտացը մէջ , որնոր հալ և մաշ կ'անուանի ։

Նոյն արդիւնքը առաջ կուգայ կնոջ քով ալ, երբ Կղէմնոբէով չափազանց զբաղի ․ երեսի գոյնը իւր թարմութիւնը կը կորսնցնէ , ստինքները կը ցամքին , գարշահոտ ճերմակ դաշտանը կըսպառէ մարմնական յօրինուածքը , որնոր սոսկալի նիհարութեան մը մէջ կ'անկանի ։ Նեարդական յօրինուածքը ցանկական խողովանքէն ստէպ ցնցուելով վերջապէս իւր զգայականութիւնը կը կորսնցնէ , և աւելի զօրաւոր միջոցներու պէտք կ'ունենայ ․ այն ատեն այս մոլութեամբ ապականեալ աղջիկները կամ կիները ընկերութեան համար կորսուած են , եթէ ամուսնութիւնը կամ ուրիշ գլխաւոր պարագայ մը իրենց մէջ չը շիջուցանէ այս ամօթալի կրից կրաղուցքը ։

Տղայոց մէջէն այս վնասակար սովորութիւնը վերցնելու , ջնջելու համար առաջարկուած և գործածուած միջոցներուն ամենքն ալ աւելի կամ նուազ անօգուտ են ։ Ամօթը , երկիւղը , եղջիւրաւոր Սատանային սպառնալիքը , յանդիմանութիւնները, պատիժները կարող չեն այս կիրքը կ'անցնել , եթէ միանգամ արմատացած է ։ Օղամուծութիւնը , զոր

երբեմն կը գործածէին , պատեանը , պարունակը , փոկը եւն Նոյնպէս ասոնք ալ աւելի բան մը չեն կըրնար ընել : Բայց ամենէն ընտիր միջոցն է տղուն պառկելէն առաջ կազմական մարզի մը համար վարձատրութիւն խոստանալ և տալ զր · հորէն ջուր քաշել · խանութէ աղալ կամ ճախարակ մը դարձնել , մինչեւ որ յոգնի : Երբ տղան ըսէ թէ « յոգնեցայ » վարձատրութիւնը կրկնելու է վերստին դարձնել գրգռելու համար : Այս կերպով տղան չափազանց յոգնելով և իւր մոլութիւնը մտքէն անցնելու իսկ ժամանակ չունենալով , անկողինին մէջ ինկնալուն պէս խորին կերպով կը քնանայ , և եթէ այսպէս միշտ վարձատրութիւն տալով մէկ քանի չաբաթ կարող ըլլայ մարդ նոյն մարզը ընել տալ , յաջող և կատարեալ վախճան մը կընայ ստացուիլ :

## ԳԼՈՒԽ ԻԶ ·

## ՀԱՍԱԿ ԵՒ ԽԱՌՆՈՒԱԾՔ ԻԲՐ ՊԱՏՃԱՌՔ ԱՄԼՈՒԹԵԱՆ :

ՀԱՍԱԿ : Ծննդագործ կարողութեան տեւողութիւնը , կանանց համար , ընդհանրապէս դաշտանով սահմանուած է : Ամսական արեան յայտնութենէն առաջ՝ կինը դեռ այս կարողութիւնը ստացած չ'է · և այն արեան բոլորովին աներեւոյթ ըլլալէն վերջը բոլորովին կը կորսնցնէ այդ կարողութիւնը , բաց 'ի բացառական դէպքերէ : Սովորաբար խիստ փափուկ կամ տարիքոտ հասակի մէջ ամուսնացող

կանանց մէջ կը պատահի ամլութիւնը ։ Այս դէպքը կ'ապացուցանէ որ ամուսնութեան նպատակին ամենէն յարմար և յաջող հասակն է քսանէն մինչև եռեսուն տարեկան հասակը ։

Խիստ մատղաշ հասակի մէջ այսինքն արբունքէ քիչ ժամանակ ետքը ամուսնացող կանայք իրենց ամուսնութեան առջի մէկ քանի տարիներուն մէջ ամուլ կը մնան . և շատ ուշ , այսինքն երբ արգանդը ամբողջապէս զարգանայ , այն ատենը մայր կըլլան . եռեսուն և հինգ մինչև քառասուն տարեկան հասակին մէջ ամուսնացող կանանց շատերը , իրենց ամուսնոյ կորովութեան հակառակ , ամուլ կը մնան ։ Այս՝ անտարակոյս ծննդագործական գործարանաց երկարատև հանգիստէն կամ մարզման պակասութենէն առաջ կուգայ . ասկից կը հետևի որ արգանդը՝ արգասաւորութեան հարկաւոր եղած կենսունակութիւնը չունի ։ Այս տեսակ ամլութիւնը դիւրութեամբ կը բուժուի երկաթախառն ըմպելեօք , ծնծակա–ցնցուղային յօրինուածոյն վրայ գործադրուած կազդուրիչ և գրգռիչ լոգանօք՝ մէջաց , ազդերց և ցայլից վրայ ծծմբախառն վիժալոգանօք , և դարձեալ այս մասերուն վրայ կարմրացուցիչ ափրոդիտեան կամ կակղիչ սպեղանեօք ։ Արգանդի տկարութեան կամ անզգայութեան պատճառաւ ամուլ եղած կանանց կը պատուիրուի զօրաւոր կերակուր ուտել և դաշտանի հոսման նախընթաց չորս աւուրց մէջ զուգաւորութեան պարապիլ . վասնզի այս միջոցին՝ արգանդը արգասաւորութեան խիստ յաջող գրգռման մէջ կըլլայ ։ Շատ կանայք այս միջոցը գործածելով մայր ըլլալու երջանկութիւն ունեցան ։

ԽԱՌՆՈՒԱԾՔԸ․ Կազմագիտութիւնը և փորձերը այսուհետեւ հաստատած են որ կանանց համար, աւշաւոր—արիւնային խառնուածքը յղութեան և ծընընդագործութեան ամենէն աւելի յաջող խառնուածքն է․ ցուրտ, խոնաւ, կամ արքաւշաւոր, նոյնպէս եռանդոտ, արգանդի կողուցք ունեցող կամ մաղձաւոր—արիւնային խառնուածքի տէր կանայք ընդհանրապէս ամուլ կ'ըլլան։

Ցուրտ խառնուածքի տէր կանայք կը ճանչցուին, իրենց գէր, թոյլ ձեւերէն, իրենց աւշալից հիւսկեններէն, իրենց վարդակարմիր կամ դեղնեաւ գոյներէն, իրենց բաց, խարտեաշ մազերէն, իրենց անկենդան աչքերէն, իրենց հանդարտ և անասուն կազմակերպութենէն։ Եւ իրենց լեզուին ու շարժմանց մէջ կարի հեղգութիւն մ'ունենալով, սիրոյ զգուանաց յուսահատ անտարբերութիւն մ'ունենալէն։ Երբ այս բոլոր նշանները ըստ մեծի մասին յայտնուին, այն ատեն մարդ կրնայ ընդհանրապէս գուշակել ամլութիւնը։

Եռանդոտ կանայք հակառակ նշանները ցոյց կուտան։ Իրենց ձեւերը նիհար են քան թէ գէր, թէև իրենց ջիղերը կարի յայտնուած ըլլան․ իրենց մազերը սեւ և թաւ կըլլան․ աչքերնին մեծ, եռանդուն և հրացայտ կըլլան․ Ռնգան ծակերը բաց, բերաննին մեծ, շրթունքնին կարմիր, թանձր և երբեմն ալ կախեալ, ստինքնին, ծնամաննին ընդարձակ և զգուանաց ատեն շուտեռանդն կըլլան և կարծես մի միայն իրենց տարփական յօժարութիւնը յագեցնելու համար կ'ապրին։

Այս երկու ծայրայեղ խառնուածքը պատճառ ունին, առաջինը ծննդական գործարանաց-կենսու-

նակութեան պակասութիւնը․ երկրորդը հակառակ չափազանցութիւն մը։ Այս ծայրայեղութեանց բըժըշկական դարմանն է կազմագիտական հաւասարակշռութիւնը հաստատել, այսինքն խիստ ցուրտ խառնուածքը գրգռել, և խիստ տաք խառնուածոյն եռանդն հանդարտեցնել։

Այս երկու ծայրայեղ խառնուածոց մէջինը ծընընդագործութեան ամենէն աւելի ատակն եղած կըլլայ բնականաբար։

Այսպէս միջին հասակ մը, գեղեցիկ գոյն մը, յստակ աչքը, զուարթ կազմակերպութիւն մը, քաղցըր յօժարութեանց բաց սիրտ մը, պարզ սովորութիւնք և մանաւանդ քիչ հեշտասիրութիւնը նշմարելի արգասաւորութեան նշաններն են։

Այս կանոնը մէկ քանի բացառութիւններ ունի։ Շատ անգամ կը տեսնուին, տժգոյն, գձուձ, վատթար կանայք որ արգասաւորութեան առանձնաշըևորհ մ'ունին․ մինչդեռ առերեւոյթս խիստ գեղեցիկ կազմութեան տէր եղող կանայք մայր ըլլալու քաղցրութենէն զրկուած են․ բայց ասոնք բացառութիւններ են։

Ամլութեան վերոյիշեալ պատճառներէն զատ․ երկու սեռից մէջ կան նաեւ տակաւին խիստ քիչ ծանուցեալ յարաբերութիւնք, որք այն կերպով կը ներգործեն որ այս ինչ այրը և այս ինչ կինը թէև անհատաբար՝ ծննդագործութեան խիստ ատակ ըլլան, բայց միմիանց քով գալով չեն կրնար ծընընդագործել։ Այս ամլութիւնը թէրեւս պատճառ ունենայ ծննդական հակազդեցութիւն մը կամ խառնուածքի, բնաւորութեանց հակակրութիւն մը․ ուսկից յառաջ կուգան անտարբերութիւն և ցրտու-

թիւն , զորս ամուսինք ոմանք իրենց լծակցական գգուանաց մէջ կ'առբերեն :

Իրաց այս վիճակին դարման մ'ընելու համար պէտք է թէ մէկ. և թէ միւս սեռին ծննդական գործարանաց մէջ կայանալի նմանագործութիւնք հաստատել. այսինքն երկու ամուսիններէն որը , որ մոլեգնութեամբ կը զուգաւորի , պարտի իւր կամաց բոլոր ուժը 'ի գործ դնել այն սաստիկ եռանդը չափաւորելու համար . ընդհակառակը այն , որ գգուանաց մէջ շատ ցրտութիւն կը դնէ , պարտի գրգռել իւր երեւակայութիւնը , և գործածել ափրոդիտեան գեղեր , ցանկական գործողութիւնը աւելի պատշաճապէս կատարելու համար : Այս կերպով դործարանաց ներդաշնակաւոր նմանագործութիւնը կը հաստատուի և արգասաւորութիւնը տեղի կ'ունենայ :

Երբ ծննդական յօրինուածոյն մէջ գործարանական այլանդակութիւն մը , զրկանք մը բնաւ չիկայ և անհատ մը տակաւին ամուլ կը մնայ , մշտնջենաւոր ամլութեան գուշակութիւն մ'ընելը խիստ դըժուարին է . վասնզի այնպիսի պարագաներ կան , որոնց մէջ հասակը , ապրելու եղանակը , տեղւոյ փոփոխութիւնը , առողջապահական կերպառութիւնը և քիչ ծանուցեալ զանազան հանգամանքներ մարմնական յօրինուածոյն մէջ այնպիսի յեղափոխութիւն մը կը գործադրեն որ այր և կին իրենց ամուլ վիճակէն ծննդագործելու ատակ վիճակի մը մէջ կ'անցնին յանկարծ : Այսպիսի օրինակներ շատ կան երկու սեռից անհատներու մէջ , որք տասը , տասն և հինգ և քսան տարի ամուլ մնալէն զկնի կարողացած են տղաքներ ունենալու :

Հենրիկոս Բ ի և Ուրբանու Դքսուհիին ամուսնութիւնը տասը տարի ամուլ մնաց, այնչափ որ թագաւորը իւր կինը պիտի արձակէր. բայց իւր բարեկամները խրատեցին զինքը որ մէկ մը Ցովհաննէս Ֆիռնէլ անուն բժիշկը բերել տայ, որնոր այն ատեն մեծ համբաւ ունէր։ Երբ բժիշկը ներկայացաւ պալատը «իմ կնոջս տղաքներ պիտի չինէք°, հարցուց անոր թագաւորը խնդալով։ —Դուք պիտի չինէք զանոնք. Տէ՛ր սիրքայ, պատասխանեց Ֆեռնել և ես ալ բժշկութեան արհեստին վերաբերեալը պիտի ընեմ։»

Եւ յիրաւի Ֆերնել կարողացաւ արգասաւոր ընել միաւորութիւն մը, որնոր մինչև այն ատեն ամուլ մնացած էր, և արքունի ամուսինք տասը զաւակ ունեցան յաջորդաբար։ Թագուհին երախտագիտութիւն այսպիսի մեծ ծառայութեան մը, իւրաքանչիւր որդւոյն ծննդեան ատեն տասը հազար սկուդ կուտար իւր բժշկին։

Գիտենք նաև որ Աւստրիոյ Աննան՝ Լուդովիկոս ԺԴ ի Թագուհին տասն և հինգ տարի ամլութենէ ետքը որդի մը ծնաւ։

Պօտըլօք դասատուն կը պատմէր յաճախ իւր բարեկամացը թէ բարձրաստիճան անձ մը տասը տարիէ 'ի վեր ամուսնանալով չը կրցաւ զաւակ մը ունենալ ոչ իւր կնոջմէն և ոչ իւր հարճերէն։ Քաղաքագիտական պաշտօն մը կատարելու համար Գաղղիան ձգելու ստիպուած ըլլալով, երկու տարի օտար ատեանի մէջ բնակեցաւ. իւր հայրենիքը դառնալէն տասը ամիս ետքը իւր կինը իրեն որդի մը տուաւ։ Բայց չորս տարիներ անցան առանց երկրորդ անգամ մ'ալ հայր ըլլալ կարողանալու։

—Նոր պաշտօն մ՚ալ իրեն յանձնուեցաւ , և կլի-մայի փոփոխութեամբ այս անգամ ես կարողացաւ իւր կինն արգասաւորել ։ Վերջապէս այս անձը , ըստ պատուիրանաց Գօտըլօք դասատուին , միտքը դրաւ ամեն տարի ճամբորդութիւն ընել , որով կարողացաւ ստանալ ծննդագործ կարողութիւնը , զոր Փարիզի կլիմային տակ կը կորսնցնէր ։ Այս կերպով կատարելապէս յաջողեցաւ և տասնեմէկ զաւակ ունեցաւ հինգը մանչ և վեցը աղջիկ ։

Բժշկական ուսմանց Բառ-Թէրքէն մէջ կը կարդանք , թէ կին մը խիստ բարեկազմ առն մը հետ տասն և եօթը տարիէ 'ի վեր կարգուած ըլլալով , բնաւ չէր կրցէր յղանալ ։ Սաստիկ հիւանդութենէ մը ետքը , որ նոր զինքը գերեզմանին դուռը հասուց , արգասաւորութիւն գտաւ և շատ զաւակաց մայր եղաւ ։

Բազմաթիւ դէպքեր կարող են ապացուցանել որ մրաւորութեանց ոմանց մէջ , առն և կնոջ մէջ տեղը այնպիսի համակրական յարաբերութիւններ կը գտնուին , որք արգելք կըլլան արգասաւորու-թեան ։ Այսպէս տեսնուած են այնպիսի ամուս-նութիւնք , որոց մէջ երկու ամուսինք թէև ծննդա-գործապէս խիստ բարեկազմ եղած են , սակայն ամուլ մնացած են . արձակմամբ բաժնուելով , այն ատեն որ այս իմաստուն օրէնքը կենդանի էր , այրը ուրիշ կնոջմէ զաւակներ ունեցաւ , նոյնպէս արձակուած կինն ալ ուրիշ էրիկէ մը արգասաւո-րեցաւ ։

Նախընթաց եօթը գլխոց մէջ ամլութեան պատ-ճառները և զանոնք բժշկելու յատկացեալ մտաւո-րական միջոցները բացատրելով և մանրամասն քըն-

նելով, սա եզրակացութիւնն կունենանք: Ամլութեան դէմ ալ բժշկական դարմանը բնաւ օգուտ մը չընէր, ամենափոքր յոյս մ'անգամ չիտար: Այսպիսի պակասութեան մը համար տրուած ամեն դեղեր բանի մը օգտակար չըլլալէն զատ ըմբռնել ուզուած նպատակն ալ կը հեռացնեն: Եթէ ամլութիւնը անբժշկելի է. ամեն բան անօգուտ է և իսկ վնասակար. եթէ դարմանելի, այն ատեն, եթէ կազմական ախտ կամ արգելք մը կայ, վերաբուժութեան դիմելու է գործարանները իրենց բուն ձևին և ուղղութեանը մէջ հաստատելու համար, և յետոյ ամբողջ առողջաբանական արհեստին կը վերաբերի գործարանները իրեն թմբրութենէն ազատել, զանոնք զօրացնել, անոնց կենսունակութիւնը շատցնել կամ չափաւորել. առողջաբանական արհեստին կը վերաբերի պահեցողութեամբ, սննդեամբ, մարզիւ, լոգանօք, և այն ամեն միջոցներով, զորս կարող է՞ պատուիրել, մարդկային. էակը նորոգել և վերահաստատել: Ահա այս է բոլոր առողջաբան և կազմագէտ բժշկաց կարծիքը:

Ապահարզանի խնդրոյ վերաբերեալ խիստ տարօրինակ և խիստ քիչ բարոյալից սովորութիւն մը, որնոր շատ ատեն անկարողութեան և ամլութեան պատճառ եղած է, պատմելով գլուխս վերջացնենք:

Այս սովորութիւնը որնոր բազում դարեր հինցուց, շատ մը ամուսիններ դողացուց և շատ մը կանանց ալ ազատութիւն շնորհեց. այսօր անկարողները օրէնքէ զարհուրելու հոգը չունին և հանդարտ կը քնանան: Այլ ժամանակ, այլ սովորութիւնք:

Մեր նախնիքը, որք ամուսնութեան նպատակին վերաբերեալ գործողութեանց մէջ մեզմէ աւելի ա-

նաչառ էին, ՚աւելի աղէկ է ըսել․ մեզմէ աւելի խելացի էին, ապահարզան կը հրամայէին ամեն անգամ որ այս նպատակը չէր կրնար ըմբռնուիլ, այսինքն երբ լծակցաց մէկը բացարձակ անկարողութենէ կամ ամլութենէ բռնուած ըլլար․ վասնզի այս ժամանակներուս մէջ՝ բազմաթիւ տղաքներ ունենալու համար կը կարգուէին․ դժբաղդաբար՝ ծննդագործութեան անատակութիւնը հաստատելու համար ՚ի գործ դրուած միջոցները, վայրենական և քիչ վայելուչ հնարքներէ ազատ չէին։

Ծննդական փորձը, զոր երկու ամուսիններէ կը պահանջէին, այս պարագայիս մէջ փորձաժողով ըսուած խմբակի մը մէջ կը կատարուէր․ երբեմն բազմաթիւ մանկաբարձից ներկայութեանը, երբեմն ալ վարագուրի մը ետեւ․ բայց փորձը կատարուելու յատկացեալ տեղւոյն կից վայրի մը մէջ բժշկաց, դատաւորաց և եկեղեցական կանոնաց հմուտ անձանց ներկայութեամբը կազմուած խորհուրդ մը անհրաժեշտ էր։ Աղէկ կրնայ մակաբերուիլ թէ այսպիսի փորձ մը՝ շատ անգամ միոյն ամօթխածութիւնը պիտի պակուցանէր և միւսոյն այրական զօրութիւնքը պիտի կասեցուցանէր․ այն ատեն կը պատահէր որ զուգաւորութեան խիստ ատակ երկու անհատներ, ամչնալնուն կամ վախնալնուն, յանկարծ անկարողութենէ կը բռնուէին։ Այս գայթակղական գործը երկար ատեն տեւեց և միշտ այրն էր որ առուտկ նշաւակի կըլլար, վասնզի կինը միշտ միաւորութեան ատակ է, եթէ ներքնապէս խցումն կամ անծակութիւն մը չունենայ։ Նաեւ գրեթէ միշտ կինն էր որ փորձաժողով կը պահանջէր, որպէսզի կարող ըլլայ ձգել այնպիսի

ճշրիկ մը, որ ալ չ'էր կրնար տանել, և վերստին ա-մուսնանալ։

Հետեւեալ վկայութիւնք. որնոր Բժշկական ուս-մանց Թէժ Բուռէկէրէն քաղուած է. Թէեւ քիչ մը ան-հիթեթ գրուած է, սակայն ընթերցողին՝ այս խայ-տառակ ֆօրյաժողովին վրայ որոշ և ճիշտ գաղափար մը տալու ծառայելուն համար կ'օրինակենք։

. . . . Ապահարզան խնդրող կողմը՝ ցանկական արարողութիւնը աղէկ կատարելու, նոյնպէս քննիչ-ներն ալ՝ փորձաժողովոյն մէջ անցած եղելութեանց տեղեկագիրը հաւատարմաբար չինելու համար եր-դումն ընելէն վերջը, կը քաշուին սենեակ մը, ուր այրը և կինը քանի քանի անգամներ կը զննուին. այրը, որպէսզի հասկցուի թէ հիւանդութիւն մը կամ այլանդակութիւն մ'ունի. կինը, որպէսզի իւր սեռական մասը քննուելով հասկցուի անոր անդա-մոյն՝ փորձաժողովէն առաջ և ետքը ունեցած բաց-ուածքին և ընդարձակութեան տարբերութիւնը, և այս կերպով ճանչցուի թէ նեբմուծութիւն եղած է թէ ոչ։ Ցետոյ առն ծննդական մասերը գաղջ ջրով կը լուացուին, և կինն ալ կիսալոգանքի այսինքն կէս մէջքէն վար լոգանքի կը նստի քիչ մ'ատեն։ Այսպէս ընելով, յատկապէս փորձի համար պատ-րաստուած անկողնոյ մը մէջ այրը և կինը ցորէկ ա-տեն կը պառկին, և այրն է, որ իւր կարողութիւ-նը ապացուցանել կը պարտաւորի։ Այն ատեն շատ անգամ կը պատահի որ ամուսնոց մէջ կռիւ կը ծա-գի. այրը կը արտնջայ որ կինը ներմուծութիւնը կարգիլէ. կինը կուրանայ ըսելով թէ այրը չը կըր-նար ի գործ դնել զայն։ Վերջապէս երկուքը մէկ երկու ժամ անկողնոյն մէջ մնալէն վերջը, քննիչ-

ները կը հասնին , վարագուրները բանալով անցից վրայ տեղեկութիւն կ՚առնուն և նորէն կը զննեն կինը , որպէսզի հասկնան թէ անկողնոյն մէջ մնալէն առաջ ունեցած ընդլայնութենէն աւելի լայնցած է իր ծննդական մասերը և թէ ներմուծութիւնը տեղի ունեցած է , և այս զննութիւններն ալ առանց ականցի չ՚են կրնար կատարուիլ , վասնզի այս գործողութիւնը կատարելու յատկացեալ անձինք իրենց ծերութեամբը ընտրելի եղած են , և ոչ ալ առանց աղտեղի և գարշելի խուզարկութեանց ։ Ցետոյ զատ սենեակի մը մէջ , այս գործոյն վերջը սպասող փոխանորդաց և եկեղեցւոյ օրինաց հմուտ անձանց հետ , փորձաժողովոյն մէջ անցած եղելութեանց տեղեկագիրը կը շինեն ։

Փորձաժողովը տասն և հինգերորդ դարուն միտաւ Գաղղիոյ մէջ և գրեթէ երեք հարիւր տարի տեւեց ։ Այս երկար միջոցին մէջ լուսաւորեալ անձինք ՚ի զուր կը թշնամանէին անոր հաստատութիւնը ։ Միմիայն 1677 ին էր որ գայթակղեցուցիչ գործէ մ՚ետքը , աւագանի խորհուրդը արգիլեց դատաւորաց , նոյն իսկ պաշտօնակալաց որ փորձաժողովին հրաման չի տան ։



## ԳԼՈՒԽ ԻԷ.

## ՀԱԿԱՓՐՈԴԻՏԵԱՆՔ ԵՒ ԱՓՐՈԴԻՏԵԱՆՔ ։

Մենք արդէն տեսանք թէ ծննդական գործարանները՝ իրենց պաշտօնները ըստ կազմագիտական օրինաց կատարելու համար պարտէին ստանալ յար-

մար կենսունակութիւն մը և թէ նուէ կամ նուազ կենսունակութիւնն այս կարևոր պաշտօններուն վընասակար էր ։ Երբ բուն վիճակին հաստատած հաւասարակշռութիւնը եղծուի , բուժական արհեստը երկու տեսակ դեղ ունի զայն վերահաստատելու համար ․ հոնոփրոդիթեան+ կամ զովացուցիչք ․ որք ցանկական խլրդումը հանդարտելու և շիջուցանելու յատկութիւն ունին և ափրոդիթեան+ կամ ծնընդական գործարանաց գրգռիչք որք սիրոյ շիջամէտ եռանդը վերստին արծարծելու յատկութիւն ունին ։

Հնութիւնը այս դեղերը շատ գործածեց և Արեւելցիք ալ տակաւին մեր օրերը կը գործածեն ․ բայց մենք կը զեկուցանենք որ տարփը արծարծելու կամ շիջուցանելու համար գործածուած բազմաթիւ նիւթոց մէջէն շատերուն զօրութիւնը երեւակայական է ․ իսկական յատկութիւն ունեցող նիւթերն ալ շատ անգամ վտանգալից են և արհեստագէտ անձերէ մատակարարուիլ պարտին ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա․

### ՀԱԿԱՓՐՈԴԻՏԵԱՆՔ․
### ԿԱՄ ՏԱՐՓԱՆԱՑ ԵՌԱՆԴԸ ԸՆԿՃԵԼՈՒ ՅԱՏԿԱՑԵԱԼ ԴԵՂԵՐ ։

Հակափրոդիտեան միջոցներուն առաջին կարգը բռնող դեղերն են ․ արիւն առնուլն և տկարացուցիչ կերակրութիւնք ։ Ցիրաւի բոլորովին բանջարեղեններ , ջրալից , ցուրտ , թեթև թմրեցուցիչ և քիչ սնուցիչ պտուղներ , ինչպէս են ․ սեխ , ձմերուկ ,

Փնգաձեւ դդում, վարունգ, հաճար, եղերդ, ճովին, անմեռուկ, ևն, առանց բացառութեան ուտելը և հանդարտեցուցիչ ըմպելիներ ինչպէս են. լեմոնատ, ցուրտ հունդերու եփաջուր և մզաջուր, թթու խոտերու հիւթեր առանց բացառութեան խմելը անտարակոյս պարտին ամբողջ մարմնական յօրինուածքը, տկարացնելով, ծննդական գործարանաց առաւել կենսունակ զօրութիւնն ալ նուազցնել։ Ահա այսպէս էր այն կերակրութիւնը, որուն կ՚ենթարկուէին իրենց գլխաւորներէն մշտնջենաւոր ամուրութեան մը դատապարտեալ եգիպտական քուրմերը։ Ըստ Տիոսկորիտէսի՝ այս կերակրութիւնը, որուն մէջ քիչ մ՚ալ խնդակոթ կը մտնար, մալելու չափ ուժ ունէր։

Երբեմն, և այս ատենն ալ մեզմէ շատ հեռու չ՚է, վանքերու մէջ, մատղաշ մենակեացներուն և մենակեցուհիներուն՝ իրենց հասակին և խառնուածքին արտադրած նորաբեր եռանդը հանդարտեցնելու համար, զովացուցիչ դեղեր կուտային. և այս դարմանը՝ առատ արիւն առնելով, աւելի զօրաւոր, կրնայ ըսուիլ, աւելի մահացուցիչ կը գործէին։

Այս ժամանակի գրագէրնետէն մէկը կըսէր. «—Երբ կը խորհրդածեմ այն ջանքերը, զորս մշտամուրութեան ուխտեալ անձանց արգելարանն եղող շէնքերուն պետերը և պետուհիները՝ խիստ եռանդոտ խառնուածքի տէր եղող աշակերտացը տարփական հուրը շիջուցանելու համար կ՚ընեն, կը կարծեմ տեսնալ տղաքներ, որք արագահոս հեղեղի մը մէջ անոր հոսանքը կասեցնելու համար աւազի հատիկներ կը նետեն։ Իրենց մատակարարած

դեղերը չ'են կրնար խառնուածքը փոխել, բայց կենաց ակուռքը ցամքեցնելով բազմաթիւ զոհեր կ'ընեն ։

Ցուրտ ըսուած հանքերը ծննդական եռանդը մեղմացնելու մասին մեծ համբաւ ունին և թուօք ութն են ։

Ջուրս Լէճուէյն+, որք վարունդի, սեխի մեղրադդմոյ և ֆըլօրէնիզեայ հունդերն են ։

Ջուրս ֆոտրաֆեյն+, որք հազարի, անմեռուկի, ընտանի եղերդի և վայրի եղերդի հունդերն են ։

Առաջին չորսերը մզաջուր ընելով կ'առնուին, չորս փոքրագոյները եփաջրով ։ Զանոնք աւելի հանդարտեցուցիչ ընելու համար քանի մը ցորենահատ քափուր աւելցնելու է մէջերնին ։

Կոկոռը կամ Նունուֆարը կը գովեն իբր զօրաւոր զովացուցիչ դեղ. որ նոր ատեն կը գործածուէր այն միաբանութեանց մէջ, ուր կուսութեան ուխտ կը պահանջուէր ։ Նունուֆարը զանազան ձևերով կ'առնուէր, երբեմն փոշի եղած, կերակրոց և ըմպելեաց մէջ կը խառնուէր. երբեմն ալ բանդակ եղած կամ մեղրախառն ։ Մենք կը կարծենք որ այս տունկին տրուած զովացուցիչ զօրութիւնը չափազանց է ։

Աֆֆէօն և իւր համազօրները, որոնք տածանջող չինուելով ծննդական գործարանաց վրայ կը գործեն, եռանդը կը մեղմացնեն ։ Տօքթօռ Լառէյ, Եգիպտոսի մէջ բնակած ատեն, առիթ ունեցաւ հաստատելու թէ, ափիոն ծխողները նախ ծննդական գրգռութիւն մը կը զգան, յետոյ քիչ ժամանակէ մ'ետքը կատարեալ անզգայութեան մէջ կիյնան ։

Խել մը տունկեր · ինչպէս են · հաղարը · ընտանի և վայրի եղերդը , Թրթնջուկը եւն · և ընդհանրապէս ջրալից , ցուրտ կամ թթու բանջարեղէնները զովացուցիչ են երբ առանց բացառութեան ուտուին ։ Պօէրհաավ կը պատմէ թէ այր մը , երկար ատեն բանջարեղէն սնունդ մ'առնելով , ուր յաճախ կը գործածուէին հաղարը և Թրթնջուկը , իւր կնոջ տարփական եռանդը յագեցնելու անկարողութեան մէջ ինկաւ · միմիայն այն ատեն իւր արական կարողութիւնքը ստացաւ , երբ գրգռիչ կերառութիւն մ'ըրաւ ։

Հօֆնէն երկար ատեն հակափրոդիտեան զօրութիւն մը վայելեց · Սերեզի քրմուհիք իրենց քնոյն մէջէն տարփական երազները մերժելու համար , այս ծառին տերեւներովը կազմուած անկողիններու վրայ կը ննջէին ։ Նոյնպէս Տիանի քրմուհիք , տարփական եռանդը հեռացնելու և իրենց սրբութիւնը պահելու համար , սոյն ծառին տերեւներովը հիւսուած գօտիներ կը կապէին ։ Այսօր ճանչցուած է հագնիին կարի գովուած զօրութեանց անվաւերութիւնը ։

Ծծումբը ըստ հետեւեալ դիպաց , զոր բժշկութեան տեղեկագիրներէ քաղուած է , ընտիր հակափրոդիտեան մ'է ։ —Պաքօն դիւանադպիրը , այս տղին համար այնպիսի սէր մ'ունեցած էր որ զայն՝ ամենաբուժ դեղ մը կը համարէր · ամեն ջանք կընէր որ անոր գործածութիւնը տարածէ , և կըստիպէր Անգղիոյ բոլոր բժիշկները որ իրեն կարծեացը համաձայնին ։ Ծծումբը նորաստղորն եղաւ , այսպէս երեւելի մարդու մը խօսքին վրայ , ամեն հիւանդութեանց կը տրուէր , նոյն իսկ առողջու-

թեան ատեն ալ կ'առնուէր իբր նախապահեստ գեղ։ Բայց կիները իսկոյն նշմարեցին այս աղին տխուր ազդեցութիւնը իրենց երիկներուն վրայ, որոնք տարփական հաճոյից անտարբերութեան մէջ ինկնալով, ալ չէին կրնար ըծակցական պարտաւորութիւնը կատարել։ Այն ատեն ամեն յանցանք դիւանադպրին վրայ ձգեցին, զայն իբր կախարդ համ դիւթ ամբաստանեցին, նզովեցին, անիծեցին և իբր նոր Մենատեսներ, մազ մնաց որ Պաքօնն ալ խեղճ Որփէոսի վիճակին արժանացնէին։

Քոֆուրը իբր հանդարտեցուցիչ ընդհանրապէս կը գործածուի, որնոր արդէն ըսած ենք. ըստ Թեսօյի և Հօֆմանի, մէկ ցորենահատ քաբուր բերանը դնելով և կամաց կամաց հալեցնելով, ծնընդական սաստիկ կանգնումները կը հանդարտեցնէ, երբ մէկ ցորենահատը բաւական չըլլայ, պէտք է կրկնապատկել և եռապատկել չափը։

Սեւ խահուէն, ըստ բազում բժշկաց, երբ շատ գործածուի, ծննդական կենսունակութեան վրայ աղետալից ազդեցութիւն մը կընէ. հետեւեալ պատմութիւնը այս կարծեաց իբր ապացոյց կրնայ համարուիլ։

Պարսկաստանի թագուհիներէն մէկը, իր պալատին ոսկեղօծ պատշգամէն նայած ատեն, կը տեսնայ որ թագաւորին ձիապանները կը ջանային կորովի ձի մը զգետնել, բայց չէին կրնար յաջողել. կը հարցնէ իր պաշտօնակալներուն թէ ինչ նպատակի համար կուզէին ձին զգետնել. ասոնք բաւական խօսակցական զգուշութիւններ ընելէն ետքը վերջապէս պատասխանեցին թէ այս կենդանին երբէք սանձ չէր առնէր և կը կատղէր, երբ մատաղ

Ձի մը ունենար, վասնորոյ կուզեն զայն մաքել։ — Ա՜հ Ա՜հ, աղաղակեց Թագուհին ժպտելով. ինչո՞ւ համար այդչափ աշխատութիւն կրել, այդ կենդանիին միմիայն մէկ քանի օր խահուէ խմել տուէք և սիրոյ զգացման մէջ այնչափ անտարբեր պիտի ըլլայ, որչափ որ եղաւ իր Թագաւոր տէրը, այս գարշելի հեղուկը գործածել սկսելէն 'ի վեր։

Արդի բժշկութիւնը հակափրոդիտեան համարուած նիւթոց խիստ սահմանափակ վստահութիւն մը կը մատուցանէ, և կը խորհի իրաւամբ, որ այս նիւթերէն շատերը, երբ առանձին մատակարարուին, տարփական խառնուածքի մոլեգնութեան սանձ դնելու անկարող են, և ինչպէս որ մենք ալ ըսինք, արիւն առնուլը և տկարացուցիչ կերառութիւնը կը համարի՝ ծննդական գործարանաց մէջ կեդրոնացած առաւել կենսունակ եռանդը ընկճելու իբր յատուկ միջոցք. այսու ամենայնիւ կը զեկուցանէ նաեւ թէ առողջութեան որչափ վնասակար է արիւն առնլոյ դարմանը, միմիայն խանդամոլութեան ատենին կը պահէ այդ միջոցը, այն ևս ախտին վերջին ծայրը հասած ատեն։

Սեռական հաճոյից խիստ յօժարամիտ անձանց կը պատուիրուի որ հակափրոդիտեան և տկարացուցիչ դեղեր առնելէն աւելի լաւ է ջրաղից և զովացուցիչ բանջարեղէններով սնանիլը, բորբոքարկու կերակուրներէ և գրգռիչ ըմպելիներէ հեռու կենալը, ցանկական եռանդն զարթուցանող ամեն պարագաները մերժելը, մանաւանդ դատարկութենէ փախչիլն և օրը մէկ քանի անգամ կազմական աշխատութեամբ մը զբաղիլը, վասն զի դատարկութիւնն և յօրանալն խառնուածքի խլրտման

աղբիւրն են, ըստ ծեր մատենագիր մը· վերցուր, դատարկութիւնը, այն ատեն պիտի բեկանի սիրոյ աղեղը, և պիտի շիջանի անոր ջահը։

Դատարկակեաց մարդը, իր մարմինը խիստ աշխատութեանց ենթարկող մարդէն աւելի տարփական գործողութեանց տրամադրեալ է երեւակայութեամբ։ Այն երիտասարդք, որք առատութեամբ և դատարկութեամբ կանցնեն իրենց կեանքը իրենց միտքը միշտ դէպ 'ի սեռական հաճոյից ուղղեալ են և կը ջանան միշտ զանոնք յագեցնելու միջոցներ գտնալ· այն կերպով որ կրնայ ըսուիլ թէ առատութենէ և դատարկութենէ կը ծնանին պագշոտ խառնուածքը և բարուց ապականութիւնը։

Այսպէս լաւ պահեցողական կերառութիւն մը, իմաստութեամբ ընտրեալ և կարգադրեալ կազմական մարզք, տարփական հաճոյից բոլորովին հակադէմ իրաց ուղղեալ՝ մտաց մեծ եռանդ մը՝ ցանկական սաստիկ աշխոյժը ընկճելու ամենէն աւելի յատկացեալ միջոցներ են։ Երբ այս միջոցներուն գործածութիւնը անյաջող ըլլայ, այն ատեն ամուսնութիւնը անհրաժեշտ հարկաւոր է· պէտք է տալ կին մը երիտասարդ առն և այր մը մատղաշ աղջկան· որպէս զի կարող ըլլայ մարդ մերժել ճնշեալ ցանկութեան և բռնի ժուժկալութեան աղէտալից հետեւանքները, որոց վերջին եզերքն են սատիւրեան ախտը և հարսնամոլութիւնը։

---

# ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ԱՖՐՈԴԻՏԵԱՆՔ
## ԿԱՄ ՏԱՐՓԸ ԳՐԳՌՈՂ ՆԻՒԹԵՐ :

Աֆրոդիտեան անուն (Աֆրոդիտէ բառէն, որ է Աստղիկ) տրուեցաւ այն սննդական և դեղական զանազան նիւթոց, որք կարող են զարթուցանել կամ աճեցնել ցանկական ախորժը, թէ՛ ամբողջ մարմնական յօրինուածքը գրգռելով, թէ՛ ուղղապէս ծննդական գործարանաց գրգռութիւն մը ներգործելով: Այս նիւթերուն շատերը խիստ վտանգաւոր են և երբեմն ալ մահացուցիչ: Այս վտանգներուն հակառակ, Կիներու խեղ կամ ծերացեալ զինուորք միշտ կը ջանան գտնալ այն միջոցները, որք կարող են կազմական նուաղեալ սիրոյ հուրը իրենց մէջ արծարծելու և վառելու: Հին ատենը խել մը դեղագիրներ կային, փուրֆուրձէ, ժանփախինյոլ. ոերմնոֆորձէ անուամբք, որք իսկական կամ երեւակայական զօրութիւններ ունէին: Այս տեղագրերէն շատերը աւելի կամ նուազ անախորժ կամ վտանգաւոր նիւթերէ կը շինուէին. ոմանք ալ ճշմարիտ թոյներ էին: Հին և նոր պատմութեան մէջ աւանդուած բազմաթիւ դէպքեր այս մասին ամենեւին կասկած մը չ՚են ձգեր:

Ըստ Օվիտէս բանաստեղծի, տարփագործք միտքը կը խանգարէին և կատաղութեան կը գրգռէին:

Ծիւնեկեալ կըսէ, որ շատ մը ամուսիններ այս տեսակ ըմպելեաց պատճառաւ տարփամոլութեան ժամանք ունեցան. և գլուխնին դէպ 'ի վայր կորացան:

Փեթրօն կանիծէ այն դեղատու կիները, որք իրենց գեղերովը ծննդական կողուցք կը գրգռէին, և կը պատմէ Կալիկիւղայի կատաղութիւնը ժանտախնձորէ մը պատճառեալ, զոր իրեն տուաւ Քեօզօնիէ։

Եւսեփիոս կը յիշեցնէ Կալեւսի յիմարութիւնը, ափրոդիտեան դեղ մը խմելով։

Հեշտասէրն Լիկուլեւս և Լիւքրէս պուէտը խելագարութեամբ մեռան ժանտախնձորական ըմպելիներ առնելնուն համար։

Ամփրուսիոս Փարէ կը պատմէ թէ տարփուհի մը, իւր տարփածուն աւելի սիրավառ ընելու համար, անոր տանփողախառն աւշարակ մը կուտայ. այս խեղճը նոյն ըմպելին խմելուն պէս պրիապեան ախտէն կը բռնուի, և միզուկին մէջէն արիւն հոսելով կը մեռնի։

Մօլէ գերասանը այս տեսակ ըմպելիով մեռաւ։

Մեր ընտիր մատենագիրներէն մէկը՝ Ճօֆռուա. հեղինակը՝ բորբոքարկու ափրոդիտեան դեղի մը զոհ գնաց։

Մենք զօրապէտ մը կը ճանչնանք որ, վաթսուն տարեկան հասակին մէջ, յիմարաբար սիրահարեցաւ կատակերգուհիի մը. և անոր ապացուցանելու համար թէ իւր կազմական կորովութիւնը տակաւին չ՚է շիջած, փոսփորախառն աւշարակ մը խմելով մեռաւ։

Շատ դիւրին էր մեզի այս տեսակ մարտիրոսաց պատմութիւնն ստուարացնել, յիշելով խել մը ըսպառած ծերուկ պագշոտներ, որք յիմարաբար տանփող և փոսփոր խմեցին ծննդական եռանդ և կորովութիւն գտնալու համար, որոնք բնաւ իրենց հասակին համեմատ չ՚էին։

Շատ յայտնի է որ թումբաքուն, լոմպիկը. ափիոնը. փոխլուան, մէկ քանի կիզիչ սունկեր և ուրիշ թունաւոր տունկեր՝ հնոց գործածած ափրոդիտեան դեղերուն բաղադրութեանը մէջ կը մտնար. վասնզի այս տեսակ թունաւորութիւնքը արգիլելու համար, Հռովմայի մէջ օրէնք մը երեւցաւ, որ գլխատութեան կը դատապարտէր անոնք, որք սերմնագործ-տարփագործ և ժանտախնձոր անուն դեղերը կը ծախէին.

Այսօր որ բուսաբանական և տարրաբանական ուսմունք բժշկական նիւթը իր անօգուտ և վնասակար մասէն զատեցին, կրնայ մարդ առանց երկիւղի գործածել իբր ափրոդիտեան նշանակուած նիւթերը. բաց 'ի մէկ քանիներէն, որոց կերառութիւնը միմիայն բժշկի մը փարչութեամբը կրնայ 'ի գործ դրուիլ:

Բազմահմուտն Վիրեյ իւր ափրոդիտեանց վրայ գրած յիշատակրոց մէջ այսպէս կեզրակացնէ:

Ափրոդիտեանք կրնան տասը դասի բաժնուիլ: 1° հակատնդական դաշտանագրգռիչք. 2° շաքարեղէն համեմականք, 3° գրգռող խթիչք. 4° ջերմացուցիչք. 5° պարզ միզամղիչք և փքափարատ միզամղիչք. 6° փքածին կերակուրք. 7° ապաքինիչք 8° մորթային յօրինուածոյն գրգռիչք. 9° զօրացուցիչ նիւթք, երկաթախառն պատրաստութիւնք, 10° վերջապէս բարկ, թունաւոր, այրիչ նիւթերը, ինչպէս են. թումբաքուն. փոսփորը, զենկը եւն.

Քունտուզեղէնները՝ ափրոդիտեան դեղերուն մէջէն ամենէն լաւագոյնն կամ գոնէ ամենէն աւելի զօրաւորն կ՚ըլլային, եթէ անոնց յանձնարինս վնասակար ազդեցութիւնը ստամոքսին և միզական

ուղեղոց մէջ սոսկալի աւերմունքներ կը պատճառէր ։ Մարդ ֆոսֆորայեղէն դեղերը անպատիժ բնաւ չը կրնար գործածել ․ և անոնցմէ պահանջուած պատիր երևոյթի մը վայկեանը խիստ շատ սուղի կնստի՝ Իտալիոյ բանդականները, Վենետիկեան բաղրբեղները և Արևելքի մէջ շինուած տարփադեղերուն շատերը այս մահաստակար միջատը կը պարունակեն ։ Կը սոսկայ մարդ, ըստ Շօմիւթօն բժիշկը, երբ կը տեսնայ թէ Տնորհաց ձեռքը թունաւոր բաժակ մը կը մատուցանէ, դաղանական սէր մը յաղեցնելու համար ։

Մտիկ ընենք հոս դժբաղդ զոհի մը պատուերները ։

Ցայս տարփագործ 'ի դեղոց
Զգոյշ լէ՛ր 'ի քաղելոյ ․
Զայն կորուշն, որ պիտի ․
Ի պաշտօնն զուգելոյ ։
Մրտենին, որ 'ի գրգիռ
Արկ կուղբն խիստ տարփարկու ․
Անշուշտ փոխի 'ի նաճիս
Գերեզմանին սգարկու ։

Փոսփորնալ նուազ վտանգաւոր չ'է և որոնք որ զայն գործածելու յիմարութիւն ունեցան, անագորոյն ցաւօք մեռան ․ կամ մարսողական ուղեղոց մէջ ամենախիստ անկարգութիւններ զգացին և երբէք չը բժշկուեցան ։

Ալփոնս Բոյ կը պատմէ թէ կին մը փոսփորախառն ըմպելի առնելով անմիջապէս մեռաւ ։ Դիակը բացուելով ․ ներքին կողմը բոլորովին լուսաւոր էր և Բոխէլ անդամահատին ձեռքերն ալ փոսփորէ կը ծխային, թէև մէկ քանի անգամ լուաց ։ Ուստի

կը հետեւցնենք որ այս երկու նիւթոց ներքին գործածութիւնը, երբ սաստիկ թոյն, պարտինք մերժել։

Անզգայութիւն և անկարողութիւն բերող պատճառները բազմաթիւ ըլլալով ինչպէս որ ԺԸ· գլխոյն մէջ բացադրեցինք, դիւրին է ըմբռնել թէ մարդ չը կրնար խառնիխուռն դիմել ամեն տեսակ ափրոդիտեան դեղերու․ վասնզի այս ինչ նիւթը, որ այս ինչ անզգայլին յարմարեցաւ, կրնայ ըլլալ որ ուրիշի վրայ բնաւ ազդեցութիւն չ'ընելէն 'ի զատ, վտանգաւոր ալ ըլլայ։ Ուստի կարեւոր է ընտրութիւն մ'ընել և այս ընտրութիւնն ալ ախտին պատճառին և տեսակին վրայ հիմնուած ըլլալ պէտք է։ ինչպէս․ երկարատեւ ժուժկալութենէ մը պատճառուած անզգայութիւնը կամ անկարողութիւնը ցանկական չափազանցութենէ կամ անառակութենէ առաջ եկած անզգայութեան կամ անկարողութեան նման չը կրնար դարմանուիլ։ Ջերմացուցիչ կերակրոց և գրգռիչ ըմպելեաց յաճախ գործածմամբ պատճառուած անզգայութիւնը ցրտացուցիչ և տկարացուցիչ կերպառութենէ յառաջացած անզգայութեան դարմանին բոլորովին հակառակ դարման մը կը պահանջէ․ խիստ յայտնի է այս և ամենեւին տարակոյս չը վերցնէր․ պէտք է պատճառը դարմանել․ և երբ զայն ջնջուի, ծննդական կարողութիւնք իսկոյն կը յայտնուին։

Հարկ չ'ենք համարիր հոս կրկնել ինչ որ Ի· և ԻԱ· գլխոց մէջ ըսուեցաւ․ և կանցնինք անմիջապէս ափրոդիտեան զօրութիւն ունեցող նիւթոց նկարագրութեանը։

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ԲՈՒՍԱԿԱՆ ՑԵՂ ։

Րոքքան հին և նոր դեղագործական մատենից մէջ, ծոյլ ծննդական գործարանաց իբր լաւ խթան մը նշանակուած է ։

Կոլքիքոնը, պղպեղաւոր անանուխը, անդրաքար կամ մշակեալ Ջրկոտէմ. և շրթնաձեւ ծաղկանց ընտանիքէն եղող խել մը տունկեր խիստ գրգռիչ են և տկարութեամբ պատճառուած անզգայութեան ատեն յաջողութեամբ կրնան գործածուիլ ։

Լախտօրը, ընտանի կանկառը, ծնեբեկը երկար ատենէ 'ի վեր ժողովրդական համբաւ մ'ունեցան ։

Կատուախոտը կատուաց քով ցանկական խիստ մեծ ախորժակ մը կը զարթուցանէ, նոյնպէս մարդուս վրայ ալ կը ներգործէ ։

Սիբերական մոխրաքանիկը սերմնագործ զօրութիւն մ'ունի, ամբողջ տունկը կը գործածուի, բաց 'ի արմատէն ։

Պընտաւոնը, Հնդկընկոյզը, պղպեղը, մեխակը և ուրիշ խիստ համեմանք ցանկական հեշտութեան կը տրամադրեն ։

Վանիլեան, Քաքաոն բոլոր դեղագործական մատենից մէջ՝ ծննդական գործարանաց վրայ երջանկաւոր ազդեցութիւն մը կատարող նշանակուած է ։

Ժէնշէնը իբր նախամեծար ափրոդիտեան, այնչափ մեծ համբաւ մ'ունեցաւ որ մեծամեծ և խիստ պատժոց ենթակայ կ'ըլլար նա, որ համարձակէր զայն Չինաստանէն դուրս հանել ։

Խոլորձը ապաքինիչ և ափրոդիտեան դեղոց մէջ

կարգուած է · ուրիշ սննդական նիւթոց հետ խառնուելով գեղեցիկ արդիւնքներ յառաջ կը բերէ , գլխաւորապէս սպառման և տկարութեան պատահման ատեն ։

Ծածկածնանդամ տնկոց յատկացուած հեշտագրգիռ որպիսութիւնը շատ անգամ կը ճշմարտուի։ Անուշահոտ գետնասունկը · պղնձագոյն սունկը և ուրիշ խել մը սունկեր չիջեալ եռանդը կը զարթուցանեն և հեշտական զգացմանց կը տրամադրեն ։

Գետնասունկը բաւական ընդհանրացած ափրոդիտեան համբաւ մը կը վայելէ · սակայն կարծիքները բաժանեալ են · ոմանք կը հաստատեն , ոմանք կը մերժեն այս յատկութիւնը ։ Բուիլա–Սավարէն՝ ստամոքսաբանութեան երեւելի դասատուն գետնասնկոց վրայ ճառելէն և անոնց մէկ քանի անյայտ հանգամանքները պատմելէն վերջը , կ'եզրակացնէ որ սունկը բնաւ դրական ափրոդիտեան չ'է · բայց կրնայ , մէկ քանի առիթներու մէջ , կիները աւելի փափուկ և այրերն ալ աւելի սիրելի ընել ։

Քրքումը կենդանական զօրութեանց իբր զօրաւոր չարժիչ մը նկատուած էր Բօէրհաավէն ։ Բաքօն զայն իբր երկայնակեցուցիչ ազնիւ դեղ մը համարած էր , և արդի այլ և այլ ազգեր զայն իբր ընտիր ափրոդիտեան իրենց կերակրոցը կը խառնեն ։

Արեւելեայք Արեւի և Աստղկան կռուոյն գրգռուելու համար ափիոն կը գործածեն , այս դեղը իրենց անպատմելի հեշտութեան խախտումն , մարմաջումն և զմայլելի յափշտակութիւն կը մատակարարէ ։ Ափիոնը , ըստ իրենց կարծեաց , արքայութեան բանալին է · բայց ամեն օրուան փորձը կ'ապացուցանէ որ անոր երկարատեւ գործածութիւնը

ծննդագործ կարողութիւնները կատարելապէս կը չիջուցանէ, կ'եղծանէ և վերջապէս գործածող մարդը կատարեալ թանձրամտութեան մէջ կ'ընկղմէ։

Թօլոմի, Մէքքէլի, Փէրրոնի և Պէնժամէնի բաղդատմամբ բաւական բարձրաստիճան խթիչ զօրութիւններ կը վայելեն։ Ներքին կողմանէ գործածելով մարսողական խողովակը և համակրաբար ծննդական գործարանները կը գրգռեն. և եթէ սպեղանի՝ միջաց կողմերը և որքանին ու ծննդական գործարանաց միջավայրը գործածուելով, ծննդական յօրինուածոյն վրայ զօրաւոր ազդեցութիւն մը կ'ընեն և զայն՝ ցանկական գործողութեան կը յանկուցանեն։

---

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

### ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՑԵՂ։

Շատ հին ժամանակներէն 'ի վեր փորձուած է որ ձուկեղէն և խեցեղէն կերակրոց հանապազօրեայ գործածութիւնը մորթի գրգռութիւնը կը զարգացնէ, և ծննդական գործարանները կը խթէ. նոյնպէս հաստատուած է որ ձկնակեր ազգաց կիները աւելի արգասաւոր և այրերն ալ զուգաւորութեան աւելի միտեալ են։ Ֆուռքրուայի և Վօքըլէնի տարրալուծական փորձերը յայտնեցին որ ձկանց մարմինը և սերմը կը պարունակեն փոսփոր. նիւթ մը, որ ինչպէս գիտենք, ափրոդիտեան խիստ բարձրաստիճան զօրութիւն մ'ունի։ Այսպէս բացատրուեցան ձուկ ուտողներուն ծննդագործ կարողութիւնը։

խեցեմորթները․ ինչպէս ամէն տեսակ խեցգետինք․ —անողնայարք կամ թուլամորթ կենդանիք․ —պատենաւորք․ —գաղտակուրք․ —ոստրէք և միւս երկխեցիք ափրոդիտեան կերակրոց կարգը դասուած են։ Հիները շատ աղէկ կը ճանչնային այս կերակրոց գրգռիչ յատկութիւնքը․ Աթէնէ և Դիոսկորիդ այս մասին կը պատմեն թէ փոքրիկ Ութբազկեանք, մատղաշ Սիպէք և Նոխազակունք նուիրուած էին Աստղկան․ վասնզի սիրոյ գրգիռ կուտային։

Ցամպարը, զոր բնագէտք վիշապաձկան ապաւիժած նիւթը կը համարին, խիստ հաճոյական և խիստ տարածական հոտ մ'ունի, և ծննդական յօրինուածոյն խիստ լաւ խթիչ մը կը նկատուի։

Ըստ վկայութեան Պօմէյի․ մէկ ըմպաչափով առնուած 30 ցորենահատ յամպարը բաւական է երակաց զարկին ճեպումն, ջղային զօրութեանց խիստ զգալի զարգացումն և սիրոյ հաճոյից մասնաւոր առատութիւն մը պատճառել։ Հիները՝ հեշտական չափազանցութենէ պատճառուած անզգայութեան ատեն այս նիւթէս շատ կը գործածէին, և ընկճեալ կենսական ուժերը արծարծելու և հասակի կամ չարաչար գործածման պատճառաւ թառամեալ այրական անդամուն կորովութիւն տալու զօրութիւնը կը յատկացունէին անոր։ Շօմըթօն բժիշկը հնոց կարծեաց յենլով կըսէ․ «Ցամպարի գործածութիւնը շատ անգամ յաջողութեամբ պսակուեցաւ, կրնամ հաստատել անոր զօրութիւնը վաւերական դէպքերով»։ Ի վերայ այսր ամենայնի եթէ ափրոդիտեան դեղագրոց շատերուն մէջ յամպարը նը-

չանակուած կը տեսնուի , պէտք է խոստովանիլ որ գրգռիչ յատկութիւններ ունի ։

Բեշկոյոսանէ , Կըշնոյոսանէ և ճոաչ ասոնք խիստ հոտեղ նիւթեր են . որք մէկոյ բեչկէն , կուղբէն և մշկապորտ այծեամէն կը գոյանան ։ Այս բովանդակք կը գործածուին բժշկութեան մէջ իբր զօրաւոր հակատնգական դեղ · իրենց չափազանց բաժանականութիւնը և սփռականութիւնը իրենց ազդեցութիւն մը կը յատկացնէ , որնոր արագութեամբ ծննդական անդամոց կը հաղորդուի և բոլորովին մասնաւոր եղանակաւ մը զանոնք կը խթէ ։ Այս նիւթերը թէ՛ ներքնապէս և թէ՛ արտաքնապէս կրնան առնուիլ և միշտ կը յաջողին , մանաւանդ երբ անկարողութիւնը կամ անզգայութիւնը սեռական գործարանաց տկարութենէն առաջ եկած ըլլայ ։

Արեւելցիք թէ՛ կլիմայի և թէ՛ բազմակնութեան պատճառաւ ժամանակէ առաջ ջղատուելով , սաստիկ ըղձիւք կ՚որոնեն այն տունկերը և դեղերը , որ զօրաւոր ազդեցութիւն կ՚ունենան ծննդական գործարանաց վրայ ։ Արդէն ունին խել մը դեղագիրներ , որոնք ստէպ կը գործածեն · բայց գրեթէ միշտ անյաջող ։ Այս դեղերուն մէջէն երեւելիներն են · ուրտաշեան բանդակը · փեֆենոյ-ոդանդէ հունդերէն շինուած խիւսը · հանդերձանք ուրդան նօրմերոյ · Լոաֆա օլըրօանաֆա · փօսփաղ ադռօոգլիդան են ։ Վերջապէս գերեղչըրեայ միմոան բուներուն և օճնէ ըսուած մողեսին մարմնոյն կամ փոշւոյն , որք ափրոդիտեան աքանչելի զօրութեանցը համար խիստ համբաւաւոր էին , առուտուրը խիստ մեծ էր երբեմն և է այսօր ։ Այս վերջի երկու նիւթերը , որոց զօրութիւնը երե-

ւակայական է , խիստ սուղ կը ծախուի · վասնզի Արեւելցիք անոնցմէ առատութեամբ կըսպառեն ։

Մեր թուարկած զանազան նիւթերէն 'ի զատ , տակաւին կը գըտնուին ափրոդիտեան համարուած չատ մը նիւթեր , որոց ազդեցութիւնը կամ ոչինչ է կամ վտանգաւոր · այս վերջիններուն մէջն են կունտուզեղջէնք , որք արդէն նշանակուած են , և Հին Եգիպտացւոց Նուիրական Եղնակէզը կամ մաշկաթեւ բոռոտը , որոց երկուքն ալ ծննդա–միզական կազմածին վրայ սաստիկ և վնասաբեր ազդեցութիւն մը կընեն ։ Ըստ Մ․ Պարիզեթի , Նուերական եղնակէզը բոլոր ափրոդիտեան դեղերուն ամենէն զօրաւորն է ։ Հին Եգիպտացիք անոր այս յատկութիւնը կը ճանչնային · վասնզի Թեփէի չիրմաց վրայ այս միջատը քանդակուած է այս կերպով · միջատը իւր կտուցէն խոնաւութիւն մը կը հոսեցնէ առն մը բերանին մէջ · և այրն ալ իւր կանգնեալ անդամէն փոքրիկ տղաքներ կը ցայտեցնէ ։ Մեր օրերն իսկ ճանապարհացոյց-թարգմանը որ նոր ճանապարհորդները այս գետնափոր տեղուանքը կը տանի , կը ծախէ տեսակ մը ցքի կամ այս բոռոտէն չինուած ալգուլական երփնաւէչ մը , ցանկական չափազանցութենէ պատճառուած ըսպառման դարման ընելու համար · այս ցքին առ և տուրը խիստ մեծ է ։ Այս բոռոտին փոշին , ալգօլի մէջ խառնելով , քիչ տարբերութեամբ՝ կունտուզական երփնաւէչին կը նմանի ։

Այն անխոհեմները , որք [illegible] կամ փոսփորեղէններէն միօրեայ կորովութիւն մը ստանալ կը փորձեն , վերստին կը խրատեմք կարդալ այն դիտողութիւնները , որք այս տոչորիչ նիւթերուն

թունաւորութեանը նկատմամբ գրուած են ։ Մարդ անպատիժ չը կրնար գործածել զանոնք․ անոնց՝ մարմնական յօրինուածոյն մէջ ներմուծութիւնը խիստ ծանր անկարգութիւններ կը պատճառէ, որոց ընդհանրապէս կը հետեւին միզական փամփուշտին՝ կեղ և առնի անդամուն՝ բշտութիւն ։

---

## ԳԼՈՒԽ ԻԲ․

## ԴԵՂԱԳԻՐՔ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Տարրալուծական և կազմաբանական Ուսմանց արդի բժշկութեան վրայ դրոշմած անհուն յառաջադիմութիւնը կ'ապացուցանէ այսօր վաղեմի դեղագործութեան հին դեղագրոց անբաւականութիւնը և անհեղեղութիւնքը ։ Մեր դարուն լուսաւորեալ բժիշկները՝ երբեմն ափրոդիտեան համարուած նիւթոց շատերուն զօրութեանը վստահութիւն չեն ընծայեր․ ի վերայ այսր ամենայնի կան նիւթեր, որք ուղղապէս միզական ծննդա–գործարանաց վրայ կ'ազդեն, բայց անոնց ազդեցութիւնը գրեթէ միշտ վտանգաւոր է անձին ։ Ուստի զանոնք գործածելու համար խիստ մեծ զգուշութիւն ընել և խիստ քիչ անգամ գործածել պէտք է։

Մենք հաստատապէս կը հաւատանք որ լաւագոյն ափրոդիտեան դեղերն են զօրացուցիչ և կազդուրիչ կերակրութիւնք ։ Զափաւորութեամբ գործածուած սննդատու կերակուրք և գրգռիչ ըմպելիք, արդէն նշանակուած զանազան վարժութիւնք,

ինչպէս են չփչփանք ․ ձաղկանք ․ պաղ ջրով լուացմունք եւ և առողջարանութեան յարմար դատած ամեն միջոցք ամեն ափրոդիտեան դեղերէն աւելի զօրաւորն և աւելի մտաւորական են ։ Բայց և այնպէս այս գլխուս մէջ պիտի նշանակենք Պօէրհավի ․ Սուիտենհամի ․ Հիւֆլանդի ․ Թիսօյի ․ Ալիպերի ․ Վիրեյի ․ Մօնտայի եւ մասնաւորապէս ծննդական գործարանաց տկարութեան զբաղած երեւելի կլիւարկու բժշկաց դեղագիրները ։ Բայց ընթերցողացս կը զեկուցանեմ կանխաւ որ այս պատրաստութեանց շատերը զօրաւոր խթիչներ և սաստիկ գրգռիչներ և երբեմն ալ տռչորիչներ ըլլալով , բժշկի մը վարչութեան տակ զանոնք միայն ՚ի կիր արկանելու է ։

## ԳԻՆԻ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

| | | |
|---|---|---|
| Կանաչ փոճոկ վանիլյայի ․ ․ | 30 | կռամ |
| Դարիճենիկ ․ ․ ․ ․ ․ ․ ․ | 30 | « |
| Ժենղէնէ ․ ․ ․ ․ ․ ․ ․ ․ ․ | 30 | « |
| Խաւարծիլ ․ ․ ․ ․ ․ ․ ․ | 30 | « |
| Գինի Մալակայի ․ ․ ․ ․ | 1 | լիտր |

Դի՛ր այս նիւթերը գինիին մէջ և թող՛ որ թրջին տասն և հինգ օր , բայց ամեն օր յուզելու է զանոնք , որպէս զի աղէկ թրջին ։ Զտէ՛ և աւելցո՛ւր 15 կաթիլ յամպարի եղփնաւիչ ։ Մալակայի գինւոյն տեղ Քաալլիսինը կրնայ գործածուիլ ։

## ՎԵՐՕՅԻՇԵԱԼ ԳԻՆԻՆ ԱՒԵԼԻ ԶՕՐԱՒՈՐ ԸՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԳՐԳՌԻՉ ՀԵՂՈՒԿ

| | | |
|---|---|---|
| Արմատք Զէնջէֆիլի ․ ․ ․ ․ | 60 | կռամ |
| Կեղեւք Քանէլլայի ․ ․ ․ ․ | 30 | « |

| | | |
|---|---|---|
| Ծաւատն | 20 | հարիւրդակռամ |
| Ալքօօլ կրկնաթորեալ | 500 | կռամ |
| Զուտ ջուր | 1 | լիտր |

14 օր շարունակ ձգէ՛ ջուրին մէջ և յետոյ թորէ ծովաջրոյ դաշտով, մինչեւ որ 500 կռամ արդիւնք ս՚ունենաս։ Այս արդիւնքը Ափրոդիտեան գինւոյն մէջ լի՛ց և դի՛ր շիշի մը մէջ և նոր խցով մը խցէ՛։

Դրգալով կամ պզտիկ գաւաթով մը ա՛ռ այս գինին։

## ԷԼԻՔՍԻՐ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

| | | |
|---|---|---|
| Ցամպար | 2 | կռամ |
| Հալուէ | 6 | » |
| Ռեւպան | 12 | » |
| Մուշկ | 2 | հարիւրորդ կռամ |

Ամէնքը մեկանց ծեծէ՛ ական մը մէջ և աւելցո՛ւ վրան ալքօօլ, մինչեւ որ ամբողջ զանգուածը ընկղմի. տաքցո՛ւ աւազէ դաշտով. զտէ՛ և դի՛ր շիշի մէջ բերանը խիստ լաւ խցելով։

Կէրատօ-Ռէճան։ Արգանակի մը մէջ չորս կամ հինգ կաթիլ լեցնելով ա՛ռ։

Ըստ Ռիմմէլի այս էլիքսիրը շատ ընտիր գրգռիչ զօրութիւն ունի և միւս էլիքսիրներէն խիստ լաւ է։

## ՇԻՐՈՊ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ ԳՈՐԾԱԾԵԼԻ ԱՐԱՆՑ

| | | |
|---|---|---|
| Քինքինա | 8 | կռամ |
| Արմատք ձէնձէնկի | 60 | » |
| Սիպերական մոխրատունկ | 30 | » |
| Կանաչ փոճոկ վանիլլայի | 30 | » |
| Հունտ քարտամոնի | 60 | » |
| Քահուէ | 60 | » |

| | |
|---|---|
| Ճերմակ շաքար . . . . . . | 1 քիլոկրամ |
| Ցամպար . . . . . . . . | 1 կռամ |
| Մուշկ . . . . . . . . . | 2 հարիւրորդկռամ |

Այս նիւթերը բաւական քանակութեամբ ընտիր գինւոյ մէջ թրջէ՛, մեծ զգուշութեամբ զտէ՛ և դի՛ր շիշի մէջ բերանը աղէկ գոցելով ։

## ՇԻՐՈՓ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ ԳՈՐԾԱԾԵԼԻ ԿԱՆԱՆՑ

| | |
|---|---|
| Արմատք ժէնզէնկի . . . . . | 30 կռամ |
| Խոլորձ Պարսկի . . . . . . | 30 « |
| Փայտ Բօօփէօլայի . . . . . . | 30 « |
| Սեաւ գետնասունկ . . . . | 60 « |
| Տերեւ կատուախոտի . . . | 30 « |
| Կանաչ փոճոկ ֆանէլլայի . . | 15 « |
| Հունտ ֆոլփօնօժի . . . . . | 30 « |
| Ճերմակ շաքար . . . . . . | 1 հազարակրամ |
| Ցամպար . . . . . . . . . | 1 կրամ |
| Մուշկ . . . . . . . . . . | 2 հարիւրորդկրամ |

Վերոյիշեալ կերպով պատրաստէ՛ ։

## ՀԻՓՕՔՐԱՍ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

| | |
|---|---|
| Դարիճենիկ ծեծուած . . | 30 կրամ |
| Հնդկապղպեղ . . . . . . | 30 « |
| Մեխակ . . . . . . . . . . | 8 « |
| Վանիլյա . . . . . . . . . | 8 « |
| Ճերմակ շաքար ծեծուած | 1 հազարակրամ |
| Ընտիր կարմիր գինի . . | 6 լիտր |

Հինգ օր թրջոցը դի՛ր , և քամոցէ անցնելէդ յետոյ լի՛ց ձագարի մը մէջ, որուն յատակը դրուած ըլլայ 10 հարիւրորդակրամ յամպար , 2 հարիւրորդակրամ փոշի մուշկ և 4 կրամ բիւրեղաշաքար ։

Այս գինին, իւր ախորժելեան զօրութենէն ՚ի զատ, զօրացուցիչ և ստամոքսի օգտակար է։ 30 էն մինչև 60 կրամ կ՚առնուի։

### ՄԶԱՒՇԱՐԱԿ ԿՈՒՆՏՈՒԶԻ ԴԵՂԱԳՐՈՅՆ ԾԻՊՈՒՐԻ

| | | |
|---|---|---|
| Իւղ կամփորայի վերահեղմամբ | 2 | կրամ |
| Կուէզ · · · · · · · · · · · | 8 | « |
| Դեղնուց հաւկթի · · · · · · | 1 | « |
| Ջուր գլոյ · · · · · · · · | 90 | « |

Ըստ արհեստի մզաւշարակ մը շինէ՛։

Այս պատրաստութիւնը, ըստ ծիպուր դեղագործին, կամփորայը ներքնապէս գործածելու լաւագոյն միջոցն է։ —Բժիշկի մը պատուէրը կը պահանջէ։ —Բժշկական և դեղագործական հրամանաց հակառակ մեծապէս կը պարտաւորինք մեր ընթերցողները՝ կամփորայը երբեք ներքնապէս չը գործածել, եթէ կը փափաքին իրենց ստամոքսը լաւ վիճակի մը մէջ պահել։

### ԱՒՇԱՐԱԿ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

| | | |
|---|---|---|
| Մուրտ մշկահոտ գործեալ · | 8 | կրամ |
| Պատրինջ · · · · · · · · | 4 | « |
| Բօզզօ · · · · · · · · · · | 4 | « |
| Հնդկընկոյզ · · · · · · · | 2 | « |
| Կեղեւ նարնջի · · · · · · | 2 | « |

Ըստ արհեստին շինէ՛ աւշարակ, զոր կը համեմես մէկ քանի կաթիլ թուրինջ խառի ջրով։ Այս աւշարակը պառկելու ատենը կամ անկողինէն ելլելու ատենը առնելու է։

### ԲԱՆԴԱԿ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

| | | |
|---|---|---|
| Կոզի Քօպօյի · · · · · · | 35 | կրամ |

Գազպէն չթամեւ . . . . . 30 կրամ
Մզամիրոն հեղուկ . . . . 12 կաթիլ
Ջուր ծաղկանց նարնջի . 30 «
Շիրոբ բալասանի թօլուի . Ք . Բ .

Ըստ արհեստին բանդակ մը չինէ՛ ։

## ՓԱՍՏԻԷՂ ԺԷՆԶԷՆԿԻ

Ժէնզէնկ փոշի . . . . . . 250 կրամ
Վանիլյա . . . . . . . . . 500 «
Ներկ յամպարի . . . . . 10 կաթիլ
Իւղ դարիճենիկի . . . . 50 «

Բոլոր զանգուածը մէկուկէս կռամնոց փաստէղներու բաժնէ՛ ։

Այս խիստ գրգռիչ փաստէղները՝ ծննդական շիջեալ գործարանները վերստին կենդանացնելու յատկութիւն ունին, կըսեն ։

## ՓԱՍՏԻԷՂ ԽԻՍՏ ԳՐԳՌԻՉ

Քաքաօ կարագ . . . . . . 120 կրամ
Ժէնզէնկ . . . . . . . . . 20 «
Վանիլյա եղեմնարկեալ . 20 «
Դարիճենիկ Սեյլանի . . 10 «
Արմատ ողկուզողի ափրիկէ 4 «
Շաքար բիւրեղացեալ . 500 «
Ցամիգար . . . . . . . . 2 «

Խէժ զազի քանակութիւն բաւական ,

Ըստ արհեստի զանգուած մը չինէ, զոր հազար դեղահատի պիտի վերածես, և չորցո՛ւ գործածութեան համար ։

## ՓՈՇԻ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Մուշկ . . . . . . . . . . 10 հարիւրորդական
Հնդկապղպեղ . . . . . . 4 կրամ

Հնդկընկոյզ . . . . . . . 4 կրամ
Պղպեղ երկայն . . . . . . 4 «
Դարիճենիկ . . . . . . . 125 «
Շաքար . . . . . . . . 125 «

Ըստ արհեստի փոշի մը շինէ՛ ։

## ՍՊԵՂԱՆԻ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Օփոպելտօք . . . . . . . . 60 կրամ
Իւղ կամփորայէ . . . . . . 8 «
Իւղ ռօզմարինայէ . . . . . . 8 «
Ոգի դարիճենիկի . . . . . 4 «
Մուշկ . . . . . . . . . . 10 հարիւրորդակրամ
Ցամպար . . . . . . . . . 50 «

Ըստ արհեստի շինէ՛ ապեղանի մը ։

## ՓՈՍՓՈՐԱԽԱՌՆ ՍՊԵՂԱՆԻ ԱՆՈՒՇԱԴՐԱԿԱՆ

Փոսփոր . . . . . . . . 20 հարիւրորդակրամ
Իւղ սկիւթական գիոյ . 20 կրամ
Անուշադր կիզիչ . . . 60 «

Ըստ արհեստի շինէ՛ ապեգանի մը․ որնոր առանդամը գրգռելու խիստ լաւ դեղ մ'է․ և կրնաս առով ծնծակին շուրջն ալ շփել․ բայց ներքին կողմը չը մտնալու զգուշութիւն ընելու է ։

## ՔԱՔԻԻՆՏԷ (Բասդեղ) Հնդկաց

Մաստանեհար կաւ. Ճըշնէ մախմուտ . . . 500 մաս
Սաթ . . . . . . . . . . . . . . 255 «
Մուշկ . . . . . . . . . . . . . 30 «
Ցամպար . . . . . . . . . . . . 30 «
Հալուէ . . . . . . . . . . . . 160 «
Ածխաթթու աղ մագնեզիայէ . . . . 330 «
Կոլոմպօ . . . . . . . . . . . . 30 «

| | | |
|---|---|---|
| Դարիճենիկ | 30 | մաս |
| Խաւարծիլ | 30 | « |
| Բան | 30 | « |
| Օշինդըր | 30 | « |
| Մաղտաքէ | 30 | « |

Այս նիւթերը կիճի վրայ աղէկ մը լեցու և թըրջէ՝ զանոնք հետեւեալ հեղուկներով։

| | | |
|---|---|---|
| Մշկահոտ գինի | 500 | կրամ |
| Վարդեջուր | 250 | « |

Ճշգիւ խառնէ՝ և աւելցուր։

| | | |
|---|---|---|
| Շաքար | 2400 | կրամ |

Խէժ գազի ֆինչէ (քիթրէ) բաւական քանակութեամբ։

Վեց հարիւրորդակրամնոց փաստեղներ շինէ՝, որոնցմէ մէկ քանի հատ կրնայ առնուիլ ամեն օր։

## ՃՇԳՐԻՏ ՕՐԻՆԱԿ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ ՓԱՍՏԵՂԱՑ ՆԱՓՈԼԻԻ

| | | |
|---|---|---|
| Շաքար | 500 | մաս |
| Մաղտաքէ | 12 | « |
| Քրքում | 8 | « |
| Մուշկ | 1 | « |
| Հնդկապղպեղ | 2 | « |
| Մեխակ | 2 | « |
| Ցամպար | 4 | « |

Եփաջուր Հալեւորկի բաւական քանակութեամբ։

Ըստ արհեստի շինէ 50 հարիւրորդակրամնոցէն մինչեւ մէկ կրամնոց փաստեղներ, որոցմէ չորս կամ հինգ հատ կրնայ առնուիլ օրը։

## Փոշոտ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Քոնճնաբիպէն . . . . . . 5 հարիւրորդակրամ

Թոյլ ճարպ , թարմ . . 30 կրամ

Նախ . ծանծաղէջները քչիկ մ'ալքոլով լեսո՛ւ և յետոյ ճարպով ·

## ՍՊԵՂԱՆԻ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Անէլոնոը ոչօջալմ . . . . . . . . . . 60 կրամ
Բուրան . . . . . . . . . . . . . . . 4 «
Բաղսամոնին Բերուի . . . . . . . . . 4 «

Ծովաջրոյ-դաշտով զանգէ՛ , կրակին վրայէն եառ՛ու և աւելցո՛ւ :

Յամպար . . . . . . . . 120 կրամ
Մուշկ . . . . . . . . . 20 «

Մինչդեռ զանգուածը տաքաւին հեղուկ է , տարածէ՛ զայն հաշիի կտորներու վրայ քանի մը հազորրդամեթր թանձրութեամբ , և միջաց կամ ողնայարի տօրին ծայրից վրայ դի՛ր մէկ քանի օր ձնալու պայմանաւ :

## ԼՈԳԱՆՔ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Խնկունի . պիղեբլնա . . . . . . . . 500 կրամ
Թաւ ղուպայ . . . լաբը . . . . . . . 500 «
Ջուբրակ . . . . . . . . . . . . . . 500 «
Անանուխ . . . . . . . . . . . . . . 500 «
Ծաղիկ երիցուկի ծաղիկ . . . . . . 500 «
Ջուր եռացեալ . . . . . . . . . 3 լիտր

Ցամ և երկու ժամ եռացեալ ջրոյն մէջ ձգէ՛ , յետոյ աւելցո՛ւ :

Երփնաւէրչ գիահնտոյ . . . . . . . . 60 կրամ
« հնդկընկուզի . . . . . . 60 «

Ամենքը 'ի միասին լոգամանին ջրոյն մէջ մ'ա-խառնալու տանենք :

## ԼՈԳԱՆՔ ԵՒ ՕԾՈՒՄՆ ԱՓՐՈԴԻՏԵԱՆ

Ծննդական գործարանաց վրայ գործածելի դրդուիչ լոգանքները 'ի գործ կը դրուին պաղ, տաք և համեմատաւոր ջուրերով։

Կեսներ և Շարքթալ առնանդամոյն տկարութիւնքը, որք երեք տարի տեւած էին, ամբողջապէս բըժըշկեցին մանանխայ հատերուն եփաջրոյն մէջ՝ անդամը բաղում անգամ ընկղմել տալով։

Նոյնպէս երկու մաս թոյլ ճարպով և մէկ մաս՝ վայրի վարդին փոշի դարձած պտուղը շինուած ֆօմատայով առնանդամոյն և կնաքիրին վրայ օծելը կարի կը գովեն։ Այս փուխատային պատճառած մարմաջմունք կատիպեն քերուըտելու, և կը պատահի երբեմն որ այս բազմակրկնակ քերուըտուկք հեշտութեամբ ընկերացեալ գրգռում մը զգալ տան Հաւափրոդիտեանց։

Ահա ասոնք են անզգայութեան, անկարողութեան և ամլութեան դէմ ամենէն աւելի զօրաւոր ճանչցուած դեղագրերը, բայց զօրաւորութիւնը ստորադասեալ է ժուժկալական և առողջապահական կերպառութեան, վասնզի այս երեք հիւանդութեանց մէկէն վշտացեալ անձինք, այս փոքրիկ գործոյս ընթերցմամբ լուսաւորուելէն ետքը, պարտին իրենց դարմանաց ընթացքը մէջ բժիշկէ մը առաջնորդուիլ։

Կանգման վրայ խօսած հատուածիս մէջ տեսնուեցաւ որ միզանցքը կանգման զօրութեան մեծապէս գործակից կըլլար։ Ցիրաւի արեան՝ խոռոչաւոր մարմնոյն մէջ հոսումը լաւ կուռեցնէ անդամը, բայց կանգնումը թոյլ կըլլայ, եթէ այս անցքը իւր

կանգնողական կարողութիւնը կորուսած է . ուստի հարկաւոր կանգնում մը ստանալու համար , անցքին՝ իրմէ պակսած կենսունակութիւնը վերստին ձեռք ձգել տալ պէտք է . շատ անգամ այս նպատակը կ'ըմբռնուի զօրացուցիչ գրեխներու և մանանխոյ եփաջրոյն մէջ ընկղմանց միջոցաւ : Այս գրեխները պարտին կատարուիլ սառի ջրով կամ նաեւ հաւասար մասամբք թիւմի և մշկահոտ անանխոյ պաղած եփաջրով : Իսկ եթէ առնանդամոյն տկարութիւնը , որնոր քառասուն տարեկան հասակին մէջ վրայ կը հասնի , կամ ցանկահաճոյից չարաչար գործածմամբը , կամ յոռացեալ կազմութենէ կախումն ունենայ , վայրական դարմանը յաջողութիւն չըստանար, մինչեւ որ սննդական կերպութիւն մը , դաշտին մաքուր օդը , ծննդական յօրինուածոյն հանգիստը և ջղային մարզը՝ կազմութիւնը կորովութեան գոհացուցիչ աստիճանի մը չը հասցունեն :

## ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻ

# ՄԱՍՆ Բ.

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ
## ՅՂԻ ԿՆՈՋ

### ԳԼՈՒԽ Ա.

### ՅՂՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ

Կինը՝ մինչեւ արգասաւորութեան օրը, ուրիշ բանով չը կրնար յանկուցանել իւր ամուսինը, բայց միայն իւր շնորհիւը, իւր տաղանդովը և իւր գեղեցկութեամբը : Բայց աս միջոցին հարիւր անգամ աւելի յանկուցիչ կըլլայ : Աղջկնութեան դերը լմնցաւ․ մօր դերը սկսաւ․ Նոյնպէս էրիկ մարդուն համար ալ նոր վարմունք կսկսի․ իր կնոջը վրայ ունեցած սիրոյն պիտի յարէ՝ անոր մայր ըլլալու վիճակին պահանջած ամեն հոգք, ամեն զգուշութիւնք և ամեն խնամք։ Այր դո՛ւ, լաւ 'ի միտ ա՛ռ, քու կնոջդ՝ իր արգանդը կրածը քու իսկ երկրորդն է․ քու սիրոյդ պտուղն է, զոր ինն ամիսէն ետքը ծնած պիտի տեսնաս․ զմայլուն տղէկ մընէ, որ քիչ ատենէն իւր փոքրիկ բազուկները և գեղեցիկ բերանը քեզ երկնցնելով քու երեսիդ պիտի խնդայ և զքեզ համբուրելով պիտի գրկէ : Որչա՜փ երջանիկ ես դու այն ատեն․ դու հա՛յր պիտի ըլլաս : Բայց

աղէկ մնացէ՛. բնութիւնը՝ այս տիտղոսը քեզ շնորհելով, միեւնոյն ատեն քու վրադ պարտաւորութիւններ կը դնէ յօգուտ մօրը և տղուն կատարելու։ Ուրեմն սիրէ՛ դու զինքը, և ամեն արժանավայել հոգ և խնամք անպակաս ընելով բոլորովին համակիր եղիր, անոր, վասնզի ծննդական գործողութեան մէջ դու միմիայն հրճուանք կունենաս. սակայն ամեն վիշտ և նեղութիւն անոր միայն վերապահուած է։

## ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԻՒՆ ՅՂԻ ԿՆՈՋ

Կնիկներէն ոմանք արգասաւորած ըլլալնին՝ ծննդական գործարանաց վրայ ստնգանք մը և բոլոր մարմնոյն վրայ վայրկենական հեշտութեան սարսուռ մը զգալով կիմանան. բայց երեւոյթը ընդհանուր ըլլալէ շատ հեռի է. ընդ հակառակը շատ մը կանայք առանց գիտնալու արգասաւորած են. և միմիայն դաշտանի հոսման ատեն՝ երբ հոսումը չը կատարուի, կիմանան թէ յղի են։

Մայրութեան պարտաւորութիւնները և պաշտօնները յղութեան հետ կսկսին. վասնզի կինը՝ իւր յղութիւնը ստուգելուն պէս, ալ իրեն համար չէ պիտի ապրի՝ իւր յղի կենաց ամեն վայրկեանները իւր կրած պտղոյն պիտի նուիրուին. կամ ուրիշ խօսքերով բացատրենք, պարտի հրաժարիլ աշխարհային զուարճ զբօսանքներէ, պարերէ, թատրոններէ, տօնախմբութիւններէ, բազմութիւն եղող տեղերու մէջ շրջագայելէ, վերջապէս ամեն տեսակ քնատութենէ, վատակարէկ ըլլալէ. բնութիւնը՝ իրեն նոր երջանկութիւն մը տալու համար զինքը մայր ըրաւ. ուստի առանց բացառութեան տղուն համար պի-

տի տարի , որոնք քիչ ատենէն իւր արգանդին մէջ շարժիլ պիտի սկսի ։

Ամեն կին կը փափաքի գեղեցիկ զաւակներ ծը-նանիլ . այս փափաքը խիստ բնական է . բայց մի՞թէ՝ աշխարհահաշէր կանայք այս բարեբաստիկ վախճանը առնելու միջոցներուն համաձայն կը վարուին ։ Աւա՜ղ , ոչ , անոնցմէ շատերը յղութե-նէն առաջ ունեցած վարմունքը կը շարունակեն , նոյն զբօսանքները , նոյն հրճուանքները գործա-րել կը ջանան ։ Կանա՛յք , չէք գիտեր որ սաղմը և իւր մայրը հասարակ կեանք մ'ունին ։ Չէք գիտեր որ մօրը յուզմունքները և չարաչար վաստակը սաղ-մին փոփոխակ գործարանացը վրայ կը ծանրանան ։ Վերջապէս չէք գիտեր որ մօրը սաստիկ գրգռմունքը տղուն յոյժ զարգացման պատճառ կըլլան ։ Եթէ տկար և նենգեալ զաւակ ունենալը ծնողաց համար թշուառութիւն մ'է , որչափ ևս առաւել մեծ է այս թշուառութիւնը խեղճ արարածին համար , որ բոլոր իւր կենացը մէջ պիտի կրէ իւր ծնողացը անխորհրդութեան ընթացիցը տխուր նշանները ։

Խելացի կին մը իւր յղութեան սկիզբէն պարտի մեկդի դնել նեղքերն բանճկոնակը և այն ամեն զգեստ-ները , որոնք իւր հասակը կամ որովայնին ստորին մասը այսինքն փորը կը սեղմեն . իւր հագուստները այն կերպով ձևած պիտի ըլլան որ կարող ըլլան կատարեալ արձակութիւն տալ 'ի զարգացումն այն մասանց , որոց ընդարձակումը սաղմին աճելուն հա-մեմատութեամբ կ'առաւելու ։ Մօր մը ըրած առող-ջապահական նախապատրաստութիւնները և խը-նամքները , և հոգեկանին ու բարոյականին մէջ պէտք ըլլալիք համաձայնութիւնը մշտատև պահե-

լու համար ըրած զգուշութիւնները՝ դիւրածնութեան, և տղեկին առողջութեան և լաւ կազմութեանը պատճառ կըլլան ։

Յղի բառը Գաղղիերէնի մէջ անծանօթ է, որուն իր սկզբնական նշանակութեան նայելով առանց գօտւոյ ըսել է ։ Հռովմայեցի կանայք իրենց ստինքներնին վեր բռնելու համար գօտի մը կը կապէին, բայց յղութեան ատեն կը պարտաւորէին այն գօտին ձգել, վասնզի օրէնք մը կար որ տուգանաց և բանտարկութեան կը դատապարտէր գօտի ունեցող յղի կիները ։ Լիւքիւրկոս օրէնք վճռած էր որ կանայք իրենց յղութեան առաջին նշանէն պիտի սկսին լայն, անկապ և անգօտի հագուստներ հագնիլ ։

Յղութեան ժամանակը երկու շրջանի կրնայ բաժնուիլ, մէկը քառամսեայ և միւսը հնգամսեայ ։ Առաջին շրջանին մէջ արեան յորդութեան միտումն կայ, վասնզի ամսական արեան կորուստը վերցուած է ։ Եթէ յղի կինը անցեալին մէջ կերածին նման ուտել շարունակէ և խիստ սննդատու կերակուրներ գործածէ, այս արեան յորդութիւնը հեղձումն կը բերէ · այն ատեն միակ դարմանն է արիւն առնուլը ։ Բայց իմաստուն բնութիւնը անխոհեմութեան միշտ օգնութեան կը հասնի ։ Այն յղի կինը որ իւր դրից համեմատ շատ կ'ուտէ, նողկանք և փսխումն կը կրէ, որոնք ստամոքսը աւելորդ կերակուրներէն կ'ազատէ և յորդառատ սննդեան մը դէմ կը դնէ ։ Ասկից՝ ի զատ գլխադարութիւնը, ստամոքսի ցաւը, անախորժութիւնը, ևն. կստիպեն զինքը խոհեմութեամբ կերակրութիւն ընել ։ Բնութեան այս զարմանալի կանխատեսութիւնը, որուն

ամեն մէկ գործարանը մէկ մէկ յատուկ բնազդ-մամբ օժտուած է , ամբողջ մարմնական յօրինուածոյն մէջ հաւասարակշռութիւն կը հաստատէ առանց բժշկի օգնութեան ։

Յղութեան առաջին ամսոց մէջ կինը խել մը թեթեւ անհանգստութեանց ենթակայ է, ինչպէս. նողկանք , ձանձրութիւն , տքնութիւն , որովայնի ծուութիւն , զօրութեանց լքումն · յուզի մարտղութիւն, զզուանք 'ի կերակրոց, դժուարամարսութիւն , փըսխումն , անհոգութիւն , վատառակ , ևն ։ Այս անհանգստութիւնները սովորաբար չեն պատահիր , եթէ մեղմ բայց սննդարար կերառութիւն մը գործածէ · ուսկից 'ի բաց հանելու է աղած , համեմած կամ ծխարկած կերակուրները · նոյնպէս գրգռիչ ըմպելիները։ Որովայնի արձակութիւնն անհրաժեշտ է յղի կանանց · և եթէ որովայնը ծոյլ ըլլայ , կիսալոգանք ընելու և զովացուցիչ ըմպելիներ առնելու է · իսկ լուծիչ դեղ և ուրիշ դեղորայք առանց բըժշկի հրամանին բնաւ առնելու չ'է ։ Ոտքով շրջագայութիւնը , ընտանեկան գործոց մէջ չափաւոր գործնէութիւն մը , լաւ օդը , զուարթութիւնը , մարմնոյ և զգեստներու մաքրութիւնը յղի կնոջ ամենէն աւելի յաջող պարագաներ են ։

Անհեթեթ և դժբաղդաբար խիստ ընդհանրական հաւատալիք մը կը պարտաւորէ յղի կիները մէկ քանի ամիս ինքզինքնին կերակուրով խծկելու , որպէս զի իրենց կրած մանկան հարկաւոր եղած սնունդը կարող ըլլան տալ · Երկու հոգւոյ համար պարտին ուտել , կըսեն ծեր սանամայրերը , առանց ասոր տղան վնաս կը կրէ ։ Այս տեսակ նախապաշարման մը վնասները և վտանգները ցուցնե-

լու համար բաւական է ըսել թէ սաղմը իւր երկրորդ ամսոյն մէջ հաւու հաւկթի մեծութենէ աւելի չէ, և թէ երկրորդ ամսոյ վերջէն մինչեւ չորրորդ ամսոյ վերջին օրերը իւր աճումը այնչափ փոքրիկ է որ իւր ծանրութիւնը տակաւին զգալի չըլլար մօրը ։

Քչիկ մը խորհրդածութիւն պարտի ընջել այս հաւատալիքը և համոզել կինը որ յղութեան առաջին ամսոցը մէջ, սաղմին հարկաւորութեան անհեթեթ պատճառանօք, կերակրոց ամենափոքր չափազանցութիւն մը իւր առողջութեանը վնաս կը բերէ և իւր կրած պտղոյն զարգացմանը կը վթարէ ։

Յղութեան երկրորդ շրջանին հասնելով, կինը քաղաց նոր կարգի մը մէջ կը մտնայ, մինչեւ այս ատեն ներքնարգանդային աշխատութիւնը, որնոր իրեն համար հազիւ զգալի եղած էր, կսկսի յայտնուիլ աներկդիմի նշանօք ։

Սաղմը՝ իւր չորրորդ ամիսը անցնելէն ետքը, խիստ արագ աճում մը կ'առնու և նոյն իսկ առար- համար աւելի առատ սննդատու հիւթեր կը պահանջէ մօրմէն ։ Ահա այս ժամանակն է որ բնութիւնը կնոջ ախորժակը սրելով իրեն կիմացնէ թէ պէտք է առաւելուլ իր կերակուրը ։ Սրտամղուքն ա՛լ նողկանք, թուքի չը կրեր․ պաշտօնները արագութեամբ և դիւրութեամբ կը կատարուին․ յղութեան այս շրջանին մէջ անհանգստութիւնը մօրը և իւր պտղոյն այնչափ վտանգաւոր կըլլայ որչափ որ մէկ քանի ամիս առաջ անոր չափազանցութիւնը կըլլար ։

Ուստի կնոջ ամենէն աւելի պատուիրելու բանն

անկարգութիւնք յղութեան, այս միջոցին կատարուած ցանկական զուարճութեանց տրուած են ։

Առ 'ի պահել զպտուղ
Ջեր առաջին հաճոյից,
Ցայսմ հետէ դիք սանձ
Եռանդագին ձեր կրից.

Չրոյն՝ որ կեայ իսկ 'ի ձեզ
Նոր հուր կարէ վնասել.
Եւ զոր ինչ սէրն գործեաց,
Սէրն կարէ եղծանել ։

Արդարեւ բնագիտական օրինաց ասկէ աւելի համաձայն բան չը կրնար ըլլալ. ճնշում մը, մերձեցում մը կրնան ծանրանալ արգանդին վրայ և անոր վաստակը խանգարել. ջղային տատանիկ կծկում մը, սանդանք մը կրնան սաղմին դրեթէ դոնդողանման ոսկերց ուղղութիւնը այլայլել, անոր գլուխը տըձեւացնել, ողնայարի սիւնակը ծռել. այնպէս որ առողջ, և եթէ իւր յղութեան առեն իմաստուն և հանդարտ ըլլար, խիստ բարեկազմ տղայ մը ծնընդագործելու ամեն հանգամանքները յանձին բերող կին մը տձեւ և գձուձ տղայ մը պիտի դնէր յաշխարհ ։ Երկու ամուսինք այսպիսի կարեւոր կէտի մը ամենէն աւելի ուշ դնելու են ։

Կարճատեւ շրջագայութիւնք, թեթեւ զբօսանք յղի կնոջ նպաստաւոր են իւր ախորժակը դրդռելու և ամոքումը դիւրացնելու համար. աւելի առատ սննդեան մը կարօտութիւն ունի. վասնզի թէեւ այժմ դաշտանի արտաքսումն չըլլալով չը կորսնցունէր, բայց այս բաւական չէ. ամսական արեան

-քարձումը չըր փոխարինէր՝ իւր մարմնական յօրին-ուածոյն՝ 'ի նպաստ սաղմին կորուսած անձնական հիւթոց գումարը · այս հիւթերը այնչափ աւելի առատութեամբ մատակարարուած կըլլան սաղմին, որչափ որ սա աւելի հասակաւորի և աւելի կորովի ըլլայ · եթէ մօրը քով սնունդը նուազիլ սկսի · իւր պտղոյն աճմանը և զարգացմանը մէջ անվրէպ և միշտ ցաւալի յապաղում մը պիտի պատահի ։

**ՍՆՈՒՆԴ ։** Յղութեան վեցերորդ. ամիսը հասնող կնոջ մը սնունդը նիւթաւոր կերակրոց կարգէն ըլլալու է · քիչ ուտելու է բայց ստէպ ։ Կերակրոց քանակութիւնը և թիւը իւր պիտոյից և իւր ստամոքսին մարսողական զօրութեանցը վրայ կարգաւորուելու են ։ Իւր սեղանէն աքսորելու է աղած, համեմաւոր միսերը, ծաղերը և ջերմուցիչ բոլոր ուտելիքները · վասնզի այս միջոցիս ընդհանրապէս որովայնապնդութիւն կը պատահի · և ահա սպառիժման պաշտօնը յաջողեցնելու և որովայնի ազատութիւնը պահելու համար է որ դոնդողանման կերակուրք և կակղիչ մէկ քանի կիսալոգանք կը պատուիրուին ։

**ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ ԼՈԳԱՆԱՑ ։** Թոյլ և խիստ աւշաւոր կազմուածքի տէր եղող կանայք պարտին, կարելի եղածին չափ, հրաժարիլ ամբողջ լոգանքէ, բայց կրնան տաք տեղը լեցնել թեթեւ համեմաւոր ջրովք լուացմամբ ։ Երբ կինը ջղային խառնուածքի տէր ըլլայ, յղութիւնը՝ իւր գրգռականութիւնը կ'աւելցնէ, և գաղջ լոգանք իրեն մեծապէս կը նըպաստեն · շատ պարագաներու մէջ ալ անոնք իբր բուսադոյն հակատենդական կրնան համարուիլ ։

Յղութեան առաջին և վերջին ամսոց մէջ եղած

լոգանք աւելի նպաստաւոր են ։ Խոնաւ տանջան-քը կը ցրուեն և արգանդի բորբոքում մը կը հանդար-տեցնեն ․ վերջին ամսոց մէջ ծննդական անդամնե-րը կը կակղեցնեն և զանոնք մեծագոյն ընդարձա-կութեան մը կը նախապատրաստեն․ արգանդի պա-րանոցին խստութեան առաջքն կ'առնուն և անոր ընդլայնումը կը յաջողեցնեն ։

Ոտից լոգանքը լաւ արդիւնքներ կունենան այն պարագային մէջ , ուր պահանջուին ․ միմիայն այն ատեն վնասակար կըլլան երբ լաւ պատուիրուած չ'են , այսինքն պէտք չ'եղած ատենը գործածուին ։ Յղի կինը միշտ պարտի զաղջ ջրով ինքզինքը լուալ և խնամարար մերժել տաք օդէ մը պաղ օդը անց-նելու խիստ ազդեցութիւնք ։

Աղեաց ոռոգումը կամ լուացումը անհրաժեշտ կարեւոր են , եթէ կինը քսան և չորս ժամը անգամ մը ճեմիշ չ'երթայ ․ այս լուացմունք միշտ կակուղ պիտի ըլլան ․ վտանգի մաքրիչք սաստկիւ վնասակար են ։ —Արծացուցիչք , որք միշտ վնասակար են , բոլորովին մերժուելու են ։

Սովորութեան մը կամ նախապաշարման մը հը-նազանդելու համար երբեք արիւն առնուլ պէտք չէ ․ յղի կնոջ մը երակը բանալէ առաջ մանկաբարձ —բժշկի մը խորհուրդ հարցնելու է , և միմիայն այն ատեն արիւն առնուլն հարկ է , երբ արիւնա-յորդութիւնք զայն անհրաժեշտ ընէ ։

Ստամոքսի և արգանդի մէջ խիստ անձուկ յա-րաբերութիւններ կան ․ այս երկու գործարաններն համակրութեամբք մէկզմէկու միացած են , որք ղանազան պարագաներու մէջ խիստ փոփոխական երեւոյթներով կը յայտնուին ։

Շատ անգամ արգանդի սնունդամքը անմիջէ գոր-ծարանաց մէջ խանգարմունք կը պատճառէ և տե-ղի կուտայ նողկանաց, որձանաց և ախորժակի յո-ռութեան, որնոր փափաքել և ուտել կուտայ խիստ անսովոր նիւթեր, ինչպէս խիստ բարկ, խիստ անախորժ կերակուրք. երբեմն ալ իրենց միտքը հետամուտ կըլլայ տարօրինակ կամ անկարելի իրաց՝ զորս տենչանօք ստանալ կը փափաքին։ Ախորժակի այս յոռութիւնը և յղի կանանց փափաքները տեն-չանք կոչուեցան։

Այս աւելի կամ նուազ անհեթեթ, աւելի կամ նուազ ստիպողական տենչանք ընդհանրապէս ջղ-ային հիւանդութեան մը կամ երեւակայութեան վաղանցուկ անկարգութեան յառաջ եկած մոլեգ-նութեան մը ախտանշանն են։ Այս երկու պատճա-ռանց դարման ընելու համար բարոյական բժշկու-թեան դիմելու է։

## ԴԵՂ ՓՈՐՁԵԱԼ ԸՆԴԴԷՄ ՈՐՁԱՆԱՑ ՅՂԻ ԿԱՆԱՆՑ

Հիւթլանդ բժշկին օրագրոյն մէջ հետեւեալ պատրաստութիւնը կուտան իբր բուն դեղ ընդ-դէմ որձանաց, որք կը չարչարեն յղի կիները յղու-թեան որ և իցէ միջոցին մէջ։

Քրէօզօթ . . . . . . . 15 հարիւրորդականաւ
Փոշի բանկի . . . . )
Ջուր Թորեալ . . . ) բաւական քանակութիւն

Շինէ՝, քաշ արհեստ, համախառն զանգուած մը, զոր ամեն մէկը 10 հարիւրորդականաւոր ինը գեղահատերու կը բաժնեն և կ'արծաթապատեն։

Այս դեղահատները կ'առնուին օրը երեք անգամ, մէկը առաւօտու, միւսը կէս օրուան, և երրորդը երեկոյի ատեն։

---

## ԳԼՈՒԽ Լ.

## ՅՂԻ ԿԱՆԱՆՑ ԵՐԵՒԱԿԱՅՈՒԹԵԱՆ ՍԱՂՄԻՆ ՎՐԱՅ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ

Ամէն ժամանակ կանանց երեւակայութեան մեծ իշխանութիւն տուած են սաղմին վրայ։ Անցեալ դարուց թէ՛ գիտութեամբ և թէ ուսումնական երկասիրութեամբք խիստ նշանաւոր եղող մարդիկ, առանց քննութեան հաւատ ընծայած են ասոր, և մեծագոյն մասին վկայութեան հետեւելով աւելի կամ նուազ ծաղրալից վէպեր կրկնած են։

Ընդհանուր կարծիքը այն էր թէ մօրը երեւակայութիւնը՝ կրնար սաղմին անդամները կամ ձեւերը աւելցնել, բառնալ, կերպարանափոխել, փոփոխել, ծայրայեղ առնել կամ նաեւ ոչնչացնել։

Պղատոն, որնոր այնչափ հռչակեալ է և զոր խիստ քիչ մարդիկ համբերութիւն ունեցած են ամբողջ կարդալու, կըսէ տեղ մը. «Երեւակայութիւնը կը շարժէ և կը ձեւէ մարմինները»։ Ասկէց հետեւցուցին թէ երեւակայութիւնը կրնար փոփոխել սաղմին ձեւերը. Թէպէտեւ բնական պատմութեան մէջ խիստ մթապատ և խիստ քիչ պարզախօս Պղատոն այսպիսի այլանդակութիւն մը յառաջ բերելու չափ կարի միամիտ էր։

Շէնքիրս՝ Իջնայի համալսարանին երեւելի դասատուն կը պատմէ կին մը, որուն տղայ մը բերաւ, որ դժոխոց ոգիի մը խիստ նմանութիւն ունէր. վասնզի բարեկենդանի օր մը իւր ամուսինը սատանայի կերպարանք առնելով զգուած էր իւր կինը, ըսելով թէ կուզէր իրեն պզտիկ դեւ մը ծընընդագործել։

Դիւրահաւանն Ցերլիօ, որուն այնչափ անհնարին այլանդակութիւններ գրեց, կը պատմէ թէ ամօթխած կին մը՝ յղի, իւր շրջապատին տակ փախած առնէտ մը այնպէս սոսկաց որ այս կենդանւոյն նման բան մը ծնաւ։

Բաւական համարէ այս պզտիկ կենդանիները, կըսէ մէկնիչ մը. վասնզի եթէ սոսկումը ռնգեղջիւրէ մը կամ փիղէ մը պատահէր, այն ատեն տղայաբերութիւնը խիստ տաժանելի պիտի ըլլար կնոջ համար։

Վան Սուիէթէն կը պատմէ թէ փայծաղնացաւութեան համար իրեն խորհուրդ հարցնելու եկող մատաղաչ և գեղեցիկ աղջկան մը պարանոցին վրայ նկատած է թրթուր մը այնչափ բնական որ իւր ձեռքը երկնցնելով զայն ձգել ուզած է. բայց աղջիկը անոր ըսած է ժպտելով, թէ այս նշանը այն թրթուրինն է, որուն իւր մօրը պարանոցին վրայ ինկած է, երբ իրմով յղի էր, և անոր խիստ սոսկում մը պատճառած է։

Դաւհարպիէփ երկարօրէն կը պատմէ դէպք մը որ պատահած է յղի իշխանուհւոյ մը։ Այս իշխանուհին փողոցը աղմուկ մը լսելով պատուհանէն ելաւ և սոսկումէ բռնուեցաւ, երբ տեսաւ սուսերի մէկ հարուածով՝ իրեն դէմ բերուած հարուածներէն

նի ։ Սակայն այն բանը, որ չը կրնար՝ առաջացուցուիլ, այն է թէ երեւակայութիւնը կրնայ իշխանութիւն ունենալ կերպարանից զօրութեան վրայ այն աստիճան որ սաղմին այդ այլանդակ ձեւերը տայ ։ Բայց և այսպէս․ մենք չենք ուրանար և կուզենք հաստատել իսկ թէ անկարգ երեւակայութիւն մը, հաստատուն գաղափար մը, տխուր կիրք մը կարող են այլայլել սաղմին ձեւերը․ բայց ատոր համար պէտք է որ գաղափարք կամ երեւակայութեան ձգտմունք երկար ատեն հաստատուն ըլլանուին․ և մօրը գործարանաց մէջ խորայոյզ դղըրդում մը արտադրեն․ անկից 'ի զատ պէտք է նաև որ սաղմը չափազանց դիւրագրգռութեան և մանաւոր տրամադրութեանց մէջ ըլլայ․ վասնզի նոյն. իսկ սաղմն ալ կրնայ սովորաբար դիմադրել երեւակայութեան ազդեցութեան և չ՛ընկճիր բայց միայն հաղուադէպ և բացառական պարագաներու մէջ ։ Երբ երեւակայութիւնը դղրդէ գործարանաւորութիւնք և արգանդի յօրինուածը ախտաւորէ, արգանդն ալ իւր կարգին ուղղապէս կ'ազդէ սաղմին վրայ և անոր կրել կուտայ այն կերպափոխութիւնները, որոց ինքը բնակարանն եղած է ։

Բայց սաղմին վրայ աննպաստ կերպով ազդող պատճառաց մէջէն առաջին կարգի համարուողներն են անուական ճնշումն, զոր կը գործադրեն կանանց որովայնին վրայի մէկ քանի հագուստք և որոնք սաղմին այս ինչ կամ այն ինչ մասին կանոնաւոր զարգացման նեղութիւն կուտայ․ — Որովայնի առջին կողման վրայ հարուածք․ որք ներքնագոյն թաղանթի ջուրց հակառակ, կրնան սաղմին համապատասխանող մասը խոցել․ — Մօրը անկումը, որոնց մէջ

Ձիտապակար է իւր պատկերն. — յանկարծահաս սոսկմունք · սաստիկ յուզմունք, տանջանք եւն. · որք բաւական զօրաւոր պատճառներ են զարգացման կասաւ, զանազան գունոց բիծեր, ելունդներ · տձեւութիւններ, բեկումներ արտադրելու · առանց՝ գինեպանոց ռամկական նախապաշարմունքը միջամտեցընելու կարօտ ըլլալու ։

Այսպէս մորթի բիծերը · խոտորեալ հիւսկէնները, ցողունով կամ լայն խարսխով ելունդները, որք իրենց ձեւոյն և գունոյն պատճառաւ կը բաղդատուին այլ և այլ պտղոց և բանջարներու, ինչպէս, կերաս, ելակ, հաղարջ, դեղձ, սալոր, թութ, լուբիա, սունկն, եւն. · կամ թրթուրներու, սարդերու, խեչափառներու, ձուկերու եւն. . . . խօզի կնճիթները, նապաստակաշրթունք, կատուի կոկի ձայները, անդամոց ծայրաքաղութիւնք և ուրիշ բազմաթիւ տձեւութիւնք, զորս ռամիկը մօրը անենչանաց կը տայ, ախտական ճշմարիտ արդիւնքներ են, որք պատճառ ունին ներքին ախտեր կամ արգանդի վտատակին ընդդիմացող դիպուածներ։ Ուրիշ խօսքերով բացատրենք · ամեն անկատարելութիւնք և տձեւութիւնք կազմաբար ծընընդագործուած են, թէ՛ վայրական փրդումն մը կամ հիւթոց յորդառատ զեղմունք, թէ՛ հիւսկէնի մը կենսունակութեան կամ տկարութեան չափազանցութեամբ, եւն., եւն. . . . . . Գինւոյ բիծ մը՝ դրդուման մը, արիւնական արտաքրտնութեան մը ախտաբանական արդիւնքն է, արգանդին մէկ կէտին վրայ, որնոր սազմին համապատասխանող կէտին վրայ տարածուելով, հոն երակային կամ չնչերակային հիւսկէնին վրայ այտուց մը կ'առ-

տարրէ . — Խոհուէ՛ր , շօշօփէ՛ բիծերը ըմբռնելի
ըմբռնուած մորթային տարրին ապականութիւնէն կրա-
խուսիւ ունին . այս ապականութիւնը յառաջ կու-
գայ նաեւ ախտական փտտտակէ մը ։ Վարակեալ
գրգռումը կը զարգացնէ նաեւ պտղիքտոտները և
նորածնոյն ունեցած՝ զանազան ձեւերով երեւոյթնե-
րը ։ Ահա կազմաբանական բացատրութիւնը , որ-
նոր կարելի եղածին չափ ամենաճիշտն է ։

Բազմահմուտ Պիւրտաք կ'ըսէ թէ մօրը և իւր
պտղոյն համանուն գործարանաց մէջ այնպիսի հա-
մակրական ներդաշնակութիւն մը կայ , որ երբ
մօրը գործարանները վնաս մը կամ զրկանք մ'ըն-
դունի , նոյն փոփոխութիւնը կրնան կրել պտղոյն
գործարաններն ալ իրենց հիւսուածոցը և համա-
կազմութեանցը մէջ ։ Եւ իւր առաջադրութիւնը
հաստատելու համար շատ մը դէպքեր կը պատմէ .
որոցմէ ուշադրութեան արժանիները հետեւեալնե-
րըն են ։

Որթ մը , որուն մայրը ճակտին վրայ գաւազա-
նի հարուած մը ընդունած էր , միեւնոյն տեղը
ճմլած մ'ունէր ։ — Հաղորդակցութեան միեւնոյն
երեւոյթը կար եզնիկի մը վրայ , որուն մայրը գըլ-
խուն ալ կողմին վրայ հրացանի երկաթի մը հար-
ուածն ընդունած էր ։ — Էգ կատու մը , որնոր
իւր յղութեան առաջին ամսոյ մէջ հարուած մ'ըն-
դունելով իր պոչին ծայրը կորոյս , հինգ ձագ բե-
րաւ , որոց չորսին պոչը հատեալ էր ։

Այծ մը , որուն ծննդական անդամը չուանով մը
խածուած էր , ուլայ մը ծնաւ , որնոր առնանդամ-
ուն գլխին վրայ խածուածքի նշան մ'ունէր ։

Կաղմախօս Փիւրտուքի քոյրը, իր յղութիւններէն մէկուն ատեն, մեծ չէնքի մը հրդեհէն այնպէս ահաբէկ եղաւ, որ իր աչացը առջեւ շարունակ բոց մը կը տեսնէր, իր ծնած տղան թէ և խիստ բարեկազմ էր, սակայն իւր ճակտին վրայ բոցաձեւ բիծ մ'ունէր։

Այս դէպքերը կ'ապացուցանեն թէ մօրը և սաղմին մէջ սերտ յարաբերութիւններ կան, և թէ այն ամեն հիւանդութիւնք, որք մայրը կը նեղեն, շատ անգամ սաղմին վրայ ալ կ'ազդեն։ Բայց ասկէց չը հետեւիր թէ կին մը, իւր յղութեան տեւողութեան մէջ որթի մը գլուխ ուտել փափաքած ըլլալովը, որթի կնճիթ մը կամ ականջ ունեցող տղայ մը բերէ, կամ թէ՝ խեղ մարդ մը տեսնալովը կաղ կամ ձեռնբէկ տղայ մը ծնանի և կամ թէ նողազէ կամ վայրի եզէ մը վախնալովը, եղնիկ մը կամ այծամարդ մը դնէ յաշխարհ։

Եթէ այս այսպէս ըլլար, մարդկային ցեղը ի՞նչ պիտի ըլլար։ Եթէ յղի կանայք իրենց բերելիք տըղայքը այսպէս յուսացուցանէին իրենց տենչանքովը, բնութենէն հաստատուած տիպը իսկոյն վեր 'ի վայր պիտի շրջէր, և մէկ քանի պորտէ վերջը մի միայն սոսկալի և խորշումատեսիլ դէմքեր, այլանդակ և նենգեալ ձեւեր պիտի տեսնուէին. վասնզի խիստ քիչ կանայք կը գտնուին, որք իրենց յղութեան ատեն երկիւղ մը, տենչանք մը չը կրեն. կամ իրենց միտքը բանի մը հետամուտ չըլլայ։ Եթէ այս այսպէս ըլլար. այն ատեն կը հարցուէր թէ ինչո՞ւ համար այն ամեն կանայք, որք իրենց յղութեան ատենը տենչանք մը ունեցած են, իրենց տղայոց մարմինը գոյնզգոյն կամ անհեթեթ չը գործեցին։

Վերջապէս եթէ մայրենական երեւակայութիւնը այս անհուն կարողութիւնը ունեցած ըլլար, այն ատեն ըստ կամաց սեռ ծննդագործերը խիստ դիւրին կըլլար. և այս վախճանը ստանալու համար մի միայն բաւական կըլլար եռանդեամբ տենչալ աղջիկ մը կամ մանչ մ'ունենալու. բայց յայտնի է որ ասկէց շատ տարբեր է գործը։

Բոլոր այս ըսուածներէն պէտք է հետեւցնել որ երեւակայութեան անկարգութիւնք, իրի մը մտաւոր հետամտութիւնք, խիստ յուզմունք, քստմունք, յանկարծահաս սոսկմունք, ամեն խիստ և տխուր կիրք, ջղային յաճախագոյնս գրգռականութիւնք, կերառութեան չարաչար գործածութիւնք, վարուց սխալմունք, աշխատութեան և հանգստեան չափազանցութիւնք. փակեալ օդ, հարուածք, անկմունք ևն̃, հակառողջական ամեն հանգամանք, նոյնպէս նաեւ ախտաբանական վիճակք, որոց մէջ կրնայ գտնուիլ յղի կինը, հեռաւոր կամ մերձաւոր պատճառներ են կազմութեան այն ախտից և հիւանդութեանց, որոցմէ ընբռնեալ է տղան իւր մօրը արգանդին մէջ, և զորս, ծնած ատեն, իւր հետ կը բերէ։ Չը կրնար տարակուսուիլ, կըսէ հանճարեղն Պլօնտել, որ սաղմը ենթակայ չըլլայ ախտական ազդեցութեանց, որք իւր մօրը վրայ կազդեն։ Տարօրինակ և նաեւ անկարելի չ'է՞ր ըլլար որ սաղմին նման փափուկ մարմին մը, որ նոր ամենափոքր ճնշում մը կրելու յատուկ է, միշտ յաշխարհ գայ առանց իւր հետ բերելու այն բազմաթիւ հիւանդութեանց, ախտից և կրից տխուր ազդեցութիւնքը, որք մօրը վրայ հասած են յղութեան ատեն։

# ԳԼՈՒԽ ԼԱ.

## ՏԵՆՉԱՆՔ ՅՂԻ ԿԱՆԱՆՑ ՊԱՐՏԻՆ՞ ՋԱՆՈՆՔ ԳՈՀԱՑՆԵԼ։

Ջղային յօրինուածքը յղութեան ատեն երբեմն երբեմն մեծապէս գրգռուելով, ամբողման ուղիք կը հաղորդակցին այս գրգռման և խիստ անսովորական և այլանդակ ճաշակք և ախորժակք կը զարգանան։ Կիներ կըլլան, որք ածուխ, կաւիճ, գաճ կը կրծեն, և ուրիշներ ալ կըլլան, որք չափազանց անյագութիւն մը կունենան թթուներու, կանաչ պտուղներու, երշիկներու և հոտած կերակուրներու։ Այս փափաքը կրնայ հասնիլ այնպիսի աստիճանի մը, որ շատ անգամ յիմարութենէ կը վախցուի։ Այս այլանդակ ճաշակաց, որք միշտ ջղային խռովութենէ մ՚առաջ կուգան, մէկ քանի օրինակները հոս կը դնենք։

Ժողովրդեան կարգաց ոմանց մէջ աւանդ եղած է թէ պէտք է յղի կանանց տենչանաց յագեցումն շնորհել. վախնալով որ իրենց երեւակայութիւնը այս տենչանքներէն անդադար տանջուելով, չըլլայ թէ անոր դրոշմը իրենց սերնդեան վրայ նետեն։ Բազմաթիւ խեղճ ամուսինք կը նեղուին. քանինին կը պարպեն եղանակի անյարմար կերակուրներ և պտուղներ գնելու միշտ տարապայման արժէիւք. ուրիշ շատեր ալ ունեցածնին կը վատնեն գահարեղինաց, զարդուց տենչանքը յագեցնելու, որպէսզի ազատին այն տխուր տձեւութիւններէն, զորս մօրը տենչանքը անվրէպ պիտի դրոշմէր անոր

մարմնոյն վրայ ։ Միամիտ հա՛րք․ խեղճ հա՛րք․ եթէ գիտնային թէ այս երկիւղները խաբէպատիր և անհիմն են, պիտի յորդորէին իրենց կիները չափաւորելու իրենց տենչանքը․ մոռնալու զասոնք, երբ անոնց յագեցումը բազմագնի ըլլան․ պիտի մերժէին և իրաւունք ալ ունէին ։ Սակայն եթէ տենչալի իրը ոչ մօրը առողջութեանը, ոչ անոր պտղոյն զարգացմանը, ոչ իրեն և ոչ ալ ուրիշին վնասակար չըլլայ․ այն ատեն զայն անոր շնորհելու անպատշաճութիւն չը կայ․ բայց հակառակ պարագայի մէջ շատ մեծ յանցանք է յագեցնել այնպիսի հաճոյք մը, որուն վրայ աւելի ետքը պիտի ամըչնանք և ինքզինքնիս պիտի յանդիմանենք ։

Կիներ կան, որք կը խոստովանին թէ իրենց յղութեանցն գողութեան կը մղուին․ ուրիշներ ալ կան, որք կըսեն, թէ պայքարի, վէճի յօժարութեան կը մտաբերուին․ ոմանք որկորամոլ կըլլան, ոմանք բարկ հեղուկներով կը գինովնան ։ —Պօւելի տեսած է յղի կիներ, որք աղբանոցի մը մէջէն վազած ժանտահոտ ջուրը խմած, դարձած արեան մէջ իրենց հացը թաթխած, հոտած միսեր նեխեալ պանիրներ, վերջապէս կղկղանք․․․կերած են ։ —Ցօրեսթիէ կը պատմէ թէ կիներ տեսած է որ կենդանի օձաձուկներ, խեցգետիններ ; նորադողդոջ ձուկեր լափլփած են ։ Անոնցմէ մէկը խոհանոցի մը մէջ տապակելու համար՝ չորս կտոր եղած ճագար մը տեսնալով վրան նետուեցաւ և այն արիւնաթաթաւ կտորները գրեթէ կլնեց ։ Նոյն Ցօրեսթիէ դիտողութիւն կը գրէ յղի կնոջ մը համար թէ այս կինը տեսնալով նոր մորթուած ոչխարի մը մորթը, նուրբ և երկայն փոկի ձեւով կտրեց

զայն և կերպաւ բուրդովը մէկ տեղ մէկ օրուան մէջ . բայց չըսէր թէ կրցա՞ւ մարսե՞լ թէ ոչ . . . . . Աւելի կամ նուազ տարօրինակ , աւելի կամ նուազ սոսկալի բազմատեսակ տենչանքներ կան , զորս ամուսնոյն իշխանութիւնը պարտի ընկճել , եթէ իմացականութեան խորհուրդները չը կրցին ջնջել զանոնք ։ Իսկ այն տենչանքները , որք կարող են հասարակաց ապահովութիւնը խռովել , անհրաժեշտ հարկ է սանձահարել ։ Պէտք է իրենց ազատութենէն զրկել մոլեգին կանայք ոմանք , բարեբաղդաբար խիստ հազուադէպ , զորս իրենց տենչանքը կը մղէ բարբարոսական գործոց և անագորոյն անգթութեանց ։

Յայտնի է պատմութիւնն այն կնոջ , որ իւր յղութեան ատենը ուրիշ հաճոյք չ՚ունէր , բայց միայն իրեն մառանին մէջ քաշել պզտիկ տղաքները և մեծ գնդասեղով մը անոնց երակները ծակելով արիւննին ծծել ։

Ուրիշ կին մ՚ալ , որուն վրայ կուլարտ կը խօսի , իւր յղութեան հինգերորդ ամսոյն մէջ ամեն տեսակ կերակուրէ զզուելով , մարդու միս ուտելու սոսկալի տենչանքն ունեցաւ յանկարծակի ։ Այս տենչանքը այնչափ ստիպողական եղաւ , որ իր երկանը քունէն օգուտ քաղելով խեղդեց զայն . մէկ քանի օրուան մէջ դիակին մէկ մասը անյագաբար ուտելով , մնացածը աղեց և մեծաւ խնամօք պահեց ։ Երբ մարդոց միս ուտելու այս մոլեկան ցանկութիւնը անցաւ , խեղճ կինը գնաց և խոստովանեցաւ իւր յանցանքը ։

Այս տեսակ տենչանք այլանդակ են և ընկերութեանց մէջ սոսկումն կը բերեն . այս տեսակ կինե-

րը փակարգել ընելու և ներգործաբար հակելու է , որպէսզի իրենց մարդասպան մոլեգնութեան հետեւանաց առաջքն առնուի ։

Ի մեծ բարեբաղդութիւն հասարակաց ապահովութեան և ընտանեաց հանգստութեան, այս դէպքերը բացառական են . կանանց տենչանքը գրեթէ միշտ այս ինչ կերակրէն կամ պտղէն , այս ինչ ծաղկէն եւ անդին չ'անցնիր , որ դիւրին է իրենց հայթայթել ։ Այս բաւական բնական տենչանաց քով կը պատահին ուրիշներ ալ , որք այնչափ ծաղրաշարժ են , որ ամուսինը տարակուսեալ մնալով , չը գիտէր թէ շնորհել պէտք է թէ մերժել ։ Եթէ յղի կին մը իւր երկանը այտերը համբուրելու տեղ ծոծորակը կամ դարշապարը համբուրելու անդիմադրելի տենչանք մը յայտնէ , յիրաւի անհեթեթ է , բայց բնաւ վտանգաւոր չէ . իսկ եթէ իւր էրիկը ծեծելու կամ անոր գլխուն քար մը նետելու տենչանքն ունենար , պէ՞տք է այս փափաքը յագեցուցանել . այս արժանի է խորհրդածութեան ։ Այս իրիս նկատմամբ հետեւեալ երկու օրինակները կ'առաջարկենք , որք բժշկութեան պատմութիւններէն քաղուած են ։

«Բարի և հմուտ Գամերիոս միշտ կըսէր . «Յղու-«թիւնը երբեմն կանանց՝ զարմանալի իրեր գործել «կուտայ . խոհեմութիւն է շատ դէմ չը կենալ անոնց տենչանաց ։» Իր կինը , որ այս վկայութեան տեղեակ էր , օր մը հաւկիթով լեցուն կողովով մը վաճառանոցէն ետ դառնալով և իւր երկանը աշխատութեան սենեակը մտնելով սկսաւ հեծկլտալ ։ Էրիկը փութաց իւր կնկանը արտասուաց պատճառը իմանալ ։ Կինը բաւական ժամէն վերջը , իրեն

պատասխանեց որ շատ օրէ 'ի վեր՝ անոր երեսին վրայ հաւկիթներ կոտրելու տենչանքէն ըմբռնուած է և սաստկապէս կը չարչարուի ։ Գամերիոս , որ իր կինը սաստկապէս կը սիրեր , հանգարտութեամբ խել մը տաստառակներ առնելով , իւր գլուխը պատատեց · · · ։ Կինը երկանը զինքը մտիկ ընելու համար խիստ ուրախանալով և ինքզինքը երջանիկ համարելով կողովին բոլոր հաւկիթները մէկզմէկու ետեւէ անոր երեսը նետեց ։ Խեղճ էրիկը՝ ոտքէն մինչեւ գլուխը հաւկթի դեղնուցով ծեփուեցաւ , յետոյ առանց խօսելու գնաց լուացուեցաւ · և կինն ալ իւր տենջանքէն բժշկուելով , անոր վրայ ունեցած սէրը կրկնապատկեց ։

Միւս օրինակը ։

Ազնիւ ընտանիքէ օրիորդ մը ամուսնացաւ երիտասարդ մագիստրոսի մը հետ , որնոր այնչափ քաղցրաբարոյ և բարի էր , որ հազիւ նմանը կը գըտնուի ։ Ցղութեան առաջին նշանին՝ աղջիկը սափրողական խնամոց ենթարկուեցաւ , իւր ամենափոքը փափաքները անմիջապէս կը յագենային · բացարձակ տիկին տանը մէջ , իրմէ բան մը չ'էր մերժուէր · և իւր էրիկն ալ գերիի մը պէս կը հնազանդէր ։ Հարսնութեան առջի ամսոց երջանկութեանց հակառակ , աղջիկը յանկարծ տխուր , անշնորհ , խեռ եղաւ և խեղճ էրիկն ալ սկսաւ իր խնամքները բազմապատկել , իւր դգուանքները կրկնել , և ծնկան վրայ գալով անոր աղաչել որ իրեն հասկցնէ կրած անհանգստութիւնը ։ Հազիւ ուրեմն աղջիկը բերանը բանալով անոր հասկցուց թէ յղի կնկան տենչանք մ'ունի , այնչափ սաստիկ

անասանձելի և տարօրինակ, որ աւելի աղէկ կը տեսնէ մեռնիլ քան թէ զայն անոր յայտնել։ Վերջապէս շատ մ'օրեր խիստ ստիպողական աղաչանքներէ ետքը խոստովանեցաւ թէ կը փափաքի ծեծ ուտել․ ․ ․, ոչ թէ ձեռքի կամ ոտքի հարուածով, այլ խարազանով, ուժգին ձաղկուիլ, սատակապէս փոկահարիլ, մինչեւ որ այս տենչանքը իրմէ անցնի։ Էրիկը կնկանը այս խօսքերուն վրայ ապշեալ մնաց և կարծեց որ նա յիմարութենէ բռնուած է։ Կինը տեսնալով որ իւր փափաքը յագեցնել չեն ուզեր, անկողինը մտաւ և թերեւս ծանրապէս պիտի հիւանդանար, եթէ բժիշկ մը, որ նոր կանչուած էր խորհուրդ հարցնելու, չը պատուիրէր խարազանը իբր միակ դարման այս յիմարութեան. սակայն այս ալ ըսաւ թէ միմիայն երաստանին վրայ զարնելու է, ուրիշ որ իցէ տեղւոյ վրայ բաղխումը խիստ վտանգաւոր է։ Վասնորոյ էրիկը միտքը դըրաւ բժիշկին պատուէրը կատարել. և օր մը կնոջը սրտմտութեան ժամանքէն օգուտ քաղելով, խարազանը ձեռքն առաւ և նշանակեալ տեղւոյն վրայ աղուորիկ մը բակցուց մէկ քանի հատ։ Այս վայրկենէս իւր մատղաշ ամուսինը կատարելապէս յագեցաւ և բժշկուեցաւ։»

Մատղաշ և գեղեցիկ կին մը, չորս ամսուան յղի, կերավաճառի մը ձնկնաւազանին մէջ տեսաւ օձաձուկ մը որ սաստիկ կը շարժէր. էրիկը տեսնալով որ կինը տենչանօք զայն կը դիտէ, ուզեց զայն գնել։ —Ո՛չ. ո՛չ. ըսաւ կինը. չեմ ուզեր զայն։ —Հազիւ թէ տուն մտած էին, կինը իսկոյն դուրս կելնէ, և առանց գիտութեան ամուսնոյն կը փութայ գնել օձաձուկը, զոր ողջ ողջ կը լափէ։ Տուն

դարձած ատեն էրիկը իրեն կը հարցնէ թէ օձաձուկը գնած է ։ —Ինչի՛ս պէտք , աղաղակեց կարմըրելով , առանց մտածելու թէ իր դեռ արիւնոտ շըրթունքները իրեն ստութիւնը կը մատնէին ։ Մէկ քանի օր ետքը էրիկը տեսաւ որ կինը հում հում խարակաձկներ կուտէ առանց վախնալու անոր փուշերէն վնասուելէն ։

Անցեալ գարուն Սէնթ-Իոնէօոք տենչանաց վրայ նամակ մը հրատարակեց , որուն մէկ քանի կտորները հոս դնենք ։

. . . . Իմ կինս , իր ամեն մէկ յղութեանը , խիստ այլանդակ և դժբաղդաբար խիստ կործանիչ տենչանքէ կըմբռնուի . երբեմն կխակառք և աչխէտ ձիեր կը փափաքի . երբեմն ճարոնի յախճապակէ չքէղ սպասներ և իր դստիկոնին կարասեաց ամբողջ վերանորոգումը . իր տենչանքը քչիկ մը վերանորոգելու համար իմ ամբողջ ստացուածքս չը բաւէր ։ Բարեբաղդաբար , իր երրորդ յղութեան ատեն , իր հաճոյից թռիչը կարկանդակի մը վրայ իջաւ , յետոյ սեւ կաշիի մը վրայ , որուն մէկ մասը լափեց ։ Ուրիշ անգամ մ'ալ ծունկի վրայ եկաւ շամփուրի վրայ դարձող դիեցիկ խոզի մը ականջները ակռաներովը խլելու . 'ի բոլոր սրտէ գոհ պիտի ըլլամ իր քմային տենչանաց և բնաւ չի պիտի տրտնջամ նաեւ , եթէ պէտք ըլլար որ ապրիլի մէջ կանկաչ մաշով , մայիսի մէջ կեռասով , կամ յունիսի մէջ ծիրանով սնանի . բայց զիս ամենէն աւելի տակնու վրայ ընողն այն է , թէ գաճ կ'ուտէ , պատճառելով որ իր մանկան մորթը ճերմակ պիտի ըլլայ , և թէ կ'ուզէ որ ես ալ իր հետ ուտեմ զայն , որուն համար չի պիտի կրնամ իրեն շնորհք մը

ընել, Երէկ առաւօտ դաշտէն ետ դառնալու ատեն տեսայ խումբ մը ագռաւներ, որք մեծաւ ախորժանօք իրենց նախաճաշը կընէին դիակի մը վրայ. և ասկէ իւր մասն ունենալու համար անդիմադրելի տենչանք մ'ունեցաւ: Կառավարին հրամայեց ձիերը կեցունել, և թախանձանօք աղաչեց անոր որ երթայ կտոր մը կտրէ անկէ. կառավարն ալ անոր հաճելի ըլլալու համար գնաց և կտոր մը կտրեց: Տուն հասնելուն պէս, այնչափ եռանդեամբ վրան յարձակեցաւ, որ կրնայ ըսուիլ թէ կըլնեց զայն քան թէ կերաւ. շատ սոսկալի էր տեսարանը:»

«Չեմ գիտէր թէ ինչ բանի վրայ պիտի իյնայ իւր առաջին տենչանքը. բայց կը դողամ որ ծանրագին կամ անախորժ բանի մը վրայ կ'ըլլայ: Ցղի կանանց այլանդակ տենչանքները ընկճելու միջոցներ եթէ կան. փութացէք, բարեկամդ իմ, զանոնք ինձ յայտնելու: Ձեզի կը խոստովանիմ որ, եթէ վերստին կարգուիլ ինձ պատահէր, այն ատեն պիտի պահանջէի որ ամուսնութեան պայմանագրոյն մէջ յօդուած մը դնեն, որով հայրը իւր աղջկան տենչանաց երաշխաւոր ըլլայ:

Ի կարգ բանիս գիտել կուտանք մեր ընթերցողաց թէ՝ կիներէն շատերը տենչանք կունենան մի միայն անոր համար որ, վասնզի համոզուած են թէ յղի կին մը զայն պիտի ունենայ, և թէ տենչանք գրեթէ անմերժելի են յղութեան ատեն, Այս կանանց այս տեսակ հիւանդութիւնը կը ջնջուի անմիջապէս, եթէ կարող ըլլայ մարդ զանոնք իրենց սխալանաց վրայ համոզել:

Մայրական տենչանաց պատմութիւնն կը դացենք

յղի կանանց պատմութեանը մէջ նմանը չը տեսնուած եզական վերջին դէպքով մը ։

Ժամանակակից երեւելի կին մը, որուն փայլուն կրթութիւնը հասարակ կանանց այս պզտիկ նախապաշարումներէն թէեւ պէտք էր ազատ պահել զինքը, սակայն ծեր քարտէսահմայ կնոջ մը խօսքերով խիստ այլանդակ գաղափար մ'ունեցաւ, որ ահա՛ ։

Բարեբաստիկ յղութիւն մը և դիւրին տղայաբերութիւն մ'ունենալու համար, կը պարտաւորէր ամեն օր մրկնաքի մ'ուտել առաջուընէ քացախի մէջ թաթախեալ և պղպեղիւք համեմեալ։ Ընթերցողը թերեւս այս անուամբ հասկնայ այն տունկը որ այս անունը կը կրէ․ բայց կը խաբ՛ուի․ վասնզի ճշմարտապէս մկան պոչ մ'էր, Մուս Նիճեր ըսուած խոշոր տեսակէն, զոր ամեն առաւօտ իրեն պատրաստել պէտք էր․ և զոր կը լափէր հում հում իւղով կամ քացախով, ինչպէս որ կուտեն գեղեցիկ կանկար մը կամ փափուկ բողկ մը ։

Շարունակ ամիս մը կրցաւ ընել այս զարմանալի նախաճաշը առանց՝ իւր առողջութեան վնաս մը գալու ։ Ցանկարծ մկնաքիք չը գտնուեցա՛ն . . . . . ։ Մատղաշ կինը այս սովէն խռովեալ, իսկոյն հրամայեց ոսկւոյ ծանրութեամբ գնել զանոնք ։ Իւր մատակարարը, չահէն հրապուրեալ, քաղաքին բոլոր կոյուղիները ոտքին տակն առաւ պոչի պաշար մը ընելու յուսով․ . . ։ Աւա՛ղ, իւր հետազօտութիւնք պարապը ելան ։ Այն ատեն կարծեց որ դիւրին էր իւր գնորդը խաբել անոր՝ խոշոր մրկնաքիսներու պոչեր տանելով․ բայց առաջին հայ-

նացքէն կինը հասկցաւ խորամանկութիւնը , կատաղեցաւ և ճամբեց ամարդի մարդը։ Արու մկան պոչը պէտք էր իրեն ։ Երկրորդ օրը նախաճաշելու համար իւր սիրելի կերակուրը չը կրնալ հայթայթելով տխուր մելամաղձութեան մը մէջ ինկաւ , և անկողին մնաց տենդով ։

Էրիկը , որ այս ամէն անցքերէն անտեղեակ էր , իմանալով որ կինը մահիճն ինկած է , փութաց իւր խնամքները ընելու և հարցուց անոր իւր կրած նեղութեանց պատճառը ։

Վատաբախտ յղութիւն մը և տխրագոյն տղայաբերութիւն մը պիտի ունենամ , պատասխանեց կինը աղաւաղեալ ձայնով մը ։ Յետոյ իւր տխուր մելամաղձութեանը մէջ ինկաւ ։

Բժիշկը կանչուեցաւ , որնոր ուրիշ պատասխան չը կրցաւ առնել բայց միայն այն , որ ամուսնոյն եղած էր․ հազար ջանքերէ , հազար պաղատանքներէ ետքը վերջապէս ճարտար բժիշկը կը յաջողի սակալի գաղտնիքը լսել ։

Խեղճ էրիկը , իւր կնկանը հիւանդութեանը պատճառաւ կրած նեղութեանցը հակառակ , չը կրցաւ քրքիջ չը բառնալ , երբ բժիշկը իրեն իմացուց գաղտնիքը ։ Այս յիմարութիւնը բժշկելու համար կարող եղած միջոցներուն վրայ մէկտեղ միաբանելէն վերջը , էրիկը հաւնեցաւ այն հրահանգը զոր բժիշկը իրեն պատուիրեց և գնաց հանգստութեամբ ննջելու ։

Երկրորդ օրը չքնաղ պոչ մը բերին տիկնոջ ։ Եւ երբ կինը , ուրախութենէն դողդղալով , կը պատրաստուէր զայն կլլելու , յանկարծ բժիշկը ներս մտաւ ։

—Ով երկի՛նք, ի՞նչ կ'ընէք, աղաղակեց խռովեալ ձայնով մը. կեցէ՛ք տիկին. շնո՛րհ քու մանկանըդ. . . . .

Այս խօսքին վրայ կինը 'ի կոր կործանեալ ձգեց ձեռքէն պոչը. և բժիշկը շարունակեց.

—Դուք ինձ խոստովանեցաք, տիկի՛ն. որ ասոր նման երեսուն պոչեր կերած էք. տարապայմա՛ն է այս. սակայն մինչեւ հիմա դժբաղդութիւն մը չը պատահեցաւ. բայց երեսուն և մեկերո՛րդին. . . . . Ո՛հ. կարդացէք մէկ մը Քօդէքսը, տիկի՛ն, կարդացէք. երեսուն և մեկերորդ պոչին մանկասպանութիւն մը պիտի գործէք.

Կինը սոսկման աղաղակ մը բառնալով, այն կերպով մէկդի հրեց գարշելի պոչը, որ զայն պարունակող ոսկեզօծ յախճապակը կտոր կտոր եղաւ տախտակամածին վրայ.

Այս վայրկենէս պոչի տենչանքը թէև դադրեցաւ. բայց ուրիշ մոլեգնութեան մը հետ փոխանակուեցաւ, որնոր նուազ զարմանալի չէ և տակաւին կը տեւէ. Ամեն անգամ երբ այս կինը այնպիսի բան մը տեսնայ որ իրեն յիշեցնէ այս անիծեալ պոչը, ջղաձգտական քրքիջ մը կը բառնայ և կը հիւանդանայ.

Ընթերցողը զուարճացնելու համար չը պատմեցինք բնաւ այս դէպքը. դժբաղդաբար չը կրնալով անոր վաւերականութիւնը հաստատել անուամբ և ուրիշ տեղեկութեամբք. պարտաւորած ենք լռել. Բայց պատմել պարտաւորած ըլլալնիս սա նպատակաւ էր որ ընթերցողը հասկնայ թէ յղի կանանց տենչանաց դէմ ինչ վարմունք ունենալու է.



# ԳԼՈՒԽ ԼԲ.

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ՅՂՈՒԹԻՒՆ ԿԱՆԽԵԱԼ: —ՎԻԺՈՒՄՆ: —ՏՂԱՅԱԲԵՐՈՒԹԻՒՆ:

Քանի որ կինը իւր յղութեան մէջ կը յառաջանայ, աւելի դիւրագրգռեցիկ կըլլայ, վասնորոյ աւելի մեծ խնամոց, իւր ամուսնոյն և իւր շուրջը գըտնուող անձանց կողմանէ աւելի մեծ ակնածութեանց ենթակայ ըլլալու է: Ամենափոքր ընդդիմութիւնք ուժգնապէս կըզգացուին անկէ. ոչինչ բան մը զինքը կը յուզէ և կը տրտմեցունէ. կազմականը բարոյականին վրայ սաստկապէս կ՚ազդէ, և փոխադարձ. իւր առողջութիւնը, կարծես, ուրախութեան և տրտմութեան ճօճմանց կը հետեւի: —Պէտք է ըսքանչանալ Արեւելքի այն իմաստնոց, որոց վրայ պատմութիւնը կը խօսի, որք իրենց յղի կիները անմեղ զուարճութեամբք և քաղցր զբօսանքներով չըրջապատելու կը պարապէին, որք անոնց հետ կը խաղային, անոնց կամքը կը կատարէին, անոնց կամահաճութեան առջեւ կը խոնարհէին, անոնց սրտին ուրախութիւն և հոգւոյն զուարթութիւն մատակարարելու նպատակաւ: Իմաստութեան, պարտուց և ամուսնական սիրոյ չքնաղ և գերագոյն դաս, որոց պարտէին հետեւիլ մեր դարուն մարդիկք. կուզեմ ըսել այն անձանց համար, որք գձուձ սե-

րունդ մը ծննդագործելու մասին այնչափ անտարբեր են, որչափ որ իրենց ձիերուն կամ իրենց չանց տեսակը կատարելագործելու մասին ջանասէր :

Մենք արդէն տեսանք որ կինը իւր յղութեան հինգերորդ ամիսէն մինչեւ իններորդ ամիսը առատ կամ հիւթալից սնունդ մը կը պահանջէ, սաղմին՝ սննդատու հիւթոց մասին ըրած սպառման 'ի թիկունս հասնելու համար : Կան կիներ, որք միշտ նօթի են և մինչեւ անկողին մտնալու ատեն կըզգան այս կարիքը · այս կիները պարտին լաւագոյն կերակուրներ ընտրել և իրենց ճաշը բազմապատկել · որպէսզի չը բեռնաւորեն իրենց ստամոքսը առատ ճաշով մը, որնոր ծանր և դժուար մարսողութիւն մը պիտի պատճառէր :

Հոս պիտի խօսինք երեւոյթի մը վրայ, զոր մէկ քանի կանայք իրենց յղութեան ատեն կ'ընծայեն : —Ոմանք կը նիհարնան տակաւ առ տակաւ · տկար դձուձ կըլլան, և ծնաժամը հասնելով, գէր և կորովի տղաքներ կը բերեն : —Ոմանք ալ ընդհակառակը կը գիրնան · և, թեպէտեւ քաջառողջ և ուժեղ կըլլան, բայց պզտիկ և նկար երբեմն ալ անկեաց մանուկ մը կը ծնանին : Այս երեւոյթը · որ առջի բերան մարդ կը զարմացնէ այսպէս կը բացատրուի :

Առաջին պարագային մէջ կինը կը նիհարնայ և կարծես կըսպառի · վասնզի իւր կրած տղան ծծիչ մեծ զօրութեամբ մը օժտուած է, այսինքն իւր օգտին կը դարձնէ սննդատու հիւթոց այնչափ քանակութիւն մ'որ այդ պատճառաւ մայրը գրեթէ

կը ծիւրի ․ վասնորոյ այս տղան մեծամեծ զարգացում մը կըստանայ ։ Այս տեսակ կիներուն մէջէն եղած [illegible] այնպիսիներ , որք թէև տեսքով գձուձ են , բայց տղաքներ բերած են , որք տասն և ութնէն մինչեւ քսան լիպրա կշռուած են ։

Երկրորդ պատահման մէջ կինը կը գիրնայ 'ի վնաս իր պտղոյն ․ թէ՛ սննդատու նիւթերը յիւր մարմին չրջելու խիստ մեծ կարողութեան մը պատճառաւ , թէ՛ , վասնզի սաղմը չունի այնչափ բարձր ծծիչ զօրութիւն մը , որպէսզի կարող ըլլայ յինքն գրաւել սննդատու հիւթոց բաւական քանակութիւն մը , զոր մայրը իւր շահուն կը բռնէ ։

Իրաց այս վիճակը ապացուցանել կը ձգտի թէ այն կիները , որք իրենց յղութեան երկրորդ շրջանի ատեն կը նիհարնան, ('ի բաց հանեալ անշուշտ ամեն հիւանդութիւնները) գէր և կորովի տղաքներ ունենալու բաղդաւորութիւն ունին ․ իսկ այն կիները , որք գիրութիւն կըստանան , հակառակ բաղդաւորութեան մէջ կը գտնուին ։

Քանի որ յղութեան ծնաժամը մերձենայ , կինն ալ այնչափ պարտի զարհուրիլ պատահարներէ , խելացի ըլլալ և անձնապահ իւր վարմանցը մէջ ։ Ոչ թէ միայն արտաքին ամենափոքր բախիւնք , անկմունք , ուտելու և խմելու մէջ կարի դոյզն չափազանցութիւնք , բարեխառնութեան յանկարծական փոփոխութիւնք ևն ․ պիտի վնասեն սաղմին , այլ կան նաեւ բարոյական ուրիշ պատճառներ , որք նուազ վտանգաւոր չ'են ․ այսինքն ուրախութեան կամ տրտմութեան խիստ սաստիկ յուզմունք ․ ճշգըրտեալ կամ վրիպեալ յուսոյ քստմունք ․ երկիւղք ․

*յանկարծակի սոսկմունք, եւ. բայց մանաւանդ բարկութիւնը և ատելութիւնը . . . վասնզի բարկութիւնը կը պատճառէ զայրուցք չարժմանէ լեղի, որնոր համակրաբար բոլոր գործարանաց կը հաղորդուի . արիւնը գլուխ կը բերուի . երակազարկք կը բազմապատկուին կամ կառկախուին, անջատմունք կառաւելուն կամ կը նուազին, ջիղերը կը կծկին, ոսկրոտին կը դողայ, ամբողջ գործարանական յօրինուածքը կը սարսռայ և կը տատանի . Հիւթոց համախմբութեան կարի մօտաւորութիւն կամ մանր երակաց բեկումն կայ . բարկութեան այս ծրագրոյն առջեւ տարակոյս չը մնար որ զայրացեալ կանայք ենթակայ չըլլան խել մը պատահարաց, որոնց ամենէն խիստերն են, արգանդային արիւնազեղմունք, վիժումն, և, ՚ի յոռումն դժբաղդութեան, այն կինը, որ վիժում մ՚ընէ, ուրիշներ ալ ընելու տխուր բաղդաւորութեան մէջ կը գտնուի .*

*Մէկ քանի տող ալ վիժման և իւր պատճառներուն վրայ գրենք .*

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ՎԻԺՈՒՄՆ
## ԿԱՄ ԲՆԱԿԱՆ ԾՆԱԺԱՄԷՆ ԱՌԱՋ ԾՆՆԴԱԲԵՐՈՒԹԻՒՆ .

*Վիժումն, ինչպէս յայտնի է, բնութեան հաստատած ծնաժամէն առաջ սաղմին արտաքսումն է .*

այսինքն յառաջ քան զանցանելն այն կերպափոխու-թիւնը, որնոր զինքը կեմի պիտի գործէ։ Ինչպէս որ ոստին վրայ մեռեալ խակ պտուղք փոքրիկ ցընց-մամբ մը կ'ինկնան. նոյնպէս ալ սաղմը կը բաժնուի արգանդէն, երբ ապրելէ դադրի։

Վիժման պատճառները բազմաթիւ են և երկու-քի կը բաժնուին. բարոյական և կազմական։

ԲԱՐՈՅԱԿԱՆ ՊԱՏՃԱՌՔ։ Բարոյական պատճա-ռաց երկար ցուցակը առանց բանալու, մենք պի-տի ըսենք որ հոգւոյ, ուրախութեան կամ տըրտ-մութեան ամեն սաստիկ յուզմունք, նախանձու, բարկութեան ժամանք. յանկարծական սոսկմունք, մեծ զարմացմունք. խորատխուր վիշտք, կենդրո-նացեալ տխրութիւնք, մելամաղձութիւն, վերջապէս ամեն կիրք, որք կեանքը կը լափեն, բոլոր ճընշ-մունք, որք զայն կը հեղձուցանեն, կրնան վիժու-մըն գրգռել։ Այս՝ խիստ բնական պիտի երեւայ, եթէ խորհրդածուի որ կնոջ՝ յղութեան ատենի ար-գանդն է այն գործարանը, որ ամբողջ մարմնա-կան յօրինուածոյն վրայ կ'իշխէ, այն՝ որ ճառա-գայթեր կ'արձակէ բոլոր միւս գործարանաց վրայ։

ԿԱԶՄԱԿԱՆ ՊԱՏՃԱՌՔ։ —Գլխաւորները նշա-նակելը բաւական պիտի սեպենք։ ՀԱՍԱԿ։ Շատ մատղաշ կամ յառաջացեալ հասակի մէջ արգասա-ւորեալ կանայք վիժման տրամադրեալ են։ Առաջ-նոց մէջ արգանդը՝ իւր բոլոր զարգացումն դեռ ստացած չէ. վերջնոց մէջ արգանդը՝ իւր կենսու-նակութենէն և առաձգականութենէն կորսուած է։

ԽԱՌՆՈՒԱԾՔ։ Զափազանց խառնուածքները կը կը վնասեն յղութեան։ —Արիւնոյինը ենթակայ հա-մախմբութեան. —Ջղայինը տաժանելի զգայակա-

*նութեան մը, արգանդի խօթութեան․ մաղձոյինք բարոյական վշտակրութեանց, մելամաղձութեան․ —աղոյինք մայ թուլութեան, տկարութեան ։*

ՋԳԵՍՏՔ *խիստ սեղմեալք․ Ներքին բաճկոնակներ, որք կանգուն կենալու համար ոսկրով կամ երկաթով շինուած են, շատ անգամ պատճառ են տաժանելի յղութեան մը, որնոր, աւա՜ղ, վիժմամբ կը վերջանայ․ կամ, եթէ տղան ծնաժամուն ծնանի, գձուձ, հիւանդոտ և նենգեալ կըլլայ ։*

ՍՆՈՒՆԴ․ *կամ խիստ առատ կամ անբաւական և յոռի որպիսութեամբ ։ Նոյնպէս կը վնասէ յղութեան ։ Անմարսութեան, ինչպէս նաեւ ժուժկալութեան պատճառաւ վիժումներ տեսնուած են ։*

ՋԱՓԱԶԱՆՑ ՆՍՏՈՂԱԿԱՆ ԿԱՄ ՋԱՓԱԶԱՆՑ ԳՈՐԾՈՒՆԵԱՑ ԿԵԱՆՔ․ *տիկնանց ներքին գահլիճի գոյութիւնը․ երեկոյթներու, պարերու, թատրոններու չարաչար յաճախմունքը սաղմին զարգացման վրայ ցաւալի կերպով կը ներգործեն ։*

ՑԱՆԿԱԿԱՆ ՀԱՃՈՅԻՑ ՋԱՐԱՉԱՐ ԳՈՐԾԱԾՄՈՒՆՔ․ *խիստ վտանգաւոր են մանկան, մանաւանդ յղութեան առաջին ամսոցը մէջ և ութերորդ և իններորդ ամիսներուն ատեն․ կնոջ ծննդական գործարանաց վրայ յարուցած բորբոքումներն կրնայ պատճառել կորուստներ և ջնջել այն բաղակցութիւնները, որք սաղմը արգանդին կը կցեն։ Ցանկական ստնգանքը կրնայ պատճառել արգանդային կծկումներ, որք սաղմին զարգացումը կը կասեցնեն և զայն նենգեալ կը գործեն ։ Մանկաբարձ բժիշկք կը խորհին թէ յղութեան ժամանակի զուգաւորութեան յաճախութիւնը, մասնաւորապէս ցանկաւէր կանանց քով, վիժման կարի մօտալուտ պատճառ մ՚է։*

ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹԻՒՆ· ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ: Դիտուած է թէ այն աղջկունք, որոց մայրը կամ մամը շատ անգամ վիժած են, իրենք ալ տրամադրեալ են ծնավիժման. և քիչ անգամ կը պատահի որ կին մը, երբ ամուսնութիւնը վիժմամբ սկսի, ուրիշ յաջորդ վիժումներ ալ չ'ընէ. կերևայ թէ արգանդը՝ արդէն մէկ մ'ըրածը կրկնելու ձգտում մը կը պահէ:

ՆԵՐՔԻՆ ԿԱՄ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ· Այն ամեն խիստ հիւանդութիւնները, որք մարմնական կազմութիւնը ՚ի հիմանց կը բաղխեն, ծնաժամէն առաջ ծննդաբերութիւն ըլլալու երկիւղ կուտան:

ՎԱՅՐԱԿԱՆ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ· Արգանդի ամեն վշտակրութիւնք· բորբոքմունք, արիւնազեղմունք, ջղացաւք, իւր փողին ապականութիւնքը, առատ ճերմակ դաշտանք, այտուցք, կապոյտ երաշխեալք, և կանխահաս ծննդաբերութիւն մը պատահեցնել կրնալու չափ պատճառներ են:

Սառուցեալ ըմպելիք, պաղպաղակի ներմուծութիւնը, ոտքերը պաղ ջրոյ մէջ դնելը, երբ քիչ կամ շատ քրտանց մէջ ըլլայ· բազուկները և կուրծքը պաղ օդի դնելը, տաքին և պաղին յանկարծական ազդեցութիւնք միշտ վնասակար են յղութեան վաստակին և կրնան վիժումն գրգռել: Ծանուցում մ'է այս որ կընենք երեկոյթներու, պարերու, թատրոններու յաճախող տիկնանց:

Վերջապէս իբր վիժման պատճառ կը նշանակենք նաեւ, ծնամանին կազմական ախտերը, ընդգեստուց ճնշումները, աղեաց բորբոքումը, որովայ-

ների յամառ պնդութիւնը և ճեմիչ երթալու բազմակըրկնակ ջանքերը, հարուածք, անկմունք, սաստիկ մարզք կամ բացարձակ հանգիստը, պարը, երգը, հեծելավարժը, ճեմը, չափազանց աշխատութիւնը, կառաց երերումը, աղաղակը, փռընգտալը, աշխատութենէ բազկաց ձգտումը, և ընդհանրապէս այն ամեն բան, որ մարմնական յօրինուածոյն վրայ ցնցում մը կը տպաւորեն: Վիժման պատճառներուն մէջ պէտք է աւելցնել նաև խիստ նստողական կեանքը, ինչպէս, օրինակի համար, օրուան մեծ մասը գրասեղանի մը, հաշուեսեղանի մը առջև նստող դրութիւնը: Ձմերան եղանակին մէջ բնակարանաց ապականեալ կամ քիչ նորոգեալ օդը. հոչոցանոց թանձր օդը, նաև վիժման պատճառներ են, վասնզի արեան թթուածնայագումը անկատար է: Գեղջկուհիք, որք բաց օդին կը շրջին և կ'ապրին, իրենց յղութեան ատեն աւելի նուազ պատահարաց ենթակայ են քան թէ մեր տկար և փափուկ քաղաքացի կիները, որք կը յաճախեն թատրոններ և երեկոյթներ, ուր օդը ապականեալ է կենդանական խիստ ժանտաբեր բուրմամբ: Ուստի ամեն խնամոտուն կին պարտի մերժել իր յղութեան ատեն վիժման պատճառները, զորս այժմ իրենց աչացը առջև բացադրեցինք. անոնց վտանգները պարտի հասկնալ, և պատահարներէ ազատ յղութիւն մը և բարեբաղդ ծննդաբերութիւն մը իրեն ապահովելու յատկացեալ ամեն նախզգուշութիւններով և առողջապահական խնամքներով ինքզինքը շրջապատել պիտի ջանայ:

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ԾՆՆԴԱԲԵՐՈՒԹԻՒՆ

Ծննդաբերութիւնը պաշտօնի մը բուն արդիւնքն է ։ Ցըւ–Նի–նը, եթէ քաղաքաց մէջ շատ անգամ ծանրատաղտուկ, դժուարաբեր, ցաւալի կըլլայ, պակասութիւնը ուրիշինը չ'է, բայց միայն մեր քաղաքակրթութեան և մեր բարուց ու սովորութեանց. վասնզի կէս-վայրենի ժողովրդոց մէջ յղութիւնը շատ դիւրութեամբ կը կատարուի, այնպէս որ մանկաբարձի մը կարօտութիւնը չըզգացուիր. բնութիւնը, որնոր արհեստէն աւելի իմաստուն է, կը կատարէ ծննդաբերութիւնը արտաքսման արագ ցաւօք ։

Ծննդաբերութիւնք կըլլան վողոնկոփոր կամ ծնաժամէն առաջ. ուղոնկոփոր կամ ծնաժամէն ետքը. և բնական կամ 'ի ծնաժամին. մենք միայն այս վերջիններուն վրայ պիտի խօսինք ։

Կենդանի բնութեան մէջ ամեն բան շղթայաչար կը գործուի և կը կապակցուի. ամեն բան կապակցութեան օրինաց ենթակայ է. ժառանգական փոխադրութիւնք այսօր ալ տարակոյս չ'են վերցներ. տղայք իրենց ծնողաց կազմութեան ախտին մնացորդը աւելի կամ նուազ կը կրեն ։ Եթէ նոր ծննդաբերը բարեկազմ ծնողքներէ ծննդաբերուած է, եթէ իւր կուրծքը և որովայնը ներքին բաճկոնակի մը շարունակ ճնշմամբը կերպարանափոխ եղած չ'է, եթէ, վերջապէս իւր յղութեան ատենը այս պզտիկ գործոյս մէջ նշանակուած առողջապահա-

կան սկզբանց հպատակած է · մենք կանխաւ իրեն կ՚ապահովցնենք որ ծննդաբերութեան ցաւերը թեթեւ և արագ պիտի ըլլան · ինքզինքը իւր սերընդեան մէջ յարուցեալ տեսնալու երջանկութիւնը զանոնք դիւրութեամբ կրել պիտի տայ իրեն ։ Իւր յղութեան ատենը իմաստութեամբ վարուող նորոգ ամուսնացեալ կին մը պարտի մերժել չափազանց ցաւոց և պատահարաց երկիւղը · անոր մէջ՝ բնութիւնը առանց արգիլմանց հանդիպելու յառաջ կընթանայ ։ Ծննդաբերութեան տաժանելի վայրկեանները պիտի վարձատրուին անհուն հաճոյքներով , զորս մանկան մը ծնունդը իրեն պիտի մատակարարէ ։

## ԾՆՆԴԱԲԵՐՈՒԹԻՒՆ Ի ԾՆԱԺԱՄՆ

Արգասաւորութեան օրէն հաշուելով ինն ամիսհոլովուելէն վերջը , այսինքն երկու հարիւր եօթանասուն և հինգ օր յղութենէ վերջը բնական ծնընդաբերութիւնը տեղի կ՚ունենայ ։

Բնութիւնը , որնոր իւր գործոցը մէջ այնչափ զարմանալի է , քսան կամ երեսուն օր յառաջմանէ կը պատրաստէ մանկան արտաքսումը ։ Այս վաստակին առաջին նշանները են որովայնին տափակնալը · վերջին կերպափոխութեան պատճառաւ , անձկութեան , ըքման , սարսռման վիճակ մը · աւելի կամ նուազ առատութեամբ մաղասի հոսումն ծնծակէն դուրս · որովայնապնդութիւն կամ որովայնածութիւն , միզման անժուժկալութիւն կամ դժուարամիզութիւն · դժուարակիր ծանրութիւն մը դէպ 'ի նստոյ տեղին · արգանդի փողին մէջ դողդողումն · եւ ..... ։ Վերջապէս յղութեան վերջին

օրերուն մօտ հետեւեալ չորս նշանները կը յայտնեն որ ծննդաբերութեան վայրկեանը հասած է ։ 1° Երկունք . 2° արգանդի փողին ընդլայնումն . 3° արգանդի ցնցուղէն դուրս արիւնախառն տողեաց հոսումն . 4° բեկումն պարտի սաղմնաբոյն մզանաց ։

**Ա. ԵՐԿՈՒՆՔ .** արգանդի կծկութեանց արդիւնք , նախ տկար , կարճատեւ են և միմիայն միջոց միջոց կըզգացուին ։ Այս երկունք աւելի սաստիկ կըլլան , հանգստեան միջոցք աւելի կարճ , և կինը կը հեծէ և աղաղակ կը բառնայ ։

**Բ. ԱՐԳԱՆԴԻ ՓՈՂԻՆ ԸՆԴԼԱՅՆՈՒՄՆ ։** Արգանդի կծկութեանց անմիջական հետեւութիւնն է . այս ընդլայնման աւելի կամ նուազ աղատ ըլլալէն մանկաբարձը կը դատէ վաստակին տեւողութեան երկայն կամ կարճ ըլլալը ։

**Գ. ԱՐԻՒՆԱԽԱՌՆ ՏՈՂԻՔ ։** Որք արգանդացնցուղային մաղասներէն և Ֆըլաչէնեոյն մէկ քանի փոքր երակաց բեկումէն յառաջ կուգան ։

**Դ. ԲԵԿՈՒՄՆ ՊԱՐԿԻ ՍԱՂՄՆԱԲՈՅՆ ՄԶԱՆԱՑ** է վերջին երեւոյթ , որ տղուն ելքը կը յառաջէ ։ Երբ բեկումը արգանդի փողին բերնին քով կատարի , սաղմնաբոյն մզանք ցայտմամբ դուրս կուգան , և մանկան ելքը դիւրութեամբ կը գործադրուի ։ Երբ բեկումը բերնէն հեռու մէկ կէտի մը վրայ տեղի ունենայ սաղմնաբոյն մզանք մասամբ իւիք դուրս կուգան և ծննդաբերութիւնը կը յապաղի . նոր պարկ մը կը ձեւանայ . զոր մանկաբարձը իւր մատովը պարտի պատառել ։

---

# ՀԱՏՈՒԱԾ Դ

## ԾՆՆԴԱԲԵՐՈՒԹԵԱՆ ԽԻՍՏ ՆՊԱՍՏԱՒՈՐ ՄԱՆԿԱԲԱՐՁԱԿԱՆ ՁԵՌԱՎԱՐԺԻՑ ՎՐԱՅ ։

*Խիստ ընդհանրապէս՝ մանկան արտաքսումը բնութեան միմիայն ջանիւքը տեղի կունենայ. սակայն կրնայ պատահիլ որ ծննդաբերութիւնը աշխատեցուցիչ ըլլայ, այնինքն հանդիպի այնպիսի դժուարութեանց, զորս արհեստը կրնայ ընկճել, կամ որոց առաջքը առնուլ. այս պատահման մէջ՝ ճարտար մանկաբարձ մը ծննդաբեր կնոջ վշտակրութիւնները միշտ կը կարճէ ։*

*Մենք պիտի հետեւինք տղայաբերութեան վաստակին ընթացիցը և համառօտապէս պիտի նկարագրենք այն ձեռավարժերը, զորս փորձը ամենէն աւելի նպաստաւոր ճանչցած է ։*

**ԱՌԱՋԻՆ ԺԱՄԱՆԱԿ ։** *—Կինը անձկութիւն, նողկանք, տկարութիւն կզգայ ։ Դժուարութեամբ կը շնչէ. բաւական խիստ ցաւեր կըզգացուին երիկամանց մէջ, արգանդի կծկութիւններ տեղի կ'ունենան և արգանդի փողը կսկսի բացուիլ ։*

*Այս առաջին երեւոյթները յայտնուիլ սկսելուն պէս կինը պարտի սենեակէն դուրս չելլալ և ծննդաբերութեան անկողնոյն վրայ զետեղիլ ։ Զգեստուց լարերը, ճարմանդները և ուրիշ կապերը պիտի արձակուին, վասնզի ամենափոքր ճնշում մը խիստ վնասակար է ։ Սենեակին բարեխառնութիւնը առ առաւելն քսան աստիճանէն վեր և առ նուազն տասը աստիճանէն վար չի պիտի ըլլայ ։ Եթէ կինը*

երկար առնէ 'ի վեր ճեմիչ չ'է գացած, հարկաւոր է գրեխ մ'ընել աղիքը պարպելու համար ։

ԵՐԿՐՈՐԴ ԺԱՄԱՆԱԿ. —Երկունք կը շատնան. արգանդի փողը ընդլայնած է. սաղմնաբոյն մըզանաց պարկը անոր բերնին մօտ է, իւր կշիռը միզական փամփուշտին վրայ կը ծանրանայ և վշտակիր կնոջ ստէպ միզելու փափաք կըզգացնէ ։

Եռեսունէն մինչեւ քառասուն տարեկան կանանց առաջին անգամ ծննդաբերութեան ատեն կրնայ պատահիլ որ արգանդի փողը բաւական չ'ընդլայնի և, երկանց յաճախութեան հակառակ, իւր խըստութիւնը պահէ ։ Այս ատեն բաղկէն արիւն առնուլ և կակղիչ նաւթոյ լոգանք մ'ընել կարեւոր է մանկան անցքին հարկաւոր ընդլայնումը բերել տալու համար ։

Երբ երկունք տառապեցուցանեն, երբ ընդլայնումը անկատար մնայ, ուրիշ միջոցներ հարկաւոր են ։ Գրգռիչ լոգանք, ործացուցիչք, փռնչեցուցիչք են կը պատուիրուին ։ Այս դարմանք երբեմն կրնան յաջողիլ. բայց գրեթէ միշտ վտանգաւոր են և կը պատուիրենք կանանց որ զանոնք երբէք չը գործածեն ։ Եթէ արգանդի կծկութեանց տկարութիւնը անձին անզօրութենէն կախումն ունի, պարարտ արգանակ մը, մէկ քանի դրգալ զօրացուցիչ ըմպելիք շուտ մը ուժը վրայ կը բերէն ։ Եթէ զգալի տարբերութիւն մը չըլլայ, այն ատեն անկահոբ հաճարի փոշին՝ 12—15 տասնակրամ՝ դաւաթ մը շաքարի ջրոյ մէջ լեցնելով, և չորս մասի բաժնելով ութը վայրկեանը անգամ խմցնելու է ։ Այս փոշւոյն ազդեցութեան տակ հազուադէպ է որ արգանդի կծկութիւնք զօրաւոր կերպով չը զարթնուն ։

Երկնող կանանց շատերուն ըրած սաստիկ յուզմունքները և անչափ աղաղակները սպառման մէջ կը նետեն զիրենք ։ Մանկաբարձը իր ամեն ճարտարախօսութիւնը բանեցնելու է զանոնք հանդարտեցնելու համար և սիրալիր խօսքերով դիւրութեամբ կրնայ յաջողիլ․ անոնց հասկցնելու է որ իրենց չափազանց յուզմունքը կրնայ մանկան վնասել և անոր կեանքը վտանգի մէջ դնել․ շատ անգամ այսչափը միայն բաւական կըլլայ իրենց քաջալերութիւնը և համբերութիւն տալու ։

ԵՐՐՈՐԴ ԺԱՄԱՆԱԿ ։ Երկունք կը յաջորդեն արագութեամբ, արգանդի ցնցուղը արիւնախառն տղեօք ոռոգուած է, արգանդի փողը ամբողջապէս ընդլայնած է, սաղմնաբոյն մզանաց պարկը անոր բերանին քովն է ։ Այն ատեն շնչառութիւնը կցկըտուր կըլլայ, աչքերը և երեսը կը կենդանանան, ընդհանուր ընդդիմագործութիւն մը կը կատարուի, մորթը քրտամբ կը գոցուի ։ Այս յուզմանց մէջ տեղը արգանդի սաստիկ կծկում մը սովորաբար կը պատռէ պարկը, սաղմնաբոյն մզանք կը հոսեն, որովայնը կը ցածնու․ այն ատեն երկանց վախճանը կը հասնի ։

Երբեմն կը պատահի որ պարկին թաղանթները արգանդի կծկութեանց կ՚ընդդիմանան և ծննդաբերութիւնը կը յապաղեն․ վասնորոյ պէտք է անմիջապէս զանոնք պատռել, բայց զգուշութեամբ ։ Պարկը պատռելու կերպը խիստ պարզ է, շատ անգամ ցուցամատով զայն հրելը բաւական է ։ Եթէ այս կերպը անպտուղ մնայ, վիրաչափ մը կամ մըկրատի մը մէկ ծայր կը գործածեն ցուցամատին առաջնորդութեամբը․ այս վերջին միջոցը շատ խո-

հեմութիւն կը պահանջէ ։ Պարկի պատառումէն և սաղմնաջրոյն մղանաց հոսումէն ետքը մանկաբարձը բնաւ ձգելու չէ ծննդաբերը․ վասնզի մանկան ելքը կրնայ պատահիլ մէկ վայրկեանէ միւս վայրկեան ։

ՉՈՐՐՈՐԴ ԺԱՄԱՆԱԿ․ Երկունք կ'առաւելուն, աւելի կը սաստկանան․ մանկան գլուխը արգանդին բերնին քով կուգայ․ կծկութիւնք կը կրկնուին․ սաղմը ստորին նեղուցէն պիտի անցնի ։ Կկուն յետս կը մղուի․ սրբանին և ծննդակին միջավայրը կը ձգտի․ արգանդի ցնցուղը կը բացուի․ մեծ և փոքր շրթունք ծննդակին ընդարձակմամբը կը պատառատուին․ կինը անկողնոյն խստիւ կըյարի․ աղէկ մը ինքզինքը կը հաստատէ․ վերջին ճիգ մը կընէ․ և մանկան գլուխը ծննդակին հարթ ուղղութեանը կերեւայ ։ Այն ատեն մանկաբարձը իւր ձեռօքը՝ ծննդակին և սրբանին միջավայրը պիտի բռնէ, անոր պատառման առաջքն առնելու համար․ այս կէտը խիստ կարեւոր է․ վասնզի անոր պատառուածքը բժշկելը խիստ դժուարին է և անախորժ հիւանդութիւն մը կը ձգէ ։ Ուստի մանկաբարձը մէկ ձեռքով այս միջավայրը բռնելով, միւսովը փափկօրէն դէմ կը դնէ մանկան գլխուն խիստ ելիցը ։ Գլուխը ծննդակէն դուրս ելլալէն վերջը, երեսը մօրը ազդերց մէկուն վրայ կիյնայ և ուսերը կ'ազատին․ յետոյ արգանդը վերջին կծկութիւն մը աւելի երկարօրէն, և աւելի զօրաւոր կերպով տեղի կ'ունենայ․ մանկան ամբողջ մարմինը արգանդա-ցնցուղային անցքէն կ'արտաքսուի ։ Այս վերջին կծկութիւնը ծննդաբեր կնոջ ջղաձգական աղաղակ մը բառնալ կուտայ․ ուրիշ աղաղակ մը անոր կը պատասխանէ․

այս աղաղակը ՆՈՐԱԾՆՈ՛ՑՆ է · · · ։ Այս ձայնէն վերջը, որ նոր կնոջ ամբողջ էութիւնը կը դողացնէ, երկուքը կըլլեն, ամեն բան կը մոռցուի ։ Ո՛վ ուրախութեան · ի՛նչ երջանկութիւն ։ Նա մա՛յր է · · · ։

Տղան զինքը իրեն ամիս սնուցանող ծոցէն դուրս ելաւ, սակայն պորտական լարով տակաւին կապուած արգանդին ։ Մկրատով այս լարը կը կտրեն պորտէն մէկ քանի հարիւրորդամեթր հեռաւորութեամբ · և մոմած թելով վերքը կը կապեն ։ Տղան ծնանելուն պէս, թոքային կրկին պաշտամունք կը հաստատուին և արտաքս-արգանդային կեանքը կսկսի ։

Բայց մանկաբարձին համար ամեն բան լմնցած չ'է · տակաւին կը մնայ իրեն տղմնընկերը կազմող թաղանթներուն [illegible] կամ արտաքսումը ։ Ծննդաբերութենէ քչիկ մ'ետքը թեթև ցաւեր կըզգացուին և տղմնընկերը ինքնին կը զատուի։ Իսկ եթէ այսպէս չըլլայ և ազատութեան գործը յապաղի · մանկաբարձը պարտի զայն փութացնել ծընծակէն դուրս մնացած լարը թեթև կերպով ձըգձըգելով ։ Այս ձեռնավարժը մեծ զգուշութեամբ կատարուելու է · վախնալով որ չըլլայ թէ պատառուածք մը պատահի արիւնազեղմամբ կամ արգանդի տապալմամբ, որոց երկուքն ալ խիստ ծանր պատահարներ են ։ Տղմնընկերին ամբողջ արտաքսումէն կամ ազատումէն ետքը, որովայնին վրայ թեթև շփումներ կը գործադրեն, որք արգանդին իր սովորական տեղը երթալը կը յաջողեցնեն ։ Յետոյ ծննդաբեր կինը լուանալու և անոր լաթերը փոխելու և բազմակըրկնակ կտաւօք պատրաստեալ մահճի մը մէջ փոխադրելու է ։ Անոր որովայնը տակ վարշամակնե-

րով Թուլութեամբ պատելու է. Այս նախազգուշութիւնը՝ որովայնին մեծապէս ընդլայնած մորթը իւր առաջին վիճակին վերածելու և ծննդաբերութեան ամեն նշանները անհետացնելու համար խիստ հարկաւոր է։ Այս կապը գործադրելու կերպին վրայ քիչ մ'ետքը պիտի խօսինք։

Գարունը և ամառան սկիզբը կենդանի էակաց համար սիրոյ եղանակն են բնութեան զարթման այս զօրաւոր ազդեցութիւնը սաստկապէս կըզգացուի մարդկային սեռին վրայ։ Սեռական մերձեցմունք աւելի յաճախ են ապրիլի, մայիսի, յունիսի մէջ, քանթէ տարուան ուրիշ ամսոց մէջ. ուսկից կը հետեւի որ յունվար, փետրվար, մարտ ամսոց մէջ տեղի ունեցած ծննդոց թիւը ուրիշ ամսոց թիւէն մեծագոյն է։ Ահա Փարիզի մէջ պատահած ծննդոց ցուցակը, զոր Տիւվիլարդ տասը տարուան արձանագրութիւններէ քաղելով շինած է։

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ծնած են | Յունվարի | մէջ . . . | 55801 | տղայք |
| — | Փետրվարի | » . . . | 51971 | — |
| — | Մարտի | » . . . | 53527 | — |
| — | Ապրիլի | » . . . | 51314 | — |
| — | Մայիսի | » . . . | 49884 | — |
| — | Յունիսի | » . . . | 45113 | — |
| — | Յուլիսի | » . . . | 46934 | — |
| — | Օգոստոսի | » . . . | 49851 | — |
| — | Սեպտեմբերի | » . . . | 48850 | — |
| — | Հոկտեմբերի | » . . . | 49103 | — |
| — | Նոյեմբերի | » . . . | 46134 | — |
| — | Դեկտեմբերի | » . . . | 44988 | — |

# ԳԼՈՒԽ ԼԳ.

## ԱՌՈՂՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՄՕՐՆ ԵՒ ՄԱՆԿԱՆ

---

## ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԾՆՆԴԱԲԵՐ ԿՆՈՋ ԵՒ ՆՈՐԱԾՆՈՑՆ ՏՐՈՒԵԼԻՔ ԱՌԱՋԻՆ ԽՆԱՄՈՑ ՎՐԱՅ։

Ծննդաբեր կնոջ ծննդական անդամները սաստիկ արտաձգմամբ և ձգձգմամբք գրգռուած ըլլալով, պէտք է զանոնք մոլոշի գաղջ ջուրով կամ ազատքեղի և գուայլըծն-դլընի վերահեղմամբ լուանալ և փափկութեամբ չորցնել. յետոյ թանձր լաթեր դնելու է ծննդական դաշտանը ծծել տալու համար։ Որովայնը տաք վարշամակներով պատատելու և թեթեւ մը սեղմելու է. որպէսզի յղութեամբ ընդլայնած անոր կողերուն վրայ կակուղ ճնշում մը ըրուի։ Այս կապը ստէպ ստէպ դիտելու է, և թէ թուլցած ըլլայ, նորէն սեղմելու է. վասնզի այս ամենապարզ եղանակաւ է որ կանայք առաջքը կ'առնուն մորթին մանրաթելից պատառուածոցը և այն բազմաթիւ կնճիռներուն, որք որովայնին կորսուսանել կուտան իւր առաձգական դիւրաշարժութիւնը։ Ահա այն վարմունքը, զոր կ'ունենան Յոյնք փորին մորթին խիստ մեծ ընդարձակման դէմ դնելու և ձեւերը իրենց նախկին հաստատութեանը վերածելու համար։

Բաւական քանակութեամբ պաղ ջրոյ մէջ 75 կրամ օսլայ և 35 կրամ դէտօնիլլէնա թրջէ՛ և յետոյ խառնէ՛, մինչև որ տեսակ մը դեղնագոյն և թանձր կաթ մ'ունենաս ; դիր ամանը մոխրափակ կրակի վրայ եղկանալու չափ և սաստիկ յուզէ՛ ։ Դի՛ր մէջը 30 կրամ վարդախառն մոմապեղանի և նորէն շարժէ՛, մինչև որ հալի. յետոյ կրակին վրայէն վար ա՛ռ և մէջը թաթխէ՛ բարակ վարշամակներ, որոնցմով ծննդաբերին որովայնը պիտի պատես և պիտի սեղմես ։

Նորածնոյն և մօրը գտնուած սենեակը լայնատարած ըլլալու և միշտ անոր օդը փոփոխելու է. բարեխառնութիւնը ոչ տաք և ոչ պաղ. մահճակալին վարագոյրները միշտ բաց ըլլալու են, որպէսզի օդը ազատութեամբ բանի ։ Աղմուկ ընելէ և խիստ սաստիկ լոյս տալէ զգուշանալու է ։ Սենեակին մէջ ամենամեծ մաքրութիւն մը տիրելու է ։

Սաղմընկերին անջատումը առանց՝ արգանդային մէկ քանի երակաց բեկման չը կրնար կատարուիլ, ուսկից կը պատճառի ծնծակէն դուրս եկած արիւնային հոսմունք ծննդաբերութենէն անմիջապէս ետքը ։ Այս հոսումը կը շարունակէ մէկ կամ երկու օր. երկրորդ կամ երրորդ օրը՝ արեան և քչիկ մը խարտեշագոյն չիճուկի խառնուրդ մ'է. չորրորդ և հետևորդ օրերը հեղուկը թուխ-մնախառն և ճերմակ կըլլայ և տասներորդէն մինչև չորեքտասաներորդ օրը կը դադրի ։ Այս հեղման ծննդական դաշտան կըսուի, որնոր յատկապէս հարկաւոր է արգանդը՝ զինքը թացող հեղանիւթերուն յորդառատութենէն մաքրելու համար ։ Եթէ այս ծննդական դաշտանը դադրի հարկ է զայն բժշկա-

կան միջոցներով հոսեցնել։ Երբ ծննդական դաշտանի բարձումը կաթի ջերմէն կախումն ունի, պէտք չ'է անհանգիստ ըլլալ. վասնզի ջերմը թող տալէն անմիջապէս ետքը հոսումը պիտի սկսի։ Ծըննդաբեր կնոջ ծննդական անդամոց քով դրուած կտաւները և մահճին պաստառակալները ու սաւանները երբ ծննդական դաշտանով աղտոտին, խիստ կարեւոր է զանոնք փոփոխել։

Նորածին մանկան մարմնոյն մակերեւոյթը արիւնով, մոմակերպ նիւթով և ուրիշ աղտեղութեամբ ծածկուած է, զորս պէտք է անմիջապէս մաքրել։ Ասոր համար կը գործածուի թարմ ջրոյ մէջ լուծեալ՝ հաւկթի դեղնուց մը, որով մորթը կը ծեփեն և յետոյ բարակ լաթով կը սրբեն։ Մորթին վրայէն ծեփոցը աղէկ մը հանելէն վերջը բոլոր մարմինը գաղջ ջրով կը լուանան և զայն աղէկ մը սրբելէն և չորցնելէն վերջը, մանկան բարակ սաւեղէնէ շապիկ մը կը հագցնեն, զայն օդին շօշափումէն ըզգուշացնելու համար և անոր գլուխն ալ գտակով կը գոցեն։ Պորտալեան լարին կապուած մասին վրայ, իբր նախզգուշութիւն, պէտք է օսլայի փոշի ցանել, յետոյ այդ մասը բարակ լաթով պատատել և փորին վրայօք հաստատել։ Բոլոր այս տեղեկութիւնները կատարուելէն վերջը, մանուկը իր մօրը քովը կը պառկեցնեն։

Կը կարծեն թէ կիները՝ նորածինը պաղ ջուրի, գետի ջուրի մէջ կը խոթէին. բայց այս սովորութիւնը առաւել հանդէս մ'էր քան թէ առողջապահական միջոց։ Եթէ ուշադրութիւն ընենք տաք արիւն ունեցող կենդանեաց՝ իրենց ձագերուն դէմ

ըրած ջերմացուցիչ միջոցներուն․ եթէ մտածենք սաղմին՝ յղութեան ամբողջ տեւողութեան ատեն գտնուած բարեխառնութեանը, առանց վարանելու պիտի ընդունինք որ բնութեան դիտաւորութիւնն ալ այս նկատման պատշաճական է․ և թէ բնութեան դէմ օրինազանցութիւն մը գործած կ՚ըլլանք, եթէ կենդանեաց ամենէն զգայունը և ամենէն ապիկարը սաստիկ ցուրտի մը ազդեցութեան տակ դնել ուզենք։ Ուրեմն պաղ ջուրը պիտի մերժուի․ և տղան լուանալու է իւր մարմնոյն տաքութեան հաւասար բարեխառնութիւն ունեցող ջրով։ Օղիով կամ ջրախառն գինիով եղած լոգանքներն ալ նոյնպէս արտաքոյ օրինաց համարուելու են․ այս տեսակ լոգանքները՝ տղան զօրացնելու միջոց մը կարծելը շաղփաղփ կնքամարց նախապաշարում մ՚է, որնոր աղետալից հետեւութիւններ կրնայ ունենալ։

Կրնայ պատահիլ որ տաժանակիր ծննդաբերութենէ մ՚ետքը, տղան թալկացման, առերեւոյթ մահուան վիճակի մը մէջ ծնանի։ Կատարելի առաջին դարմանն է թոքերուն՝ օդ ներշնչել, խուչափողը խտտղել և նորածինը տաք լոգանքի մը մէջ ընկղմել․ յետոյ կռնակը և կուրծքը շփշփել։ Եթէ այս միջոցները չըյաջողին, բժիշկի մը ներկայութիւնը անհրաժեշտ է։

Նորածին մանկան աղիքը կը պարունակէ մեկոնիոն ըսուած մածանող նիւթ մը, ուսկից պիտի ազատէ զինքը մօրը առաջին կաթը․ Երբ այս մեկոնիոնին տպավիժումը երկարի, այն ատեն կընել տալու է մանկան՝ մէկ քանի դրգալ շաքարախառն գաղջ ջուր կամ եղերդի շարաբ, յաւելեալ քչիկ մը քաղցր նուշի իւղ․ բայց մօրը չճախուռն կաթը գը-

գրեթէ միշտ բաւական է միկոնիոնը աղիքէն արտաքսելու ։

Ուստի անհրաժեշտ է որ մայրը իւր մանկան կաթ տայ առաջին երեք աւուրց մէջ. նախ իւր տղան մաքրելու, յետոյ իւր ստեանց անցքերը բանալու համար ։ Այն կիները, որք այս մայրական նուիրեալ պարտաւորութիւնը կատարել չ'են ուզեր, դիեցման այս մէկ քանի օրերէն յետոյ պարտին իրենց ստեանց վրայ կակղիչ տածահայններ դնել, զորս քսան և չորս ժամու մէջ շատ անգամ փոփոխելու են ։ Փրօվանցայի կամ բուքաւոր եղէգը՝ կաթը նուազցնելու մեծ համբաւ ունի և կրնայ գործածուիլ ։ Աղի մաքրագործք գործածելու է աղեաց խողովակին վրայ խտորում մը հաստատելու համար ։ Սօտայի, ֆօսֆոռ և մանեզիայի սուլֆաթները այս պարագայիս մէջ շատ գործածելի են. մանաւանդ թէ մէկ քանի կանանց խիստ որովայնապնդութիւնը ընկճելու կը ծառայեն ։ Գրգռիչ ամեն ըմպելիք, ինչպէս օշինդրի, երիցուկի ջուրերը, գինին, ոգեւոց հեղուկները խստիւ արգիլեալ են ։ Երբ խցումը սկսի տկարանալ, պէտք է՝ անոնց դնել պնդիչ տածահայսներ, կամ ջղախոտի, վարդի, թուրինչի մորենւոյ փետրոց վերահեղմանը մէջ թաթխուած վիրակծիկներ ։ Տէնդ կաթի ըստուած միջոցին ամբողջ տեւողութեանը ատեն ամենախիստ ժուժկալութիւն մը պէտք է պահուիլ ։

Իբր ընդհանուր կանոն, ծննդաբեր կինը պարտի հանգիստ պահել մինչեւ որ իւր ծննդական գործարանները իրենց բնական վիճակին դառնան. բայց կռնակի վրայ պառկած դրութեամբ մահճի մէջ եղած հանգիստը, զոր, չենք գիտեր ինչու

համար շատ բժիշկներ կը պատուիրեն , չը կընար երկար ատեն պահուիլ ։ Անկողինը կնոջ ծննդական դաշտանով և ուրիշ բուրմամբք հակառողջապահական եղած է , և այս հակառողջապահութիւնը տաքութեամբ աւելցած է ։ Կազմագիտաց կարծիքը այս է որ վեց կամ ութը օր անկողինը բաւական է ամէն քաջառողջ ծննդաբեր կանանց ․ իններորդ օրը կրնայ ելնել , առանց պատահարներէ երկիւղ ունենալու , իր սենեակին մէջ պտտիլ և թիկնաթոռի վրայ նստիլ , և յետոյ մտնալ իր անկողնոյն մէջ , երբ հոգնի ։ Տասներորդէն մինչև հնգետասաներորդ օրը նոյն վարժութիւնը կրնայ ընել ։ Վեշտասաներորդ օրը կրնայ ամբողջապէս թողուլ իր անկողինը և իր տանը մէջ շրջագայիլ և գործել , բայց միշտ զգուշանալով օդոց հոսանքներէ և մթնոլորդական այլայլութիւններէ ։ Երբ երկինք բաց է , և օդն ալ տաքուկ ըլլայ ․ պարտէզի մէջ կարճատեւ պտոյտ մը իրեն օգտակար պիտի ըլլայ հետագայ աւուրց մէջ ։ Վերջապէս քսան և հինգ կամ եռեսուն օրէն ետքը կրնայ իր սովորական կեանքն սկսիլ և ազատութեամբ իր գործոցը զբաղիլ ։

Տղայք արդէն իրենց ծննդեան վայրկենէն ըզգալի տարբերութիւններ կը ցուցնեն թէ կշռով և թէ ծաւալով ։ Այսպէս իրենց երկայնութիւնը կը փոփոխի 20 էն մինչև 50 հարիւրորդամեթր , և իրենց կշիռը 700 կրամէն մինչև 8 հազարակրամ ։ Փարիզի Մօնթըրնիլինէ արձանագրութեանց վրայէն եղած քաղուածք մը 7077 նորածին մանկանց վրայ , որք խիստ ճշտութեամբ կշռուած էին ․ հետևեալ տարբերութիւնները կը ցուցնէ ։

| | | | | |
|---|---|---|---|---|
| 54 տղայք կը կշռէին » | | հազրկրմ | 700 կրմ | խւրքանչիւրը |
| 69 | — | 1 | » | — |
| 164 | — | 1 | 500 | — |
| 396 | — | 2 | » | — |
| 1317 | — | 2 | 500 | — |
| 2799 | — | 3 | » | — |
| 1750 | — | 3 | 500 | — |
| 463 | — | 4 | » | — |
| 82 | — | 4 | 500 | — |
| 3 | — | 5 | » | — |

Ընկերութեան զանազան կարգաց և երկրագունդիս այլ և այլ ազգաց մէջ կրկնուած նման դիտողութիւնք կրնային ցուցնել ցեղերու տարբերութիւնները և յայտնել այն պատճառներէն մէկ քանին, որք անոնց կատարելագործութիւնը կամ անոնց վատթարութիւնը կը պատրաստեն ։

Շուարց իւր տղան չափուած և կշռած է անոր ծննդենէն սկսելով մինչեւ վեց ամիս, և հետեւեալ թուանշանները դրած է ։

Իր ծննդեան ատեն ունէր . . 45 հրդմթր. և կըկշռէր 3 հզրկրմ. » կրմ

| | | | | |
|---|---|---|---|---|
| Ութ օրէն ետքը . | 50 | — | 4 | » |
| Երեքշբթէն ետքը | 51 | — | 4 | 250 |
| Չորս — | 52 | — | 4 | 500 |
| Հինգ — | $52\frac{1}{2}$ | — | 4 | 750 |
| Եօթը — | 53 | — | 5 | » |
| Ինը — | $53\frac{1}{2}$ | — | 5 | 425 |
| Մետասան — | 56 | — | 5 | 660 |
| Երեքտասան — | $56\frac{1}{2}$ | — | 5 | 850 |
| Հինգ ամսէն ետքը | 63 | — | 6 | 450 |
| Վեց — | 74 | — | 7 | 15 |
| Մէկ տարեկան եղած ատեն | 82 | — | 10 | » |

և այսպէս հետզհետէ։ Երեք տարեկան եղած ատեն տղան ընդհանրապէս իւր նախնական երկայնութեան գրեթէ կրկինը կըստանայ և այնուհետեւ յառաջադիմութիւնք նուազելով կ'ընթանան։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

## ԴԻԵՑՈՒՑՈՒՄՆ ՄԱՅՐԵՆԱԿԱՆ

Մայրենական դիեցուցումն անհրաժեշտ կարեւորութիւն ունի կինը խել մը անհանգստութիւններէ և հիւանդութիւններէ ազատելու և անոր առողջութիւնը և թարմ առուգութիւնը պահելու համար։ Կանա՛յք. կարդացէ՛ք զայս և լաւ 'ի միտ առէ՛ք։ Յղութեան տեւողութեան ատեն, կաթը կանխաւ կը պատրաստուի նորածնոյն սննդեանը համար. այս կաթը ծննդաբերութենէ ետքը աւելի առատ ըլլալով, ելլալու և ստինքները պարպելու համար միմիայն մանկան բերնին կարօտութիւն ունի։ —Մայրենական դիեցուցումը թէ՛ մանկան և թէ՛ մօր նպաստաւոր ըլլալու նկատմամբ կրկնակի օգուտներ կ'ընծայէ. և ահա ինչպէս։ Նախ օգտակար է մօրը. վասնզի իր ծիծերը 'ի մի վայր հոսման կեդրոն մ'եղած է, որ իրեն կը քաշէ յղութեան և բնական ծննդաբերութեան ատեն արգանդին վրայ կեդրոնացած կենսունակութեան առաւելութիւնը։ Ատենանց վրայ նոյն իսկ բնութենէ հաստատուած այս բարեգործ խոտորումը՝ տակաւ առ տակաւ արգանդը իւր առաւել կենսունակութենէն կ'ազատէ և մէկ քանի օրէն վերջը իւր ըն-

կրցրնական վիճակին կը բերէ ։ Բայց եթէ մանկան ծծումը՝ կաթին առաւելութիւնը ստինքներէն չը հանէ , գրգռումը բնականաբար կը շարունակէ տեղի ունենալ ծննդական գործարանաց մէջ , և աստի կը հետեւին խել մը անհանգստութիւններ , հիւանդութիւններ և անկարգութիւններ , որոնցմէ կը վշտակրին այն մայրերը , որք չ'ուզեցին բնական օրինաց հետեւիլ ։

Այն ամեն հիւանդութիւնք , զորս ռամիկը ցըրուած կաթն անուամբ կը նշանակէ , կը բացատրուին այս կազմաբանական վարդապետութեամբս ։ —Գըրգըռման մը տրամադրութիւն ունեցող գործարան մը կամ ուրիշ որ և իցէ վատթարութիւն մ'ունեցող մայրերը ստոյգ գիտնան որ , եթէ կաթ չիտան , այս գործարանը շուտ մը պիտի հիւանդանայ ․ այս մօտալուտ հիւանդութեան առաջքն առնլոյ միջոցն է կաթնատու ըլլալ ։ —Այն մայրերը , որոց բոլոր գործարանները կատարեալ առողջութեան մէջ ըլլալով տակաւին կաթ տալ չ'ուզեն , բաւական ժամանակ արգանդին մէջ 'ի մի վայր հոսման կեդրոն մը կ'ունենան ․ ամենափոքր պատճառ մը կրնայ այս գործարանին բորբոքումը արծարծել և տեղի տալ առատադաշտանութեան , ծնծակէն թարախակերպ սպիտակ դաշտանի հոսման , արտաքին կեղերու․ արգանդի քաղցկեղային ապականութեանց եւն ։ Ի բարեբաղդութիւն այս կանանց՝ միշտ նախախնամող և պաշտամանց մէջ միշտ հաւասարակշռութիւն բերելու ջանացէր բնութիւնը կըզկըղամուղ գործարանաց վրայ կը տանի կենսունական զօրութեան առաւելութիւնը , որոյ հնոց եղած է արգանդը ․ գրգռման՝ երիկամանց վրայ այս փո-

խաղրութիւնը միզական անջատումը կը փութացնէ․ երբ գրգռումը արտաշնչող մանրակաց վրայ փոխադրուի, առատ քրտինք կը պատճառին ։ Կան բազմաթիւ պարագաներ, որոնց մէջ բնութիւնը չը կրնար արգանդին կամ ստեանց վրայ ծանրացած կենսունակութեան առատութիւնը տեղափոխել․ այն ատեն հիւանդութիւնը կը հասնի և սոսկալի ապականութիւններ կը գործէ ։ Ըստ այս կարճառօտ յայտարարութեան, դիւրին է մտաբերել այն վտանգները, որոց մէջ կ'իյնայ այն մայրը, որ իր տղան դիեցուցանել չ'ուզէր ։

Մայրենական դիեցուցման՝ նորածնոյն համար ունեցած օգտակարութիւնն ալ աներկբայական է ։ Վասնզի մօրը կաթը՝ իբր առաջին և միակ կերակուր պատրաստուած է բնութենէն ։ Այս կապացուցուի այն մերժմամբ, զոր տղան շատ անգամ կ'ընէ օտար ստնտուի մը կաթն ուտելու համար, և միմիայն այն ատեն կ'ընդունի, երբ քաղցէն ըստիպուած ըլլայ ։ Այս բանիս ուրիշ ապացոյց մ'ալ այս է որ տղայ մը, որուն մօրը կաթը քիչ ըլլայ, գէր և առոյգ կըլլայ իր մօրը հետ․ և կը նիհարնայ ու մէկ քանի օրուան մէջ իր զուարթութիւնը, առուգութիւնը կը կորուսանէ, երբ զայն յանձնես ստնտուի մը, որուն կաթը առատ ըլլայ ։ «Այն տղաքները, կ'ըսէ Ֆրանք, որք օտար պտկունքի կը յարին, որք իրենց բուն մօրը անընդատ հիւթերէն կը զրկուին, կը կրեն բազմաթիւ ախտեր, որք շատ անգամ մահուամբ կը վերջանան ։ Կրնանք զանոնք բաղդատել այն տնկոց․ որք իրենց բնածին հողէն հանուելով և օտար հողի մը մէջ տնկուե-

լով , հոն տկար արմատ կը թունեն , կը նուաղին կը չորնան , կը մեռնին կամ կ'այլասերին ։»

Հանգստասէր մատղաշ մայրերէն շատերը իրենց տղայոց կաթ տալը կը մերժեն , վախնալով որ իրենց ստեանց պնդութիւնը և թարմութիւնը կը կորուսանեն · այս կիները կատարելապէս կը սխալին ։ Ստինքները թառամեցուցանող և կակղեցնողն ուրիշ բան չ'է բայց միայն Նէգլիժէ բաճկոնակ անուանեալ աղետալից հագուստին ճնշումը ։ Մենք կը պարտաւորենք այն Նորահասակ քծնինները , որք ոչ տղայ բերած են և ոչ դիեցուցած , բաղդատել իրենց կուրծքերը շատ մը տղայոց կաթ տուող գեղջկուհեաց կրծոցը հետ · բաղդատութիւնը անշուշտ ի նպաստ առաջնոց չի պիտի ըլլայ ։ Ի վերայ այսր ամենայնի փորձը պատրաստ է ապացուցանել թէ ստնտուաց ծիծերը ազատ են այն Ներքին քոսերէն , այն դերբուկ անհարթութիւններէն , զորս կը Ներկայացնեն շօշափելեաց՝ իրենց տղայոց կաթ տալ չ'ուզելով իրենց կաթը անցնող կանանց ծիծերը ։

Բնութեան օրէնքը անփոփոխ է իւր ընթացիցը մէջ և բացարձակ իւր հետեւանացը մէջ ։ Ուստի յղութեան և ծննդաբերութեան հետեւանքն է ըստեանց մէջ կաթ գալը · այս գործարանները ուռեցընող կաթին հոսումն տալու բնական միջոցն է դիեցուցումն ։ Ամեն կին , որ մայր կըլլայ , պարտի ուրեմն իւր տղան դիեցուցանել , երբ իւր կազմական յօրինուածքը և առողջութիւնը զայն իրեն Ներեն · միմիայն քաղաքակրթութեան խոտորմունք այս օրինաց դէմ գործել կուտան · և այս խոտորմունք , երբ ազգի մը մէջ ընդհանրանան , մերձաւոր քակտում մը կը Նախագուշակեն ։ Այսպէս Հռո-

մայեցւոց կայսրութեան կործանման առաջին նշաններէն մէկն եղաւ մայրենի դիեցուցման լքումը։ Գաղատացւոց աշխարհակալը կ'ըսէր։

«Հռովմայեցի կանայք ա՛լ բնաւ տղաքներ չ'ե՞ն ծննդագործեր, եւ անոնց բազկացը մէջ միմիայն կատուներ և շուներ կը տեսնեմ։» Այսօր այս խօսքերը Փարիզի կանանց կրնայ յարմարցուիլ։

Դիմոսթէնէս խնդրեց որ դատապարտուի Աթենացի կին մը, որնոր իւր մանկան դիեցումը օտար կնոջ մը յանձնած էր։

Սպարտայի օրէնք մը կը պատուիրէր որ իւր մանկան կաթ տուող կնոջ մ'առջեւէն անցնող ամեն մարդ պարտի զայն ողջունել։

Օլիւ-ֆեւլ իւր Փէշէր+ տորէնկեան+ անուն գործոյը մէջ գրած է։ «Համբերէ', տիկի՛ն, որ քու աղջիկդ բոլորովին մայր ըլլայ իր որդւոյն։ Ի՞նչ է այս ատեւլի և անիծեալ հերձուածը բնութենէն։ Ի՞նչ է այս կէս մայրութիւնը. որնոր անմէջ արարածի մը կեանք տալու և զայն անմիջապէս իրմէ հեռու նետելու մէջ կը բովանդակուի....։ Դուք այնպէս կը մտածէք, տիկի՛ն, թէ այս հրապուրիչ գնտիկները, որք ձեր սեռը կը զարդարեն, պարզապէս զարդ մ'ըլլալու համար 'ի Շնորհաց կլորիկ գործուած են և չ՞էք գիտէր որ բնութիւնը զանոնք որոշած է նորածնոյն օգնականութեան աղբիւր ըլլալու համար....։»

Մարկոս-Աւրելոս կուզէր որ ամեն կիներ իրենց տղաքները դիեցուցանեն. որպէսզի ամբողջ մայր ըլլան և ոչ թէ կէս։

Բարեպաշտն Անտոնէն կ'ողջունէր' իրենց տղ-

ղոցը կաթ տուող կիները և անոնց վարձատրութիւններ կը բաշխէր ։

Պլանշ Թագուհւոյն ժամանակ ամեն մայրեր իրենց զաւակը կը դիեցուցանէր, և Գաղղիոյ Թագուհին նոյն իսկ ինքը օրինակ կուտար անոնց ։ Այս նուիրական պարտաւորութեան կատարումը մինչեւ Ա. Ֆրանչիսկոս տեղի ունեցաւ ։ Այս Թագաւորութենէն սկսեալ արքունական ազնուակըրթութիւնք բարձր ազնուականութեան վերաբերեալ կիները իրենց պարտաւորութենէն հեռացուցին ։ քաղաքացիք ալ անոնց գայթակղեցուցիչ օրինակին հետեւեցան և իրենց զաւակները վարձկան ստեանց յանձնեցին ։ Նահանգը, բաց 'ի մէկ քանի հազուագիւտ բացառութիւններէ, տակաւին փարիզի մարց չ'էր նմանէր ։ Բայց երբոր Փլօրանցայի մեղկ սովորութիւնները Մետիչիններուն հետ եկան ապականութիւնը տարածելու, այն ատեն այնպէս եղաւ որ կին մը իւր ամուսնական և մայրական պարտաւորութիւնները ազնուակրթութեան կը զոհէր ։

Լուդովիկոս ԺԴ. այս չափազանցութիւնը արգելու համար բան մը չ'ըրաւ. և իւր յաջորդին ատեն վարձաւոր դիեցուցման նորասովորն աւելի ընդարձակեցաւ ։ Միմիայն տասն և ութերորդ դարուն մէջ տեղուանքն էր որ մեծ փիլիսոփայ մը այս մոլորութեան դէմ սաստկագոյնս խօսեցաւ և կիները իրենց մայրական պարտաւորութեանցը հրաւիրեց ։ Ժան. Ժագ Ռուսօ նախ իր զօրաւոր ճարտարախօսութեամբը մայրական դիեցուցման համար ճշմարիտ եռանդ մը գրգռեց. բոլոր մեծ տիկնայք ուզեցին իրենց զաւակացը ստնտու ըլլալ, և նորա-

սովորն ամբողջ Թագաւորութեան մէջ տարածու-եցաւ։ Բայց ինչպէս որ զգեստուց նորասովորք նոյն-պէս ալ իւր զաւկին կաթ տալու նորասովորն ալ խիստ քիչ տեւողութիւն ունեցաւ և վարձաւոր դի-եցուցումը վերստին սկսեց։ Այսօր ստնտուաց ար-հեստը Գաղղիոյ ամեն տեղ տարածուած է։ Չը կայ քաղաքացի նուրբ կին մը, դեղավաճառուհի մը, փոքր պաշտօնէի կին մը, որ մայրութեան հո-գերէն ազատելու համար ստնտուի մը չը դիմէ։ Առողջապահութեան բոլոր սկզբանց համար խորին տգիտութիւն ունեցող այս կիները կը կարծեն որ դիեցուցումը զիրենք պիտի սպառէ, և թէ կաթ չի տալովին իրենց առողջութիւնը և հրապոյրը խնա-յած կըլլան. բայց թո՛ղ չը խաբուին. վասնզի բոլո-րովին և ճշմարտապէս հակառակն է. կաթ տուող մարք հիւանդութենէ ազատ կըլլան, մինչդեռ խել մ'անհանգստութիւնք և երբեմն ալ ծանր վտանգ-ութիւնք առ դուրս կան այն մարց համար, որք անհոգութեան կամ նազանաց պատճառաւ իրենց զաւակներուն կաթ տալը կը մերժեն։ Ամեն բժիշկք համաձայն են այս կէտիս վրայ։ Հիւֆլանտ և Մոր-թօն կը կարծեն նաեւ որ կաթ տուող մարք ջղային վտանգութիւններէ և սպառումէ ազատ կ'ըլլան։

Կանա՛յք, խոր թափանցեցէ՛ք այն ճշմարտու-թեանց, որք խիստ յաճախ ձեզ կը կրկնուին. բը-նութեան՝ մօր մը վրայ դրած առաջին պարտաւո-րութիւնն է իւր որդւոյն դիեցուցումը, երբ անոր միջոցները և զօրութիւն ունի. վարձաւոր դիեցու-ցման այն ատեն միայն կրնայ թոյլատրութիւն ըլ-լալ, երբ մայրը ժանտահասութենէ մը նեխեալ է կամ ժառանգական հիւանդութիւն մ'ունի։ Աս-

պարանգաներս մէկզի առնելով, մայրական դիեցուցումը խիստ օգտակար է թէ՛ մօրը և թէ՛ մանկան. նախ. վասնզի իւր առաջին կաթը որ դալ կը կոչուի, և որնոր քիչ հաստատուն, չճախսուն և թեթեւ լուծիչ է, նորածնոյն մարսողական ուղիները մէկոնիոնէն կամ զանոնք խցող մատղողական ծեփէն ազատելու նախամեծար հեղուկն է. յետոյ. քուն իւր առողջութեանը շահուն համար. վասնզի քնութիւնը բնաւ յորդառատ գործած չէ կաթը ծնընդաբեր կնոջ ստեանց մէջ, որպէս զի աւելի կամ նուազ աղետալից արհեստական միջոցներով անոր ակունքը յանկարծակի ցամաքին :

Կաթին յետադարձ շրջանը գրեթէ միշտ վնասակար է զինքը անջատող գործարանին և անկից 'ի զատ ընդհանուր առողջութեան վրայ կը ծանրանայ : Այս յանկարծական ցամաքեցուցման խիստ սովորական հետեւութիւնները կը յայտնուի ցրուեալ կամ ռամկական անուամբ ծանուցեալ հիւանդութեամբք կամ հեղձմամբ, այնդութեամբ, ստեանց ներքին մասն մասին մէջ պալարօք, աւելի ետքը ախտաբեւանցած այտուցմամբ, կեղօք, և երբեմն ալ քաղցկեղի սոսկալի հիւանդութեամբ : Քաղցկե՛ղը՝ որնոր բնաւ դարման չ'ունի :

Այն նոր ծննդաբեր կինը, որնոր ծանր հիւանդութեան մը պատճառաւ չը կրնար իւր զաւկին ստնտու ըլլալ, անկէ բաժնուելէ առաջ, պարտի առաջին երեք աւուրց մէջ անոր կաթ տալ, որպէս զի իւր ստինքները պարպուին և իւր մանկան աղեացը մէջէն մեկոնական ծեփը արտաքսուի : Ասկէ ետքը 'ի գործ դնելու է հակակաթնային դարմաններ, որոց վրայ վերը խօսեցանք. և խիստ պահե-

ցողութիւն մ՚ընելու է , եթէ կ՚ուզէ որ իր կաթը առանց պատահարի մը ցրուի ։

Մենք դարձեալ կը կրկնենք · բնաւ բան մը չը կրնար արդարացուցանել իր որդւոյն երբէք կաթ-տալ չ՚ուզող մայր մը , երբ անոր միջոցներէն և իր զօրութենէն բան մը չը պակսիր · և ժառանգական հիւանդութենէ ըմբռնեալ չ՚է · զայն՝ վարձկան ըստ-եանց յանձնելը՝ բնութիւնը և քաղաքականութիւնը միանգամայն վիրաւորել է · ինքզինքը պատժապարտ ընել է այն հետագայ հիւանդութեանց համար , որոնցմէ թէ՛ մայրը և թէ՛ իր որդին կրնան բռ-նուիլ · և վերջապէս մայրենի նուիրական պարտա-ւորութեան արհամարհութիւնը յայտնել է , այն բնազդական պարտաւորութեան , որնոր առանց բացառութեան ամեն կենդանեաց քով կը գտնուի ։

Մայրական առաջին պարտաւորութեան այս արհամարհանքը , աշխարհաւէր հրապուրիչ կանանց իրենց սերնդեան համար ցուցած անսահմանելի այս անտարբերութիւնը և անհոգութիւնը , մինչ-դեռ վայրի անասունը՝ իր մայրական սէրը այնչափ զօրաւոր նշաններով կը յայտնէ , մեծ փիլիսոփային գրչէն այս սաստիկ կշտամբանքը հանել տուած է · «Թո՛ղ էրիկ մարդիկ բնաւ չը խաբուին · պէտք չէ որ վստահին այն կանանց սիրոյն , որք կարող ըլ-լալով , անփոյթ կըլլան իրենց զաւակին դիեցուց-ման և կը մերժեն զայն և այսպէս բնութեան նուի-րական կապերը կը խզեն ։ Ամուսնական սէրը , համեստութիւնը երբէք խորագոյն արմատներ չ՚են ձգէր մայրական սիրոյ անզգայ եղող կանանց սըր-տերուն մէջ ։»

Առանց որեւիցէ տարակուսի , այն արգելքները

որոց վրայ խօսեցանք, ինչպէս կազմութեան ախտք, ընդհանուր տկարութիւնք, ժառանգական հիւանդութիւնք, յօնական, խուլական նեխութիւնք. անառողջապահական պաշտօն և բնակութիւն. հակառողջապահական հանգամանք, որոց մէջ կը գըտնուին առեւտրով զբաղեալ կանայք, մայր մը իւր պարտաւորութեանց ամենագեղեցիկը, այսինքն իր զաւակը դիեցուցանելոյ պարտքը մերժելու տխուր հարկին մէջ կը դնեն. բայց այս պարագաներէս 'ի զատ ուրիշներ չըկան, որք կարող ըլլան կին մը այս մասին արդարացուցանել: Ո՛հ. եթէ ծննդաբեր կինը, որնոր նորածին մանկան առաջին աղաղակին դողդղաց, նազանաց և ունայնութեա՛ց բոլոր խորամանկութիւնները մէկդի թողլով, միմիայն մայրական բնազդման անսար, խիստ ստոյգ է որ այս ապիկար գոյացութեան հոգը մէկու մը չի պիտի հաւատար. բայց քաղաքակրթութիւնը զարգացուցած է եսութիւնը, և եսութիւնն ալ բնութեան ձայնը կը լռեցունէ:

---

## ԳԼՈՒԽ ԼԴ.

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա.

### ԻՐԵՆՑ ԶԱՒԱԿԱՑ ԴԻԵՑՈՒՑՄԱՆԸ ԱՆԿԱՐՈՂ ՄԱՐՑ ՍՆՆԴԱԿԱՆ ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԱՄՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ ՎԱՐՄՈՒՆՔԸ

Իրենց զաւակաց դիեցուցմանը անկարող ծնընդաբեր կանանց կերառութիւնը իրենց պէտք ըլլա-

ինք խնամոց ամենակարեւոր մասն է · պէտք է ոչ միայն իրենց ուտելու փափաքը ընկճել, այլ նաեւ այն աղետալից նախապաշարմունքը, որոնք իրենց զօրութիւնները նորոգելու համար իրենց որովայնը կերակրովք խճողել կուտայ · վասնզի գրեթէ միշտ կը պատահի որ այս անժուժկալութիւնը շատ մը պատահարաց պատճառ կըլլայ, որոցմէ մէկ քանիին զոր օրինակ որովայնի թաղանթին բորբոքումը եւն, կրնան մահացու ըլլալ: — Նոր ծննդաբեր կանանց սննդական կերառութիւնը մեղմ և չափաւոր ըլլալու է · հաւու արգանակ, կաթնապուր, կաթնալիւր, հացաթան և թեթեւ ապուրներ ըլլալու են իրենց սնունդը առջի օրերուն մէջ, յետոյ հաւու, որթու, գառնուկի ճերմակ միսերը ուտելու են, յետոյ ձուկեր և վերջապէս իրենց սովորական կերակուրը առնելու են: Ընդհանրապէս կերառութիւնը ծննդաբեր կնոջ հասակին խառնուածքին և մարսողական զօրութեանց համեմատելու է: Այսպէս կրովի կին մը բուսաջուր և արգանակ առնելու չ'է: Տկար անձինք ալ տկարացուցիչ կերառութիւն մ'առնելէ զգուշանալու են, որոնք իրենց տկարութիւնը աւելցնելէ ուրիշ բան մը չ'ընէր: Մեզի բնական կերեւայ թէ, երբ կին մը ծննդական դաշտանի և քրտանց պատճառաւ մեծ կորուստներ ընէ, պէտք է զայն զօրացուցիչ կերակրովք ուժովցնել, բաւական է որ անոր ստամոքսը զանոնք մարսելու կարող ըլլայ: Բայց երբ իւր մարսողութիւնը դժուարին ըլլայ, այն ատեն այն կերակուրները պակսեցնել և նաեւ բառնալ պէտք է · ինչո՞ւ համար գեղջկուհիները ծննդաբերութեան հետեւանքներէ այնչափ շուտ կազատին, մինչդեռ

քաղաքացի տիկնայք այնչափ ուշ կ'երթան առնուլ իրենց օրհնութիւնը եկեղեցիէն. Վասնզի առաջինները ամբողջ շաբաթներով չ'են փաղաքշիր թռչնոց փետրոյք և մետաքսով կազմեալ անկողնոց մէջ. վասնզի առոնք քիչ մ'ուժ առնելնուն պէս իրենց աշխատութիւնը կ'ըսկսին և ընդարձակ դաշտերու մէջ մաքուր օդ ծծել կ'երթան. մինչդեռ մատղաշ տիկինը անկողնոյ խաւարին խորշի մը մէջ փակեալ, ապականեալ օդով մը, վատառողջ բուրմամբք շրջապատեալ կը մնայ. և իւր փափուկ անդամները այնչափ շուտ հոգնեցնելու և իւր թոքերուն այնչափ խիստ օդ մը տալու կը վախնայ.... Ո՛վ կանայք, քաղաքացի կանա՛յք, որ կ'ապրիք շռայլութեան և առատութեան մէջ, գիտցէ՛ք որ մանր և նուրբ փետրոյք կազմեալ անկողնոյ մ'երկարատեւ հանգիստը, ձեր ծննդաբերութենէն վերջը ձեր առողջութեանը համար եղած չափազանց խնամքները մասամբ իւիք պատճառ են ձեր վրայ եկած անհանգստութեանց։ Ծննդաբերութիւնը հիւանդութիւն մը չ'է. բնական աշխատութիւն մ'է, որուն տաժանութիւնները մէկ քանի շաբաթու մէջ պարտին անհետանալ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Բ.

### ԻՐ ՈՐԴԻՆ ԴԻԵՑՆՈՂ ՄՕՐ ՄԸ ՍՆՆԴԱԿԱՆ ԿԵՐԱԿՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՎԱՐՄՈՒՆՔ

Այն կինը, որ կաթ կուտայ, պարտի խնամաքաւ հսկել իւր առողջութեանը վրայ. վասնզի

ամենափոքր անհանդստութիւն մ՚իր կաթին քանակութեանը և որպիսութեանը վրայ կը ծանրանայ։ Պարտի մերժել մթնոլորդական փոփոխութիւնները, պաղ օդէ խիստ տաք օդի անցումը և փոխադարձ։ Ձմերան եղանակին մէջ պարտի աղէկ գոցուիլ և իւր ստինքները արտաքին ցրտին դէմ պաշտպանել։ Ամառը՝ իւր հագուստները աւելի թեթեւ ըլլալու են, բայց պէտք չ՚է որ դուրս ելլայ այն առաւօտները և երեկոյները, որոց զովութիւնը կրնայ վնասակար ըլլալ։

Տեղեկութիւնք և փորձը ամեն օր կապացուցանեն թէ կաթին լաւ կամ յոռի որպիսութիւնը կնոջ հետեւած սննդական կերառութենէն կախումն ունի, և թէ դիեցիկը իւր ստնտուին ՚ի գործ դրած յանցանաց և չափազանցութեանց զոհ կըլլայ։ Ըստինքներէն ելած կաթը, եթէ տարրալուծուի. մօրը կերած սննդական նիւթոց բնութեանը նման յատկութիւններ կ՚ընծայէ։ Եթէ ստնտուն լուծիչ նիւթեր ուտէ կամ խմէ, ստնտեացն ալ սրբադեղ առած կըլլայ, եթէ օշինդր կամ ուրիշ որ և իցէ դառն նիւթ մը խմէ. իւր կաթը դառն տարր մը կը պարունակէ։ Այս անմերժելի գործողութիւնք կերակրոց և կաթին անջատման մէջ եղած սերտ կապակցութիւնը կը ցուցնեն. ուստի որչափ մեծ զգուշութիւն ընելու է սննդեան և դեղոց մատակարարութեան վրայ։

Ստնտուն պարտի մերժել բարկ, աղած, ծանր ճաշակաւ և պնդիչ կերակուրները, նոյնպէս նաեւ խիստ ըմպելիները և ոգելից հեղուկները։ Լաւ եփուած հացը, հիւթեղ միսը, խորովածը, կաթով. հաւկթի դեղնուցով, գարիի ալիւրով և շաքարով

չինուած սերը, թարմ ձուկ և բանջարեղէնք. եղանակի լաւ հասուն պտուղք են. ահա ասոնք են իրեն խիստ օգտակար կերակուրք։ Սննդառուն կերակուր ուտելէ կամ վաստակաբեկ աշխատութենէ մ'անմիջապէս ետքը կաթ տալու չ'է մանկան։

Աինը իւր կաթին քանակութիւնը և լաւ որակութիւնը մշտապէս պահելու համար պարտի մերժել խիստ յուզմունքները, սաստիկ կիրքերը, ինչպէս տրտմութիւնը, բարկութիւնը, նախանձը, սոսկումը են։ Յաճախ տեսնուած է սնունդի կաթին բարձումը կամ այլասերութիւնը յանկարծական սոսկման և բարկութեան յուզման պատճառաւ։ Դատարկութիւնը, խիստ երկարատեւ հանգիստը, նոյնպէս սաստիկ աշխատութիւնը մերժելի են։ Աշխարհասէր կանայք լաւ կ'ընեն եթէ չը յաճախեն երեկոյթներու, պարերու, թատրոններու և առողջութեան վնասակար ուրիշ ժողովատեղիներու, ուր տաքութիւնը ծանր օդը թանձր և մարդկանց բազմութեամբը ապականած կ'ըլլայ։ Քունը անհրաժեշտ հարկաւոր է կաթ տուող մօր մը. սովորաբար իւր դիեցկին մատուցած մեծամեծ խնամքներէն վաստակաբեկ ըլլալով, պարտի կանուխ պառկիլ ցորեկուան ըրած կորուստները դարմանելու համար։

Կաթնտու մայր մը պարտի հսկել իւր մարմնոյն և իւր կտաւներուն մաքրութեանը. այս կտաւները ստէպ փոփոխուելու են։ Արտաշնչման պաշտամունք ազատութեամբ գործուելու են. որովայնալուծութիւնը կամ որովայնապնդութիւնը իւր կաթին ընդդէմ են։ Դիեցուցման տեւողութեան ատեն սեռական հաճոյքներէ զրկուելու է. այս հա-

ծոցքներէն արտադրուած գրգռութիւնք կրնան դաշտան բերել, և այս վայրկեանէս կինը չը կրնար շարունակել ստնտուի պաշտօնը. վասնզի իր կաթը ամեն օր իր քանակութենէն և որպիսութենէն կը կորսնցնէ: Եթէ կինը խիստ կորովի է, եթէ դաշտանի երեւումը կաթին լաւութեան և առատութեան վրայ բնաւ ազդեցութիւն չ՚ընէ, այն կրնայ շարունակել կաթ տալը. հակառակ պարագայի մէջ պէտք է տղան ուրիշ ստնտուի մը տալ կամ կաթէն կտրել, եթէ բաւական ուժեղ ըլլայ:

Եթէ կաթը առատութեամբ անջատուի կամ թէ ստինքները այս հեղուկէն ուռենան կամ ծրգ-տուին, պէտք է ասոր առաջքն առնել այս վիճակին յառաջացեալ անեղական խիստ պարզ կերակրութեամբ մը. ինչպէս. օր. եղերդէ, ձմերէ և ուրիշ խոտեղէն բանջարներէ բաղադրուած բուսական կերակուր մը, եփած պտուղներ, բանդակներ ևն. և ըմպելեաց մասին. թեթեւ բորակացեալ ջը-անփանէ բուսաջուր: Այս կերպարութիւնը մէկ քանի օր առնելով կաթին առատ անջատումը կրնայ չափաւորիլ: Կաթին առաւել մասը բառնալու համար կնոջ՝ մատղաշ շան մը ծիծ տալու կամ ուրիշ արհեստական ծծումներ գործածելու պատուէրը այնչափ գէշ է որ սպասուածին հակառակ արդիւնքներ յառաջ կը բերէ: Ցիրաւի որչափ որ գործարան մը գրգռուի, այնչափ աւելի կ՚անջատէ: Ուստի որչափ որ ստինք մը ծծման ենթարկուի, այնչափ աւելի կաթ կուտայ: Ուրեմն այս կերպն ալ մերժելի է: Ծիծերուն վրայ դրուած պնդացուցիչ դեղերն ալ պիտի մերժուին իբր խիստ վտանգաւոր:

Ստնտուի մը պտուկներուն տրուելիք խնամքները

հետեւեալ պարբերութեամբք կը բովանդակուին ։

—Այն կանայք, որոց պտուկները ցցուած կամ բաւական զարգացած չ՚են, այս անկատարելութեան դարման սխալ ընեն ապակի ծծագործեօք, հեղկահան սրուակօք կամ մատղաշ շան մը ծծման միջոցաւ ։ —Խիստ զգայուն պտուկունք կակուղ մոմի ծեփով մը ծածկուելու են ։ Զանոնք պէտք է լուանալ գինւոյ և երկաթախառն ջրոյ խառնուրդով մը, երբ թոյլ ըլլան և կանգնողութիւն չունենան ։ —Վերջապէս պէտք է գործածուիլ քաղցր նշոյ իւղոյ օծումն, մոմապեղանի, թարմ կարագ, երբ մանկան ծծմամբը կեղեքուին կամ ճեղքուին ։ Աղէկ է նաեւ եղին աղեաց թաղանթէն շինուած՝ օծեալ կնգուղով մը գոցել զանոնք օդին ազդեցութէնէն պահելու համար ։

Երբ ստնտու մը տեսնայ թէ իւր կաթը կը նըւազի, պարտի բժշկի մը դիմել, որպէս զի սա՛ պատճառը որոնէ և զայն ընկճելու կարող ըլլայ ։ Երբ կաթի նուազումը առանց՝ առողջութեան մէջ որ և իցէ շփոթութիւն մը ըլլալու տեղի ունեցած է, այն ատեն դարձեալ սննդական կերառութեան դիմելու է. սննդառատ կերակուր, խիստ պարարտարգանակք, և հիւթեղ միսեր ևն. առնելու է ։ Շրջագայութիւնը, արձակ օդը, տան մէջ այլ և այլ մարզք, բարոյականի հանդարտութիւնը և խաղաղ զբօսանք ամէն գովուած հնարքներէն աւելի կ՚օգնէ ։ Սակայն այս տեսակ պարագաներու մէջ փորձուած հետեւեալ դեղագիրն ալ կը նշանակենք ։

ՑՏՆՑՈՒԱՑ ԿԱԹԸ ԱՒԵԼՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՓՈՇԻ

Հունդք Սամիթի . . . . . . . . . 1 կրամ

Կեղեւք Նարնջի . . . . . . . . . 1

| | |
|---|---|
| Քարպոնաթ դը մանեզիէ . . . . . . | 8 կրամ |
| Շաքար . . . . . . . . . . . . . . | 2 |

Ամենքը բարակ փոշի ըրէ՝ ։ —Արգանակի , կաթի կամ չօքօլաթայի մէջ լեցնելով երեք անգամէն առնելու է ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Գ.

### ԲԱՂԱԴՐՈՒԹԻՒՆ ԿԱԹԻ

Կաթը ճերմակ հեղուկ մ՚է , ախորժելի ճաշակաւ և ջրոյ խտութենէն քիչ մը բարձր խտութեամբ։ Կաթը երեք գլխաւոր տարրերէ կը բաղկանայ ։

1° Պիւթիրում կամ կարագ ։

2° Քազէում կամ պանիր ։

3° Սէրում կամ ջրակազմ շիճ , որ ունի իւր մէջը խել մը լուծեալ աղեր ։

Երբ կաթը մանրադիտով զննենք , իր մէջը կտեսնենք գնտիկներ , որք հեղուկի մը մէջ կը-լողան ։ Այս գնտիկները , որոց պարունակը քազէում նիւթէ շինուած է , իրենց մէջը կը պարունակեն ճարպաւոր նիւթը կամ կաթին կարագը ։ Կնոջ կաթին տարրալուծութիւնը , ոյնոր Ռինեօլ բնալուծէն նորոգապէս կատարուած է , հետեւեալ թիւերը կուտայ ։

| | |
|---|---|
| Ջուր . . . . . . . . . . . . . . . | 88, 6 |
| Քազէում և անլուծանելի աղք . . . | 3, 9 |
| Կարագ . . . . . . . . . . . . . . | 2, 6 |
| Շաքար կաթի և լուծանելի աղք . . | 4, 9 |
| | 100 |

Ոսպի կաթը իւր մէջը կը պարունակէ կատարեալ սննդեան մը յատկացեալ նիւթերը, այսինքն ճարպաւոր նիւթք, շաքարի նիւթք, աղ և ջուր։ Բանիրը՝ ազօտաւոր սնունդը կը ներկայացնէ, կարագը և շաքարը՝ ածխաւոր տարրը։

## ՑՈՒՑԱԿ ԲԱՂԴԱՏԻՉ

Կնոջ կաթին՝ ընտանի մի քանի կենդանեաց կաթին հետ։

| | կին | կով | այծ | մատակ էշ |
|---|---|---|---|---|
| Ջուր | 89, 6 | 87, 4 | 82, 0 | 90, 5 |
| Քազէինամ եւ | 3, 9 | 3, 6 | 9, 0 | 1, 7 |
| Կարագ | 2, 6 | 4, 0 | 4, 5 | 1, 4 |
| Շաքար կաթի եւ | 4, 9 | 5, 0 | 4, 5 | 6, 4 |

Կաթը իւր կազմիչ մասանց թուոցը մէջ կրնայ փոփոխութիւններ ունենալ. որք միշտ մարսուած կերակրոց բաղադրութենէն կախումն ունին։ Այսպէս բուսական սնունդ մը ջրածխաւոր տարրը կ'աւելցնէ. կենդանական սնունդ մը ազօտաւոր տարրը կը շատցնէ։ Շատ անգամ այնպիսի քաջառողջ ծծմայրեր կը տեսնուին, որոց կաթը թէեւ առատ է, բայց իրենց սանդեացը կ'ըսպառի ու կը նուաղի. ասոր պատճառը շատ անգամ կաթին կարագաւոր մասին պակսելուն և շաքարի նիւթին նուազումն է։ Հաւասարակշռութիւնը վերահաստատելու ամենէն լաւագոյն միջոցն է շաքարի նիւթով հարուստ կերակրոց ուտեստը։

---

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

## ՆՈՐԱԾՆՈՑՆ ՍՆՆԴԱԿԱՆ ԿԵՐԱՌՈՒԹԻՒՆԸ

Մայրենի կաթը տղուն տրուելիք սննդոց մէջէն ամենէն լաւագոյնն է. վասնզի այս կաթը իւր բը-

նական սնունդն է ։ Տղան ծնանելէն մէկ քանի ժամ ետքը իւր աղաղակներովը կը յայտնէ թէ ծիծ ուտելու կարօտութիւն ունի · մայրը պարտի իւր ստինքը անոր մատուցանելով, որպէս զի տղան կարող ըլլայ անկէ Գոլոստրիւմը կամ առաջին կաթը քաշել, որնոր թեթեւապէս սրբադեղ ըլլալով կը մաքրէ, ինչպէս որ արդէն գրեցած ենք, Մեկոնիումը կամ մածանող ծեփը, ուսկից աղիքները խծկուած են ։ Առաջին աւուրց մէջ տղան քիչ բայց ստէպ կը ծծէ ։ Ութը կամ տասը օրէն ետքը կաթը աւելի թանձր և աւելի սննդատու կըլլայ · այն ատեն տղան նուազ ստէպ, բայց իւր մօրը հանդիստ չը թողլոյ չափ կը ծծէ ։ Ուստի մայրը առջի ամիսներէն սկսեալ պարտի իր դիեցիկը կանոնաւոր ստնատուութեանց վարժեցնել · քիչ մը յարատեւութեամբ և առանց՝ տղուն առողջութեանը վնասելու կրնայ կին մը վարժեցնել իւր տղան՝ միայն այն ատեն ծիծ պահանջելու, երբ անոր կարօտութիւնը ըզգայ · վասն զի տղան որչափ պզտիկ, որչափ մատղաշ ալ ըլլայ · կը ջանայ իւր աղաղակներովը ստանալ · տարակուսիլ պէտք չ'է, ինչ որ կը կարծուի իրեն մերժել կարողանալու, և եթէ մայրը անոր պզտիկ կամահաճութեանցը դիջանի, աւելի ետքը անոր տեւիրողական պահանջմանցը յանձնառու պիտի ըլլայ ։

Նորածնոյն տրուելիք կաթին քանակութիւնը, նոյնպէս որպիսութիւնն ալ խորհելու բան է ։ Անոր ծննդենէն անմիջապէս ետքը քիչ մը շաքարախառն ջուր կը խմցնեն, անոր շողիք հայթայթել տալու համար · հինգ կամ վեց ժամէն ետքը ծիծ տալու է ։ Սովորաբար ցորեկը երկու ժամէ երկու ժամ ծիծ

կուտան․ իսկ դիշերը միմիայն երկու կամ երեք անգամ։ Մանկան ծծած կաթին քանակութիւնը 45 կրամ հաշուած են իւրաքանչիւր ծծման առեն։ Երեք ամսուան տղայ մը քսան և չորս ժամու մէջ մինչեւ 750 կրամ կրնայ ծծել։

Կաթնառութեան ժամանակին բոլոր տեւողութեան առեն՝ մանկան միակ սնունդը կաթն ըլլալու է։ Ալիւրէ և կովու կաթէ շինուած արգանակները, որոց գործածութիւնը՝ մօրը կաթին անբաւականութեան սնոտի պատճառանօք, հին կրթութիւնը կը պատուիրէ, տղաքները շատակեր կ'ընեն, ստամոքսնին կը ծանրաբեռնեն, որովայննին կ'ուռեցընեն և անմարսութիւն կը պատճառեն։ Եթէ մարսողական անցքը այսպէս խճողել շարունակուի, տղեաց բորբոքմունք կը յայտնուին և դիեցիկը փոխանակ օգուտ քաղելու կը նիհարնայ․ շատ տղաքներ այս սննդեան ազդեցութեանը տակ կ'ընկճին, և որք ձողոպրին անկէ, շատ անգամ ողնայարի և ուրիշ ոսկերաց կարկամութիւն կունենան։ Բոլոր բըժիշկներ կը համաձայնին որ արդանակները մերժուելու են, և ասոր տեղը պէտք է տրուիլ մանր շաքարախառն պաքցամատով կամ հացի կեղեւով կամ նաեւ չորցած և փոշի դարձած հացի փորով շինուած հացաթանը, հարկաւ այն առեն որ մօրը կաթը մանկան ախորժակին անբաւական ըլլայ։ Ի վերայ այսր ամենայնի լուսաւորեալ և իմաստուն մայր մը պարտի գիտնալ թէ քանի որ իւր տղան իւր կաթովը առողջ է, ոչ թէ միայն անօգուտ, այլ նաեւ վտանգաւոր է անոր՝ աւելի սննդաւոր կեր մը տալը։

---

## ՀԱՏՈՒԱԾ Ե.

### ՁԱՆԱԶԱՆ ԵՂԱՆԱԿՔ ԴԻԵՑՈՒՑՄԱՆ

**ԴԻԵՑՈՒՑՈՒՄՆ ՍՏՆՏՈՒԻ ՄԻՋՈՑԱՒ ։** —Ընդհանրապէս՝ ստնտուի մը կաթը մօրը կաթէն նուազ յատկացեալ է մանկան գործարանաց. վասնզի այս կաթը անոր համար անջատուած չ'է ։ Քչիկ մ'եռաքը սխալ անսնանք թէ որչափ դժուար է լաւ ըստընտուի մը ընտրութիւնը ։

**ԴԻԵՑՈՒՑՈՒՄՆ ԿԵՆԴԱՆԻԻ ՄԸ ՄԻՋՈՑԱՒ։** Երբեմն կը պատահի որ ստնտուի չը գոյութիւնը կը պարտաւորէ դիմել այծի մը, որնոր այս տեսակ դիեցուցման լաւագոյն պատշաճելի է ։ Այծեր տեսնուած է, մանաւանդ ճերմակները, որք մասնաւորապէս յարած են մատղաշ մանկան և անոր աղաղակներուն վազելով յինքենէ դրած են իրենց պըտուկունքը օրօրոցին մէջ պառկող մանկան բերանը ։

**ԴԻԵՑՈՒՑՈՒՄՆ ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ։** —Այս տեսակ դիեցուցումն է սնուցանել տղան նոր կըթուած և գարիի կամ ձաւարի ջրով կէս առ կէս կտրուած՝ կովի կաթով ։ Այս ըմպելիին մէջ քչիկ մը շաքար խառնելով և պտկաւոր սրուակի մը միջոցաւ մանկան կը խմցնեն ։ Կաթը միշտ գաղջ ըլլալու է. բնաւ եռացնելու չ'է զայն. վասնզի եռացեալ կաթը անմարսելի կ'ըլլայ ։ Կաթը ջրով կտրելէն այն ատեն դադրելու է, երբ մանկան ստամոքսը զայն պարզապէս մարսելու կարող ըլլայ ։ Վերջապէս երբ տղան կաթէն կտրելու ժամանակը մօտենայ, հացաթանի կերակրութիւնը սկսելու է, ինչպէս որ վերը ըսուեցաւ ։

ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՍՏՆՏՈՒԻ ։ —Լաւ ստնտուի մը ընտրութիւնը ամենամեծ կարեւորութիւն ունի․ վասնզի մանկան առողջութիւնը և առուգութիւնը անկէ կախումն ունի ։ Այս ընտրութիւնը կը պահանջէ կազմական և բարոյական որպիսութիւններ , որք 'ի միասին միշտ չ'են պատահիր․ ստնտուի մը լաւ որպիսութիւնները մէկէն 'ի մէկ ճշմարտապէս չը կրնար հասկցուիլ․ այլ զայն փորձելէն և անոր կաթին՝ իւր ստնդեացին վրայ ըրած լաւ ազդեցութիւնները հաստատելէն վերջը ։ Խոհեմութիւն է վարձել ուզուած ստնտուն բժշկի մը ցուցնելը․ ըստընտու մը , որ մորթի հիւանդութեամբ , կազմութեան ախտիւ կամ ընդհանուր ապականութեամբ վշտացեալ ըլլայ , իւր հիւանդութիւնը իւր ստընդեացին անվրէպ պիտի փոխադրէ ։ Բժիշկք ոմանք կարծեցին նաեւ թէ բարուց մէկ քանի պակասութիւններ կաթին հետ կը ծծուին ։ Ահա՛ , լաւ ըստընտուի մը ունենալիք որպիսութեանց և հանգամանաց՝ բովանդակութիւնը ։

Միշտ նախամեծար է որ ստնտուն տղայ նոր բերած ըլլայ , վասնզի նորածնոյն՝ խիստ հին կաթ մը տալը շատ անյարմար է ։ Դեղինէն աւելի թուխ ըլլալու են մազերը և ոչ երբէք կարմիր․ կարմիր մազ ունեցող կանանց մորթը երբեմն բաւական բարկ հոտ մը կը բուրէ , որնոր յետս կըմղէ տըղան ։

Հասակ, քսան և չորսէն մինչեւ եռեսուն. —խառնուածք, արիւնային կամ աւշաւոր—արիւնային. —մորթը կակուղ , միօրինակ , պայծառ , կարմրութենէ և կծու հոտէ զերծ․ —ակռաները , ճերմակ․ շունչք

մաքուր · շրթունքները , վարդագոյն · —երեսը , թարմ · —կուրծքը , լայն · ստինքները աղէկ զարգացած , ոչ խիստ մեծ , սփռեալ կապուտակագոյն փոքրիկ երակներով · պտկունքները , միջակ մեծութեամբ մեծ պտկունք ունեցող ստնտուք մերժելի են · —կաթը պիտի ըլլայ կապուտակագոյն ճերմակ , քաղցր , լաւ թանձրութեամբ · եթէ կաթիլ մը եղունգիդ վրայ դնես , ծանր հոսելու և իւղաւոր , ճերմըկկլիկ հետք մը ձգելու է · —գիրութիւն , միջակ · —բնութիւն , զուարթ · բարք , խաղաղատական · մեծ համակրութիւն սնտնդեացին համար · —կարգ , կանոն · մաքրութիւն · գործնէութիւն · բարի վարք · Ահա՛ ասոնք են պահանջելի որպիսութիւնք ։

Վերջապէս ստնտուի մը կազմական լաւ որպիսութիւնները ճանչնալու լաւագոյն միջոցն է տեսնալ թէ իւր բուն զաւակը առոյգ և քաջառողջ է · և թէ իրեն տրուած տղան ալ սիրով կ'առնէ իւր ծիծը ։ Երբ պատահի որ նոր ստնդեացը առնէ ծիծը և աղաղակելով ձգէ · յետոյ նորէն առնելու ջանայ և դարձեալ թողու զայն · այն ատեն առոյգ նշան է որ այս կաթը իրեն չը յարմարիր · ուրիշ ստնտու մը բռնելու է ։

## ԳԻՒՂԻ ՍՏՆՏՈՒ

Երբ տղան գիւղի ստնտուի տալ պէտք ըլլայ · հարկ է ընտրել այն կինը , որ բարեկեցիկ է , որ առողջարար գաւառ մը և մաքրափայլ տուն մը կը բնակի և որուն էրիկը անժուժկալութեան ախտէ զերծ է ։ Կաթ տուած ժամանակին ամբողջ տեւողութեան ատեն , իւր երկանը հետ ամենեւին ամուսնական միաւորութիւն չի պիտի գործէ ։

Հայրենի յարկէն դուրս՝ ստնտուի տրուած մանկան պահանջած խնամքները իր առողջութեանը խիստ կարեւոր են. վասնորոյ ծնողք պարտին ստէպ այցելութիւններ ընել անոր և անձամբ ստուգել թէ անոր բան մը կը պակսի, թէ մաքուր բռնուած է։ Եւ որպէս զի ծնողք ապահով ըլլան թէ զիրենք չ'են խաբեր. վասնորոյ պարտին ժամանակ ժամանակ յանկարծուստ երթալ ստնտուին տունը և տղան իր գտնուած վիճակին մէջ տեսնալ. այսինքն առանց՝ առաջուընէ իրենց գալուստը ստնտուին իմաց տալու։

Ստնտուի մը ընտրութիւնը և անոր վրայ ըլլալիք հսկողութիւնը ընդհանրապէս չը կարծուածէն աւելի դժուարին է. բժիշկք անգամ կը խաբուին այն կեղծիքներէն և հնարքներէն, զորս կը գործածեն խեղճ կիներէն շատերը ինքզինքնին ստնտու ընդունել տալու համար։ Անոնցմէ ոմանք իրենց հասակին և ծննդաբերութեան ժամանակին վրայ կը ստեն. ոմանք կը ցուցնեն գեղեցիկ տղաներ, զորս իրենք դիեցուցած չ'են. ոմանք իրենց մանուկը ծոմ կը պահեն, որպէս զի իրենց ծիծերը կաթով խծկուած ցուցնեն, որոնք ստուգապէս առժամանակեայ է։ Բարոյական պակասութեան ճանաչումն աւելի դժուարին է, եթէ անոնք մանրակրկիտ խուզարկութեանց չ'ենթարկուին։ Ըմպամոլ, չար, ղայրացկոտ, ոխակալ կանայք հազուադէպ չ'են, որք իրենց պակասութիւնք կեղծ դիմակի մը տակ կը ծածկեն։ Հնութիւնը խիստ լաւ կը ճանչնար յոռի ստնտուի մը յարակից թշուառութիւնները։ Թէոդորոս կը պատմէ թէ վատն Ներոն արբշիռ ըստնտուէ մը կաթ ծծած էր, ուսկից իրեն եկած

էր Պէդէրէէ—ս Նէրօ Թշնամանաց անունը ։ Կըսուի թէ Նողկայի Քօրօւէօլլօյէ ստնտուն սովորութիւն ունէր իւր պտկունքը արիւնով թրջելու, որպէս զի ստնդեացը զանոնք սիրով առնէ ։

Վարձկան ստնտուք 1284 թուականէն 'ի վեր կան Գաղղիոյ մէջ, որք մասնաւոր զգուշութեան ենթարկուած էին չորս ծծմայրապետաց տեսչութեան տակ ։ Պ. տը Սարթինն եղաւ որ 1770 ին Փարիզի մէջ ստնտուաց առաջին պաշտօնատունը հնարեց ։ Այսօր այս պաշտօնատունք խիստ շատցած և խիստ հսկողութեան մ'ենթարկուած են ։

## ՎԱՅՐԱԿԱՆ ՍՏՆՏՈՒՔ

Վայրական ստնտուք, այսինքն անոնք, որ տուն կը բերուին, օգտակարութիւններ, նոյնպէս նաև անյարմարութիւններ ունին ։ Ցիրուի մայրը կրնայ անդադար հսկել իւր զաւակին վրայ, և այս հանապազօրեայ հսկողութիւնը կստիպէ ստնտուն իւր ըստնդեացին համար ունեցած խնամքները չը ծանրացնել. բայց այս օգտակարութեանց հետ բարեկեցիկ ծնողք իրենց դժուարութիւններ կը պատրաստեն անտարակոյս. և ահա ինչպէս. ստնտուն՝ իր գիւղը, սնունդը և սովորոյթները ձգելով պարտաւորած է ուրիշներ առնել, որք իւր կաթին որպիսութեանը վրայ աւելի կամ նուազ կը ծանրանան ։ Արդարև միջակ կեանքէ մը և շատ անգամ աղքատութենէ՝ առատութեան, գիւղական գործունեայ կեանքէ՝ տան հանգստեան, գրեթէ առանց բացառութեան բանջարեղէն սնունդէ է մը՝ կենդանական, հիւթեղ, համեմաւոր նէ նէ կերպարանութեան մը կանցնի ։ Այս փոփոխութիւնք անկարելի

է որ օգտակար ըլլան ստնտուին · իր մարսողական զօրութիւնք՝ իրեն տրուած կերակրոց առատութեանը երբեմն չ'են կրնար բաւական ըլլալ · գործունեայ չ'ըլլալէն 'ի զատ , սնունդը կը նուազի , արիւնը կը տաքնայ և կաթնային անջատումը իր նախնի որպիսութիւններէն բան կը կորուսանէ : Իրաց այս վիճակին առաջքն առնլոյ համար քաղաքացի տիկնայք ստնտու մը բռնելու ատեն , պարտին ատոր վարուց , սովորութեանց և ապրելու նախնի եղանակին վրայ տեղեկութիւններ առնել և ըստ այնմ չարունակել հրամայել : Ստնտուին՝ իր գիւղին մէջ գործածած կերակուրները քաղաքին մէջ լաւագոյն տեսակէն և աւելի լաւ պատրաստուած ըլլալով , իր առողջութիւնը աւելի զարգացեալ կ'ըլլայ և իր կաթն ալ առատութեամբ և լաւ որպիսութեամբ կ'անջատուի :

ԴԻԵՑԻԿ ՄԱՆԿԱՆ ՏՐՈՒԵԼԻՔ ԽՆԱՄՔ: —Մանկան կարօտութեանցը և մաքրութեանը պէտք ըլլալիք բոլոր բաներուն վրայ անյապաղ հսկողութիւն մ'անհրաժեշտ կարեւոր է · կտաւները մէկ մ'որ աղտոտին , առանց ժամանակ անցնելու և անպատճառ փոփոխուելու են : Քանի տղան մեծնայ և զօրանայ ; այնչափ ալ իր ծննդեան առաջի աւուրցը մէջ բռնուած գաղջ բարեխառնութիւնը ցածցնելու է · ահա աս կերպով է որ տղան վարժեցնելու է յառաջմանէ մթնոլորդական այլայլութեանց : Մանկան հագուստները տաք և լայն ըլլալու են · որպէս զի կարող ըլլայ իւր բոլոր շարժմանց կատարումը դիւրութեամբ 'ի գործ դնել : Գլուխը պէտք է գոցել պզտիկ գտակով մը · աւելի եօքը յարդէ շինուած մանեկաձեւ բարձ մը զինքը ակտի սպաշտ-

պանէ իւր անկումներէն ։ Գլխարկը ոչ տաք և ոչ ծանր ըլլալու է ։

Տղան իւր մօրը արգանդէն ելնելուն պէս շարժելու պէտք ունի · ուստի բնական է զայն իւր շարժմանցը մէջ ազատ թողուլ և խիստ սեղմեալ լաթերու մէջ երբէք չը նեղել ։ Խիստ լաւ է երբեմըն երբեմն ցորեկ ատեն գորգի մը վրայ զայն արձակ դնել, ուր կարող ըլլայ հանգստեամբ և դիւրաւ իւր փոքրիկ զրօսանքներն ընել ։ Մարք՛, կարդացէ՛ք այս նկատմամբ գրուած հետեւեալ վկայութիւնը, զոր ճարտարախօս գրիչ մը գրած է ։

«Տղան իւր պատատներէն ազատելով, երբ մէկ մը չունչ առնէ, այլ այնուհետեւ մի՛ թողուր որ անոր ուրիշ պատատներ տան, որք զինքը աւելի անձուկ վիճակի մը մէջ բռնեն ։ Բնաւ կապեր, բնաւ գտակներ, բնաւ խանձարուրք · այլ ծածանող և լայն կտաւներ, որք անդամները ազատ կը թողուն և որք, օդին ճընշմունքը զգալը արգիլելու չափ ծանր և տաք ըլլալու չ'են ։ Դրէ՛ք տղան լաւ խծծալից մեծ օրօրոցի մը մէջ, ուր կարող ըլլա-շարժել դիւրաւ և անվտանգ ։ Երբ սկսի զօրանալ, թող՛ զայն որ սենեակին մէջ մագլցելով պտտի · թող՛ որ իւր փոքրիկ անդամները տարածէ, դուն պիտի տեսնաս որ օրէ օր աւելի կը զօրանայ ։»

Տղան քալել տալու համար երբեմն գործածուած մեքենական միջոցները վնասակար են · երբ տղան առանձին քալելու կարող չ'է · վասնզի յայտնի է որ դեռ այդ պաշտօնը կատարելու ուժ չ'ունի · սպասէ՛ մէկ քանի ամիս · և ստորին անդամները՝ իւր մարմինը վեր բռնելու հարկաւոր հաստատութիւնը

բաւական ստացած պիտի ըլլան ։ Տղան մէկ տեղէն միւսը տանելու համար բնաւ մէկ բազուկէն բռնելով վերցնելու չ'է · վասնզի այս տարիք ձգձգմունք կրնան ուսի խախտումն պատճառել ։

Առաջին տղայութեան ատեն քնանալու պէտքը բաւական ստիպիչ ըլլալուն անօգուտ է տղան օրօրել ։ Երկարատեւ օրօրմունք ուղղոյ համախմբութիւն մը կրնան պատճառել, եթէ տղան չըքնանայ և աղաղակէ, պատճառը այն է որ օրօրոցին մէջ բանէ մը նեղուած է կամ մէկ տեղը կը ցաւի ։

Ամենամեծ մաքրութիւն մ'անհրաժեշտ է մանկանց համար. պէտք է զանոնք մաքրել և լաթերնին փոխել այնչափ ստէպ որչափ որ հարկը պահանջէ ։ Լոգանք, կիսալոգանք խիստ նպաստամատոյց են մաքրութեան պահպանութեան և մորթային պաշտամանց ։

---

## ՀԱՏՈՒԱԾ Զ·

### ԿՈԹԷՆ ԿՏՐԵԼ
### ՍՏՆՏՈՒ ՄՕՐ ՄԸ ԵՒ ԻՒՐ ԶԱՒԱԿԻՆ ՆԿԱՏՄԱՄԲ ԸԼԼՈՒԵԼԻՔ ՆԱԽԶԳՈՒՇՈՒԹԻՒՆՔ

Մօրը և իր զաւակին առողջութեան համար ամենամեծ հարկ մ'է տղան մէկէն 'ի մէկ կաթէն չը կտրել ։ Գործնէութեան մէջ գտնուող պաշտօն մը կասեցնելու նման վտանգաւոր բան չը կայ · աղետալից պատահարներ կրնան առաջ գալ անկէ ։ Այն կինը, որ կուզէ իւր դիեցուցած տղան կաթէն

կարել , պարտի ամիս մ'առաջ գործի սկսիլ : Առջի չաբաթը օրը՝ հինգէն մինչեւ վեց անգամու տեղ երեք անգամ միայն կաթ տալու է : —Երկրորդ չաբաթը՝ երկու անգամ օրը : —Երրորդ չաբաթը՝ բընաւ մէկ անգամէն աւելի : —Չորրորդ չաբաթուան մէջ օր ընդ մէջ և մէկ անգամ միայն . անկէ այսպէս քիչ քիչ վարժեցնելու է տղան իր մօր ծիծը մոռնալու : Առաջին չաբաթէն սկսեալ մօրը կաթին պակասը՝ ջրախառն և շաքարախառն կաթով լեցընելու է : Աւելի ետքը հաւու , ճարպը աղէկ հանուած որթու արգանակ տալ փորձելու է . և երբ անոր մարսողական գործարանները աւելի զօրաւոր սնունդ մը պահանջեն . այն ատեն կաթի , ճարպը աղէկ հանուած մսի ջրոյ հացաթան կրնայ տրուիլ: Չոր հացին փոշը , լաթի մը մէջ ծեծելով մաղէ դաքձընելէն վերջը , տաք ջրոյ մէջ լուծելու և յետոյ կաթով խառնելով կակուղ արգանակ շինելու է , որն որ թեթեւ և խիստ յարմար սնունդ մ'է : Վերջապէս միշտ աստիճանաբար աւելցնելով աւելի հիւթալից և յետոյ աւելի հաստատուն կերակրոց հասնելու է . ինչպէս հաւու , որթու ճերմակ միսը լաւ հասուն պտուղներ , շաքարախառն կակուղ եփուած . եւ եւ : սեաւ միսերը և գրգռիչ ամեն կերակուրք իւր սննդեան մէջէն 'ի բաց հանելու է : Պարզ ջուրը լաւագոյն ըմպելին է , և զայն քչիկ մը Պորտոյի գինիով կը կարեն խուլագար , գձուձ և մարսելու դժուարութիւն ունեցող տղայոց համար :

Ստնատու մայրն ալ իւր կողմանէ ամեն օրուան սպառած կերակրոց քանակութիւնը քիչցնելու և նուազ հիւթալից կերակուրներ ընտրելու է , որպէս զի կաթին անջատումը նուազցնէ : Աւելի՛ կանաչ

քանքարներ, եփած սպունգներ և բանդակներ ուտելու է և քիչ միս: Միզի անջատումը շատցնելու համար թեթև բորակացեալ ըմպելիներ, և որովայնի արձակութիւն ալ պահելու համար չոր սալորի կամ հնդկարմաւի ջուր գործածելու է: Եթէ հակառակ այս կերառութեան, կաթը ստեանց մէջ դարձեալ զեղու. այն ատեն կենսունակութեան՝ մարսողական խողովակին կամ մորթին արտաշնչիչ մանրակաց հետեւելու ձգտման համեմատ սրբատեղ կամ քրտնաբեր դեղեր առնելու է: Արբադեղերը մանէզիայի, սօտայի և փօթասայի սուլֆաթներուն մէջէն ընտրելու է. Թանքրուենոյ (միւրվեր աղանը) և եղնալեղուի ծաղկանց վերահեղումը շատ առատ խմուելով ընդհանրապէս բաւական է քրտինք բերելու համար: Այս ամենապարզ միջոցները գործածելով է որ կամաց կամաց կաթը ցամքեցնելու և կաթնաբեր մանրակաց պաշտօնը կատարելապէս բառնալու կը յաջողին:

---

## ՀԱՏՈՒԱԾ Է.

### ԱՌԱՋԻՆ ԱՏԱՄՆԱԲՈՅԺՈՒԹԻՒՆ

Ատամնախորշին յատակը զետեղուած պզտիկ փամփուշտիկ մը ատամանց իւր արգանդ կը ծառայէ: Այս փամփուշտիկը ոսկրեղէն հիւթ մը կանջատէ, և իւր կարգերը մէկզմէկու վրայ զետեղելով, վերջապէս ատամն կը շինէ: Ատամնային այս վաստակը 'ի ծննդենէ կ'ըսկսի:

Ընդհանրապէս առաջին ատամնաբուսութիւնք վեցերորդ ամիսէն մինչեւ ութերորդը տեղի կունենայ . ախտանիշերն են լինդերուն մէջ տաքութիւն, լորձանաց թեթեւ ծորումն, փռնչիւն եւն : Տղան մատունքը անդադար բերանը կը տանի, եւ ինչ որ ձեռքը առս, իւր փոքրիկ ծամելեաց մէջ կը սեղմէ, իւր այտերը խիստ կը կարմրին . յետոյ կը դեղնին, իւր լինդերը կ'ուռենան . Նոյնպէս նաեւ ստորածնօտի գեղձերը : Քանի մ'օր ետքը լինդերուն մէջ տեղը պզտիկ ճերմակ կէտ մը կերեւայ . այս կէտը ակռային գագաթն է, որնոր քիչ ատենէն պիտի ծակէ լինդը եւ դուրս ելնէ : Ատամանց ելքը հետեւեալ կարգաւ տեղի կունենայ . ստորին երկու առաջակողմեանք պինտ առաջ կ'ելլեն . երկու կամ երեք շաբաթ ետքը վերին երկու առաջակողմեանք կը յայտնուին, յետոյ դուրս կուգան ստորին և վերին կողմնական առաջակողմեանք . վերջապէս ջաղջերը (աղը) և սուր ակռաները կելնեն : Սուր ակռաները ամենէն վերջը ելնելով՝ շատ դժուարութեամբ կը զետեղուին. այս պատճառաւ շատ անգամ ատամանց շարքին անկանոնաւորութիւն կը պատճառի : Բոլոր այս ակռաները անմիջապէս մէկզմէկու ետեւէ չ'են ելներ . միշտ աւելի կամ նուազ միջոց մը կ'ըլլայ : Ի վերայ այսր ամենայնի այս վաստակը երբեք կանոնաւորապէս չ'ընթանար. տղաքներէն ոմանք կաթի բոլոր ակռաները տասն և հինգերորդ ամիսէն մինչեւ տասն և ութերորդը կը հանեն . ոմանք ալ մինչեւ երկու և նաեւ մինչեւ երեք տարի հանած չ'են ըլլար :

Առաջին ատամնաբուսութեան ժամանակը միշտ տենդաբեր երեւոյթներով ընկերացած է : Գրգռու-

մը՝ նախ ծնօտներուն մէջ սահմանուելով, իսկոյն մերձակայ մասանց կը հաղորդի, և համակրութեամբ՝ ամբողջ մարմնոյն։ Ասկից առաջ կուգան այն մերթ ցաւալի խառնակութիւնները. ինչպէս են ջղաձգտումն, փսխումն. ընդոստ զարթումն, փորհարութիւն. որովայնապնդութիւն, խիթ, չոր հազ, աւելի կամ նուազ սաստիկ տենդ։

Այս ախտանիշերն ընկճելու համար առաջին ընելիքն է մանկան բերանը զննել և մատով կամ առաձգական մարմնով մը, որ ոչ այնչափ կակուղ և ոչ այնչափ կարծր ըլլայ, ծամելեաց վրայ շփումներ, թեթեւ ճնշումներ ընել։ Եթէ տենդը՝ մարսողական պաշտօնները խանգարած է, տղան պահեցողութեան դնելու է, և անոր ստամոքսը ծանրաբեռնելու չ՚է կաթի կամ կերակրոյ քանակութեամբ մը, զոր մարսելու ալ զօրութիւն չ՚ունի։ Բժշկութիւնը ասոր բան մ՚ընելիք չ՚ունի. արհաստագէտ մարդը պարտի նպաստել բնութեան վաստակին և ոչ երբէք զայն շփոթել։ Այս հասակի մանկանց ըլլուելի՛ք միակ դարմաններն են թեթեւ շփումնէք. կակղիչ փոքր լուացմունք, ճարպաւոր ապեղանիք, կարճատեւ լոգանք, մէկ քանի դրգալ խէժի կամ եղերդի շարաբ, ֆանելայէ գօտիներ. եւն. եւն. Խելացի մայր մը բժիշկէ մը շատ աղէկ գիտէ թէ որն աւելի լաւ կը յարմարի իր մանկան։

Երբ տղան սկսի առանձին քալել, իր անդամոց կատարեալ ազատութիւն տալ պէտք է. և ամեն պատահարաց առաջքն առնլոյ համար հսկել և՛ իր առաջին քայլերը ուղղել պէտք է։ Տղան որչափ աւելի շարժի և մարզ ընէ. իր սնուցիչ և դարմանիչ պաշտամունք այնչափ աւելի զօրութեամբ կը

կատարուին ։ Վասնորոյ մայրը պարտի միշտ դիւրացնել և ոչ երբէք սանձել իւր մանկան բնազդական շարժումները ։

Հինգ կամ վեց տարեկան հասակի ատեն խիստ կարեւոր է՝ տղային խաղուցը հետ խառնել մարմնամարզական մէկ քանի զուարճալի փոքր կրթութիւններ և այս կրթութեանց սէր ձգել տալու համար զանազան վարձատրութիւններ ընել ։ Մարմնամարզութիւնը, ինչպէս արդէն գիտենք, մարմնոյն կանոնաւոր զարգացման նպաստող միջոցներուն ամենէն ստոյգն է, նոյնպէս նաեւ նախապահեստ ընտիր միջոց մ՚է խումբ մը անհանգստութեանց և հիւանդութեանց, որոց ենթակայ է տղայութիւնը ։

Գանք մօրը ։ Եթէ կինը, իւր յղութեան ատեն և ծննդաբերութենէ ետքը, այս գործոյս մէջ նշանակուած սկզբանց կէտ առ կէտ հետեւած է, ոչ իւր տղային և ոչ իւր առողջութեան համար վախնալու բան մը չ՚ունի ․ իւր հրապոյրքը որ և իցէ վնաս մը չը պիտի կրեն և ամեն բան իւր երջանկութեան նպաստամատոյց պիտի ըլլան ։

Յղութեան վաստակը արգանդին կարողութիւնը յանչափս աւելցուցած, որովայնի ծածկոյթը ձըգձըգած, ծնծակա-ցնցուղային անցքը ընդլայնած է․ ծննդական անդամք մանկան անցումն տալու համար մեծապէս լայնցած են․ ամեն բան կը յայտնէ որ բնութիւնը նոր էակի մը կեանք տալու համար սաստիկ ճիգ մ՚ըրած է ։ Ծննդաբերութիւնը վայրկեան մի և եթ կնոջ գաղտնի գեղեցկութիւնքը աւերած է․ բայց արհեստը և բնութիւնը խոկոյն այս անկարգութիւնները պիտի դարմանեն ։ Առողջու-

թիւնը , առուգութիւնը և զուարթութիւնը մատաղ մօրը երեսին վրայ շուտ մը պիտի հաստատուին , և այն ատեն այս կինը իր ամուսնոյն աչացը ալ աւելի գեղեցիկ և աշխարհի մէջ ալ աւելի զմայլուն պիտի երեւայ :

Այն գեղեցիկ այլաբանութիւնը , որ մատաղ աղջիկը վարդի կոկոնի մը և կինն ալ բացուած վարդի մը կը նմանցնէ , ճիշտ է : Արդարեւ մատղաշ աղջիկը կոկոնաւոր ծաղիկ մ'է , իր անուշահոտ բուրմունքը բաժակին ներքեւ տակաւին պահուած են . իր հրապոյրքը , ծաղկելու համար տաք շունչի մը պէտք ունին : Մատղաշ կինը . որ ամուսնոյ մը փափուկ գգուանացը տակ փթթեալ շողիւն ծաղիկ մ'է , սիրոյ և հեշտութեան զմայլուն հոտեր կը բուրէ : Ամուսնութիւնը իր կարողութեանց և ձեւոցը զարգացումը լրացուցած է , իր հարուստ գործարանաւորութեան բան մը չը պակսիր , ամեն հրապուրիչ և յափշտակիչ բան իր մէջ կը ժողվէ : Ծաղկահասակ աղջիկ , կանխաւ կըզգացնէր թէ ինչ պիտի ըլլար օր մը . մատղաշ կին , իր գեղեցկութեան պայծառութեամբը կը փայլի :

Եւ ամուսնութեան բարոյական և կազմական վիճակին վրայ բոլոր ըսածներուս իբր վերջին եզրակացութիւն կը յաւելումք :

Ամուսնացեալ կինը յղութեան մէջէն առողջութիւն և առուգութիւն կը քաղէ . տղաքներ բերելով իւրքզինքը ազատ կը կացուցանէ խել մը հիւանդութիւններէ , որոնցմէ բնութեան նպատակը 'ի դերեւ հանող կինը պատժուած է : Եւ այս ճշմարտութեանց վրայ հաստատուելու համար բաղդատէ ընտանեաց

մօր մը գեղեցիկ գոյնը անմտութեամբ կամ խոււթեամբ ինքզինքը ամօթալից մշտամնութեան ենթարկող կնոջ պալարայիր և բշտած երեսին հետ ։ Բաղդատէ՛ առաջնոյն գործվալից բարքը երկրորդին վես բնաւորութեանցը հետ , որ միշտ փայծաղնացաութեամբ կը վշտակրի ․ այն ատեն խիստ ստոյգ է որ միշտ 'ի նպաստ ամուսնութեան պիտի վարդապետես ։



## ԳԼՈՒԽ ԼԵ․

### ՃԳՆԱԿԱՆ ՀԱՍԱԿ ։ —ՇՐՋՄԱՆ ՀԱՍԱԿ ԻԿԻՆ

Երկրիս վրայ ամեն բան կը փոխուի և կանցնի ․ ամեն բան դէպ յոչնչութիւն կ'ընթանայ և հոն կը գակավիժի ․ բնութեան օրենքն է այս ։ Ծննդական գործնէութեան ժամանակին կը յաջորդէ հանգըստեան հասակը , այս վայրկեանը կազմագիտաբար անտարբեր , իսկ հասարակաբար ծերունական հասակ , չքեղման հասակ , դադարումն դաշտանի եւ անուամբք կը նշանակուի ։ Կինը քսան և հինգէն մինչեւ երեսուն տարի ցեղը մշտնջենաւոր գործած է ․ այժմ իւր դերը լմնցած է ․ այսուհետեւ ծնընդագործութեան անստակ ըլլալով ․ անհատական կենաց մէջ կը մտնայ ։ Ըստ մեզ՝ ճգնական հասակին և շրջման հասակին մէջ տարբերութիւն մը կայ գնելիք ․ առաջնով կ'որոշուի այն աւելի կամ նուազ երկայն ժամանակը , ուր դաշտանի դադարումը առողջութեան մէջ մէկ քանի անկարգութիւններ

կը բերէ․ երկրորդով կ՚իմացուի կատարելապէս այն ժամանակը, ուր առողջութիւնը կը վերահաստատուի և դաշտանի ազդեցութեամբ բնաւ չ՚այլայլիր։ Ի վերայ այսր ամենայնի շրջման հասակ բառը ի սկզբան գործածուեցաւ ցուցնելու համար կենաց այն ժամանակը, ուր կինը, ճգնական հասակին անհանգստութիւններէն անցնելէն ետքը, իր առողջութիւնը և առուգութիւնը վերստին կ՚առնու։ Ծընընդական դրութիւնը մարմնական յօրինուածոյն գլխաւոր գործարանը ոչ ևս ըլլալով, ամսական արեան կորուստները ընդ միշտ դադրած ըլլալով, սննդական հիւթերը առատութեամբ միւս գործարանաց վրայ և գլխաւորապէս ճարպաւոր հիւսկէնին վրայ կը հակին։ Ստինքները կ՚ըստանան կըլորութիւն մը և պնդութիւն մը, որք երիտասարդութեան վերադարձ մը կարծել կու տան, ուսկից առաջ եկած է շրջման հասակ անունը։ Բայց երիտասարդութեան այս զմայլելի խորհրդական նշանակները միմիայն ցնորք են։ Իսկոյն ամեն կողմանէ թոյլ և յորդառատ ճարպ մը կը ժողուի․ ձևերը՝ իրենց չքեղութիւնը կը կորսուանեն․ հասակ․ կը թանձրանայ․ շարժմանց նախնի վայելչութիւնները բնաւ չ՚են տեսնուիր․ աչքերը ուրիշ ատենի բացորոշութիւնները բնաւ չ՚ունին․ և ձայնի հնչիւնն ալ նոյն հրապոյրքը չ՚են արտայայտեր․ վերին շրթը ծածկող թեթև աղուամազը կը թանձրանայ․ կերկինայ, այրական յատկութիւն մը կ՚առնու և ետացեալ սրտին մէջ սիրոյ եռանդը յաւետեան մարած է։ Աւա՜ղ․ կնոջ համար որչափ սոսկալի ալ ըլլայ այս խոստովանութիւնը, սակայն պէտք է ընել զայն․ ծերութիւնը մօտալուտ է։

Ըստ կլիմայից և սովորութեանց՝ ճգնական հասակը աւելի կանուխ կամ աւելի ուշ կը հասնի ։ Խիստ տաք երկիրներու մէջ արգասաւորութիւնը երեսուն և հինգ տարեկան հասակին կը դադրի. չափազանցութեանց օրէնքը այնպէս կընէ որ միեւնոյն կարգը խիստ ցուրտ երկիրներու մէջ ալ պատահի. Լափոնացիք. Կրօէնլանտացիք, եւ. Նոյնպէս նաեւ Ափրիկեցիները կանուխ կը դաշտանաւորին և երեսունէն մինչեւ երեսուն և հինգ տարեկան հասակնուն դաշտանէն կը դադրին ։ —Մեր կլիմաներուն մէջ ընդհանրապէս քառասունէն մինչեւ յիսուն տարիքին կը դադրի ամսական արիւնը. բայց այս միջին սահմանը բազմաթիւ բացառութիւններ ունի ։

Դաշտանի վերջնական դադարումը կը յայտնուի նշանօք, որոց ճանաչումը խիստ կարեւոր է. որպէս զի ախտանիշ մը համարուելու սխալմանց առաջքըն առնուի ։ Շատ անգամ դաշտանի բնական վերջաւորութիւնը դիպուածական անդաշտանութիւն մը կամ յղութեան վիճակ մը համարած են ։ Կոյր բժիշկը անխոհեմաբար կը գրգռէ գործարանը, որպէս զի անդարձօրէն ջնջուած հոսումը վերստին դարձունէ անոր. կամ կինը իւր մայրական հանդարտութեանը մէջ կը ձգէ ։

ՆԱԽԱԳՈՒՇԱԿ ՆՇԱՆՔ ՃԳՆԱԿԱՆ ՀԱՍԱԿԻ. Այս նշանները հետեւելոց կրնան վերածուիլ. ամսական արեան հոսման անկանոնութիւն և նուազումըն. տաքութեան շոգ. զճուարամարսութիւն. կամ մարսողական գործարանաց մէջ խառնակութիւն. երեկամանց մէջ ցաւ. արգանդէն առաջ

եկած և ճերմակ դաշտանի նմանող սպիտակագոյն հոսումն ծննդակէն դուրս ։ Ամսական արիւնը նախ քիչ քանակութեամբ կարտաբերուի ․ յետոյ այս արտաբերումը անկանոն ժամանակներու մէջ կերեւայ։ Կան կիներ որոց դաշտանի հոսումը երկու , չորս , վեց ամիս և աւելի՝ կը յապաղին ․ ոմանցն ալ տասն և հինգ կամ քսան օրը անգամ մը կ'երեւան․ ոմանք խիստ քիչ արիւն կը կորուսանեն ․ մինչդեռ ոմանք ալ կան որ ճշմարիտ արիւնազեղումն կը կրեն։ Մարսողութիւնք շատ ծանր և դժուարութեամբ կը կատարուին ։ Գիշերները յուզեալ կըլլան ․ շատ կիներ խիստ տագնապեցուցիչ երազներ կը տեսնան , և եթէ տաք յարկերու մէջ մնան ․ կը հիւանդանան։ Արբունց և յղութեան ատեն զգացած մէջքի ցաւերը ճգնական հասակի մէջ վերստին զիրենք կը չարչարեն ։

Ահա այս է կնոջ ծննդական դերին վախճանը յայտնող կազմաբանական և ախտաբանական բացատրութիւնը ։ Երեւելի շատ մը բժիշկներ կը հաստատեն թէ յիսնամեայ հասակէն վերջը հոսող դաշտանը շատ անգամ արգանդի ախտաւոր վիճակէն առաջ կուգայ ․ և եթէ այս վիճակը շարունակէ ․ այն ատեն այս գործարանին մէջ կեղ կամ քաղցկեղ գոյանալէն կը վախցուի ։

Բժշկաց շատերը՝ ճգնական հասակը կենաց ամենէն աւելի փոթորկալից հասակը համարած և դայն խել մը հիւանդութեամբք շրջապատած են , որոց անուանքը միայն բաւական են ամենէն քաջասիրտ կինը սոսկացնելու ։ Այս բժիշկները շատ չափազանցութեամբ վարուած են ․ վասն զի ճգնական

հասակը պատանեկութենէ արբունքի. անցնելու հասակէն նուազ վտանգաւոր է․ ասոնք, եթէ կենաց այս երկու ժամանակին մեռելաբանական արձանագրութեանց խորհուրդ հարցնելու ձանձրութիւնն առնէին, այն ատեն պիտի համոզուէին որ արբունքի մէջ մեռնողներուն թիւը շատ աւելի մեծ է չրջման հասակի մէջ մեռնողներուն թիւէն։ Պր. Նուայլթօն ու Շաթօնեօֆի չինած արձանագրական նշանաւոր ցուցակները այս նկատմամբ եղած ամեն տարակոյս կը ցրեն։

Բայց ճգնական հասակին վրայ եղած չափազանց գրուածոց դէմ կինը ապահովցնելու համար մեր ըրած ջանքերէն պէտք չ'է հետեւցնել թնաւ որ մենք այս հասակը ամեն վտանգէ ազատ համարել կը պահանջենք։ Մենք կը մտածենք ընդհակառակը որ կանայք, երբ կենաց այս ժամանակին հասնին, ուր իրենց կազմական յօրինուածքը նշանաւոր փոփոխութիւններ կը կրէ, պարտին ամողջողջութեան կամ դաշտանի դադարման պահանջած առողջապահական կերառութեան մ'ենթարկուիլ և թէ այս ժամանակէս առաջ ունեցած կենցաղավարութիւնը շարունակելը անվտանգ չը կրնար ըլլալ։

## ՃԳՆԱԿԱՆ ՀԱՍԱԿԻՆ ՅԱՌԱՋ ԲԵՐԱԾ ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ

Ճգնական հասակին յառաջ բերած հիւանդութիւնք ընդհանուր կամ վայրական են։

Առաջնոց մէջ դասած են արենաթքումն․ տեռատեսութիւնք, անէքըէքը․ յօդացաւութիւնք, ծանրաշնչութեան ժամանք, գլխագարութիւնք և ան-

դարք, ջղացաւք, արգանդի խօթութիւն, հարսնամոլութիւն, անդամալուծութիւնք. եւն. եւն:

Վայրական հիւանդութիւնք իրենց կայան ունին արգանդը և իւր առկախոյքը ինչպէս արգանդի ներքնաթաղանթին սաստիկ բորբոքումը, արգանդական արիւնահոսութիւնք, պինտ և անցաւ այտուցք, արգանդի կեղք. պողիպոսունք. արգանդի փողերուն և ձուարանին հիւսկենին ապականութիւնք, այս գործարանաց չրգողութիւնք. ճերմակ դաշտան. եւն. եւն. կրնան յաջորդել դաշտանի դադարման և ճգնական հասակին ընկերակից համարուիլ: Բայց արդարեւ այս հիւանդութեանց թուումը կ'ապացուցանէ թէ անոնցմէ շատերը ամսադադարին ազդեցութենէ ուրիշ ազդեցութեան տակ ալ կրնան զարգանալ. Եթէ մտածենք ընդհանուր և վայրական, կազմութեան յարած, և 'ի գործ դրուելու համար ամենաթեթեւ ախտական ազդեցութեան մը սպասող տրամադրութեանց. իսկոյն պիտի տեսնենք որ փուճ տեղը ամբաստանած են դաշտանի դադարումը իբր պատճառ խել մը հիւանդութեանց, որք ամսական արեան դադարումէն առաջ, դադարման ատենը և դադարումէն ետքը կրնան յայտնուիլ:

Ճգնական հասակին բուն հիւանդութիւնք՝ կազմագիտաց համար մէկ քանի հատ են միայն. որք են զր. արիւնային յորդութիւն, կամ ընդհանուր գրգռման այն վիճակը, որնոր շատ անգամ մէկ կամ շատ գործարանաց վրայ կը հաստատուի և հոն աւելի կամ նուազ վտանգաւոր բորբոքման մը կայան կը գործէ. —արգանդի արիւնահոսութիւնք, արգանդա-ցնցուղային դում, ճերմակ դաշտան, ար-

փանդի խօթութիւն և ներարդական զանազան վըշ-տակրութիւնք, որք սովորաբար աններեւոյթ կըլլան. երբ ճգնական հասակէն պատճառուած յեղափո-խութիւնը գործադրուի և գործարանաց մէջ հաւա-սարակշռութիւնը վերահաստատուի ։

## ՃԳՆԱԿԱՆ ՀԱՍԱԿԻ ՎՇՏԱԿՐՈՒԹԵԱՆՑ ՀԱՐԿԱՒՈՐ ՆԱԽԱՊԱՀԵՍՏ ՄԻՋՈՑՔ

Այս մասին պէտք ըսեմք առողջապահական նախզգուշութեանց ամենքն ալ պարտին միեւնոյն նպատակի համար գործակից ըլլալ, ու առաջքն առնուլ այն արիւնային առատայորդութեան, որ այս կամ այն տրամադրեալ գործարանին վրայ հաս-տատուիլ կը ճգնի ։ Ուստի այն կիները, որք ճգնա-կան հասակին կը մօտենան, պարտին մերժել ամեն տեսակ գրգռիչք թէ՛ ուտելեաց և թէ ըմպելեաց մէջ, միեւնոյն բանը ըսելու են բարոյական գըր-գըռչաց համար ալ. որք ծննդական դրութեան վրայ կը ծանրանան։ Այն կիները, որոց քունը մըղ-ձաւանջներէ կը յուզուին կամ կը չփոթուին, խիստ թեթեւ կերպով ճաշելու են, որպէս զի իրենց ըս-տամոքսը չը ծանրանայ և անոր դժուարին աշխա-տութիւն մը չը պատճառէ. մանաւանդ պարտին հրաժարել ոգելից ըմպելիներէ, թէյէ, սրճուրէ և ամեն գրգռիչ խմելիքներէ ։ Լուացմունք, գաղջ լոգանք, թթուաշ ըմպելիք, չճուկ. թմբրոյ և նա-րընջենւոյ վերահեղումն՝ նախապահեստ միջոցներ են, որոնցմէ լաւ արդիւնքներ կրնան քաղել ։

Եթէ, այս միջոցներուս հակառակ՝ արիւնայոր-դութեան վիճակը չը նուազէ 'ի զատ գործարա-

նի մը սպառնայ . այն ատեն պէտք է արիւն առնել դաշտանին սովորաբար տեղի ունեցած ժամանակին մօտ ։ Թեթեւ չափով և չոր սալորի ջուրի մէջ լուծեալ աղի սրբաղեղք արիւնառութեանց ընկերանալու են. մանաւանդ այն կանանց համար, որք դըժուարութեամբ ձեմել կերթան ։

Ջղոտ կանայք մեղմ և կակղիչ կերառութիւն մը ընելու են . կարկանդակներէ և ամեն տեսակ մըրգուտ կերակուրներէ հրաժարելու են ։ Լօգանք, կիսալոգանք, կակղիչ լուացմունք և հակատնգական ըմպելիք նպաստամատոյց են ։ Մասնաւորապէս ջըղղոտ և գիւրազգրգիռ կանայք են, որք արգանդի խօթութեան ախտնդանաց ախտանիշներ, տրոփիւնք, թալուկ, ստնգանք, ջղաձգական շարժմունք, զգայնութիւն և խիստ ձանձրացուցիչ փունք, որովայնի աղեաց կարկաչիւն . կապերու պատճառաւ աղեաց ցաւալի արտաձգմունք, հեղձումն, նեղութիւն արգանդի և մեծ աղեաց ստնգանք. եւայլն . եւ կը յայտնեն ։ Այս վշտակրութիւնք միշտ կ'ընկերանան տրտմութեան և իմացական անկարդութեան զգացմամբ, որոնց դէմ բժշկութեան արհեստը գրեթէ միշտ ի թերեւ կելնէ և միմիայն բարոյական բժշկութեան մէջ դարման կը գտնէ ։ Այս սկզբունք ասանց համար ալ գործածելի են ։

Կաղմնական կրթութիւնք անհրաժեշտ են ծըզնական հասակին մէջ մտնող կանանց, որպէս զի ծննդական գործարանները լքանող կենսունակութիւնը տեղափոխական դրութեան վրայ սփռուի ։ Գիւղագնացութիւնը . առաւօտեան շրջագայութիւնք, քաղցր զբօսանք, զուարճալի ընկերութիւնք առողջապահական ընտիր միջոցներ են ։

Պարտին մերժուիլ նստողական կեանքը, բազմութեամբ լեցուն վայրերը, ինչպէս են թատրոն, պարահանդէսք, ցայգահանդէսք և ուրիշ հասարակաց ժողովք: Կակուղ և տաք անկողինք, նոյնպէս նաեւ եօթը ժամէն աւելի քունը շրջման հասակի մէջ մտնող կանանց համար միշտ վնասակար է. տքնութիւնք ախտաւոր են:

Սէրը՝ կենաց այս գեղեցիկ արեւը պարտի իսպառ չիջանիլ կնոջ սրտին մէջ, այն կնոջ որ ալ ծննդագործութեանց համար չ՚ապրիր. զայն վառել փորձող ամէն բան պարտին խնամարար մերժուիլ. վասնզի տարփական մտածմունք և փափաք կրնան պատճառել խիստ անկարգութիւններ գործարանաց մէջ, զորս բնութիւնը հանգստեան դատապարտեց: Այնուհետեւ բարեկամութիւնը, անուշիկ բարեկամութիւնը պիտի մխիթարէ կինը յաւիտեան անդարմանելի կորուստեան մը համար: Այս գորովալից սիրով և անկէ բղխած ազնուազգացմամբ հասակաւոր կանայք իրենց իշխանութեան ամէն պարծանքը կը պահեն: Վերջապէս իրենց ընտանեաց և իրենց փոքր որդւոց մատուցած փափուկ խնամքները, սիրելի ընկերութիւնները և իրենց համար՝ ընտրած ճշմարիտ բարեկամաց ակումբները՝ երիտասարդութեան ջերմնոտ կիրքերը կը մոռցնեն և կենաց ձմերան վրայ մէկ քանի ծաղիկներ տակաւին կը նետեն:

## ՃԳՆԱԿԱՆ ՀԱՍԱԿ ԱՌՆ

Այրն ալ իր ճգնական հասակն ունի, որ նոր ծննդական վատթարութիւն աններկդիմի նշանօք և տարիներով յառաջ կը ծանուցուի, այս է անոտի

փափաքանաց, ցաւոց և հեծութեանց հասակը։ Թէ և այս հասակին ուղեկից եղող հիւանդութեանց թիւը կնոջ ճգնական հասակին թիւէն աւելի պզտիկ է, սակայն անոնց սաստկութիւնը, կարելի է, աւելի երկիւղալի է։ Եւ արդարացի է այս․ վասնզի միզական ուղւոց հիւանդութիւնքն են երեկամանց մէջ քար․ միզաքար․ միզագրաւութիւն․ դնդերացաւ․ յօդացաւութիւնք․ եւն․ եւն․ արիւնազեղումն և կաթուա՛ծ։

Ճգնական հասակի ատեն՝ այրը իւր անկարողութեան կամ իր հիւանդութեանցը վրայ կը յուզի, կը խռովի և խստիւ կը վշտակրի․ իւր բնաւորութիւնը կը փոխուի և տխրանաց․ բայց մանաւանդ, երբ միզական փամփուշտի դում մը, միզաքար մը, միզուկի կծկում մը միզման ազատ ընթացիցը արգելք դնէ և զինքը խստիւ չարչարէ, իւր անհանգստութիւնքը և տխրութիւնը կառաւելուն։ Այն ատեն վէս, լռակաց կըլլայ և ախոնդանաց կը դիմէ։ Եթէ արգանդի վշտակրութիւնք սոսկալի են կնոջ համար, փամփուշտի վշտակրութիւնք անկէ նուազ չ'են․ և երկու սեռեր այս նկատմամբ իրարու նախանձելի բան մը չ'ունին։

Իմացականութիւնը՝ ճգնական հասակին մէջ մնող երիկ մարդուն խրատ կուտայ սիրոյ ամեն փափաք մերժել իր երեւակայութենէն, եթէ անկէ ուժգընապէս պաշարուած է և եթէ անկէ կընկճի, թէ և խիստ երկար միջոցներով ալ ըլլայ․ վասնզի ցանկական ստնգանքը միշտ վնասակար է իւր մարմնական յօրինուածոյն և մասնաւորապէս միզաւղւոյ ծընընդական գործարանաց։ Այր դո՛ւ․ հասակի ձըմեռը կսկսի քու գլուխդ ճերմկցնել և քու այտիցդ

մէջ ակօսներ բանալ, քու զօրութիւններդ կը նուազին . գործարանը կը թմրի . . . քու ծննդագործիչ դերդ լմնցած է, բնութիւնը զայն քու որդւոցդ փոխադրած է , և ոչ մէկ կարողութիւնը մը չը կրնար զերծ այս մահաբեր օրենքէն ազատել :

Ի գարուն կենաց
Ծնանին տարփանք .
Նա՛ ձմեռն հաս .
Տխուր է արդ կեանք :
Շիջանի եռանդն .
Անզօր՝ սրտի խանդն .
Սիրոյ տուր և առ .
Վերջանայ խապառ :

Ուստի դու՛ք , որ ճգնական հասակէն կ՚անցնիք , ըստ բաւական խելացի եղիք այս օրէնքը կրելու համար . յորմէ խուսափելը միշտ աղետալից է : Այո՛ , ինչպէս նաև կ՚ըսեն , պարտի առողջապահական կերառութեան մ՚ենթարկուիլ , այն ատենը անգամ , ուր ճգնական հասակին անհանգստութիւններէն և ոչ մէկը չը կրէ իսկ : Զափաւորութիւն ուտելեաց , մանաւանդ ըմպելեաց մէջ կատարեալ հրաժարում այն ամեն բանէ , որք կարող են ծննդական փափաքը զարթուցանել · սաստիկ շրջագայութիւն , գիւղագնացութիւն . թեթեւ զբաղմունք · զուարճալի զբօսանք · մտաւորական խիստ չափաւորեալ կըրթութիւն · վասնզի մտաց զբաղմունք աղետալի կերպով կը ծանրանան մարսողական զօրութեանց վրայ և կրնան առաջ բերել ստամոքսի ցաւ . հեղձումն , սրտխփունք , աղանդական քմահաճութիւն . ցրտացաւք , որք արգանդի խօթութեան միևնոյն ախտանիշ-

ներքն ունին և Թշուառ կընեն կեանքը ։ Վերջապէս մենք կը պարտաւորենք այն ընթերցողները, որք մեր խրատուցը անունկնդրութիւն ընել կրնալ կը կարծեն, աղէկ համոզուիլ հետեւեալ ճշմարիտ տեսակին։ Երիտասարդութեան մեղքերը աւելի ետքը կը տեսնուին, այսինքն թէ այն ամեն հիւանդութիւնք, որք տղայական հասակը չարչարեցին և որոց սերմը կենսական զօրութենէն կատարելապէս չը կրցին ազատուիլ, ծերական հասակի առեն վերստին կերեւան, կը յարին անձին և մինչեւ գերեզման կընկերանան ։



## ԳԼՈՒԽ ԼԶ.

## ՓՈՓՈԽՄՈՒՆՔ ԵՒ ԿԵՐՊԱՐԱՆԱՓՈԽՈՒԹԻՒՆՔ. ՉՈՐՍ ՍՆՈՒՆԴԸ ԵՒ ԿԵՐԱԿՐՈՒԹԻՒՆԸ ԿՐՆԱՆ ԳՈՐԾԵԼ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՑՈՐԻՆՈՒԱԾՈՅՆ ՄԷՋ

Այրը և կինը ծննդագործեցին, տղայ մը ծնաւ. այսուհետեւ ծնողաց ամեն հոգ ու խնամք անոր վրայ. պիտի բերուին տալու համար ընկերութեան այնպիսի անհատ մը, որ կարող ըլլայ հոն օգտակար դեր մը խաղալ։ Այս գեղեցիկ վախճանը ըմբռնելու համար հետեւեալ կազմական կրթութեան ծրագիրը հետեւեալ տողերուն մէջ կը բովանդակուին։

Պաշտպանել մարդկային էակը իր ծննդեան առեն, հետեւիլ բնութեան և անոր նպաստել իր կաղապարական ընթացքին մէջ, զայն աճեցնել, կատարեցնել իր մօրեկան ձգտմանց մէջ։ Կարգադրել,

թաշխել սնունդը կենաց գործիները կատարելագործելու կերպով. ամենամեծ ճշտութեամբ հպատակել առողջապահական սկզբանց, որք իմաստուն փորձառութեան արգասիքն են. որպէսզի մանկան՝ իւր կազմական և բարոյական կարողութեանց կատարեալ զարգացումը ապահովուի. ահա այս է այն նպատակը, որում ծնողք և դաստիարակք պարտէին ուղղել անդադար իրենց ճգունքը ։

Կենդանական կենաց այս կրթութիւնը նորէք մոռացածին իր մը չ՚է. ինչպէս կրնայ կարծուիլ. այլ ծանուցեալ ճշմարտութիւն մ՚է. բուսական և կենդանական ցեղը անոր՝ ՚ի գործ դրած կերպափոխութեանց բազմաթիւ օրինակները ամեն օր մեր աչաց առջեւ կը դնէ ։

Հին ազգերը իրենց կազմական կրթութեան դրութեամբը, կորովութիւն և քաջասրտութիւն ըստացած էին. իրենց կազմութիւնը պղտիկ հասակէն սաստիկ մխուած ըլլալով, խիստ մահաբեր վտանգաւոր խառնութեանց կը դիմանայր ։ Մանաւանդ Յոյները, որք ամեն ազգերէ աւելի ստացած էին մարմնոյ գեղեցկութիւնը և զայն վերին աստիճանի հասուցած էին ։ Յոյները ձեւերու այս գեղեցկութիւնը կը պարտաւորէին, ընդ Հերոդոտոսի, Սօղոնի մէկ օրէնքին, որնոր անհատներու հասակը, բարեխառնութիւնը և ընտրութիւնը սեռերու միաւորութեանցը մէջ կը պատշաճեցունէր ։

Տաճիկները, որք այսօր իրենց կանոնաւոր գիմաց հաճոյ և կենդանի տեսլեամբը և իրենց կորովի կազմութեամբը զմեզ կը զարմացնեն, նախնապէս խիստ տգեղ էին ։ Անգղիացիք, իրենց կլիմայն

մատախուղին հակառակ, կորովաբար կազմուած են. անոնց կիները իրենց մորթին գեղեցկութեամբը և ձիմաց փափկութեամբը նշանաւոր են, և այս կազմական որպիսութիւնք ուրիշ ազդեցութեան չը կրնար յատկացուիլ բայց միայն իրենց սննդական կերառութեանց ։

Հանճարաւոր մարդ մը՝ երեւելին Պաքվել սկսաւ ըստ իւր հաճոյից կերպաւորել կենդանի նիւթը. ինչպէս որ քանդակագործը կը ձեւաւորէ մարմարեայ արձանաքարը, և յաջողեցաւ ։ Իր մեթոտը, որ անխնախնման կ'ըսուէր, ընտանի կենդանեաց գործարանները՝ մարդկան պիտոյից համաձայն փոփոխեց ։ Այսպէս Պաքվել խորհելով որ մորթելու որոշուած կովերուն և ոչխարներուն անօգուտ էին իրենց եղջիւրները և խոշոր ոսկրները, առանց եղջիւրի դուարական և արջառական ցեղեր ստեղծեց, և ոսկրային դրութիւնը նուազեցուց յօգուտ ճղային դրութեան, որնոր տարապայման զարգացումն ըստացաւ ։ Ճարպալից մեծամեծ կենդանիներ գործեց միմիայն ճարպ տալու համար. բեռնամբարձ և կառաձիգ կենդանիներ առաջ բերաւ, վազող ձիեր և շուներ, որք ուրիշ ազգաց ձիերը և շուները կը գերազանցէին ։

Պաքվելի մեթոտը մարդուս ալ գործածուեցաւ և առաջ բերաւ հերակլեան զօրութեամբ բեռնակիրներ, կուփամարդիկներ և վաթսուն լիպրա ծանրութեան ժօքէյներ ։

Այս մեթոտը առողջութեան վնասակար չ'ըլլալէն 'ի զատ. ընդհակառակը անոր օգտակար է. բազմաթիւ դէպքեր ապացուցին որ գործարանական մէկ քանի հիւանդութեանց կամ բազմամեայ ախ-

ակից դրամադրեալ անձինք անխընէնանէ կերասու-թեամբ անոնցմէ ազատեցան ։

Այս մեթոտին նկարագրութիւնը և լուծումը այս գործոյս մէջ տեղի չը կրնալ ունենալով, կու-ղարկենք ընթերցողը հետեւեալ վերնագրով գոր-ծոյն ։

ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ ՄԱՐԴԿԱՅԻՆ · Իր նորաշէլ-ֆորմութիւնը, իր պահպանութիւնը և իր վարժութա-թեան դէմադրելու միջոցը ։

Այս շահաւէտ գործոյս մէջ նշանակուած են անըն-թընմանէ վերաբերեալ ամեն մանրամասն տեղեկու-թիւնք · ինչպէս նաեւ նիհարութեան և չափազանց գիրութեան, խուլազարի և կարկամութեան դեմ սայոյզ միջոցք, անպաճանութեան կամ արհեստ կերակ-րոց, առողջամարդութեան և մարմնամարզութիւն հոն այն կերպով խօսուած են, որ լոյս կուտան մարդկանց անոնցմէ քաղուած գեղեցիկ արդեանց վրայ· Վեր-ջապէս այս գիրքը մանրամասն կը տեղեկացնէ՝ կազ-մական և բարոյական մարդուն կատարեալ զար-գացման ամենէն աւելի նպաստաւոր եղող մարմնա-կան կրթութեան միջոցներուն · խորհրդակցելու տպահով առաջնորդ մ՛է ։

ՎԵՐՋ·

# ԲԱՌԳԻՐՔ

Ազգայութիւն, Anaphrodisie:

Անտարբերութիւն՝ »

Արտաքսաբեր անցք, Canaux déférents:

Ալկալի, Alcali:

Արգանդ, Uterus, matrice:

Ամսաշրջան, Cataménial:

Անդաշտանութիւն, Aménorrhée:

Արտարգանդային, Extra-uterin:

Անջատումն, Sécrétion:

Ածխատարր, Carbone:

Արմատական ալիւր, Fécule:

Ափրոդիտեան, Aphrodisiaque:

Անկումն, Collapsus:

Արքայիկ, Roitelet:

Առաւելագոյն ազդեցութիւն, Prédominance:

Աղէթափութիւն, Hernie ombélicale:

Անզգայութիւն աչաց, Anésthésie de l'œil:

Արքաւշական, Archi-lymphatique:

Ախտանիշ, Diagnostic:

Ախնդկացաւ, Hipocondrie:

Առաւելաճումն, Hypertrophie:

Արիւնամիզութիւն, Hématurie:

Աչացաւ, Ophtalmie:

Առնադէմ, Virago:

Անծակութիւն, Imperforation:

Արուականական, Androgyne:

Անողնայար, Mollusque:

Արիւնազեղումն, Hémoragie:

Աններկայութիւն, Absence:

Արտաքրտնութիւն, Exsudation:

Արհեստական կեղ, Exutoire:

Բրտութիւն, Priapisme:

Բաճկոնակ, Corset:

Բազմամսութիւն, Polysarcie:

Բացարան, Spéculum:

Բոզարոյծ, Ribaude:

Բնակալ, Pessaire:

Բեչկամուանք, Civette:

Գեղձ, Gland:

Գնդամիս, Glande:

Գեղեցկորդեծնութիւն, Callipédie:
Գործօն, Agent:
Գլխա-ողնայարական, Céphalo-rachidien:
Գազ, Gomme adragante:
Գի—մկիւթական, Sabine
Գլխադարութիւն, Céphalée:
Դեղնուց, Vetellus:
Դժուարադաշտանութիւն, Dysménorrhée:
Դաշտանամուղ, Emmenagogue:
Դեղագիր, Formulaire:
Դեղահատիկ, Pilule:
Դոնդող, Gélatine:
Դալ, Colostrum:
Եղունդք միրտաձեւք, Carouculs myrtiformes:
Երկաթամուղ, Ferré:
Երփնաւիչ, Teinture:
Եփաջուր, Tisane:
Եղնձահարութիւն, Urtication:
Եզնախորով, Rosbif:
Եղերդ, Chicorée:
Երկխեցիք, Bivalves:
Եզնակէզ, Bupreste:
Եղեամնարկեալ, Givré:
Ըմպաչափ, Potion:
Ընդ յետկոյս, A retro:
Ըմպամոլութիւն, Ivrognerie:
Ընդդիմագործութիւն, Reaction:
Ընդահոյզք, Emulsions:
Թելահայս, Vermicelle:
Թուխ, Quarteron:
Թխասպիտակ, Quinteron:
Ժամանք, Accès:
Ժանտախնձոր, Hippomane:
Լոգանք, Bains:
Լեմոնաշարաբ, Limonade:
Լուծաջուր, Solution:
Խարշաջուր, Decoction:
Խաղացափոխութիւն, Chylification:
Խցաքար, Calculs:
Խոստովանարան, Confessional:
Խաղաւարդ, Bubon:
Խլիրդն, Chancre:
Խորակեղ, Fistule:
Խարան, Moxa:
Խաչածաղիկ, Crucifère:
Խանդամոլութիւն, œstromanie:
Խօթութիւն արգանդի, Hysterie:
Խնկունի, Romarin:

Ծնծակ, Vulve:
Ծլեցուցիչ փամփուշտիկ, Vésicule germinative:
Ծնաման, Bassin:
Ծխարկութիւն, Fumigation:
Ծոպ, Houppe:
Ծնառէջ, Étamine:
Ծածկածնանդամ, Crryptogame:
Ծննդա-միզական, Génito-urinaire:
Ծնաժամ, Terme:
Ծննդագործ, Prolifique
Ծնավրիպումն, Fausse-couche:
Ծծագործի, Suçoir:
Կազմագիտութիւն, Physiologie:
Կենդանասերմն, Zoosperme:
Կնաքիր, Clitoris:
Կուսապարզութիւն, Defloration:
Կաքաւղուհի, Bayadère:
Կուսական կաթ Lait virginaux:
Կենդանածին, Vivipare.
Կանխանիշ, Prodrome:
Կերպարանաձեւութիւն, Plasticité:
Կիւրենական, Cyrénaïque:
Կազմական և բարոյական, Physique et moral:
Կերառութիւն, Regime:
Կարկամութիւն, Rachitisme:
Կորովախաթարութիւն, Minution:
Կանաչ ախտ, Chlorose:
Կորովազդու, Analeptique:
Կղզիացնել, Isoler:
Կատուախոտ, Cataire :
Կորակնգուղ սունկ, Orenge:
Կղքաձուանք, Castoréum:
Կուղբ, Castor:
Կիրարկու, Praticien:
Կոէզ, Gomme arabique:
Կիսալոգանք, Demi-lavement:
Կերպարանիչ, Plastique:
Կապակցութիւն, Connexion:
Կկու, Coccyx:
Կղկղամուղ, Excreteur:
Հարսնամոլութիւն, Nymphomanie:
Հեղկղատար, Éfférent:
Հիւսկեն, Tissu:
Հաւանմանութիւն, Atavisme:

Հաղծի, Agnus custus:
Հագագաքորրրոց, Bronchite:
Հնդկապղպեղ, Gingimbre:
Հեծելավարժ, Équitation:
Հակաափրոդիտեան, Anaphrodisiaque:
Հակաստնգական, Antispasmodique:
Համախմբութիւն, Congestion:
Հսկարան, Veillée:
Հակակաթնային, Antilaiteux:
Հեղկահան, Pompe:
Համակազմական ախտ, Vice de conformation:
Ձուարան, Ovaire:
Ձուամուղ, Oviducte:
Ձուածնութիւն, Ovogie:
Ձուածութիւն, Ponte:
Ճիւաղ, Cauchemar:
Ճգնական հասակ, Age critique:
Ճերմակ դաշտան, Fleurs blanches:
Ճգնաժամ, Crise, paroxysme:
Մորթակաղամային, Épithéliale:
Միզանցք, Canal urétral:
Մալումն, Castration:
Մաղասակայթութիւն, Blennorrhagie:
Մսատարր, Osmazome:
Միզամուղ, Diurétiquo:
Մատնաշատութիւն, Polydactylie:
Մատնազրկութիւն, Extrodactylie:
Մտաքանական, Phrénologique:
Մարզապետ, Gymnasiaque:
Մշտամորութիւն, Célibat:
Մաքրագործ, Dépuratif:
Մորթափոխութիւն, Mue:
Մզափիոն, Laudanum:
Միզարձակութիւն, Incontinence d'urine:
Միջնաձող, Piston:
Մզաւշարակ, Emulsion:
Մոխրատունկ, Cineraire:
Մղձաւանջ, Cauchemar:
Յետնուղեղ, Cervelet:
Յաղթայրածնութիւն, Mégalantropogénésie:
Յետընկալեցուցիչ, Rédhibitoire:
Յամփար, Ambre:
Ներքնա-ծնծակային, Vulvo-uterin:

Ներդակագոյն նիւթ, Fibrine:

Նստալողանք, Bains de siège:

Նարնջաշարաբ, Orangeade:

Նշայոյզ, Emulsion d'amende:

Նապաստակաշուրթն, Bec de lièvre:

Նախապահեստ, Prophylactique:

Նաւակաձեւ, Naviculaire:

Նմանագործութիւն, Consonnance:

Նորասովորն, Mode:

Նոխազակունք, Lepas:

Ներքնարգանդային, Intra-uterin:

Ներքին դահլիճ. Boudoire:

Ներդալուծութիւն, Paralysie:

Շարժական հիւլէ, Corpuscule moudant:

Շրթնահատութիւն, Nymphotomie:

Շրջման հասակ, Age de retour:

Շնչաւորիչ, Respiratoire:

Շնչահան սրուակ, Ventouse:

Շիճուկ, Petit lait:

Շրջադարձ. Accès:

Ողնածուծ, Moelle épinière:

Ուղղամարզիչ, Orthopediste:

Որձեւէգ, Hermaphrodite:

Ոռոգաման, Arrosoir:

Ութբազկեանք. Poulpes.

Ուպան, Benjoin:

Պանեալիւր, Tapioca.

Պարզած սնդիկ, Sublimé corrosif.

Պողիպոտնաձեւ, Polypiforme.

Պատենաւորք, Testacé

Պատրինջ, Citronelle:

Պաստառատել. Dédoubler.

Ջեռումն, Rut.

Ջղացաւ, Nevrose.

Ջղաձգական, Convulsionnaire.

Ջղալուծութիւն, Paratysie.

Ջղակծիկ, Ganglion.

Ջղախոտ, Plantain.

Սատիւրեան ախտ, Salyriasis.

Սերմնորդունք, Spermatozoaires.

Սեղմաթլփատ, Phymosis.
Սեռատել, Emasculer.
Ստնգանք. Spasme.
Սնկագունտ, Boullette d'agaric.
Սննդաքանութիւն, Bromatologie.
Սպնգասունկ, Morille.
Սաղմածնութիւն, Embryogenie.
Սեւաթուխ, Mulâtre.
Սպիտակաթուխ, Terceron.
Սպիտակադաշտան, Leucorrhéïque.
Սրբադեղ, Purgatif.
Սերմնագեղձական, Prostatique.
Սէզ, Chiendent.
Սանդ, Pile.
Ստորածակ, Hypospadias.
Սեղմաթլփատ, Phymosis.
Սրտաձեւ, Anacarde.
Սաղմնաքրոյն մզանք, Eaux
Սերմնագործ, Spermatopée.
Սնկահար, Eɪgoté.
Սաղմնընկեր, Placenta.
Վերամորձի, Épididyme.
Վայրական, Locale.
Վիրակծիկ, Compresse.
Վիժալրգանք, Douche.
Վերնածակ, Epispadias.
Տեղաշարժ, Locomoteur.
Տածահայս, Cataplasme.
Տարրապարզութիւն, Chimie.
Տնկական հոյզ, Mucilage.
Տնկաղ, Potasse.
Տարփագործ, Philtre, érotophore.
Տաշտ ծովաջրոյ, Bain-marie.
Տաշտ աւազոյ, Bain de sable.
Տենչանք, Envies.
Ցարաս, Bouleau.
Ցուրտ հունտք, Semances froides.
Փոքր շրթունք, Petites lèvres. nymphe.
Փողք արգանդի, Les trompes utérins.
Փողահայս, Macaroni.
Փափկաշփութիւն, Massage.
Փայծաղնացաւ, Vapeurs
Փոքախոր, Crypte.
Փեգենայ սպանդ., Peganum harmala.
Փաստեղ, Pastille.
Փորձաժողով. Congrès.
Օղարկել. Infibuler.
Օրէնք շրջանի, Loi de retour.

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ։

## ՄԱՍՆ Ա.

## ՄԱՍՆ Բ.

